# ՀԱՄԱՌՕՏ

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆՔ

## ՀԻՆ ԵՒ ՆՈՐ ԱԶԳԱՑ



# ՀԱՄԱՌՕՏ

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

## ՀԻՆ ԱԶԳԱՑ

ՅՈՐՈՒՄ ԲՈՎԱՆԴԱԿԻՆ

ՊԱՏՄՈՒԹԻՒՆՔ ՀՐԷԻՑ, ԱՍՈՐԵՍՏԱՆԵԱՅՑ, ԲԱԲԵԼԱՑԻՈՑ, ԵԳԻՊՏԱՑԻՈՑ, ՄԱՐԱՑ, ՊԱՐՍԻՑ, ՊԱՐԹԵՒԱՑ, ԿԱՐՔԵԴՈՆԱՑԻՈՑ, ՅՈՒՆԱՑ ԵՒ ԱՍՈՐԻՈՑ

ՇԱՐԱԳՐԵԱՑ

Հ. ԱՄԲՐՈՍԻՈՍ ԳԱԼՖԱՅԵԱՆ

Ի ՄԽԻԹԱՐԵԱՆ ՈՒԽՏԷՆ



Ի ՎԵՆԵՏԻԿ

Ի ՎԱՆՍ ՍՐԲՈՅՆ ՂԱԶԱՐՈՒ

1849

# ՅԱՌԱՋԱԲԱՆ

Պատմութեան ուսումը թէ որ իրաւամբ ըսուեր է խորհրդարան իշխանաց և կրթարան չափահասից, տարակոյս չկայ որ պէտք է համարուի նաև զբօսարան տղայոց և պատանեաց. անոր համար է որ տղոց միտք ու լեզուն բացուելուն պէս կ'ուզեն պատմութիւն լսել, պատմութիւն պատմել, կարդալ սորվածնուն պէս ալ՝ պատմութիւն կը փնտռեն որ կարդան. ըսել է թէ աս ուսման զուարճութիւնը կը հասկընան ու կը սիրեն, թէպէտ և մեծամեծ օգուտները 'ի սկզբան չեն իմանար։ Իսկ մեծերը, և մանաւանդ վարժապետները, որ պատմութեան օգտակարութիւնն ալ խիստ աղէկ կը ճանչնան, ու գիտեն որ անհամեմատ առաւելութեամբ վեր է պատմութեան օրինակը՝ քան թէ խրա-

տին ուժը, արդեօք ինչ ճամբայ՝ ինչ ոճ պիտի բանեն որ պատմութեան ուսումը իրաւցընէ օգտակար ըլլայ տղոց, բայց միանգամայն զուարճութիւնն ալ չկորսընցընէ, չոր ու ցամաք ուսմանց կարգը չանցնի ու ձանձրալի չըլլայ տղոց. Ինչ ընելու է որ պատմութեանց մէջ յիշուած երևելի տեղերու և մարդկանց անունները, գըլխաւոր թուականները, հարկաւոր յաջորդութիւնները, առանց շատ դժուարութիւն քաշելու սորվին տղաք ու մաքերնին պահեն. վերջապէս ինչ կերպ բանելու է որ ծակ գուբի մը մէջ քարի կտորուանք նետելու պէս՝ չլեցուի տղոց միտքը աննշան ձայներով, անսովոր բառերով ու կտորըրդուճ թիւերով, հապա իրական ու ստոյգ դիպուածները կարգ կարգ շարուին մոքերնուն մէջ, այնպէս որ պէտք եղած ատենը շուտ մը յիշեն և ուրիշի ալ տեղովը պատմեն։ — Ահա այսպիսի դիտմունքները աչքերնուս առջեւն ունենալով՝ աս Հին, Միջին և Նոր ժամանակաց պատմութիւնները շարադրելու ձեռք զարկինք։ Նայեցանք որ համառօտութիւնը՝ պատմութեան ամբողջութեանը և զուարճալի ըլլալուն արգելք մը չընէ, ամբողջութիւնն ալ աւելորդ պարագաներով կամ յայտնի խորհրդածութիւններով ձանձրութեան պատճառ չըլլայ։

Նայեցանք որ ոչ այնչափ ընդարձակ գրենք պատմութիւններն որ վարժապետներուն դրեթէ նիւթ չմնայ բերնով աւելցընելու. քանի մը երկրորդական պարագաներ ու խորհրդածութիւններ, ոչ ալ այնչափ կտրտենք ու ամփոփենք որ բոլորովին վարժապետաց մնայ ամէն տեսակ բացատրութիւնը։

Պատմութեան թելը անընդհատ պահեցինք, այսինքն բնագրին մէջ հարցմունքներ չդրինք, որպէս զի թէ տղոց և թէ ուրիշ ոք և իցէ հասակի ու վիճակի անձանց կարդաւ կարդացած ատեննին ոտնառութեան պատճառ չըլլան. բայց միանգամայն գիտնալով թէ հարցմունքներն ալ շատ դիւրութիւն կու տան տղոց՝ պատմութիւնը մտքերնին պահելու, վարժապետաց ալ՝ անոնց միտք պահածը իմանալու համար, գլխաւոր հարցմունքները թուանշանով ամէն մէկ երեսին տակը դրինք ծանօթութեան պէս, գլխաւորները կ'ըսեմ, վասն զի վարժապետաց կ'իյնայ որ մի և նոյն հատուածին վրայ այլ և այլ հարցմունքներ ալ ընեն իրենք իրենց կողմանէ, որպէս զի հարկաւոր պարագաները աւելի լաւ տպաւորուին տղոց մտքին մէջ, տղաք ալ կարճ տալով պատասխանները՝ աւելի դիւրութիւն իմանան։

Իսկ ընդհանրապէս աւելի օգտակար ու դիւրին կերպով աս դասատետրերը գործածելու համար այսպիսի եղանակ մը կրնայ բանեցուիլ։ Վարժապետը մէկ գլուխ մը կը բանայ, օրինակի համար առաջին գլուխը, ու քանի մը տղոց մէյմէկ հատուած կարդաւ կարդալ կուտայ ինչուան գլխոյն վերջը. ետքը կ'ըսէ որ գոցեն գրքերը, ու պատմութեան ծայրէն սկսելով որո՛ւն որ ուզէ կը հարցընէ հատուած մը. Թէ որ չգիտնայ՝ կամ լաւ պատասխան չտայ, ուրիշի մը կը հարցընէ. Թէ որ գիտցաւ, մէկալ հատուածը կը հարցընէ ուրիշի, գլուխն որ լմըննայ՝ նորէն կարդալ կուտայ առջինին պէս, ու դասը կը վերջանայ։ Երկրորդ օրը յաջորդ գլուխը դաս տալէն առաջ՝ նախընթացը մէյմըն ալ կը հարցընէ ու կը կարդացընէ, և անկէց ետքը երկրորդ գլուխը դաս կուտայ առջի կերպովը։ — Աս ոճը կը բանեցընէ Փարիզ նաև Պըլէզ գաղղիացի վարժապետը, որուն պատմութեանց դասատետրերուն հետևեցանք ընդհանրապէս, թէպէտ և շատ բան ալ մեզմէ աւելցուցինք՝ աչքէ անցընելով Լըֆրանք, Լեւի, Սէկիւր, Լըպօ և ուրիշ ասոնց նման հիմակուան համբաւեալ անձանց պատմութիւնները։

Հին պատմութիւնը սորվիլ սկսող տղաք հար-

կաւ առաջուց սորված պիտի ըլլան սուրբ գրոց՝ կամ որ նոյն է՝ Հրէից պատմութիւնն ու մեր ազգին պատմութիւնը։ Բայց գիտնալով որ Հրէից պատմութիւնը թէ՛ ստուգութեանը, թէ հնութեանը և թէ ժամանակագրութեանը պատճառաւ ուրիշ ամէն պատմութեանց հիմն է, անոր համար մենք ալ պատշաճ համարեցանք աս հատորիս սկիզբը Հրէից պատմութեան համառօտութիւնը դնել, որպէս զի տղաք առաջ անոր մէջի գլխաւոր դիպուածները քաղեն ու ետքը անցնին արտաքին պատմութեանց։

Եւ որովհետև ինչպէս որ պատմութեան մէկ աչքը ժամանակագրութիւնը սեպուած է, մէկալն ալ աշխարհագրութիւնն է. ժամանակագրական թուականները երևելի դիպուածներուն քովը դրինք փակագծի մէջ, և պատմութեան սկիզբն ալ համառօտ աշխարհագրութիւն մը՝ որ մեծ դիւրութիւն կու տայ տղոց՝ պատմութիւնները դիւրաւ սորվելու և միտք պահելու համար։

Ասկէց ետև կ'ելլէ Հռովմայեցւոց պատմութիւնը՝ զատ մէկ հատոր. երկու հատոր ալ Միջին դարու պատմութիւնը. երկուք ալ Նոր պատմութիւն։

Յուսանք որ աս մեր աշխատանքը իր վարձա-

նին հասնի՝ օգտակար և հաճոյ ըլլալով մեր ազ-
գին ուսումնասէր աշակերտացն ու աշխատասէր
վարժապետացը, որով անշուշտ կամակատար
եղած կ'ըլլանք նաև այն բարեսիրտ ու պատուա-
կան Անձին որ թէ՛ յորդորանօք և թէ՛ արդեամբք
պատճառ եղաւ մեզի աս գործքիս ձեռք զարնե-
լու՝ յօգուտ և 'ի յառաջադիմութիւն հայկազ-
նեան մանկանց, որոնց վրայ մեծ սէր, մեծ հա-
մարում ու ակնկալութիւն ունի։



# ԱՇԽԱՐՀԱԳՐՈՒԹԻՒՆ

# ՀԻՆ ՊԱՏՄՈՒԹԵԱՆ

---

ԵԳԻՊՏՈՍ. Եգիպտոս, Ափրիկէի մէկ մասն է, որուն Հրեայք Երկիր Քամայ կամ Մեստրեմայ կ'ըսէին՝ ատենով այլ և այլ հարստութիւն կամ իշխանութիւններ կը բաժնուէր. ետքերը երբոր մէկ տէրութիւն մը ձևացաւ, այլ և այլ գաւառներ կամ նահանգներ բաժնուեցաւ:

Եգիպտոսի երկրին մէջէն կ'անցնի Նեղոս գետը, և երկիրը իրեք գլխաւոր մասն կը բաժնուէր. հարաւակողմը՝ Վերին Եգիպտոս կամ Թեբայիս կ'ըսուէր՝ Թեբէ մայրաքաղաքին անունովը. մէջտեղը՝ Միջին Եգիպտոս կամ Եպտանոմոս այսինքն Եօթնանահանգ, որովհետև եօթը նահանգ կը բաժնուէր. հիւսիսակողմը՝ Ստորին Եգիպտոս կամ Դելտա. և սանկ ըսուելուն պատճառն ան է որ ձևը եռանկիւնի ըլլալով Յունաց Δ (տելտա) գրոյն նման էր:

Վերին ու Միջին Եգիպտոսի գլխաւոր քաղաքներն էին Սիենէ, Լատուպօլիս, Կրոկոդիլոպօլիս կամ Արսինոյէ, Կոպտոս, Տենտիրիս, Լիկոպօլիս, Հերմոպօլիս, Թեբէ՝ Վերին Եգիպտոսի մայրաքաղաքը, և Մեմփիս՝ Միջին Եգիպտոսի մայրաքաղաքը՝ Նեղոս գետին ձախ եզերքը։ Ստորին Եգիպտոսի գլխաւոր քաղաքներն էին Հելիուպօլիս կամ Արեգ քաղաք, Աղեքսանդրիա. Սայիս և Պեղուսիոն՝ որ բոլոր Եգիպտոսի մայրաքաղաքը կը սեպուէր։

ԲԱԲԵԼՈՆ. — ՄԱՐԱՍՏԱՆ. — ՊԱՐՍԿԱՍՏԱՆ. — ԿԻՒՐՈՍԻ ՏԷՐՈՒԹԻՒՆԸ. Բաբելոնի տէրութեան խիստ ծաղկած ատենը՝ հիւսիսէն ու արեւելքէն սահմանն էր Հայաստան ու Մարաց երկիրը. արեւմուտքէն Ամանոս լեռը. հարաւէն Արաբիոյ ծոցը. քաղաքներուն մէջ անուանի էին Կիսսիա, Շօշ ու Եղիմայիս, Քաղդէաստան, Բաբելաստան՝ որուն մէջ էր նաև Բաբելոն՝ բոլոր տէրութեան մայրաքաղաքը. Եփրատ գետէն անդին Միջագետքը՝ որուն մէջ էին նաև Ուր և Խառան քաղաքները, Ասորեստան՝ որուն գլխաւոր քաղաքն էր Դամասկոս, Փիւնիկէ և Պաղեստին։

Մարաց տէրութեան ձեռքն էին Աժդահակայ թագաւորութեան ատենը՝ Մարաստան, Եկբատան, որ և տէրութեան մայրաքաղաքն էր, և Հռագիւս քաղաքը, Ասորեստան, Հայաստանի հարաւային մէկ մասը, Կապադովկիա, Պերսեպօլիս ու Պասարգադ քաղաքները։

Պարսից տէրութեան սահմանը Կիւրոսի ատեն՝ հիւսիսէն Ոքսոս գետն ու Կասպից ծովը

էր, արևելքէն Ինդոս գետը. հարաւէն Ներքին կամ Միջերկրական ծովը, Արաբիա և Պարսից ծոցը. արևմուտքէն Հայաստանի մէկ մասը և Եգեան ծովը։ Իսկ ունեցած երկիրներն էին Լիւդիա՝ որուն գլխաւոր քաղաքներն էին Սարդիկէ, Տրաղա, Թերմեսոս, Պերգամա և Գորդիոն. Լիկայոնիա, Կիլիկիա՝ Սելինոս և Իսսոս քաղաքներով. Պարթեւաց և Բակտրիացւոց երկիրները, Եւոլիա, Յոնիա և Դովրիս կամ Եգեան ծովու արևելեան ծովեզերքը բնակող Յունաց երկիրները։

Աս ընդարձակ տէրութիւնը՝ որ ետքը Կիւրոսին յաջորդները աւելի ընդարձակեցին, Դարեհ քսան նախարարութիւն բաժնեց։ Բուն Պարսկաստանը ասոնց մէջ չէր, և տուրք չէր տար։

ՅՈՒՆԱՍՏԱՆ. Յունաստանի սահմաններն էին Մարաց պատերազմին ատենը՝ հիւսիսէն Ակրոկերաւնեան լեռները. արևելքէն Եգեան ծովը. հարաւէն Միջերկրական ծովը. արևմուտքէն Յոնիական ծովը։ Բնական կերպով Յունաստան երկու գլխաւոր մաս կը բաժնուէր, ցամաք ու կղզիներ։ Ցամաքի կտորն ալ դարձեալ իրեք մաս կը բաժնուէր, այսինքն Հարաւային Յունաստան կամ Պեղոպոնէս, Միջին Յունաստան կամ Ելլադա և Հիւսիսային Յունաստան։

Պեղոպոնես, որ կղզի Պեղոպսի ըսել է, ութը գաւառ կը բաժնուէր. Լակոնիա, որուն գլխաւոր քաղաքներն էին Սպարտա կամ Լակեդեմոն, Եղիս և Սելլասիա. Մեսսենիա՝ որուն գլխաւոր քաղաքներն էին Մեսսենա, Ստենիկ-

ղար, Պիղոս, Մեթոն և Իրա բերդը· Արգողիս, գլխաւոր քաղաքներն Արգոս, Տրեզենէ, Եպիդաւրոս և Միկէնք· Եղիս, գլխաւոր քաղաքներն Եղիս, Ողիմպիա և Պիսա· Աքայիա, գլխաւոր քաղաքներն Ողենէ, Դիւմէ, Պատրէ և Պելլենէ· Սիկիոնիա, գլխաւոր քաղաքը Սիկիոն· Կորնթոս, համանուն գլխաւոր քաղաքովը· Արկադիա, գլխաւոր քաղաքներն Որքոմենէ, Մանտինէա, Տեգէա,Ստիմփաղոն և Պալլանտիա։

Միջին Յունաստան ութը գաւառ կը բաժնուէր· Մեգարիս, գլխաւոր քաղաքը Մեգարա· Ատտիկէ, գլխաւոր քաղաքները Աթէնք, Եղեւսիս և Մարաթոն· Բէովտիա, գլխաւոր քաղաքները Թեբէ, Պղատէա կամ Պղատիէս, Կորոնէա, Թեսպիէս և Լեւկտրա· Փովկիս, գլխաւոր քաղաքները Դեղփիս, Կիւրէ և Անտիկիւրէ· Լոկրիս, որուն մէջ էր հռչակաւոր Թերմոպիլեայ կիրճը, գլխաւոր քաղաքները Նաւպակտոն և Ամփիսա· Դորիս· Ետոլիա· Ակառնանիա։

Հիւսիսային Յունաստան երկու գաւառ ունէր, Թեսսաղիա, գլխաւոր քաղաքները Լարիսսա, Դոդոնէ, Տրաքիս և Փերէս· Եպիրոս, գլխաւոր քաղաքը Ամբրակիա։

Յունաստանի կղզիներէն ոմանք զատ զատ են, ոմանք ալ խումբ խումբ մէկտեղ։ Զատ կեցած կղզիներուն մէջ անուանիներն էին Կրետէ, Եւբէա, Սաղամինա և Եգինէ։ Խումբ խումբ կեցածներուն գլխաւորներն էին Յոնիական կղզիները, Կիւկղադայք կամ Բոլոր կղզիք, և

Սպորադք կամ Սփիւռ կղզիք։ Յոնիական կղզեաց մէջ երեւելի էին Կորկիւրա, Լեւկադիա, Իթակէ, Զակիւնթոս, Կեփաղենիա և Կիթերա։ Կիւկղադայց մէջ գլխաւորներն էին Նաքսոս, Պարոս, Դելոս և Անդրոս։

ՄԱԿԵԴՈՆԻԱ․ Մակեդոնիոյ թագաւորութիւնը Յունաստանի հիւսիսակողմը կ'իյնայ․ այս երկիրը մեծն Աղեքսանդր իր աշխարհակալութիւններովը այնչափ ընդարձակեց որ Ադրիական ծովէն ինչուան Հնդկաստան կը տարածուէր, Դանուբէն ալ ինչուան Կարմիր ծովը։ Աս սահմաններուն մէջ եղած երկիրները Աղեքսանդր երեսուներչորս մեծ նահանգ կամ աշխարհք բաժնեց, որոնց գլխաւորներն էին Մակեդոնիա՝ որուն մէջն էր Թրակիա և Թեսաղիա, Փռիւգիա, Լիւդիա՝ որուն մէջն էր Յոնիա, Կարիա, Պափլագոնիա, Լիկիա և Պամփիլիա, Կապադովկիա և Պոնտոս, Կիլիկիա, Ասորիք, Բաբելոն և Ասորեստան, Շօշ, Պարսկաստան և Մարաստան, Վրկան և Պարթեւաստան, Բակտրիա և Մարգիանէ, Սոգդիք և Դրանգիանէ, Կրման և Գեդրոսիա, Հնդկաստան և Եգիպտոս։

Մակեդոնացւոց աս ընդարձակածաւալ տէրութիւնը շատ փոփոխութիւններ առաւ նախ Աղեքսանդրի մեռներէն ետքը․ երկրորդ՝ Իպսոսի պատերազմէն վերջը, և երրորդ՝ Ասորւոց Սելեւկոս Ա թագաւորին մահուընէն ետքը։

# ՆԱԽԱԳԻՏԵԼԻՔ

Պատմութիւնն է աշխարհիս սկիզբէն ինչուան մեր ատեն եղած ճշմարիտ դիպուածոց բովանդակութիւնը։

Պատմութեան վախճանն է անցած ժամանակներուն խելք սորվելու դիպուածները գիր անցընելով, թէ նոյն ատենի մարդիկը և թէ ետքէն եկողները կրթել, ուրիշներուն փորձառութեամբը ետևիններուն բան սորվեցընել։

Պատմութիւնը՝ ժամանակին նայելով իրեք գլխաւոր մասն կը բաժնուի, այսինքն Հին պատմութիւն, Միջին դարու պատմութիւն և Նոր պատմութիւն։

Հին պատմութիւնը աշխարհիս հետ կը սկսի, Քրիստոսէ 4004 տարի առաջ ըստ ժամանակագրաց, ու Քրիստոսէ 476 տարի ետքը կը վերջանայ՝ արևմտեան կայսրութեան վերջանալուն ատենը. ասոր մէջը կ՚երթայ բոլոր հին ազգաց պատմութիւնը և Հռովմայեցւոց պատմութիւնը։

Միջին դարու պատմութիւնը կը սկսի Քրիստոսէ 476 տարի ետքը՝ արևմտեան կայսրութեան կործանման ատենէն, և Քրիստոսէ 1453 տարի ետքը Կոստանդնուպոլսոյ առնուելովը արևելեան կայսրութեան հետ կը վերջանայ։

Իսկ Նոր պատմութիւնը կը սկսի Սուլդան Մէհէմմէտին Կոստանդնուպոլիսն առնելէն ինչուան հիմայ։

# ՀԻՆ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

---

## ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՀՐԷԻՑ

### ԳԼՈՒԽ Ա.

Ստեղծումն աշխարհի. — Ջրհեղեղ. — Բաբելոնի աշտարակը. — Աբրահամ. — Յակոբ. — Յովսէփ Եգիպտոս կը ծախուի. — Մովսէս. — Իսրայելացւոց Եգիպտոսէն ելլելը. — Յեսու. — Իսրայելացիք Աւետեաց երկիրն կը մտնեն. — Դատաւորք. — Սամուէլ։

1 Աստուած վեց օրուան մէջ ստեղծեց երկինքն ու երկիրս, և ուրիշ արարածներէն ետքը ստեղծեց մարդը իր կերպարանացը նման (4004)։ Առաջին մարդուն անունն էր Ադամ, առաջին կնոջն ալ Եւա։

---

1 Աստուած որչափ ատենի մէջ ստեղծեց աշխարհս։

1 Ադամն ու Եւան դրաւ Աստուած դրախտը, որ զուարճալի պարտէզ մըն էր. հոն երջանիկ ու անմահական կեանք կրնային անցընել թէ որ իրենց ստեղծողին հրամանը պահէին. բայց Եւան սատանային խոստմունքներէն խաբուեցաւ, Ադամն ալ իրեն հետ անհնազանդութեան մէջ ձգեց. անոր համար երկուքն ալ դրախտէն դուրս քշուելով դատապարտուեցան և իրենց հետ բոլոր մարդկային ազգն ալ պարտաւորեցաւ աշխատելու, ցաւեր քաշելու և մեռնելու: Միայն թէ սա ալ խոստացաւ Աստուած մարդուս որ ատենով փրկիչ մը խրկէ՝ զինքը ան կործանմանէն կանգնելու համար:

2 Ադամայ առաջին որդիքն եղան Կայէն և Աբէլ: Կայէն նախանձեցաւ Աբէլ եղբօրը վրայ ու սպաննեց զինքը (3875). որով Աստուծմէ անիծուեցաւ, մարդկանց ատելի եղաւ:

3 Ադամայ երրորդ որդին եղաւ Սէթ. ասոր որդիքը հաստատուն մնացին աստուածպաշտութեան մէջ. և գլխաւորներն են Ենովս, Կայնան, Մաղաղայէլ, Յարեդ, Ենովք. ասիկայ հրաշքով

---

1 Ադամը ո՞ւր դրաւ Աստուած: — Ադամ ի՞նչպէս անհնազանդ եղաւ Աստուծոյ: — Ադամայ ի՞նչ պատիժ տուաւ Աստուած: — Ի՞նչ բան խոստացաւ Աստուած մարդուս:

2 Ադամայ առջի որդիքն որո՞նք եղան: — Կայէն ի՞նչ մեղք գործեց:

3 Ադամայ երրորդ որդին ո՞վ է: — Սեթայ որդւոց գլխաւորներն որո՞նք են:

երկինք վերացաւ. Մաթուսաղա, որ նահապետաց մէջ ամենէն՝ շատ ապրեցաւ. Ղամէք և Նոյ:

1 Սեթայ որդիքը Կայենի որդւոցը հետ խնամութիւն ընելով՝ աստուածպաշտութենէ պաղեցան, աւրուեցան. Աստուած ալ արդար դատաստանովը որոշեց որ բոլոր մարդիկը ջնջէ վերցընէ աշխարհէս:

2 Միայն Նոյ նահապետը իր հարցը հաւատքն ու աստուածպաշտութիւնը պահեր էր. ուստի Աստուած անոր յայտնեց իր կամքը, և ապսպրեց որ մեծ տապան մը շինէ, որով ինքը իր ընտանեօքը ազատի ջրհեղեղի պատժէն (2468): Մէկալ մարդիկը իրենց ախտերովը կուրցած ու ամբարշտութեամբ սրտերնին կարծրացած՝ մըտիկ չըրին Նոյայ ազդարարութեանցը որ կ՚ըսէր թէ Աստուած վրանին բարկացեր է, ու ջրհեղեղով կ՚ուզէ զիրենք ջնջել: Ան ատենը Նոյ իր ընտանիքովը մտաւ տապանը, հետն ալ ամէն տեսակ ցամաքային կենդանիներէն առաւ զոյգ զոյգ:

3 Քառասուն օր ու քառասուն գիշեր երկնքէն սաստիկ անձրև եկաւ, ծովուն ջրերն ալ բարձրացան բոլոր աշխարհք կոխեցին, ու ին-

---

1 Մարդիկ աստուածպաշտութեան մէջ հաստատ մնացի՞ն:

2 Ո՞վ միայն հաստատուն մնացեր էր:

3 Ի՞նչ պատիժ տուաւ Աստուած մարդկանց:

չուան խիստ բարձր լեռներէն ալ տասնըհինգ-կանգուն վեր բարձրացան։ Հարիւր յիսուն օր ջուրը երկրիս երեսը ծածկած մնաց, անանկ որ տապանէն դուրս մնացած մարդիկ ու կենդա-նիք ամէնն ալ խեղդուեցան։

1 Երբոր ջուրը քաշուեցաւ, տապանը գնաց Հայաստանի Մասիս լեռան վրայ կեցաւ։ Նոյ ելաւ դուրս, Աստուծոյ շնորհակալութեան զոհ մատոյց, Աստուած ալ իրեն ու որդւոցը պատուիրանքներ տուաւ, խոստացաւ ալ որ անկէց ետքը ջրհեղեղով բոլոր աշխարհս չը-պատժէ։

2 Մարդկային կենաց հարկաւոր արուեստնե-րը Նոյի և իր որդւոցը ձեռքովը նորէն ծաղկե-ցան, ու նոր նոր արուեստներ ալ հնարուեցան. առաջին այգի տնկողն ինքն եղաւ, և խաղողին ու գինւոյն գործածութիւնը ան ատենէն սկը-սաւ։

3 Մարդիկ ինչուան ջրհեղեղ ընդեղէն ու պտղեղէն կերակրով կ'ապրէին. Աստուած հը-րաման տուաւ որ կարենան նաև կենդանեաց միս ուտել։

4 Նոյայ որդիքը քիչ ատենի մէջ այնչափ շատ-

---

1 Տապանը ո՞ւր կեցաւ։ — Նոյ ի՞նչ ըրաւ։
2 Արուեստներն ի՞նչ եղան։
3 Ջրհեղեղէն վերջը մարդիկ ինչո՞վ կ'ապրէին։
4 Մարդիկ աշխարհիս երեսը ցրուելէն առաջ ի՞նչ մտածեցին։ — Աստուած ինչպէս պատ-ժեց մարդկանց ամբարտաւանութիւնը։

ցան որ ալ չէին կրնար մէկտեղ մնալ, պէտք ե-
ղաւ որ աշխարհիս այլ և այլ կողմերը ցրուին։ Ցրուելէն առաջ Սենաարայ դաշտը ժողվուեցան, որ Տիգրիս ու Եփրատ գետերուն իրարու հետ միացած տեղերուն մօտ կ'իյնայ, ու սկսան աշտարակ մը շինել որ ինչուան երկինք կ'ուզէին բարձրացընել. Աստուած անոնց հպարտութիւնը պատժելու համար լեզունին խառնակեց, որով չկրցան շէնքը առաջ տանիլ ու ցրուեցան։ Ան աշտարակին տեղը Բաբելոն կոչուեցաւ, որ խառնակութիւն ըսել է, որովհետև հոն լեզուները խառնակեցան (2247)։

1 Նոյայ որդւոցը մէջէն Յաբեթ հիւսիսային Ասիոյ մէջ մնաց և իր զաւկըները տարածուեցան արևմտեան Ասիոյ կողմերը՝ ինչուան Եւրոպա. Սեմ Ասիոյ մէջտեղերը բնակեցաւ. իսկ Քամ Ափրիկէ գնաց։

2 Երբոր մարդիկ սկսան ամէն տեղ իրենց բնակութիւնը հաստատել, քաղաքներ շինել, թագաւորութիւններ կանգնել. Քամայ թոռը Նեբրովթ Բաբելոնի աշտարակին աւերակներուն վրայ Բաբելոն քաղաքը շինեց, ու կը ջանար որ ամենուն վրայ տիրէ ու ինքզինքը Աստուծոյ պէս պաշտել տայ (2240)։

---

1 Յաբեթայ որդիքն ո՞ւր բնակեցան։ — Սեմայ որդիքը ո՞ւր բնակեցան։ — Քամայ որդիքը ո՞ւր բնակեցան։

2 Բաբելոն քաղաքը ո՞վ շինեց։ — Նեբրովթ ինչ բանի տէր եղաւ։

1 Անկէց ետքը սկսան մարդիկ իրենց ստեղծողը մոռնալ և սուտ աստուածներ պաշտել։ Աստուած կամեցաւ անոնց մէջէն իրեն մէկ հաւատարիմ ժողովուրդ մը ընտրել, և Աբրահամ նահապետը, որ Սեմայ ցեղէն էր ու Քաղդէացւոց երկիրը կը բնակէր, այն ժողովրդեան նախահայր եղաւ (1921)։ Աստուծոյ հրամանովը Թողուց հայրենիքը, և իր Ղովտ եղբօրորդւոյն հետ Քանանացւոց երկիրը գնաց։ Անկէց սովի պատճառաւ քիչ մը ատեն Եգիպտոս գնաց, ու ետքը նորէն դարձաւ Քանանացւոց երկիրը. Ղովտն ալ գնաց Սոդոմ քաղաքը [illegible] բնակեցաւ։ Սոդոմացւոց մեղքերը շատցած ըլլալուն՝ երկնքէն կրակ իջաւ ու Սոդոմ, Գոմոր, Ադամա և Սեբոյիմ քաղաքները այրեց։ Ղովտ միայն իր ընտանեօքը հրաշքով ազատեցաւ ու գնաց Սեգովր քաղաքը բնակեցաւ, և հոն ծնաւ Մովաբ ու Ամոն որդիքը. ասոնցմէ ելան Մովաբացիք ու Ամոնացիք։

2 Աբրահամ որդի մը ունեցաւ իր Ագար աղախինէն Իսմայէլ անունով, որուն որդիքը Իսմայէլացիք ըսուեցան։ Երկրորդ որդի մըն ալ ունեցաւ Սառա կնկանէն՝ անունը Իսահակ

---

1 Աստուած զո՞վ ընտրեց իր ժողովրդեանը նախահայր։ — Աբրահամ ո՞ւր գնաց բնակելու։
2 Որո՞նք են իր որդիքը։ — Աբրահամ ի՞նչպէս ցըցուց Աստուծոյ իր հնազանդութիւնը։ — Աստուած իրեն ի՞նչ բան խոստացաւ։

(1896)։ Աստուած Աբրահամու հնազանդութիւնը փորձելու համար հրամայեց անոր որ Իսահակ որդին իրեն զոհ ընէ։ Երբոր կը պատրաստուէր Աբրահամ հրամանը կատարելու, Աստուած արգիլեց, և խոստացաւ Աբրահամու որ իր որդիքը երկնքի աստղերուն ու ծովու աւազներուն պէս անթիւ ընէ ու իրմով օրհնուի բոլոր մարդկային ազգը։ Աբրահամ հարիւր եօթանասունըհինգ տարեկան մեռաւ, ու իրեն ժառանգ Իսահակ որդին թողուց։

1 Իսահակ ու իր որդին Յակոբ Աբրահամու հաւատքին ու հովուական կենացը հետևելով՝ անոր պէս օրհնուեցան Աստուծմէ։ Իսահակ ուրիշ որդի մըն ալ ունէր Եսաւ կամ Եդոմ անունով, որ Եդոմայեցւոց նախահայրն եղաւ։

2 Յակոբ, որ նաև Իսրայէլ այսինքն Աստուածատես կ'ըսուի, տասուերկու որդիք ունեցաւ. անոնց մէջ աւելի անուանիներն են մէյմը Ղեւի՝ որուն որդիքը Աստուծոյ ծառայութեանը նուիրուեցան. երկրորդ՝ Յուդա, ուսկից պիտի ելլէր Թագաւորական ցեղը և Քրիստոս փրկիչն աշխարհի, և երրորդ Յովսէփ, որ ուրիշներէն աւելի սիրելի եղեր էր Յակոբայ։

3 Յովսէփայ եղբարքը վրան նախանձելով

---

1 Իսահակայ որդիքը որո՞նք եղան։

2 Յակոբ ուրիշ ի՞նչ անուն ունէր։ — Յակոբայ որդւոցը մէջ որո՞նք էին գլխաւորները։ — Ո՞ր ցեղէն պիտի ծնանէր Քրիստոս։

3 Յովսէփայ պատմութիւնն ի՞նչ է։

ծախեցին զինքը Մագիանացի վաճառականներուն, որ Եգիպտոս տարին զինքն ու Փարաւոն Թագաւորին Պետափրէս անունով դահճապետին ծախեցին: Դահճապետը իր անզգամ կնոջը Յովսէփայ վրայ ըրած զրպարտութեանը հաւտալով բանտ դրաւ զինքը. անիկայ հրաշալի իմաստութեամբը քիչ ատենէն ելաւ ու մեծ փառքի հասաւ: Թագաւորին երազները մարգարէական հոգւով մեկնելուն համար անոր երկրորդն եղաւ, ու Եգիպտոսի կառավարութեանը ինքը գլուխ կեցաւ (1716).

1 Եօթը տարի առատութիւն որ եղաւ, Յովսէփ իմաստուն նախատեսութեամբ պաշար ժողվելով՝ ետեւէն եկած եօթը տարուան սովէն ատենը Եգիպտոսը նեղութենէ ազատեց: Երբոր իր եղբարքը ցորեն գնելու համար Եգիպտոս եկան՝ ինքզինքը անոնց յայտնեց Յովսէփ, ու հայրը քովը կանչեց, որ տնով տեղով ելաւ գնաց Եգիպտոս (1706):

2 Յակոբայ զաւկըները քիչ ատենի մէջ բազմանալով մեծ ժողովուրդ ձեւացան. Եգիպտացիք սկսան վրանին նախանձիլ ու անոնցմէ վախնալ.

---

1 Յովսէփ Եգիպտոսը սովէ ազատելու համար ի՞նչ ըրաւ:

2 Փարաւոն ի՞նչ ըրաւ Իսրայէլացիքը քիչցնելու համար: — Մովսէս ի՞նչպէս ազատեցաւ: — Մովսէս ինչո՞ւ Եգիպտոսէն փախաւ:

և ան ատենի Թագաւորը՝ որ Յովսէփը չէր ճանչնար, հրամայեց որ Իսրայէլացւոց մանչ զաւակները մեռցուին (1573)։ Մովսէս ալ երբոր մեռցընելու համար Նեղոս գետը ձգեր էին՝ Փարաւոնի աղջիկը տեսաւ, վրան խղճաց, իր պալատը առաւ մեծցուց, ու Եգիպտացւոց գիտութիւնները սորվեցընել տուաւ անոր։ Քառասուն տարուան եղած ատենը Մովսէս տեսաւ որ Եգիպտացի մը Իսրայէլացւոյ մը դէմ անիրաւութիւն կ'ընէր, զարկաւ սպաննեց զԵգիպտացին ու Մադիանացւոց երկիրը փախաւ Յոթոր քրմին քով, և անոր Սեպփովրա աղջիկը իրեն կին առաւ։

[1] Մովսէս քառասուն տարի իր աներոջն ոչխարները արածելէն ետքը, Աստուած իրեն հրամայեց որ Եգիպտոս դառնայ և իր ժողովուրդը գերութենէ ազատէ (1492)։ Մովսէս իր Ահարոն եղբօրը հետ մէկտեղ Թագաւորին առջեն ելաւ ու խնդրեց որ թող տայ որ Իսրայէլացիք ելլեն Եգիպտոսէ։ Փարաւոնին հաւատցընելու համար որ զինքը Աստուած խրկեր է, և անոր խստասրտութեանը յաղթելու համար շատ զարմանալի հրաշքներ ըրաւ, ու Եգիպտոսի վրայ տասը տեսակ պատիժ բերաւ որ կ'ը-

---

1 Մովսէս քանի՞ տարի ետքը Եգիպտոս դարձաւ։ — Ի՞նչ կերպով կրցաւ Թագաւորը համոզել որ Իսրայէլացիքը թողու։ — Ի՞նչ տօն դրաւ Մովսէս։

սուրին Հարուածք Եգիպտոսի։ Աս հարուածներուն տասներորդն ու ամենէն սոսկալին ան է որ Եգիպտացւոց ամէն անդրանիկ զաւկըները մէկ գիշերուան մէջ մեռան. աս պատճառաւ Մովսէս Զատիկ կամ Պասքա ըսուած տօնը դրաւ, որ սկսան Իսրայէլացիք ամէն տարի կատարել իրենց հրաշալի ազատութեանը յիշատակ։

1 Փարաւոն Մովսէսի ըրած հրաշքներովը սարսափած հրաման տուաւ որ Իսրայէլացիք ելլեն երթան. անոնք ալ Մովսէսի առաջնորդութեամբը վեց հարիւր հազար հոգի Եգիպտոսէն ելան. Կարմիր ծովը երկու բաժնուեցաւ, ոտքով մէջէն անցան։ Փարաւոն զիրենք թող տալուն վրայ զղջալով ետեւնէն ընկաւ ու ինչուան Կարմիր ծովը մտաւ. բայց Մովսէս իր գաւազանը ծովուն վրայ երկընցընելուն պէս՝ ծովուն ջրերը միացան, ու Փարաւոն բոլոր զօրքովը խղդուեցաւ։

2 Աստուած իր ժողովուրդը Եգիպտացւոց բռնութենէն ազատելէն ետքը, Սինա լեռան վրայ կայծակներու և փայլականց մէջէն Մովսէսի ձեռքովը տասը պատուիրանքը տուաւ եր-

---

1 Իսրայէլացիք Եգիպտոսէն ելած ատենին քանի՞ հոգի էին։ — Կարմիր ծովէն ի՞նչպէս անցան Իսրայէլացիք։ — Փարաւոն երբոր Իսրայէլացւոց ետեւէն ընկաւ ի՞նչ եղաւ։

2 Աստուած Մովսէսի ձեռքովը ի՞նչ պատուիրանք տուաւ Իսրայէլացւոց։ — Ահարոն ի՞նչ պատուոյ հասաւ։

կու քարէ տախտակներու վրայ գրած։ Ահարոն՝ Մովսէսի եղբայրը, քահանայապետ անուանեցաւ, և քահանայական իշխանութիւնը իրմէ ետքը որդւոցը անցաւ, որ ինչուան Հռովմայեցւոց Երուսաղէմն ու տաճարը կործանելու ատենը կար։

1 Իսրայէլացիք քառասուն տարի անապատին մէջ մոլորած պտըտեցան, վասն զի շատ անգամ Աստուծմէ կ'ապստամբէին ու կուռք կը պաշտէին, երբոր Աստուած վրանին պատիժներ կը խրկէր ու հրաշքներ կ'ընէր՝ նորէն կը դառնային զինքը կը պաշտէին. իրենց ճամբորդութեան վերջերը Ամաղեկացւոց, Քանանացւոց, Ամովրահացւոց և Մադիանացւոց հետ պատերազմներ ըրին, ու Մովսէսի աղօթքովը ամենուն ալ յաղթեցին։

2 Մովսէս Աւետեաց երկիրը չմտաւ, միայն Աբարիմ լեռան վրայէն տեսաւ ան երկիրը, իրեն յաջորդ դրաւ Յեսուն (1452), ժողովուրդը օրհնեց ու հարիւր քսան տարեկան վախճանեցաւ։

3 Յեսուայ առաջնորդութեամբը Իսրայէլա-

---

1 Իսրայէլացիք ո՞րչափ ատեն մնացին անապատին մէջ։ — Իսրայէլացիք միշտ Աստուծոյ երախտիքը ճանչցա՞ն։

2 Մովսէս Աւետեաց երկիրը մտա՞ւ։ — Մովսէսի յաջորդն ո՞վ եղաւ։

3 Յեսու ի՞նչ ըրաւ։ — Յեսուայ մեռնելէն ետքը ո՞րուն հնազանդեցան Իսրայէլացիք։

ցիք ոտքով Յորդանան գետէն անդին անցան. Երիքով, Գայի, Գաբաւոն և ուրիշ շատ քաղաքներ առաւ Յեսու, և բոլոր Աւետեաց երկիրն տիրեց ու այն երկիրը տասուերկու ցեղերուն բաժնեց, և ինքը հարիւր տասը տարեկան մեռաւ (1438):

1 Յեսուայ մեռնելէն ետքը Իսրայէլացւոց կառավարութիւնը Յուդայի ցեղին ձեռքն էր տասը տարի, երեք հարիւր քառասուներեօթը տարի ալ Դատաւոր անունով իշխաններ ունեցան: Շատ անգամ կռապաշտութեան մէջ ընկան, Աստուած ալ իրենց մեղացը պատիժ՝ Փղշտացւոց, Ամաղեկացւոց և ուրիշ այլազգեաց ձեռքը կը մատնէր: Երբոր կ'ապաշխարէին մեղքերնուն վրայ. Աստուած իրենց փրկիչ մը կը հանէր որ զիրենք ազատէ. ասոնք են Դատաւոր ըսուած իշխանները:

2 Դատաւորաց մէջ հռչակաւորներն են Գեդէոն, Յեփթայէ, Սամփսոն, Հեղի քահանայապետը, Սամուէլ մարգարէն:

---

1 Իսրայէլացիքը կառավարող իշխանները ի՞նչ կ'ըսուէին:

2 Դատաւորաց մէջ անուանիներն որո՞նք եղան:

## ԳԼՈՒԽ Բ.

Սաւուղ թագաւոր. — Դաւիթ. — Սողոմոն. — Իսրայէլի թագաւորութիւնը. — Յուդայի թագաւորութիւնը. — Բաբելոնի գերութիւնը. — Դանիէլ. — Կիւրոս ու Տաճարին երկրորդ շինութիւնը. — Քահանայապետաց իշխանութիւնը։

1 *Սամուէլ մարգարէին քանի տարի դատաւորութիւն ընելէն վերջը Իսրայէլացիք ձանձրացած՝ խնդրեցին իրմէ որ թագաւոր մը դնէ իրենց։ Սամուէլ ալ Աստուծոյ հրամանաւը Բենիամինի ցեղէն Սաւուղն ընտրեց ու զինքը թագաւոր օծեց* (1079)։

2 *Քանի որ Սաւու զԱստուծոյ հաւատարիմ մնաց՝ Աստուած ալ զինքը զօրացուց որ ամէն թշնամեացը յաղթէ. բայց շատ չանցաւ, իր հպարտութեամբն ու անհնազանդութեամբը Աստուծոյ երեսէն ընկաւ։*

3 *Դաւիթ մարգարէն որ Յուդայի ցեղէն էր, տասնըվեց տարեկան ընտրուեցաւ Սաւուղայ տեղը, և Սամուէլ ծածուկ թագաւոր օծեց*

---

1 *Իսրայէլացիք Սամուէլէն ի՞նչ խնդրեցին։ — Սամուէլ զո՞վ թագաւոր ընտրեց։*

2 *Սաւուղ միշտ հաւատարիմ մնա՞ց Աստուծոյ։*

3 *Սաւուղայ տեղը ո՞վ ընտրուեցաւ թագաւոր, ու թագաւորելէն առաջ ի՞նչ վտանգներէ ազատեցաւ Դաւիթ։*

զինքը (1074)։ Դաւիթ մենամարտութեամբ Գողիաթը սպաննեց, ու ազատեցաւ ան ամէն որոգայթներէն որ Սաւուղ անոր վրայ նախանձելով կը լարէր զինքը մեռցնելու։

1 Երբոր քանի տարի թագաւորելէն ետքը մեռաւ Սաւուղ, Դաւիթ թագաւորեց բոլոր Իսրայէլացւոց, Փղշտացւոց ձեռքէն տապանակն ազատեց, ու Երուսաղէմի Սիոն միջնաբերդը տարաւ։ Մովաբացւոց, Ասորւոց, Եդովմայեցւոց յաղթելով՝ տէրութիւնը Միջերկրական ծովէն ինչուան Եփրատ գետը ընդարձակեց։ Երկու մեծամեծ մեղքերով զԱստուած բարկացուց. բայց շուտ մը երբոր զղջաց ու ապաշխարեց՝ Աստուած թողութիւն տուաւ իրեն։ Աբիսողոմ որդին իրմէ ապստամբեցաւ, բայց Դաւիթ անոր մահը լսելով լացաւ վրան։ Երուսաղէմի տաճարին հիմը ձգեց, ու քառասուն տարի թագաւորելէն վերջը եօթանասուն տարեկան մեռաւ։

2 Դաւիթի յաջորդեց Սողոմոն որդին բարեպաշտ ու խաղաղասէր (1019)։ Երբոր իրեն հարցուց Աստուած թէ Ի՛նչ կ՚ուզես որ տամ քեզի,

---

1 Սաւուղ քանի՞ տարի թագաւորեր էր։ — Դաւիթ թագաւորելէն ետքը ի՞նչ գործքեր ըրաւ։ — Ի՞նչ յաղթութիւններ ըրաւ։ — Ի՞նչ մեղքեր ըրաւ։ — Ի՞նչ շէնք սկսաւ շինել։ — Քանի՞ տարեկան մեռաւ։

2 Դաւիթի ո՞վ յաջորդեց։ — Սողոմոն ի՞նչ կատարելութիւններ ունէր։

Սողոմոն իմաստութիւն խնդրեց. Աստուած ալ իրեն իմաստութեան հետ նաև հարստութիւն ու փառք տուաւ:

1 Սողոմոն Դաւթի սկսած տաճարը եօթը տարուան մէջ լմնցուց, ու փառաւոր հանդիսով նաւակատիքը կատարեց (1008): Անկեց զատ ուրիշ փառաւոր պալատներ ու քաղաքներ շինել տուաւ, և Երուսաղէմ քաղաքը պարսպով պատեց: Եգիպտացւոց թագաւորին հետ խնամութիւն ըրաւ. Տիւրոսի թագաւորին հետ ալ բարեկամացաւ ու անկէց ճարտար գործաւորներ ու շէնք շինելու ազնիւ նիւթեր առաւ: Նաւեր շինեց Կարմիր ծովուն վրայ որ կ'երթային Սոփերէն ու Թարշիշէն ոսկի, փղոսկր ու խնկեղէն կը բերէին: Իր իմաստութեան համբաւը ամէն տեղ տարածուեցաւ, ինչուան Սաբայ թագուհին իր իմաստութիւնը փորձելու համար Երուսաղէմ եկաւ:

2 Սողոմոն իր յաջողութեանցը մէջ չկրցաւ. ինչուան վերջը իր իմաստութեանը հետևիլ, և

---

1 Ի՞նչ շէնքեր շինեց Սողոմոն: — Տէրութիւնը ի՞նչպէս ծաղկեցուց: — Անունը ո՞րչափ մեծցաւ: — Ո՞վ եկաւ Սողոմոնի իմաստութիւնը փորձելու:

2 Սողոմոն ինչուան ետքը Աստուծոյ հաւատարիմ մնա՞ց: — Աստուած ի՞նչ պատիժ տուաւ Սողոմոնի անոր ապերախտութեանը համար: — Քանի՞ տարի թագաւորեց Սողոմոն:

մոռցաւ զԱստուած որ իրեն իմաստութիւն, հարստութիւն ու փառք տուեր էր: Երուսաղէմի մօտ լեռան վրայ Ամմոնացւոց Մողոք կուռքին սեղան մը կանգնել տուաւ, ու իր կռապաշտ կանանցը խօսքէն չելլելու համար անոնց պաշտած աստուածոցը զոհ մատոյց: Դաւթի սիրոյն համար խնայեց Աստուած իրեն, բայց սպառնացաւ որ մահուընէն ետքը թագաւորութիւնը երկու պիտի բաժնէ: Քառասուն տարի թագաւորելէն ետքը մեռաւ Սողոմոն յիսունըութը տարեկան (980):

1 Իրեն յաջորդեց որդին Ռոբովամ: Իսրայէլացիք Սողոմոնին դրած տուրքերէն նեղացած ուզեցին որ որդին զանոնք քիչ մը թեթեւցընէ: Ռոբովամ խստութեամբ մերժեց զիրենք, ուստի մէկէն տասը ցեղը իրմէ ապստամբեցան, և իրենց թագաւոր դրին Յերոբովամը որ Սողոմոնի իշխաններէն մէկն էր. անով Իսրայէլի զատ թագաւորութիւնը ձևացաւ, ու Ռոբովամի ձեռքը մնացին միայն Յուդայի և Բենիամինի ցեղերը:

2 Յերոբովամ Աստուծոյ հրամանին դէմ արգիլեց իր հպատակացը որ զոհի համար Երու-



1 Սողոմոնի ո՞վ յաջորդեց: — Ռոբովամ ի՞նչպէս ըրաւ թագաւորութիւնը: — Ո՞վ էր Յերոբովամ:

2 Ի՞նչպէս ըրաւ Յերոբովամ իր թագաւորութիւնը:

տաղէմ չերթան. ինքը երկու ոսկի հորթ շինել տուաւ ու հրամայեց որ զանոնք պաշտեն Իսրայելացիք։

1 Գրեթէ բոլոր Իսրայէլի թագաւորները Յերոբովամայ ամբարշտութեանը հետեւեցան՝ տասնուինը թագաւոր, որ երկու հարիւր վաթսունուերկու տարիի չափ թագաւորեցին։ Ասոնց մէջ գլխաւորներն են։

2 Աքաաբ, որ իր Յեզաբէլ կնկանը խորհրդովը՝ որ Տիւրոսի թագաւորին աղջիկն էր, Իսրայէլացւոց մէջ կուռքերը շատցուց, ու ինքը պատերազմի մէջ զարնուելով մեռաւ (905)։

3 Ոքոզիա որ զԵղիսէ մարգարէն հալածեց (902)։

4 Յէու ամբարիշտ Յեզաբէլը աշտարակէ մը վար նետել տալով սպաննեց (889)։

5 Յովաս յաղթեց Ասորւոց և Յուդայի Ամասիա թագաւորին (847)։

---

1 Իսրայէլի թագաւորները ի՞նչպէս ըրին իրենց թագաւորութիւնը։ — Քանի՞ թագաւոր ունեցան Իսրայէլացիք։ — Քանի՞ տարի քշեց Իսրայէլի թագաւորութիւնը։
2 Աքաաբ ի՞նչ ըրաւ։
3 Ոքոզիա ի՞նչ ըրաւ։
4 Յէու ի՞նչ կողմանէ անուանի է։
5 Յովաս ի՞նչ յաղթութիւններ ըրաւ։

1 Ովսէէ, որ Իսրայէլի վերջին Թագաւորն եղաւ (727)։ Ասորեստանեայց Սաղմանասար Թագաւորը յաղթեց անոր ու Թագաւորութիւնը կործանելով տասը ցեղը Նինուէ-տարաւ որ հոն կռապաշտ ազգաց հետ խառնուեցան։ Ասոնց մէջն էր նաև Տոբիթ։

2 Յուդայի Թագաւորքն ալ շատ անգամ կռապաշտութիւն ընելնուն համար Աստուած Իսրայէլի Թագաւորաց պէս զիրենք ալ պատժեց։

3 Ռոբովամայ Թագաւորութեան հինգերորդ տարին (915) Եգիպտացւոց Սօսակիմ Թագաւորը Երուսաղէմը առաւ և բոլոր քաղաքն ու տաճարը կողոպտեց։

4 Ռոբովամայ որդին Աբիա տարի մը Թագաւորեց. ետևէն նստաւ որդին Ասա որ քառասունըմէկ տարի Թագաւորեց. անոր ալ յաջորդեց որդին Յովսափատ աստուածապաշտ Թագաւորը, որ նորէն ծաղկեցուց արդարութիւնը, նաւարկութիւնը, ու զինուորական արուեստը։

---

1 Իսրայէլի վերջին Թագաւորը ո՞վ էր։ — Ովսէի ատեն ի՞նչ պատահեցաւ։ — Սաղմանասարայ Նինուէ տարած գերիներուն մէջ ո՞վ կար նշանաւոր։

2 Յուդայի Թագաւորութիւնը աստուածապաշտութեան կողմանէ ի՞նչպէս էր։

3 Ռոբովամայ Թագաւորութեան հինգերորդ տարին ի՞նչ պատահեցաւ։

4 Ռոբովամայ ո՞վ յաջորդեց։ — Յովսափատ ի՞նչ կողմանէ անուանի է։

1 Յովրամ, Յովսափատայ որդին, Իսրայէլի Աքաաբ Թագաւորին Գոդողիա աղջիկը իրեն կին առաւ, ու թագաւորութիւնը եղբայրցը սպանմամբը սկսաւ։ Փղշտացւոցմէ յաղթուելով որդւոցը հետ մէկտեղ ինքն ալ սպաննուեցաւ, և անոնցմէ մէկը միայն, այսինքն Ոքոզիան ազատեցաւ որ իրեն յաջորդեց (893)։

2 Ոքոզիա երբոր Յէուէն սպաննուեցաւ, իր մայրը Գոդողիան որ Յովրամայ այրին էր ինքը թագաւորելու համար Ոքոզիայի բոլոր որդիքը մեռցնել տուաւ (889)։

3 Միայն Յովաս, որ մէկ տարեկան էր, մեծ մօրը կատաղութենէն ազատեցաւ Յովիդայէ քահանայապետին ձեռքովը որ տաճարին մէջ մեծցուց զինքն ու ետքը թագաւորեցուց։ Յովիդայէ քահանայապետը երբոր վախճանեցաւ, Յովաս կռապաշտութիւն սկսաւ ընել ու Յովիդայեայ որդին Զաքարիա քահանայապետը իրեն աստուածպաշտութիւն քարոզելուն համար քարկոծել տուաւ։

4 Ամասիա, հօրը պէս կռապաշտ, քսանըվեց տարի թագաւորելէն ետքը հօրը պէս ալ սպաննուեցաւ (843)։

---

1 Յովրամ ինչպէս ըրաւ թագաւորութիւնը։
2 Ոքոզիա ինչ եղաւ։ — Գոդողիա ինչ անգըթութիւն ըրաւ։
3 Ո՞վ ազատեցաւ Գոդողիայի ձեռքէն։ — Յովաս ինչուան ետքը աստուածապաշտ մնա՞ց։
4 Յովասայ ո՞վ յաջորդեց։

1 Իրեն յաջորդեց որդին Ոզիա ։ Իր թագաւորութիւնը որ յիսունըերկու տարի տեւեց, առջի տարիները փառաւոր եղաւ. բայց երբոր օրինաց դէմ ուզեց քահանայի պաշտօն ալ կատարել, բորոտեցաւ ու թագաւորութիւնը Յովաթամ որդւոյն թողուց ։

2 Յովաթամ առջի բերան միայն հօրը աստուածպաշտութեանը հետեւեցաւ, և իրեն յաջորդ թողուց Աքազ որդին ։

3 Աքազ ամբարիշտ ու անգութ թագաւորը, երբոր Իսրայէլի թագաւորներուն դէմ Ասորեստանեայց Թագղաթփաղասար թագաւորէն օգնութիւն խնդրեց, ան ալ եկաւ բոլոր տէրութիւնը կողոպտեց ։

4 Իսրայէլի թագաւորութեան կործանելէն վեց տարի առաջ Եզեկիա որ Դաւթէն վերջը նստած թագաւորաց մէջ ամենէն աստուածապաշտն ու արդարն էր, Աքազին յաջորդեց ։ Սենեքերիմ Սաղմանասարայ որդին և յաջորդը անհամար զօրքով եկաւ զինքը Երուսաղէմի մէջ պաշարեց. նոյն գիշերը հրեշտակ մը Ասորես-

---

1 Ամասիայի յաջորդ ո՞վ եղաւ. — Ոզիա քանի՞ տարի և ի՞նչպէս թագաւորեց ։

2 Յովաթամ ի՞նչպէս ըրաւ թագաւորութիւնը. — Յովաթամայ ո՞վ յաջորդեց ։

3 Աքազ ի՞նչ ըրաւ ։

4 Աքազին ո՞վ յաջորդեց. — Եզեկիայի ատեն ի՞նչ բան պատահեցաւ. — Եզեկիան քանի՞ տարի թագաւորեց, և իրեն յաջորդը ո՞վ եղաւ ։

տանեայց բանակը ջարդեց, և Սենեքերիմ սարսափած թողուց փախաւ Նինուէ։ Եզեկիան քըսանըինը տարի թագաւորեց, և իրեն յաջորդեց որդին Մանասէ։

1 Մանասէ բոլոր ժողովրդեան հետ սկսաւ կռապաշտութիւն ընել. անոր համար Աստուած զինքը ձեռքէ թողուց, թշնամիքը վրան եկան յաղթեցին ու զինքը Բաբելոն գերի տարին (690)։ Երբոր Մանասէ իր ժողովրդեանը հետ զղջումի եկաւ, ապաշխարեց, նորէն աթոռը դարձաւ ու Աստուծոյ խնամքովը Ասորեստանեայց զօրացը ձեռքէն ազատեցաւ։

2 Նաբուքոդոնոսոր Ասորեստանի թագաւորը իր Հողոփեռնէս զօրապետը Հրէից վրայ խրկեց որ զանոնք նուաճէ. Յուդիթ զինքը սպաննեց ու Հրեայքը գերութեան վտանգէն ազատեց (648)։ Մանասէ յիսունըհինգ տարի թագաւորելէն ետքը աթոռը Ամոն որդւոյն թողուց որ երկու տարի միայն թագաւորեց։

3 Յովսիա, Ամոնի որդին (641) կռապաշտութիւնը ջնջեց, տաճարը նորոգեց ու Աստուծոյ

---

1 Մանասէ ի՞նչ մեղք ըրաւ, և ի՞նչպէս պատժուեցաւ։

2 Նաբուքոդոնոսոր զո՞վ խրկեց Հրէից վրայ. — Հողոփեռնէսը ո՞վ սպաննեց. — Մանասէին ո՞վ յաջորդեց։

3 Յովսիա ի՞նչպէս ըրաւ թագաւորութիւնը. — Ի՞նչպէս մեռաւ. — Իրեն ո՞վ յաջորդեց։

պաշտօնը առջինին պէս հաստատեց. բայց երբոր անխոհեմութեամբ ուզեց արգիլել որ Նեքաւով Եգիպտացւոց թագաւորը Ասորեստանեայց վըրայ չերթայ. պատերազմի մէջ սպաննուեցաւ։ Յովսիա երեսուներմէկ տարի թագաւորեց, և անոր տեղը Նեքաւով թագաւոր դրաւ Յովսիայի որդին Յովակիմը։

1 Յովակիմայ թագաւորութեան չորրորդ տարին Ասորեստանի թագաւորը Նաբուքոդոնոսոր Բ, գրեթէ բոլոր Ասիան նուաճելէն ետքը՝ Երուսաղեմի ալ տիրեց, ու բոլոր բնակիչքը Բաբելոն գերի տարաւ (606)։ Անոնց մէջ էր նաև Դանիէլ՝ տասնըհինգ տարեկան։

2 Յովակիմ հարկ խոստանալով ազատեցաւ ու դարձաւ նորէն թագաւորեց. բայց երբոր իրեք տարիէն վերջը ապստամբիլ ուզեց, Նաբուքոդոնոսոր վրան վազեց, յաղթեց, բռնեց զինքը մեռուց ու Երուսաղեմի նորէն տիրեց։ Իրեք ամսէն երրորդ անգամ տիրեց Նաբուքոդոնոսոր Երուսաղեմի, թագաւորութիւնը Յովակիմայ Յեքոնիա որդւոյն ձեռքէն առաւ ու անոր եղբօրորդւոյն Սեդեկիայի տուաւ։

---

1 Յովակիմայ թագաւորութեան չորրորդ տարին ի՞նչ պատահեցաւ. — Դանիէլ Բաբելացւոց գերութեան ատենը քանի՞ տարեկան էր։

2 Յովակիմ ի՞նչպէս ազատեցաւ գերութենէն. — Նաբուքոդոնոսոր ի՞նչ կերպով տիրեց Հրէաստանի։

1 Սեդեկիա սահմանակից թագաւորաց վրայ յոյսը դրած՝ Երեմիա մարգարէին խորհուրդները արհամարհ ու Բաբելացւոց եւ թագաւորին վրայ պատերազմի ելաւ։ Նաբուքոդոնոսոր Երուսաղէմը պաշարեց ու առաւ և տաճարը այրեց, Սեդեկիային աչուըները հանեց ու անոր հետ մէկտեղ բոլոր Հրէից մեծամեծներն ալ Բաբելոն գերի տարաւ (588)։

2 Ասանկով Յուդայի թագաւորութիւնն ալ իրեք հարիւր իննսունուերկու տարի դիմանալէն ետքը կործանեցաւ։

3 Նաբուքոդոնոսոր Երուսաղէմէն կողոպտած գանձերովը Ասորեստանեայց Բահաղ կամ Բէլ կուռքին ոսկիէ արձանը թափել տուաւ, ու հրամայեց Իսրայէլացւոց որ անիկայ պաշտեն։ Իսրայէլացւոց մէջէն իրեք կտրիճ երիտասարդներ՝ Անանիա, Ազարիա և Միսայէլ յանձն չառին։ Նաբուքոդոնոսոր զիրենք բորբոքած հնոցի մէջ ձգել տուաւ. բայց հրաշքով ազատեցան։

4 Դանիէլ ալ թէպէտ և Նաբուքոդոնոսորայ պալատը կը բնակէր, բայց իր նախնեաց հաւատ֊

---

1 Սեդեկիա ի՞նչպէս ըրաւ թագաւորութիւնը, և ի՞նչպէս պատժուեցաւ։

2 Յուդայի թագաւորութիւնը քանի՞ տարի քըշեր էր։

3 Նաբուքոդոնոսոր Երուսաղէմէն կողոպտած գանձերով ի՞նչ շինեց. — Իրեք մանկանց պատմութիւնը ի՞նչ է։

4 Դանիէլ ի՞նչպէս կը բնակէր պալատին մէջ։

քին վրայ միշտ հաստատուն կեցած էր. Աստուծոյ ազդեցութեամբը յայտնեց Շուշանայ անմեղութիւնն, որ երկու անզգամ ծերերու զըրպարտութեամբը քարկոծելու կը տանէին։

1 Աստուած Նաբուքոդոնոսորայ հպարտութիւնը պատժելու համար խելքը գլխէն առաւ։ Վռնտուեցաւ Նաբուքոդոնոսոր իր պալատէն, շատ տարիներ դնաց լեռները անասնոց մէջ պտըտեցաւ ու անոնց պէս խոտ կ'ուտէր։

2 Իրեն յաջորդեց որդին Իլմարոդաք (562) որ զԴանիէլ ստիպեց կռոց երկրպագութիւն ընելու, բայց Դանիէլ Բելայ քուրմերուն խաբէութիւնը իմացընելով ազատեցաւ։ Առիւծներուն գուբը նետեցին զինքը, հոն ալ անվնաս մնաց։

3 Դանիէլ Բաղտասար Թագաւորին պալատին պատին վրայ աներեւոյթ ձեռքով մը գրուած իրեք խորհրդաւոր բառերուն նշանակութիւնը մեկնեց անոր. Մահդ մօտեցեր է, և Բաբելոն պիտի կործանի՝ ըսաւ, և մարգարէութիւնը կատարուեցաւ։

---

1 Նաբուքոդոնոսոր ի՞նչպէս պատժուեցաւ Աստուծմէ։

2 Նաբուքոդոնոսորայ յաջորդը ի՞նչպէս վարուեցաւ Դանիէլի հետ։

3 Դանիէլ Բաղտասար Թագաւորին վրայ ի՞նչ մարգարէութիւն ըրաւ։

1 Կիւրոս Թագաւորութեանը առաջին տարին (536) հրովարտակ հանեց որ Հրեայք նորէն Հըրէաստան դառնան ու Երուսաղէմի տաճարը շինեն։ Զօրաբաբէլ Յեքոնիա Թագաւորին Թոռը ու Յեսու Յովսեդեկեանց քահանայապետը յիսուներկու հազար Հրեայ հետերնին առած՝ եկան Երուսաղէմ ու սկսան քաղաքը նորոգել՝ տաճարը շինել։ Սամարացիք վրանին նախանձեցան ու տասնըչորս տարի շէնքը դադրեցընել տուին, բայց անոնք ետքը նորէն սկսան ու չորս տարուան մէջ լմընցուցին։ Հինգ տարի ետքը Դանիէլ մարգարէն հարիւր տասը տարեկան մեռաւ (511)։

2 Կիւրոսի յաջորդներն ալ Հրէից վրայ սէր ցըցուցին։ Անոնց պաշտպանութեամբը Եզր ու ետքը Նեէմի Բաբելոնի գերութենէն ժողովըրդեան մէջ մնած զեղծմունքները մաքրեցին և աստուածպաշտութիւնը ծաղկեցուցին։

3 Նեէմեայ մեռնելէն ետքը ժողովրդեան կառավարութիւնը քահանայապետաց ձեռքը անցաւ։

---

1 Հրեայք ի՞նչպէս ազատեցան Բաբելոնի գերութենէն. — Երուսաղէմի տաճարը ի՞նչ կերպով ու քանի՞ տարուան մէջ շինուեցաւ. — Տաճարը շինողներուն գլխաւորները որո՞նք էին։

2 Կիւրոսի յաջորդներն ի՞նչպէս վարուեցան Հըրէից հետ. — Ան ատենները Հրէից մէջ աստուածպաշտութիւնը ծաղկեցընող ո՞վ եղաւ։

3 Նէէմիէն ետև Հրէից կառավարութիւնը որո՞նց ձեռքը անցաւ։

1 Յադդոսի քահանայապետութեան ժամանակը Մեծն Աղեքսանդր Տիւրոսի վրայ երթալու ատեն Հրէիցմէ պաշար ուզեց. Յադդոս, Պարսից Դարեհ թագաւորին հաւատարիմ մնալու համար չուզեց Աղեքսանդրի օգնել. անոր համար Աղեքսանդր Տիւրոսը առնելուն պէս Երուսաղեմի վրայ եկաւ: Ան ատենը Յադդոս քահանայապետական զգեստներով ուրիշ շատ քահանաներ ալ հետը Աղեքսանդրի դիմացը ելաւ. աս որ տեսաւ Աղեքսանդր, ձիէն վար իջաւ, քահանայապետին երկրպագութիւն ըրաւ՝ որուն ճակտին վրայ Աստուծոյ անունը գրուած էր, Երուսաղէմ մտաւ ու Աստուծոյ շնորհակալութեան զոհեր ու ընծաներ մատոյց և Հրէից շատ ազատութիւններ տուաւ (332):

2 Աղեքսանդրի մահուընէն վերջը հանգիպած պատերազմներուն ատեն Հրէաստան ալ Ասորւոց երկրին ու Եգիպտոսի մէջտեղը գտնուելով՝ մէյմը Ասորւոց ձեռքը կ'իյնար մէյմը Եգիպտացւոց: Պտղոմէոս Լագոս Եգիպտացւոց թագաւորը շաբաթ օր եկաւ Երուսաղէմը առաւ ու հարիւր հազար Հրէայ Աղեքսանդրիա տարաւ:

---

1 Յադդոսի քահանայապետութեան ժամանակը ի՞նչ պատահեցաւ:

2 Աղեքսանդրի մահուընէն վերջը Հրէաստանի ո՞վ տիրեց. — Պտղոմէոս Լագոս ի՞նչպէս առաւ Երուսաղէմը:

1 Անոր որդին Պտղոմէոս Փիլադելփոս փափաքելով որ իր գրքատանը մէջ Հրէից աստուածաշունչն ալ գտնուի՝ եօթանասուներկու գիտուն րաբունիներու յունարէն թարգմանել տուաւ, և ան թարգմանութիւնը ըսուեցաւ Թարգմանութիւն Եօթանասնից (284)։

## ԳԼՈՒԽ Գ.

Շմաւոն քահանայապետ, և Պտղոմէոս Թագաւորը. — Հրէայք Եգիպտացւոց Ասորւոց թագաւորներուն կռուոյն մէջ կ'անցնին. — Օնիա քահանայապետը և Հեղիոդորոս. — Անտիոքոս անգթութիւնները. — Մաքաբայեցիք. — Քաղաքական պատերազմ. — Պոմպէոս Երուսաղէմը կ'առնէ. — Հերովդէս Հրէից թագաւորը. — Քրիստոսի ծնունդը. — Հերովդեսի մահը. — Արքեղայոս ազգապետ. — Փիլիպպոս և Հերովդէս չորրորդապետք. — Պիղատոս Թագաւոր Հրէաստանի. — Քրիստոսի մահը. — Հրէից ապստամբութիւնը. — Երուսաղէմի պաշարումն ու առնուիլը. — Հրէից ցրուիլը։

1 Շմաւոն Բ քահանայապետին ատենը Եգիպտացւոց թագաւորը Պտղոմէոս Փիլոպատոր յաղթեց Ասորւոց Անտիոքոս թագաւորին, Երու-

---

1 Պտղոմէոս Փիլադելփոս ինչպէս թարգմանել տուաւ աստուածաշունչը։

2 Շմաւոն Բ քահանայապետին ատենը ինչ պատահեցաւ. — Պտղոմէոս Փիլոպատոր ինչպէս մտաւ սրբութիւն սրբոցը։

1 Յադդուայ քահանայապետութեան ժամանակը Մեծն Աղեքսանդր Տիւրոսի վրայ երթալու ատեն Հրէիցմէ պաշար ուզեց. Յադդուա, Պարսից Դարեհ թագաւորին հաւատարիմ մնալու համար չուզեց Աղեքսանդրի օգնել. անոր համար Աղեքսանդր Տիւրոսը առնելուն պէս Երուսաղեմի վրայ եկաւ: Ան ատենը Յադդուա քահանայապետական զգեստներով ուրիշ շատ քահանաներ ալ հետը Աղեքսանդրի դիմացը ելաւ. աս որ տեսաւ Աղեքսանդր, ձիէն վար իջաւ, քահանայապետին երկրպագութիւն ըրաւ՝ որուն ճակտին վրայ Աստուծոյ անունը գրուած էր, Երուսաղէմ մտաւ ու Աստուծոյ շնորհակալութեան զոհեր ու ընծաներ մատոյց և Հրէից շատ ազատութիւններ տուաւ (332):

2 Աղեքսանդրի մահուընէն վերջը հանգիպած պատերազմներուն ատեն Հրէաստան ալ Ասորւոց երկրին ու Եգիպտոսի մէջտեղը գտնուելով՝ մէյմը Ասորւոց ձեռքը կ'իյնար մէյմը Եգիպտացւոց: Պտղոմէոս Լագոս Եգիպտացւոց թագաւորը շաբաթ օր եկաւ Երուսաղէմը առաւ ու հարիւր հազար Հրէայ Աղեքսանդրիա տարաւ:

---

1 Յադդուայ քահանայապետութեան ժամանակը ի՞նչ պատահեցաւ:

2 Աղեքսանդրի մահուընէն վերջը Հրէաստանի ո՞վ տիրեց. — Պտղոմէոս Լագոս ի՞նչպէս առաւ Երուսաղէմը:

1 Անոր որդին Պտղոմէոս Փիլադելփոս փափաքելով որ իր գրքատանը մէջ Հրէից աստուածաշունչն ալ գտնուի՝ եօթանասուներկու գիտուն րաբունիներու յունարէն թարգմանել տուաւ, և այն թարգմանութիւնը ըսուեցաւ Թարգմանութիւն Եօթանասնից (284):

## ԳԼՈՒԽ Գ.

Շմաւոն քահանայապետ, և Պտղոմէոս Թագաւորը. — Հրէայք Եգիպտացւոց Ասորւոց թագաւորներուն կողմը կ'անցնին. — Ոնիա քահանայապետը և Հելիոդորոս. — Անտիոքոս անգթութիւնները. — Մակաբայեցիք. — Քաղաքական պատերազմ. — Պոմպէոս Երուսաղէմը կ'առնէ. — Հերովդէս Հրէից թագաւորը. — Քրիստոսի ծնունդը. — Հերովդէսի մահը. — Արքեղայոս ազգապետ. — Փիլիպպոս և Հերովդէս չորրորդապետք. — Պիղատոս Թագաւոր Հրէաստանի. — Քրիստոսի մահը. — Հրէից ապստամբութիւնը. — Երուսաղէմի պաշարումն ու առնուիլը. — Հրէից ցրուիլը:

1 Շմաւոն Բ քահանայապետին ատենը Եգիպտացւոց թագաւորը Պտղոմէոս Փիլոպատոր յաղթեց Ասորւոց Անտիոքոս թագաւորին, Երու-

---

1 Պտղոմէոս Փիլադելփոս ինչպէս թարգմանել տուաւ աստուածաշունչը:

2 Շմաւոն Բ քահանայապետին ատենը ինչ պատահեցաւ. — Պտղոմէոս Փիլոպատոր ինչպէս մտաւ սրբութիւն սրբոցը:

սաղէմ եկաւ, ու Աստուծոյ զոհ մատուցանելէն ետքը՝ ուզեց սրբութիւն սրբոցն ալ տեսնել. շատ դէմ կեցաւ քահանայապետը ըսելով որ օրինաց դէմ է. բայց անիկայ մտիկ չըրաւ՝ ներս մտաւ և մէկէն ասդին անդին զարնուելով անդամալոյծ ընկաւ գետինը: Ծառաները շուտ մը տաճարէն դուրս հանեցին զինքը ու հազիւ խելքը գլուխը եկաւ: Սաստիկ բարկացած՝ Երուսաղէմէն ելաւ գնաց որ աս նախատանաց վրէժը հանէ. բայց բարկութիւնը շուտ անցաւ, ու Հրէից ազատութիւններ տուաւ:

1 Հրեայք որ ինչուան ան ատենը Եգիպտացւոց թագաւորներուն հաւատարիմ կեցեր էին, սկսան Ասորւոց թագաւորներուն կողմը բռնել Մեծին Անտիոքոսի ատենը (211):

2 Ոնիա քահանայապետին դէմ թշնամացաւ Սիմոն տաճարին վերակացուն ու ժողովրդեան մեծամեծ հալածանքներ քաշելու պատճառ եղաւ: Վասն զի գնաց Սելեւկոս թագաւորին իմացուց թէ տաճարը անբաւ գանձ կայ. Սելեւկոսն ալ Հեղիոդորոս իշխանը խրկեց որ երթայ ան գանձերը վերցընէ:

3 Երբոր Հեղիոդորոս բռնի տաճարը մտնելով

---

1 Հրեայք ինչուան ե՞րբ հպատակ մնացին Եգիպտացւոց թագաւորներուն. — Ո՞ր թագաւորին ատենը Ասորւոց կողմն անցան:

2 Հրէից քաշած հալածանքներուն առաջին պատճառն ո՞վ եղաւ:

3 Հեղիոդորոսին ի՞նչ պատահեցաւ:

կ'ուզէր կողոպտել, հրաշքով դուրս ձգուեցաւ ու մեռելի պէս գետինն ընկաւ։ Քովիններուն աղաչանքովը զոհ մատուց Ոնիա քահանայապետը. Հեղիոդորոս ալ արթնցաւ ու սարսափած ետ դարձաւ։

1 Քիչ ատենէն Անտիոքոս Թագաւորը եկաւ Երուսաղէմը պաշարեց (170), առաւ, բնակչաց մեծ մասը սպաննել տուաւ, մնացածն ալ գերի ծախեց. տաճարին գանձերն ու սրբազան անօթներն ալ առաւ ու տաճարը Ողիմպեան Արամազդայ նուիրեց։

2 Կռապաշտութիւնը յանձն չառնելով նահատակուող Հրէից մէջ հռչակաւորներն են Եղիազար ծերունին քահանայն և եօթն եղբարք որ իրենց բարեպաշտ մօրը հետ չարաչար տանջանքներով մարտիրոս եղան։

3 Անոնք որ ոչ Աստուծոյ օրէնացը դէմ կ'ուզէին ընել և ոչ ալ Թագաւորին դրած պատիժները քաշել՝ Երուսաղէմէն կը փախչէին։ Ասոնց մէկն էր նաև Մատաթիա քահանան։

4 Երբոր այն փախստականները շատցան, ժողվեց Մատաթիա և իր հինգ որդիքը մէկտեղ ա-.

---

1 Հեղիոդորոսի պատժուելէն ետքը ի՞նչ հանդիպեցաւ։

2 Հրէից մէջ որո՞նք եղան այն ատենը հաւատքի համար նահատակուող։

3 Հալածանքէն ազատիլ ուզողները ի՞նչ կ'ընէին։

4 Մատաթիա ի՞նչ քաջութիւն ըրաւ. — Մատաթիային ո՞վ յաջորդեց։

ուած գնաց շատ քաղաքներու տիրեց, կռոց սեղանները կործանեց ու շատ ուրացող Հրեաներ սպաննեց (168)։ Տարիէ մը ետքը ինքն որ մեռաւ, իշխանութիւնը թողուց իր որդւոյն Յուդա Մակաբէի։

1 Յուդա Մակաբէ Անտիոքոսի զօրավարներուն յաղթեց, Երուսաղէմ մտաւ, տաճարը մաքրեց, ու քահանայապետ դրուեցաւ. Հռովմայեցւոց հետ դաշնակցութիւն ըրաւ, բայց Ասորւոց թագաւորին դէմ պատերազմելու ատեն քաջութեամբ մեռաւ։

2 Յուդայի տեղը քահանայապետ եղաւ եղբայրը Յովնաթան, անոր ալ յաջորդեց Շմաւոն եղբայրը։

3 Շմաւոն այնպիսի քաջութեամբ ու խոհեմութեամբ վարուեցաւ՝ որ իր հայրենիքն Ասորւոց ծառայութենէ ազատեց. բայց իր փեսան Պաղոմէոս զինքն սպաննեց, և տեղը անցաւ որդին Յովհաննէս Հիւրկանոս (135)։

4 Հիւրկանոսի քահանայապետութեան ատե-

---

1 Յուդա Մակաբէ ի՞նչ քաջութիւններ ըրաւ։
2 Յուդայի ո՞վ յաջորդեց. — Յովնաթանի յաջորդը ո՞վ եղաւ։
3 Շմաւոն ի՞նչպէս ըրաւ քահանայապետութիւնը. — Շմաւոնի ո՞վ յաջորդեց։
4 Հիւրկանոսի ատենը ի՞նչ պատահեցաւ. — Հիւրկանոս ի՞նչպէս գլուխ քաշեց Ասորւոց թագաւորներէն։

նը Անտիոքոս եկաւ Երուսաղէմը պաշարեց։ Հիւրկանոս չկրցաւ դէմ կենալ, ու շատ գանձ տալով հաշտութիւն ըրաւ հետը։ Բայց քիչ ատենէն երբոր Անտիոքոս Մարաց վրայ գնաց՝ Հիւրկանոս ատեն գտնելով՝ Հրէաստանի շատ քաղաքները Ասորւոց ձեռքէն առաւ։

1 Երբոր Հիւրկանոս մեռաւ (107), անդրանիկ որդին Արիստաբուղոս կառավարութեան կերպը փոխեց, ու թագաւոր ըսուեցաւ. իր եղբարքը բանտ դրաւ, անոնցմէ մէկն ալ սպաննեց և ինքը քիչ ատենէն խղճմտանքէն տանջուելով մեռաւ։

2 Աղեքսանդր Արիստաբուղոսի եղբայրը ազատութիւն գտնելով անոր տեղը անցաւ, մնացած եղբայրները սպաննեց, ու երեսունեւիրեք տարուան թագաւորութեանը ատենուան մէջ պատերազմէ աչք չբացաւ։

3 Աղեքսանդրի մեռնելէն ետև երկու որդիքը Հիւրկանոս և Արիստաբուղոս սկսան իրարու ձեռքէ յափշտակել թագաւորութիւնը, Պոմպէոսի պաշտպանութեանը ապաւինելով։ Եւ որովհետև Արիստաբուղոսի կողմը եղողները Պոմպէոսի չէին թողուցած որ Երուսաղէմ մտնէ՝ անիկայ բռնի տիրեց քաղաքին (63), Հիւրկանոսը

---

1 Հիւրկանոսի ո՞վ յաջորդեց. — Արիստաբուղոս ի՞նչպէս թագաւորեց։

2 Արիստաբուղոսի յաջորդը ո՞վ եղաւ։

3 Աղեքսանդրի մեռնելէն ետքը ի՞նչ հանդիպեցաւ. — Պոմպէոս ի՞նչպէս տիրեց Երուսաղէմի։

քահանայապետութեանը մէջ հաստատակց, բոլոր Հրէաստանի վրայ տուրք դրաւ և Արիստաբուղոսն ու անոր որդիքը Հռովմ գերի տարաւ։

1 Պոմպէոսի մահուընէն վերջը Անտիպատրոս փառաւոր Եդովմայեցին Յուլիոս Կեսարին աչքը մտնելով ու Հռովմայեցի դրուելով՝ իր Փասայէլ որդին Երուսաղեմի ու բոլոր գաւառին կուսակալ ընել տուաւ, ու Հերովդէս որդին ալ Գալիլեայի. որով Հիւրկանոս արտաքին իշխանութենէն զրկուեցաւ ու միայն քահանայապետ մնաց։

2 Երբոր Արիստաբուղոսի որդին Անտիգոնոս Պարթեւաց օգնութեամբը եկաւ Երուսաղեմի տիրեց, Հերովդէս Հռովմայեցւոց ապաւինեցաւ, ծերակոյտն ալ զինքը թագաւոր Հրէաստանի անուանեց։ Հերովդէս Անտոնիոսի զօրքովը Երուսաղեմի տիրեց (38), Անտիգոնոսի կուսակցացը մեծ մասը սպաննել տուաւ, զինքն ալ Հռովմ խրկեց ու հոն գլուխը կտրեցին։ Ոկտաւիանոսի ու Անտոնիոսի պատերազմին ատենը Հերովդէս Անտոնիոսին կողմը բռնեց. բայց երբոր անիկայ յաղթուեցաւ, Հերովդէս վախցած շատ ընծաներով գնաց Հռոդոս, Ոկտաւիանոսին սիրտը առաւ (20)։

3 Ան ատենները աշխարհիս սկիզբէն 'ի վեր

---

1 Պոմպէոսի մահուընէն ետքը Հրէից վիճակը ի՞նչպէս եղաւ։

2 Հերովդէս ի՞նչ կերպով թագաւորեց։

3 Ո՞ր ատեն և ո՞ւր ծնաւ Քրիստոս. — Հրեայք հաւատացի՞ն Քրիստոսի։

խոստացած փրկիչն Յիսուս Քրիստոս Որդին Աստուծոյ Հրէաստանի Բեթղեհէմ գեղին մէջ ծընաւ ։ Հրեայք զինքը Մեսիայի տեղ չընդունեցան. վասն զի կարծէին որ Մեսիան երբոր գայ՝ պատերազմներով զիրենք գերութենէ պիտի ազատէ, ու բոլոր աշխարհիս պիտի տիրէ ։

1 Հերովդէս լսելով թէ Հրէից թագաւոր ծներ է՝ վախցաւ որ չըլլայ թէ թագաւորութիւնը ձեռքէն առնէ. ուստի զինքը մեռցընելու համար հրաման հանեց որ Բեթղեհեմի ու անոր քովերը երկու տարեկանէ վար եղած ամէն տղաքը մեռցընեն ։ Բայց աս անգութ հրամանովը վախճանին չհասաւ. վասն զի Քրիստոս Եգիպտոս տարուեցաւ ու հոն մնաց մինչուան Հերովդեսի մահը ։

2 Հերովդէս նաև իր որդւոցը արիւնը թափեց. և իր ամբարշտութեանցը պատիժ՝ որդնոտեցաւ ու չարաչար ցաւերով մեռաւ ։

3 Հերովդեսի յաջորդեց որդին Արքեղայոս, որ հօրը փառաւոր թաղումն ընելէն ետքը Հռոմ գնաց որ հօրը տեղը թագաւոր գրուի (3, Քրիստոսէ ետքը կամ Քրիստոսի թուականին) ։ Բայց Օգոստոս

---

1 Հերովդէս երբոր լսեց Քրիստոսի ծնունդը ի՞նչ ըրաւ ։

2 Հերովդէս ուրիշ ի՞նչ անգթութիւն ըրաւ, ու ինչպէս մեռաւ ։

3 Հերովդեսի յաջորդը ո՞վ եղաւ. — Արքեղայոս բոլոր Հրէաստանի տիրե՞ց ։

կայսրը Հերովդէսի քրոջը Սողոմէին աղաչանքովը Թագաւոր չանուանեց զինքը՝ հապա միայն Հրէաստանի կէսին վրայ ազգապետ դրաւ. մէկալ մասին ալ կէսը Փիլիպպոսի տուաւ, կէսն ալ Արքեղայոսի եղբօրը որ Հերովդէս Անթիպաս կ՚ըսուէր։

1 Երբոր Արքեղայոս Հրէաստան դարձաւ՝ անգթութիւններովը ամենուն ատելի եղաւ. Հրէայք Օգոստոս կայսեր գանգատեցան, ան ալ զինքը Վիեննա Գաղղիոյ աքսորեց, ու Հրէաստանի ան կտորը Հռոմայեցւոց գաւառ ըրաւ (7)։ Իսկ Հերովդէս ու Փիլիպպոս իրենց ընկած բաժինները չորրորդապետ անունով խաղաղութեամբ կառավարեցին։

2 Տիբեր կայսրը Հրէաստանի ան կտորին վրայ որ Հռոմայեցւոց գաւառ եղած էր՝ Պիղատոսը կուսակալ դրաւ (27)։

3 Տիբերիոսի կայսերութեան տասնըհինգերորդ տարին Քրիստոս Տէրն մեր Յովհաննէս Մկրտչին ձեռքովը մկրտուեցաւ ու սկսաւ քա-

---

1 Արքեղայոս ինչպէս ըրաւ իր թագաւորութիւնը. — Հերովդէս ու Փիլիպպոս ինչ անուամբ կառավարեցին իրենց երկիրները։
2 Տիբեր կայսրը զո՞վ դրաւ Հրէաստանի կուսակալ։
3 Տիբեր կայսեր ատեն ի՞նչ պատահեցաւ Հրէաստան. — Քրիստոս Տէրն մեր քանի՞ տարի քարոզեց, ու ինչպէս մեռաւ։

րոզութիւն ընել։ Չորս տարի բոլոր Հրէաստան պտըտեցաւ՝ ժողովուրդը խրատեց, և իր աստուածութիւնը՝ իր վսեմ վարդապետութեամբը, անարատ վարուքն ու անթիւ հրաշքներովը հաստատեց։ Բայց ինչպէս մարգարէներն ալ գուշակեր էին՝ Հրէից մեծերն ու Կայիափա քահանայապետը զՔրիստոս մահապարտ դատեցին, ու ժողովրդեան ձեռքովը Պիղատոսի մատնեցին։ Պիղատոս ճանչցաւ Յիսուսի անմեղութիւնը, և իր խղճմտանքին դէմ հրաման տուաւ Հրէից որ տանին խաչ հանեն զինքը, և երկու աւազակաց մէջ մեռաւ Տէրն մեր Յիսուս Քրիստոս խաչի վրայ (33)։

1 Ագրիպպաս Արիստաբուղոսի որդին Հռովմ գնաց որ իր հօրեղբօրը՝ Հերովդէս չորրորդապետին վրայ չարախօսութիւն ընէ. բայց Տիբեր կայսրը զինքը բանտ դրաւ։ Տիբերին յաջորդը Կալիգուղա (37) զինքը բանտէն հանեց ու թագաւոր անուանեց, և մեռած հօրեղբօրը Փիլիպպոսին չորրորդապետութիւնը անոր տուաւ։ Հերովդէս ալ գնաց Հռովմ, բայց բան մը չկրցաւ ձեռք ձգել, ընդհակառակն կայսրը չորրորդապետութիւնն ալ առաւ անկէց Ագրիպպասայ տուաւ ու զինքը Սպանիա աքսորեց։

2 Ագրիպպաս Հրէաստան դարձաւ ու սկսաւ Երուսաղէմը ամուր պարսպով պատել, բայց չլմընցուցած մեռաւ։

---

1 Ագրիպպաս ի՞նչպէս թագաւորեց։

2 Ագրիպպաս ի՞նչ երևելի գործք ըրաւ։

1 Իր որդին Ագրիպպաս շատ պզտիկ ըլլալով՝ Կղոդիոս կայսրը տէրութիւնը Հռովմայ գաւառ ըրաւ, ետքը մէկ մասը նորէն անոր տուաւ, բայց մնացած կտորը դարձեալ Հռովմայեցի կուսակալաց ձեռքը մնաց։

2 Հրեայք տեսնելով որ երկիրնին օրէ օր աւերակ կը դառնայ, ուզեցին Հռովմայեցւոց դէմ գլուխ վերցընել, և ամէնայն կերպով պատերազմի պատրաստուեցան։ Ներոն կայսրը Վեսպասիանոս զօրավարը խրկեց որ զանոնք նուաճէ։ Վեսպասիանոս բոլոր Հռովմայեցւոց ու դաշնակից թագաւորաց զօրքը Ասորւոց երկիրը ժողվեց, Տիտոս որդւոյն հետ Գալիլիա մտաւ և ան գաւառին բոլոր քաղաքները նուաճեց (66)։

3 Նոյն միջոցին Երուսաղեմի ժողովուրդը այլ և այլ հերձուածներ բաժնուած իրարու հետ կը կռուըտէին։ Ամենէն կատաղի Նախանձայոյզ ըսուածներն էին որ տաճարին տէրեր, քահանայապետը սպաններ ու բոլոր քաղաքը սպանութեամբ ու յափշտակութեամբ լեցուցեր էին։ Վեսպասիանոս կայսր ընտրուելով՝ զօրքը

---

1 Ո՞վ յաջորդեց Ագրիպպասին։
2 Հրեայք ի՞նչ կերպով ապստամբեցան Հռովմայեցւոցմէ. — Ներոն կայսրը զո՞վ խրկեց Հրէից վրայ։
3 Հրեայք Երուսաղեմի մէջ ի՞նչ գործողութեան հետ էին։

Տիտոսի Թողուց որ Երուսաղէմը պաշարէ ու ինքը Հռովմ դարձաւ։

1 Երուսաղէմի պաշարումը երկար դիմացաւ, վասն զի ներսէն քաղաքացիք աղէկ դէմ կը դնէին, Թէպէտ և սովն ու ժանտախտն ալ քաղաքին մէջ մեծ ջարդ կ'ընէին։ Երբոր Հռովմայեցիք Անտոնիա բերդին տիրելով տաճարին վրայ յարձըկելու կը պատրաստուէին, զինուորին մէկը վառած փայտի կտոր մը պատուհանէն ներս նետեց. մէկէն տաճարը ամէն կողմէն բռնկեցաւ, և Թէպէտ շատ ջանաց Տիտոս որ մարէ, բայց ճար չեղաւ։

2 Քիչ ատենէն յաղթութեամբ Երուսաղէմ մտաւ Տիտոս (70)։ Զինուորները Հրէից մէկ մասը ընտրեցին ու պահեցին որ իբրև գերի տանին ծախեն, մնացածները ամէնն ալ Թրէ անցուցին։ Երբոր կողոպուտը լմընցաւ, ինչ չէնք որ կրակէ ազատեր էր՝ հիմնայատակ կործանել տուաւ Տիտոս, անանկ որ ամենևին բնակութեան նշան չմնաց։

3 Ան ատենէն ինչուան Տրայիանոսի Թագաւորութեան վերջերը Հրեայք այլ և այլ տեղեր

---

1 Երուսաղէմի պաշարումը ո՞րչափ ատեն քշեց. — Տաճարը ի՞նչպէս աւրուեցաւ։
2 Հռովմայեցիք Երուսաղէմը որ առին՝ ի՞նչ ըրին։
3 Երկրորդ անգամ ի՞նչպէս ապստամբիլ կ'ուզէին Հրեայք։

ցրուած հանդարտ կեցեր էին. երբոր Երուսաղեմի աւերակներուն վրայ բնակողներուն թիւը երթալով շատցաւ ու սկսան նորէն խլրտիլ ապստամբելու՝ Ադրիանոս կայսրը Հրէաստան Հռովմայեցի գաղթական խրկեց ու Երուսաղեմայ տեղը քաղաք մը շինեց՝ անունը դրաւ Ելիա Կապիտոլեան, տաճարին տեղն ալ Արամազդայ մեհեան մը կանգնեց (130)։

1 Քիչ ատենէն ետքը Բարկոքեբասին առաջնորդութեամբը նորէն ոտք ելան Հրեայք, բայց շուտով յաղթուեցան։ Որոնք որ թրէ կրակէ ու սովէ ազատեր էին՝ ծախուեցան ու այլ և այլ երկիրներ ցրուեցան (135), որով Հրէաստան անշէն անմարդի մնաց։ Ան ատենէն ինչուան հիմայ չկրցան Հրեայք մէկտեղ ժողվուիլ, ազգ մը ձեւանալ, այլ միշտ ուրիշ ազգաց մէջ ցրուած մնացին։

---

1 Հրէից վերջին ապստամբութիւնն ու բոլորովին նուաճուիլը ինչպէս եղաւ։

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

# ԱՍՈՐԵՍՏԱՆԵԱՅՑ



## ԳԼՈՒԽ Ա.

Ասուր. — Նինուէ. — Բէլ. — Նինոս. — Նինուաս. — Շամիրամ. — Բէլոքոս. — Աթոսսա. — Բաղոփոտէս. — Սարդանապաղ. — Փուլ. — Թագղաթփաղասար. — Սաղմանասար. — Սենեքերիմ. — Ասորդան. — Սաւոսդուքին կամ Նաբուքոդոնոսոր Ա. — Սարակոս կամ Սարդանապաղ։

[1] Երբոր Քամայ թոռը Նեբրովթ կամ Բէլ Բաբելոն քաղաքը շինելու հետ էր (2640), Սեմայ թոռը Ասուր Տիգրիս գետին վրայ քաղաք մը շինեց որ ետքը Նինուէ կոչուեցաւ ու Ասորեստանեայց տէրութեան մայրաքաղաքն եղաւ։



1 Ասորեստանեայց մայրաքաղաքը ո՞րն է։

1 Բէլ իր յաղթութիւններովը Ասորեստանեայց տէրութիւնը ընդարձակեց (2229), Արաբացւոց Թագաւորներուն յաղթեց որ Բաբելոնի Թագաւորութիւնը մէջերնին բաժներ էին, և անոր գաւառները Ասորեստանի Թագաւորութեան հետ միացուց։ Ուզեց Բէլ Հայաստանն ալ մեր նախահօրը Հայկայ ձեռքէն առնել, բայց պատերազմի մէջ զարկաւ Հայկ զինքը ըսպաննեց։

2 Բելայ յաջորդեց որդին Նինոս (2174), իր մայրաքաղաքը մեծցուց զարդարեց և անունը Նինուէ դրաւ։ Ասոր պարսպին բարձրութիւնն էր հարիւր ոտնաչափ, իսկ հաստութիւնն այնչափ էր որ վրայէն իրեք կառք քովէ քով հանգիստ կրնային անցնիլ. հազար հինգ հարիւր աշտարակ ունէր, ամէն մէկը երկու հարիւր ոտնաչափ բարձր։

3 Նինոս Ասիոյ մեծ մասը նուաճեց։ Միայն Բակտրիոյ մայրաքաղաքը մնացեր էր որ ամուր պարիսպներովն ու բազմաթիւ զօրքովը դէմ կը կենար։ Երկար ատեն ան քաղաքը պաշարած կեցաւ Նինոս, բայց չկրցաւ առնուլ. ետքը իր Մեմնոն զօրավարին կնոջը Շամիրամայ խոր-

---

1 Բէլ ի՞նչպէս մեծցուց իր տէրութիւնը։
2 Բելայ ո՞վ յաջորդեց. — Նինուէի վրայ ի՞նչ գիտելիք կայ։
3 Նինոս ի՞նչ երկիրներու տիրեց. — Բակտրիոյ մայրաքաղաքը ի՞նչպէս առաւ։

հրգովը տիրեց անոր։ Նինոս Շամիրամայ խելքին ու կտրճութեանը հաւնելով վրան աչք ձըգեց, ու Մենոն Նինոսի սպառնալիքներէն վախցած ինքզինքը սպաննեց. Նինոս Շամիրամն իրեն կին առաւ և անկէց որդի մը ունեցաւ որուն անունը դրաւ Նինուաս։

[1] Շամիրամայ վրայ շատ զարմանալի առասպելներ կը պատմուին. օրինակի համար՝ Դիոդորոս Սիկիլիացին կը պատմէ թէ Շամիրամը ծնանելուն պէս՝ անապատ տեղ ժայռերու մէջ ձգեր են զինքը, և հոն աղաւնիներ բոյն դրած ըլլալով՝ զինքը զարմանալի կերպով սնուցեր են. ոմանք տաքցընելու համար իրենց թևերովը վրան կը գոցեն եղեր, ուրիշները կը սպասեն ու հովիւները կաթ կթելէն ետքը կ'երթան իրենց կտուցովը կաթ կը բերեն ու կաթիլ կաթիլ տըղուն բերանը կը լեցընեն եղեր։ Բայց երբոր Շամիրամ մէկ տարեկան կ'ըլլայ, ան ատեն ալ կ'երթան աղաւնիները իրեն պանիրի կտորուանք կը բերեն եղեր։ Հովիւները կասկած առնելով աղաւնիներուն ետևէն կ'իյնան ու վերջապէս տղան կը գտնեն, ու գեղեցկութեանը վրայ զարմացած կը տանին թագաւորական հովուապետին ընծայ կուտան, որ իր աղջկանը պէս զինքը կը մեծցընէ և անունը Շամիրամ կը դնէ որ ասորերէն Աղաւնաքէր կը նշանակէ կ'ըսեն։

---

1 Շամիրամայ պզտիկութեանը վրայ ի՞նչ կը պատմէ Դիոդորոս Սիկիլիացին։

1 Շամիրամ Նինոսի հետ կարգուելէն ետքը՝ օր մը կը խնդրէ Նինոսէն որ հինգ օր տէրութիւնը իրեն յանձնէ, ան հինգ օրուան մէջ Շամիրամ Նինոսը մեռցընել կուտայ, և որովհետև Նինուաս որդին պզտիկ է եղեր՝ ինքը տեղը կը թագաւորէ (2128):

2 Շամիրամ իր տէրութիւնը ընդարձակեց, և տիրած ազգերը հանդարտ պահելու համար զանոնք քաղաքներ ու բերդեր շինելու աշխատացուց: Իր անունը անմահացընել ուզելով նաև հռչակաւոր շէնքերով Բաբելոնը զարդարեց: Անկէց ետև իր ընդարձակ տէրութիւնը անձամբ պտտեցաւ՝ բարեկարգեց ու ժողովրդեանը օգտակար գործքեր ըրաւ: Ուր որ կը քալէր մեծագործութեանը և հանճարոյն նշանները կը թողուր, հասարակաց ճամբաներ բանալ տուաւ, ձորեր լեցուց, լեռներ ծակեց, ճահիճներ ցամքեցուց ու ջրմուղներ շինեց:

3 Կառավարութեանը կերպն ալ այնպէս էր որ երևնալուն պէս ամէն խռովութիւն կը դադրէր: Օր մը մազերը շտկելու զարդարուելու ատենն իմացուցին որ քաղաքին մէջ խռովութիւն կայ, մէկէն անանկ խառնափնդոր մազերով գընաց խաղաղեցուց. և տասը յիշատակ արձան

---

1 Շամիրամ ի՞նչ հնարքով թագաւորեց:
2 Տէրութիւնը ի՞նչպէս ընդարձակեց:
3 Շամիրամայ կառավարութեան կերպն ի՞նչպէս էր:

մը կանգնեցին իրեն աներեւցած կերպարանքովը։

1 Շամիրամ լսելով մեր Արա նահապետին գեղեցկութիւնը՝ ուզեց հետը կարգուիլ. երբոր յանձն չառաւ Արա, պատերազմի ելաւ վրան Շամիրամ, ան պատերազմին մէջ քաջութեամբ ընկաւ մեռաւ Արա, և Շամիրամ մնաւ Հայաստան. Բզնունեաց կամ Վանայ ծովուն քով փառաւոր քաղաք մը շինել տուաւ և անունը դրաւ Շամիրամակերտ։

2 Ետքը ուզեց Հնդկաստան ալ երթալ. գընաց Ինդոս գետէն ալ լաստերով անդին անցաւ. բայց զօրքը կորսնցընելով ստիպուեցաւ ետ դառնալու։ Իր որդին Նինուաս ապստամբեցաւ մօրմէն ու թագաւորութիւնը ձեռքէն առաւ (2080). Շամիրամ բերդ մը քաշուեցաւ ու հոն կեցաւ ինչուան մահը։ Ետքերը ձայն հանեցին թէ աստուածները զինքը աղաւնի դարձուցեր են, ու սկսան զինքը իբրև աստուածուհի պաշտել։ Իսկ ոմանք կ՚ըսեն թէ Նինուաս զինքը սպաննեց։

3 Նինուաս երեսունըութը տարի թագաւորեց, բայց վրան յիշատակի արժանի գործք մը չպատմուիր. աս միայն ստոյգ է որ անհոգու-

---

1 Հայաստանի ի՞նչպէս տիրեց Շամիրամ։

2 Շամիրամ ի՞նչպէս Հնդկաստան գնաց. — Իրեն ո՞վ յաջորդեց. — Ի՞նչպէս մեռաւ Շամիրամ։

3 Նինուաս ի՞նչպէս ըրաւ թագաւորութիւնը։

թեամբ՝ պալատը նստած կ'ուտէր կը խմէր ու մօրմէն ժառանգած հարստութիւնը կը վատնէր։ Իր յաջորդներն ալ իր թուլամորթութեանը հետեւեցան։

1 Ասոնց մէկուն ատենը Սեսոստր Եգիպտացւոց թագաւորը Ասիոյ տիրապետելով՝ Ասորեստանի թագաւորութիւնն ալ նուաճեց, բայց Սեսոստրի մահուընէ ետքը երբոր մէկալ ազգերը ազատութիւննին ձեռք ձգեցին, Ասորեստանի ալ նորէն Շամիրամայ ցեղէն թագաւորներ տիրեցին։

2 Աս թագաւորաց վերջինը Բեղոքոս՝ հետը մէկտեղ թագաւորեցուց իր Ատոսա աղջիկը որ Շամիրամ Բ, ալ կ'ըսուի (1550)։ Ատոսա հօրը մեռնելէն ետքն ալ տասնուերկու տարի թագաւորեց. բայց ետքը Բաղոտոռէս հազարապետը գլուխ քաշելով՝ անիկայ թագաւորութենէ ձգեց ու ինքը տեղը նստաւ (1525)։

3 Բաղոտոռէսի ու իր յաջորդացը թագաւորութեան ատենը Ասորեստանեայց իշխանութեան տակն եղած ազգերը հետզհետէ սկսան գլուխ քաշել։

---

1 Ան ատենները ո՞ր աշխարհակալը տիրեց Ասորեստանի։

2 Շամիրամայ ցեղէն վերջին թագաւոր ո՞վ եղաւ։

3 Բաղոտոռէսի ատեն ի՞նչ պատահեցաւ։

1 Սարդանապաղ որ Ասորեստանեայց առաջին Թագաւորաց ցեղին վերջինն է, իր նախորդներէն աւելի զեղծ ու կնամարդի եղաւ: Պալատէն դուրս չէր ելլեր. կը նստէր կանանց հետ լոք կը մանէր, անոնց պէս կը զարդարուէր, ու բոլոր օրը կերուխումով կ'անցընէր: Առանց գիտնալու թէ Աստուած իրեն ինչ մահ սահմաներ էր՝ ինքն իրեն համար տասնկ տապանագիր մը շինեց թէ Ինչ որ կերայ, խմեցի, վայելեցի՝ հոս քովս մնացին. մնացած ամէն բանս թողուցի. տապանագիր մը որ, ինչպէս կ'ըսէ Արիստոտէլ, աւելի խոզու կը վայելէ քան թէ մարդու: Սարդանապաղ զուարճութեան համար մէկ օրուան մէջ Կիլիկիա, Անքիաղոս ու Տարսոն քաղաքները շինել տուաւ կ'ըսեն: Հոն արձան մը կանգնեցին իրեն կաքաւող մարդու ձեւով, ու տակը իր տապանագրին նման արձանագիր մը գրին. Կեր, արբ և զբօսիր, զի ամենայն ոչ ինչ է:

2 Օր մը Վարբակէս Մարաց նախարարը տեսնելով Սարդանապաղը կանանց հետ նստած (785), բարկացաւ, գնաց մեր Պարոյր նահապետին ու Բաբելոնի Բեղեսիս իշխանին հետ մէկ եղած Սարդանապաղին վրայ պատերազմի ելաւ: Պատերազմը շատ տարի քշեց, և Սարդանապաղ առջի բերան յաղթող եղաւ. բայց ետքը Բակ-

---

1 Սարդանապաղ ինչպէս ըրաւ Թագաւորութիւնը:

2 Սարդանապաղին վերջն ինչպէս եղաւ:

որխացւոց օգնութեամբը զօրացան Մէկալնոնք, քշեցին Սարդանապաղը ու Նինուէի մէջ պաշարեցին: Իրեք տարի քաղաքը չկրցան առնուլ. Տիգրիս գետը բարձրացաւ, պարսպին մեծ կտորը փլուց, զօրքն ալ անկէց ներս թափեցան: Սարդանապաղ վախնալով որ թշնամեաց ձեռքը չիյնայ՝ իր պալատին չորս կողմը կրակ ձգել տուաւ ու կնիկներովը, ծառաներովը ու գանձերովը մէկտեղ այրեցաւ:

1 Վարբակէս, Պարոյրին փոխարէն թագ ու գաւազան խրկեց որ ինքն ալ անկէց վերջը Հայոց թագաւոր կոչուի, Բեղեսիսը Սարդանապաղին տեղը Բաբելոնի վրայ թագաւոր դրաւ, ինքն ալ Մարաց վրայ թագաւորեց:

2 Բայց Ասորեստանեայք դեռ իրենց առանձին թագաւորներ ունէին: Փուա, որ Սարդանապաղ Բ, ալ կ՚ըսուի (768), ջանաց ապըստամբած գաւառները նուաճել. Ասորւոց երկիրն մտաւ ու ինչուան Լիբանան լեռը մօտեցաւ: Իսրայէլի Մանայեմ թագաւորը անոր հընազանդեցաւ ու հազար տաղանդ տուաւ որ իրեն օգնէ: Յովնանու քարոզութենէն բոլոր ժողովրդովը ապաշխարող Նինուէի թագաւորը աս էր կ՚ըսեն:

---

1 Վարբակէս ի՞նչպէս բաժնեց Սարդանապաղին տէրութիւնը:

2 Ասորեստանեայց տէրութիւնը ի՞նչ վիճակի մէջ էր: — Փուային վրայ ի՞նչ կը պատմուի: — Ի՞նչ մասնաւոր կարծիք կայ վրան:

1 Փուլայի որդին Թագղաթփաղասար՝ Իսրայէլի թագաւորութեան խռոված ժամանակը գնաց անոր գաւառներուն տիրեց ու բնակիչքը գերի տարաւ (758)։ Աքազ, Յուդայի թագաւորը, Դամասկոսի ու Իսրայէլի թագաւորներէն նեղութիւն քաշելով Թագղաթփաղասարէն օգնութիւն ուզեց. ան ալ գնաց Դամասկոս մտաւ, մայրաքաղաքին տիրեց ու բնակիչքը գերի տարաւ։ Անկէց Իսրայէլի թագաւորութիւնը անցաւ, երկիրը աւրըշարկեց, ու Փակէ թագաւորը իրեն հարկատու ըրաւ, Աքազէն ալ չափէ դուրս տուրք առաւ։

2 Թագղաթփաղասարին որդին ու յաջորդը Սաղմանասար՝ աւելի ալ ընդարձակեց տէրութիւնը։ Իսրայէլացւոց թագաւորը երբոր տարեկան հարկը չուզեց տալ՝ Սաղմանասար եկաւ Հրէաստան մտաւ։ Նոյն միջոցին Փիւնիկէի ծովեզերեայ քաղաքներէն շատն ալ պաշարեց առաւ՝ բայց Տիւրոսի չկրցաւ յաղթել. հինգ տարի աղջիւը կենալէն ետքը ստիպուեցաւ պաշարումը վերցընել։ Սամարիա քաղաքն առաւ ու կործանեց և Իսրայէլացիքը Միջագետք տարաւ. անոնց մէջ էր նաև Տոբիթ (728)։ Իսրայէլացւոց երկիրը Բաբելոնէն և տէրութեանը ուրիշ գաւառներէն գաղթականներ խրկեց։ Սաղմանասար ուզեց որ Աքազին վրայ դրած

---

1 Թագղաթփաղասար ի՞նչ արշաւանք ըրաւ։
2 Սաղմանասար ի՞նչ ըրաւ։

հարկը Եզեկիա Թագաւորն ալ տայ. բայց Եզե-
կիա չտուաւ ու Եգիպտացւոց Թագաւորին հետ բարեկամութիւն ըրաւ. Սաղմանասար երբոր Հրէաստանի վրայ պատերազմի երթալու կը պատրաստուէր՝ հիւանդացաւ ու մեռաւ:

1 Սենեքերիմ Սաղմանասարայ որդին աթոռը նստելուն պէս Եզեկիայէն հարկը ուզեց. երբոր անիկայ նորէն չուզեց տալ՝ սկսաւ պատերազմի պատրաստութիւն տեսնել: Եզեկիա Երուսաղէմը ամրացուց ու իրեն օգնութիւն ուզեց Եթովպացւոց Թարակ Թագաւորէն՝ որ ան ատենը Եգիպտոսի ալ կ'իշխէր: Սենեքերիմ Թարակին վրայ գնաց, յաղթեց, Ստորին Եգիպտոսը աւրըշտըկեց ու Պեղուսիոն քաղաքը պաշարեց: Բայց ետքը վախնալով որ ետեւէն Թշնամիք ճամբան չգոցեն՝ գնաց Երուսաղէմը պաշարեց: Եզեկիա ամէն կողմէն յոյսը կտրած՝ Աստուծոյ ապաւինեցաւ. և մէկ գիշերուան մէջ հրեշտակը Սենեքերիմայ զօրքէն հարիւր ութսուն և հինգ հազար հոգի ջարդեց. առաւօտը խաղք եղած մնացած քիչ զօրքովը ետ դարձաւ:

2 Աս կոտորածին վրայ իր տէրութեան գաւառներէն շատն ալ գլուխ քաշեցին: Սենեքե-

---

1 Սենեքերիմ ի՞նչ պատերազմներ ըրաւ: — Երուսաղէմի պաշարումը ի՞նչ վերջ ունեցաւ:

2 Սենեքերիմ Հրէաստանէն դառնալէն ետքը ի՞նչ ըրաւ:

րիմ սրտին ցաւէն կատղած սկսաւ իր տէրութեան մէջի Իսրայէլացիները սպաննել։ Անով գոհ չեղաւ, իրեններուն դէմ ալ սկսաւ անգըթանալ, այնպէս որ իր երկու մեծ որդիքը Ադրամելէք և Սանասար զինքը սպաննեցին ու Հայաստան փախան, և մեր Պարոյր Թագաւորը զիրենք սիրով ընդունեցաւ։

1 Սենեքերիմայ տեղը Ասորեստանեայք անոր պզտիկ որդին Ասորդանը թագաւորեցուցին։ Ասորդան գնաց Բաբելոնի տիրեց (680), ու երկիրը Նինուէի թագաւորութեան հետ միացուց։ Եօթը տարի ետքը Հրէաստան մտաւ ու Մանասէ թագաւորը գերի տարաւ։

2 Իրեն յաջորդեց Սաւսդուքին կամ Նաբուքոդոնոսոր Ա (668). ասոր ալ թագաւորութեան առջի տարիները բաները յաջողեցան։ Փրաւորտ որ Մարաց Դիովկ թագաւորին որդին ու յաջորդն էր, Պարսից ու քովի ազգերուն տիրելէն ետքը՝ ուզեց Ասորեստանի ալ տիրել, դէմն ելաւ Նաբուքոդոնոսոր Ա. զօրքը ջարդեց, զինքն ալ պատերազմի մէջ իր ձեռքովը սպաննեց։

3 Աս յաղթութեամբ հպարտացած Նաբուքոդոնոսոր՝ ուզեց Հրէաստանի ալ տիրել ու

---

1 Սենեքերիմին ո՞վ յաջորդեց։
2 Ասորդանին յաջորդ ո՞վ եղաւ ու ի՞նչ ըրաւ։
3 Նաբուքոդոնոսոր ի՞նչ արշաւանք ըրաւ։ — Հոլոփեռնէս ի՞նչպէս յաղթուեցաւ։

շատ զօրքով Հողոփեռնէսը վրան խրկեց: Մը-
տաւ Հողոփեռնէս Հրէաստան ու Բեթուղուա
քաղաքը պաշարեց. բայց ինքը Յուդիթէն բը-
պաննուեցաւ, բոլոր զօրքն ալ ցրուեցան: Ան
ատենը Կիաքսար, Փրաւորտի որդին՝ հօրը վրէ-
ժը առնելու համար շատ զօրքով Նաբուքոդո-
նոսորայ վրան վազեց ու Հողոփեռնէսի ցրուած
զօրքին հանդիպելով մեծ ջարդ տուաւ անոնց:

1 Նաբուքոդոնոսորին յաջորդեց որդին Սա-
րակոս կամ Քինալադան (647): Աս կնամարդի
թագաւորին ատենը Սկիւթացիք սկսան Աս-
րեստանը աւրըշըրկել, մէկալ ազգերն ալ գը-
լուխ վերցընել: Նաբուպալասար Բաբելոնի իշ-
խանը ապստամբեցաւ, Մարաց հետ միացաւ
ու Սարակոսը Նինուէի մէջ պաշարեց. Սարա-
կոս ազատութեան ճար չգտնելով՝ կնիկն ու որ-
դիքը սպաննեց, պալատին ալ կրակ տուաւ,
մէկտեղ այրեցաւ: Առաւ Նինուէն Նաբուպալ-
ասար ու հիմնայատակ կործանեց, ինչպէս որ
Յովնան մարգարէացեր էր: Նինուէի ու Բաբե-
լոնի տէրութիւնը իրարու հետ միացուց ու ա-
թոռը Բաբելոն փոխադրեց:

---

1 Նաբուքոդոնոսորին ո՞վ յաջորդեց: — Աս-
րեստանեայց թագաւորութիւնը ինչպէս վեր-
ջացաւ:

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

# ԲԱԲԵԼԱՑՒՈՑ

Նեբրովթ. — Բելեսիս. — Նաբոնասար. — Նաբոպոլասար. — Նաբուքոդոնոսոր. — Իլմարոդաք. — Ներգղասարոս. — Լաբեսորդաքոս. — Լաբինիտ կամ Բաղդասար. — Բաբելոն. — Պարտէզները. — Կամուրջը. — Բելայ տաճարը. — Կախաղանաւոր բուրաստանը. — Բաբելոնի բերդը:

1 Նեբրովթ, Քուշայ որդին, Ասիոյ մէջ առաջին թագաւորութիւնը հաստատեր և Բաբելոնի աշտարակին աւերակներուն վրայ Բաբելոն քաղաքը շինեց (2640):

2 Նեբրովթին յաջորդաց ատենը Արաբացիք

---

1 Բաբելացւոց տէրութիւնը ի՞նչպէս սկսաւ:

2 Նեբրովթին յաջորդաց ատենը ի՞նչ պատահեցաւ:

Բաբելոնի տիրեցին ու երկիրը այլ և այլ իշխանութիւններ բաժնեցին (2424)։ Երկու հարիւր տարիէն ետքը Ասորեստանի թագաւորները տիրեցին (2229) Բաբելոնի, որ Սարդանապաղին ատենը իրենց ձեռքն էր․ բայց երբոր Վարբակէս Մարաց նախարարը Սարդանապաղին ձեռքէն Նինուէն առաւ ու Մարաց վրայ թագաւորեց, Բեղերիս Բաբելոնի իշխանն ալ Բաբելացւոց վրայ թագաւորեց (770)․ անոր յաջորդեց որդին Նաբոնասար որ Բաբելացւոց առաջին թագաւորն ըսուեցաւ։

1 Նաբոնասար աստեղաբաշխութիւնը ծաղկեցընելու շատ ջանք ընելուն համար՝ թագաւորած ժամանակէն սկսան աստեղաբաշխք նոր թուական համրել ժամանակագրական բաներու մէջ, որ ըսուեցաւ Թուական Նաբոնասարի։

2 Նաբոնասարէն ետքը ինչուան Նաբուպաղասար շատ թագաւորներ նստան, բայց վրանին գիտնալու բան մը չկայ։

3 Նաբուպաղասար Մարաց Կիաքսար թագաւորին հետ միացաւ, Նինուէն առաւ Սարակոսին ձեռքէն ու Նինուէի թագաւորութիւնը Բաբելոնի թագաւորութեան հետ միացուց։ Բայց քիչ ատենէն ինքն ալ Եգիպտացւոց Նե-

---

1 Նաբոնասար ի՞նչ կողմանէ անուանի է։
2 Նաբոնասարին ո՞վ յաջորդեց։
3 Նաբուպաղասար ինչպէս ըրաւ թագաւորութիւնը։

քաւով թագաւորէն յաղթուեցաւ։ Նոյն միջոցին Ասորիք ու Հրեայք որ իր իշխանութեան տակն էին՝ գլուխ քաշեցին, և Նաբուպաղասար ինքը ծեր ըլլալուն՝ իր որդին Նաբուքոդոնոսոր կամ Նաբուպաղասար երկրորդը խրկեց որ զանոնք նուաճէ։

1 Նաբուքոդոնոսոր Ասորւոց վրայ գնաց ու Եգիպտացւոց Նեքաւով թագաւորին յաղթելով Ասորւոց երկրին տիրեց (605)։ Յուդայի թագաւորը պատժելու համար որ Նեքաւովի հետ դաշնակցութիւն ըրեր էր՝ Հրէաստանը նուաճեց ու Յովակիմ թագաւորը գերի բռնեց. բայց վրան տուրք դնելով զինքը ազատ թողուց, տաճարին գանձը կողոպտեց ու շատ Հրեայ հետը Բաբելոն տարաւ, որոնց մէջ էր նաև Դանիէլ մարգարէն։ Ետքը երբոր Յովակիմ ապստամբեցաւ, Նաբուքոդոնոսոր գնաց Երուսաղէմը պաշարեց ու Յովակիմը բռնեց մեռուց։ Ետքը անոր որդին Յեքոնիա երբոր նորէն ապստամբեցաւ, Նաբուքոդոնոսոր եկաւ բռնեց զինքը անով տեղով Բաբելոն գերի տարաւ, ու տեղը Սեդեկիան թագաւորեցուց։ Սեդեկիան ալ երբոր Եգիպտացւոց թագաւորին դիմեց՝ եկաւ Նաբուքոդոնոսոր Սեդեկիային աչքերը փորել տուաւ ու Յուդայի թագաւորութիւնը բոլորովին վերցուց։

---

1 Նաբուքոդոնոսոր ի՞նչ յաղթութիւններ ըրաւ։

1 Այն յաղթութիւններէն ետքը ոսկիէ արձան մը թափել տուաւ Նաբուգոդոնոսոր ու հրաման հանեց որ ամէնքը անոր երկրպագութիւն ընեն. իրեք Իսրայէլացի կտրիճ երիտասարդներ յանձն չառին ու հրաշքով առանց այրելու հնոցէն դուրս ելան։

2 Ետքը Տիւրոսի վրայ գնաց Նաբուգոդոնոսոր, տասնուիրեք տարի պաշարեց ու առաւ։ մէջի բնակիչքը տեսնելով որ ճար չկայ՝ քաղաքնին պիտի առնուի, բոլոր հարստութիւնին առած քովի կղզիներէն մէկը գնացին ու հոն ուրիշ քաղաք մը շինեցին Տիւրոս անունով, որ քիչ ատենի մէջ փառքովը ու մեծութեամբը առջինին յիշատակը մոռցընել տուաւ։

3 Նաբուգոդոնոսոր նոյն միջոցին նուաճած ըլլալով նաև Ամոնացիքը, Մովաբացիքն ու Եդովմայեցիքը՝ Եգիպտոսի վրայ դարձուց զօրքը. բոլոր երկիրին տիրեց, ու ամէն քալած տեղերը իր անգթութեան յիշատակները թողլով՝ անբաւ հարստութեամբ դարձաւ Բաբելոն, ու սկսաւ իր մայրաքաղաքը զարդարել։

4 Աս յաղթութեանց վրայ հպարտացած

---

1 Յաղթութիւններէն ետքը ի՞նչ ըրաւ Նաբուգոդոնոսոր։
2 Տիւրոսի ի՞նչպէս տիրեց։
3 Նաբուգոդոնոսոր ուրիշ ի՞նչ ազգերու տիրեց։
4 Իր հպարտութեանը համար ի՞նչպէս պատժուեցաւ։

Երբոր ինքզինքը երջանկութեան ծայրը հասած կը կարծէր, ան մեծ ծառին աչաւոր տեսիլքը տեսաւ որ Դանիէլ մեկնեց իրեն։ Մարդկային ընկերութենէ վռնտուած ու գազանի բնութիւն փոխուած, գնաց եօթը տարի անտառները գազաններու մէջ բնակեցաւ։ Երբոր անոր պատժոյն համար Աստուծոյ սահմանուած ժամանակը լմնցաւ, Նաբուքոդոնոսորայ խելքը գըլուխն եկաւ, դարձաւ նորէն իշխանութիւնը ձեռքն առաւ ու տարի մըն ալ վայելեց։

1 Անդէն Նաբուքոդոնոսորայ խելքը կորսնցուցած ատենը որդին Իլմարովդաք կառավարեր էր տէրութիւնը. երբոր մեռաւ՝ բոլորովին տեղը անցաւ (562), բայց ըրած անգթութիւններովը անանկ ատելի եղաւ ամենուն՝ որ թագաւորութեանը երրորդ տարին զինքը սպաննեցին։

2 Իրեն յաջորդեց քեռայրը Ներգղասարոս՝ զինքը սպաննողներուն գլխաւորը (559)։ Մարաց դէմ պատերազմ բացաւ. Մարաց Կիաքսար թագաւորը Պարսից Կիւրոս թագաւորէն օգնութիւն ուզեց. եկաւ Կիւրոս յաղթեց Ներգղասարոսին ու պատերազմի մէջ զարկաւ զինքը սպաննեց։

3 Որդին Լաբեսորաքոս անգութ ու ախտա-

---

1 Նաբուքոդոնոսորայ յաջորդը ո՞վ եղաւ.
2 Իլմարովդաքին ո՞վ յաջորդեց։
3 Ներգղասարոսին յաջորդը ո՞վ եղաւ.

մոլ մարդ մը ըլլալով՝ ինը ամիս թագաւորելէն ետքը ընտանիքը զինքը մեռուցին (555)։

1 Տեղն անցաւ Նաբուքոդոնոսորայ թոռը Լաբինիտ՝ որ սուրբ գրոց մէջ Բաղտասար կը կոչուի. և շատ պզտիկ ըլլալուն համար իշխանութիւնը Նիտոկրիս անունով մօրը ձեռքն էր։ Ասիկայ տեսնելով որ Կիւրոս Ասիոյ ամէն կողմը կը տիրապետէ, ուզեց կերպով մը առջևն առնել և Լիւդացւոց Կրեսոս թագաւորին հետ դաշնակցութիւն ըրաւ. երբոր Կրեսոս յաղթուած գերի ընկաւ, Կիւրոս եկաւ Բաբելոնը պաշարեց։ Նիտոկրիս երկայն պաշարման դիմանալու համար ամէն հարկաւոր պատրաստութիւն տեսաւ, քաղաքը ամրացուց ու քսան տարուան համար պաշար դիզեց։ Տեսաւ Կիւրոս որ Բաբելոնը բռնութեամբ առնելու քաղաք չէ. և որովհետև Եփրատ գետը քաղաքին մէջէն կ'անցնէր, քաղաքին բոլորտիքը շատ ջըրանցքներ բանալ տուաւ՝ որպէս զի քաղաքին մէջէն անցած կտորը անկէց անցընելով գետը ցամքեցընէ և անկէց ներս մտնէ։ Եւ Բաբելացւոց մեծ տօնի մը գիշեր որ բոլոր քաղաքը կերուխումով կ'անցընէին՝ պատրաստուեցաւ ներս մտնելու։

2 Ան գիշերը Բաղտասար թագաւորն ալ սե-

---

1 Լաբեսորաքոսին ո՞վ յաջորդեց։ — Բաբելոն ի՞նչպէս պաշարուեցաւ։

2 Ի՞նչպէս առնուեցաւ Բաբելոն։

ղանի վրայ ուրախացած՝ Երուսաղեմայ տաճարին ամաններովը գինի խմելու ատենը տեսաւ որ ձեռք մը ելաւ պատին վրայ իրեք խորհրդաւոր գիր գրեց. սարսափեցաւ թագաւորը, Դանիէլ եկաւ մեկնեց իրեն ան գրերուն իմաստն ու իմացուց թէ Քիչ ատենէն թագաւորութիւնդ ձեռքէդ պիտի առնեն ու զքեզ ալ պիտի մեռցընեն։ Կեա գիշերէն ետքը Կիւրոս գետին բերանը դարձուց ու գետը 'ի փորել տուած ջրանցքները քալեցուց. անանկ որ գետին քաղաքին մէջէն անցած կտորը բոլորովին ցամքեցաւ, և զօրքը նոյն ցամքած գետին ճամբէն ներս վազեցին։ Քաղաքացիք բոլոր գինովցած, քաղաքին մէջ գետին երկու քովի պղնձէ դըռներն ալ գոցելու մոռցեր էին. քաղաքն ալ անանկ ընդարձակ էր որ թշնամիք քաղաքէն ներս մտեր էին ու դեռ մէջտեղի բնակիչներն ամենեւին չէին իմացած. ուստի զօրքը դիւրաւ ներս թափեցան, մեծ ջարդ ըրին ու թագաւորն ալ սպաննեցին։ Այսպէսով Բաբելացւոյ թագաւորութիւնը վերցուեցաւ, ու Բաբելոն Կիւրոսի ընդարձակ տէրութեանը գաւառներէն մէկն եղաւ (538)։

1 Բաբելացւոց թագաւորութեան մայրաքաղաքը Բաբելոն՝ ընդարձակութեամբն ու հրաշակերտ շէնքերովը աշխարհիս ամենէն անուանի

---

1 Բաբելոն քաղաքին դիրքն ու մեծութիւնը ինչպէս էր։

քաղաքներէն մէկն էր։ Ընդարձակ դաշտի մը մէջ շինուած էր. ձեւը քառակուսի. իւրաքանչիւր կողմը հարիւր քսան ասպարէզ՝ այսինքն քսանըմէկ հազար վեց հարիւր մեթր. շրջապատն էր չորս հարիւր ութսուն ասպարէզ. կամ ութսունըվեց հազար չորս հարիւր մեթր։

1 Բոլոր շրջապատը հրաշալի պարսպով մը պատած էր, պարսպին հաստութիւնը քսանըվեց մեթր էր, և բարձրութիւնը հարիւր հինգ մեթր։ Տեսակ մը թրծած աղիւսով շինած էր՝ որ չորցած ատենը քարէն պինդ կ'ըլլար. աղիւսներն ալ իրարու հետ կպրով կպցուցած էին։ Հարիւր դուռ ունէր չորս կողմը, ամէն մէկ կողմը քսանըհինգական դուռ՝ ամէնն ալ թափծու պղնձէ. պարսպին դրսի դին ալ մեծ խրամ մը կար՝ երկու կողմը աղիւսով պատ քաշած։

2 Եփրատ գետը Բաբելոնի մէջէն կ'անցնէր, անով քաղաքը երկու կը բաժնուէր. բոլոր տըները եռայարկ կամ քառայարկ էին ու ճակատնին գեղեցիկ զարդարած։ Տները քովէ քով իրարու կպած չէին. ամէն տուն ամարանոցի պէս մէյմէկ պարտէզի մէջ էր։

3 Գետին վրայ ձգուած կամուրջն ալ Բաբելոնի երևելի շէնքերէն մէկն էր. երկայնութիւնը

---

1 Պարիսպը ինչպէս էր։
2 Տները ինչպէս շինած էին։
3 Բաբելոնի կամուրջին վրայ ինչ գիտելիք կայ։

մէկ ասպարէզ, որ է հարիւր ութսուն մեթր, լայնութիւնը երեսուն ոտնաչափ՝ մեծամեծ կոփածոյ քարերով շինած ։

1 Կամրջին երկու ծայրը երկու հոյակապ պալատ կար որ գետին տակէն Լոնտրայի Թամիզ գետին Թընէլին պէս՝ մէկէն մէկալը երթալու համար ստորերկրեայ ճամբայ ունէին. մէկուն բոլորտիքը երեսուն ասպարէզ էր, մէկալինը վաթսուն, իրեք կարգ մէկմէկէ հեռու պատով պատած. պատերուն վրայ ալ կենդանեաց պատկերներ փորուած էին, ան պատկերներուն մէկուն մէջ Շամիրամ ձի հեծած՝ ընձառիւծ մը կը զարնէր նետով, Նինոս ալ առիւծ մը ։

2 Աս պալատներէն մէ՛կն էր Բելայ քաղաքին մէջտեղը՝ ամէն մէկ կողմը իրեք հարիւր վաթսուն մեթր. անոր մէջտեղը մէկ ասպարէզ կամ հարիւր ութսուն մեթր բարձրութեամբ ու լայնութեամբ աշտարակ մը կար. վրան ուրիշ աշտարակ մը, անոր վրայ ալ ուրիշ, ինչուան ութը կարգ, որով ամենուն բարձրութիւնը կ'ըլլար հազար չորս հարիւր քառասուն մեթր՝ Եգիպտոսի ամէն բուրգերէն բարձր. կ'ըսեն թէ բուն Բաբելոնի աշտարակը աս եղած ըլլայ ։ Սանդուխներով վեր ինչուան ծայրը կ'ելլէին, և մէջը մեծամեծ կամարակապ ու սիւնազարդ սենեակներ կային ։ Աշտարակին ծայրն

---

1 Կամրջին երկու ծայրը ինչ շէնքեր կային ։
2 Պալատներուն մէկուն մէջ ինչ կար ։

ալ դպրանոց մը կար, ուսկից Բաբելացիք աստղաբաշխական քննութիւններ կ'ընէին։ Այս մեհեանը ինչուան Պարսից Քսերքսէս թագաւորին ժամանակը կար, որ յաղթուած ու անբաւ գանձք եղած՝ Յունաստանէ ետ դառնալուն ատենը գնաց բոլոր գանձերը կողոպտեց, մեհեանն ալ հիմնայատակ կործանեց։

1 Մեկալ պալատին մէջն էր հռչակաւոր Կախաղանաւոր բուրաստան կամ Շամիրամեան պարտէզը ըսածնին, որովհետեւ կը կարծուի որ Շամիրամ շինել տուած ըլլայ այն պարտէզը։ Ասոր ձեւը քառակուսի էր՝ կամարներու վրայ տուած ու չորս դին սանդխաձեւ բարձր պատ հիւսած. ան կամարներուն վրայ քարայատակ էր, քարին վրան եղէգով ու կուպրով ծեփած, անոր վրայ կրով երկու կարգ աղիւս շարած, որպէս զի վըրան լեցուցած հողին խոնաւութիւնը՝ շինուածքին վնաս չընէ։ Մէջը տնկած էր ոչ միայն ամէն տեսակ ծաղիկ ու տունկ՝ հապա նաեւ բարձր ու խորարմատ ծառեր։ Մէջ տեղը ջրհան մը կար որ գետէն ջուրը բոլոր պարտէզը կ'ոռոգէր. կամարներուն տակն ալ մեծամեծ գեղեցիկ ու պայծառ սրահներ էին։

2 Որովհետեւ Բաբելոն քիչ անձրեւ կուգայ, անոր համար այլ և այլ ջրանցքներով արտերը գետէն ջուրը կ'ոռոգէին։ Բաբելոնի մէջ ամենե-

---

1 Կախաղանաւոր բուրաստանը ի՞նչ էր։
2 Բաբելոնի բերքերն ի՞նչ էին։

ւին թզենի, որթ և ձիթենի չկար. գլխաւոր բերքն էր ցորեն որ մէկին՝ երկու՛ հարիւր և ինչուան երեք հարիւր կը բերէր։ Արմաւենի ալ շատ կար. Բաբելացիք՝ եղած արմաւին կէսը կ՚ուտէին, կէսէն ալ Ամբրաւօղի անուանով տեսակ մը օղի կը շինէին ու գինիի տեղ կը խմէին։



# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

# ԵԳԻՊՏԱՑԻՈՑ



## ԳԼՈՒԽ Ա.

Եգիպտոս. — Գլխաւոր բաժանմունքը. — Առաջին թագաւորը. — Օտար թագաւորներ. — Բուզիրիս. — Ոսիմանդ. — Ոսիրիս. — Մերիս. — Ամենոֆիս. — Սեսոստրիս. — Իր դաստիարակութիւնը. — Իր առջի աշխարհակալութիւնները. — Արշաւանքին պատրաստութիւնները. — Տէրութեան ընդարձակութիւնը. — Շինել տուած փեշերը. — Ջրանցքները. — Մեծ պարիսպը. — Սեսոստրի մահը։

1 Եգիպտոս ընդարձակ ձոր կամ հովիտ մըն է. աս հովիտը մէկ ծայրէն մէկալը կ'ոռոգէ Նեղոս մեծ գետը որ Եթովպիոյ լեռներէն կ'իջնայ, ու շատ ճիւղ բաժնուած Միջերկրական ծովը



1 Եգիպտոս ինչ երկիր է։

կը թափի։ Եգիպտոս խիստ քիչ անձրև կուգայ, իսկ Եթովպիա վեց ամիս գրեթէ միակերպ անով Նեղոս գետը սաստիկ կը բարձրանայ ու Եգիպտոսի բոլոր հովիտը ջրով կը ծածկէ, ու ետքը անանկ տիղմ մը կը ձգէ որ երկիրը անով շատ կը պարարտանայ։ Աշնանային գիշերահաւասարի ատենը Եգիպտոս ընդարձակ ծով մը կը դառնայ՝ մէջը տեղ տեղ քաղաքներով ու գեղերով զարդարուած. իսկ ձմեռը բարեբեր ու ծաղկազարդ դաշտի մը կը նմանի։

1 Եգիպտոսի առջի բնակիչն եղաւ Նոյայ որդին Քամ, եւ անոր որդիքը։ Առջի ատենները Վերին Եգիպտոս միայն կրնար բնակուիլ. մնացած կտորը ճահիճ էր. ան ալ երթալով մէկ կողմէն Նեղոսի ձգած տղմովը բարձրացաւ, մէկալ կողմանէ ալ բնակչաց ճարտարութեամբը բոլորովին ցամքեցաւ։

2 Ան ատենները Եգիպտոս իրեք գլխաւոր մաս կը բաժնուէր, Վերին Եգիպտոս կամ Թեբայիդ որուն մայրաքաղաքն էր Թեբէ. Միջին Եգիպտոս կամ Եպտանոմիս, այսինքն Եօթնանահանգ (որովհետև եօթը նահանգ կը բաժնուէր) որուն մայրաքաղաքն էր Մեմփիս. Ստորին Եգիպտոս որ Միջերկրական ծովուն եզերքը Պղինթինեայ ծոցէն ինչուան արևելեան Սերբոնիս լիճը կը

---

1 Եգիպտոսի առջի բնակիչքը որո՞նք եղան։
2 Հին ատենը Եգիպտոս քանի՞ կը բաժնուէր։ — Վերին Եգիպտոսի մայրաքաղաքը ո՞րն էր։

տարածուէր. գլխաւոր քաղաքներն էին Հելիուպօլիս կամ Արեգ քաղաք և Աղեքսանդրիա։

1 Ստորին Եգիպտոսի մէջ էր նաև Դելտա նահանգը, որ Նեղոսի երկու գլխաւոր ճիւղերուն եւ ծովուն մէջտեղի կտորն էր։ Եւ Դելտա ըսուելուն պատճառն ան է որ եռանկիւնաձև ըլլալով՝ Յունաց Δ (տելթա) տառին նման էր։

2 Եգիպտոսի առաջին Թագաւորն եղաւ Քամայ որդին Մեստրեմ (2126), առաջին պատմիչներուն Մենէս ըսածը, որ Թեբէ ու Մեմփիս քաղաքները շինեց։ Մենէս Եգիպտացւոց արուեստ ու ճարտարութիւն ալ սորվեցուց, որով շատ հարստացան. բայց անով պերճութեան ալ վարժեցան ու քիչ ատենի մէջ աւրուեցան։ Մենեսի յաջորդներէն մէկը Արաբացւոց դէմ պատերազմի գնացած ատենը սաստիկ անօթութիւն ու ծարաւ քաշելով՝ անանկ փափուկ մեծնալուն վրայ շատ ցաւեցաւ, ու Թեբէ քաղաքին մեհեանին մէջ արձանագիր մը փորել տուաւ, որով Մենեսի անունը կը նզովէր որ Եգիպտացւոց փափկութիւն սորվեցուցեր է։

3 Մենեսէն ետքը Եգիպտոսի երկիրը այլ և այլ Թագաւորութիւններ բաժնուեցաւ, ու տասնըւեթը հարստութիւն կամ իշխանութիւն ձևացաւ։

---

1 Դելտա ըսուած նահանգը ո՞ւր կ՚իյնար։
2 Եգիպտացւոց առաջին Թագաւորն ո՞վ է։ — Ի՞նչ սորվեցուց Մենէս Եգիպտացւոց։
3 Մենեսէն ետքը ո՞վ տիրապետեց Եգիպտոսի։

1 Եգիպտոսի տիրող օտար ազգաց մէջ առաջին եղան Եթովպացիք, և անոնցմէ տասնըութը թագաւոր նստան։ Ասոնց վրայ տեղեկութիւն մը չկայ, և չգիտցուիր թէ երբ վերջացաւ թագաւորութիւննին։

2 Եթովպացւոց ձեռքէն հազիւ թէ ազատեր էր Եգիպտոս, Արաբացի ու Փիւնիկեցի հովիւներ եկան տիրեցին և Ստորին և Միջին Եգիպտոսի մէջ բնակեցան, ու Եգիպտացւոց լեզուովը Հիքսոս ըսուեցան, որ Հովիւ թագաւորներ ըսել է։ Ասոնք Մեմփիսը իրենց մայրաքաղաք ըրին, Հելիուպօլիս կամ Արեգ քաղաքը շինեցին ու մէջը Արեգական (որ իրենց գերագոյն աստուածն էր) փառաւոր մեհեան մը կանգնեցին։ Երկու հարիւր վաթսուն տարի ասոնք թագաւորելէն ետքը՝ Եգիպտոսի մէկալ մասին թագաւորները միացան ու զիրենք հալածեցին։

3 Աս Հովիւ թագաւորաց մէկուն ժամանակը (որ սուրբ գիրքը ընդհանուր Եգիպտոսի թագաւորաց անունովը Փարաւոն կը կոչէ), Աբրահամ և Սառա Եգիպտոս եկան (2289)։ Ուրիշի մը ատենն ալ Յովսէփ Պետափրէս դահճապետին

---

1 Օտար ազգաց մէջ Եգիպտոսի տիրողները նախ որո՞նք եղան։

2 Եթովպացւոցմէ ետքը որո՞նք տիրեցին Եգիպտոսի։

3 Աբրահամ ո՞ր թագաւորին ատենը գնաց Եգիպտոս։ — Յովսէփ որո՞ւն ատենն էր։

մոլ մարդ մը ըլլալով ինը ամիս Թագաւորելէն ետքը ընտանիքը զինքը մեռուցին (555)։

1 Տեղն անցաւ Նաբուքոդոնոսորայ Թոռը Լաբինիտ՝ որ սուրբ գրոց մէջ Բաղտասար կը կոչուի. և շատ պզտիկ ըլլալուն համար իշխանութիւնը Նիտոկրիս անունով մօրը ձեռքն էր։ Ասիկայ տեսնելով որ Կիւրոս Ասիոյ ամէն կողմը կը տիրապետէ, ուզեց կերպով մը առջևն առնել և Լիւդացւոց Կրեսոս Թագաւորին հետ դաշնակցութիւն ըրաւ. երբոր Կրեսոս յաղթուած գերի ինկաւ, Կիւրոս եկաւ Բաբելոնը պաշարեց։ Նիտոկրիս երկայն պաշարման դիմանալու համար ամէն հարկաւոր պատրաստութիւն տեսաւ, քաղաքը ամրացուց ու քսան տարուան համար պաշար դիզեց։ Տեսաւ Կիւրոս որ Բաբելոնը բռնութեամբ առնելու քաղաքչէ. և որովհետև Եփրատ գետը քաղաքին մէջէն կ՚անցնէր, քաղաքին բոլորտիքը շատ ջրանցքներ բանալ տուաւ՝ որպէս զի քաղաքին մէջէն անցած կտորը անկէց անցընելով գետը ցամքեցընէ և անկէց ներս մտնէ։ Ու Բաբելացւոց մեծ տօնի մը գիշեր որ բոլոր քաղաքը կերուխումով կ՚անցընէին՝ պատրաստուեցաւ ներս մտնելու։

2 Ան գիշերը Բաղտասար Թագաւորն ալ սե-

---

1 Լաբեսորաքոսին ո՞վ յաջորդեց։ — Բաբելոն ի՞նչպէս պաշարուեցաւ։

2 Ի՞նչպէս առնուեցաւ Բաբելոն։

ղոնի վրայ ուրախացած՝ Երուսաղեմայ տաճարին ամաններովը գինի խմելու ատենը տեսաւ որ ձեռք մը ելաւ պատին վրայ իրեք խորհրդաւոր գիր գրեց. սարսափեցաւ թագաւորը, Դանիէլ եկաւ մեկնեց իրեն ան գրերուն իմաստն ու իմացուց թէ Քիչ ատենէն թագաւորութիւնդ ձեռքէդ պիտի առնեն ու զքեզ ալ պիտի մեռցնեն: Կէս գիշերէն ետքը Կիւրոս գետին բերանը դարձուց ու գետ 'ի փորել տուած ջրանցքները քաշեցուց. անանկ որ գետին քաղաքին մէջէն անցած կտորը բոլորովին ցամքեցաւ, և զօրքը նոյն ցամքած գետին ճամբէն ներս վազեցին։ Քաղաքացիք բոլոր գինովցած, քաղաքին մէջ գետին երկու քովի պղնձէ դըռներն ալ գոցելու մոռցեր էին. քաղաքն ալ անանկ ընդարձակ էր որ թշնամիք քաղաքէն ներս մտեր էին ու դեռ մէջտեղի բնակիչներն ամենեւին չէին իմացած. ուստի զօրքը դիւրաւ ներս թափեցան, մեծ ջարդ ըրին ու թագաւորն ալ սպաննեցին: Ասանկով Բաբելացւոց թագաւորութիւնը վերցուեցաւ, ու Բաբելոն Կիւրոսի ընդարձակ տէրութեանը գաւառներէն մէկն եղաւ (538):

4 Բաբելացւոց թագաւորութեան մայրաքաղաքը Բաբելոն՝ ընդարձակութեամբն ու հրաշակերտ շէնքերովը աշխարհիս ամենէն անուանի

---

1 Բաբելոն քաղաքին դիրքն ու մեծութիւնը ինչպէս էր:

քաղաքներէն մէկն էր։ Ընդարձակ դաշտի մը մէջ շինուած էր. ձեւը քառակուսի. իւրաքանչիւր կողմը հարիւր քսան ասպարէզ՝ այսինքն քսանըմէկ հազար վեց հարիւր մեթր. շրջապատն էր չորս հարիւր ութսուն ասպարէզ, կամ ութսունըվեց հազար չորս հարիւր մեթր։

1 Բոլոր շրջապատը հրաշալի պարսպով մը պատած էր, պարսպին հաստութիւնը քսանըվեց մեթր էր, և բարձրութիւնը հարիւր հինգ մեթր։ Տեսակ մը թրծած աղիւսով շինած էր՝ որ չորցած ատենը քարէն պինդ կ'ըլլար. աղիւսներն ալ իրարու հետ կպրով կպցուցած էին։ Հարիւր դուռ ունէր չորս կողմը, ամէն մէկ կողմը քսանըհինգական դուռ՝ ամէնն ալ թափծու պղինձէ. պարսպին դրսի դին ալ մեծ խրամ մը կար՝ երկու կողմը աղիւսով պատ քաշած։

2 Եփրատ գետը Բաբելոնի մէջէն կ'անցնէր, անով քաղաքը երկու կը բաժնուէր. բոլոր տուները եռայարկ կամ քառայարկ էին ու ճակատնին գեղեցիկ զարդարած։ Տները քովէ քով իրարու կպած չէին. ամէն տուն ամառանոցի պէս մէյմէկ պարտէզի մէջ էր։

3 Գետին վրայ ձգուած կամուրջն ալ Բաբելոնի երևելի շէնքերէն մէկն էր. երկայնութիւնը

---

1 Պարիսպը ինչպէս էր։
2 Տները ինչպէս շինած էին։
3 Բաբելոնի կամուրջին վրայ ինչ գիտելիք կայ։

մէկ ասպարէզ, որ է հարիւր ութսուն մեթր, լայնութիւնը երեսուն ոտնաչափ՝ մեծամեծ կոփածոյ քարերով շինած ։

1 Կամրջին երկու ծայրը երկու հոյակապ պալատ կար որ գետին տակէն Լոնտրայի Թամիզ գետին Թընէլին պէս մէկէն մէկալը երթալու համար ստորերկրեայ ճամբայ ունէին. Մէկուն բոլորտիքը երեսուն ասպարէզ էր, մէկալինը վաթսուն, իրեք կարգ մէկմէկէ հեռու պատով պատած. պատերուն վրայ ալ կենդանեաց պատկերներ փորուած էին, ան պատկերներուն մէկուն մէջ Շամիրամ ձի հեծած՝ ընձառիւծ մը կը զարնէր նետով. Նինոս ալ առիւծ մը ։

2 Աս պալատներէն մէկ'ն էր Բելայ քառանկիւնի մեհեանը՝ ամէն մէկ կողմը իրեք հարիւր վաթսուն մեթր. անոր մէջտեղը մէկ ասպարէզ կամ հարիւր ութսուն մեթր բարձրութեամբ ու լայնութեամբ աշտարակ մը կար. վրան ուրիշ աշտարակ մը, անոր վրայ ալ ուրիշ, ինչուան ութը կարգ, որով ամենուն բարձրութիւնը կ'ըլլար հազար չորս հարիւր քառասուն մեթր՝ Եգիպտոսի ամէն բուրգերէն բարձր. կ'ըսեն թէ բուն Բաբելոնի աշտարակը աս եղած ըլլայ ։ Սանդուխներով վեր ինչուան ծայրը կ'ելլըցուէր, և մէջը մեծամեծ կամարակապ ու սիւնազարդ սենեակներ կային ։ Աշտարակին ծայրն

---

1 Կամրջին երկու ծայրը ինչ շէնքեր կային ։
2 Պալատներուն մէկուն մէջ ինչ կար ։

ալ դիտանոց մը կար, ուսկից Բաբելացիք աստղաբաշխական զննութիւններ կ'ընէին։ Աս մեհեանը ինչուան Պարսից Քսերքսէս թագաւորին ժամանակը կար, որ յաղթուած ու անբաւ գանձէ ելած՝ Յունաստանէն ետ դառնալու ատենը գնաց բոլոր գանձերը կողոպտեց, մեհեանն ալ հիմնայատակ կործանեց։

1 Մէկալ պալատին մէջն էր հռչակաւոր Կախաղանաւոր Բուրաստան կամ Շամիրամեան պարտէզը ըսածնին, որովհետեւ կը կարծուի որ Շամիրամ շինել տուած ըլլայ այն պարտէզը։ Ասոր ձեւը քառակուսի էր՝ կամարներու վրայ առած ու չորս դին սանդխաձեւ բարձր պատ հիւսած. այն կամարներուն վրայ քարայատակ էր, քարին վրան եղէգով ու կուպրով ծեփած, անոր վրայ կրով երկու կարգ աղիւս շարած, որպէս զի վըրան լեցուցած հողին խոնաւութիւնը՝ շինուածքին վնաս չընէ։ Մէջը անկած էր ոչ միայն ամէն տեսակ ծաղիկ ու տունկ՝ հապա նաեւ բարձր ու խորարմատ ծառեր։ Մէջ տեղը ջրհան մը կար որ գետին ջուրը բոլոր պարտէզը կ'ոռոգէր. կամարներուն տակն ալ մեծամեծ գեղեցիկ ու պայծառ սրահներ էին։

2 Որովհետեւ Բաբելոն քիչ անձրեւ կուգայ, անոր համար այլ եւ այլ ջրանցքներով արտերը գետին ջուրը կ'ոռոգէին։ Բաբելոնի մէջ ամենե-

---

1 Կախաղանաւոր բուրաստանը ի՞նչ էր։
2 Բաբելոնի բերքերն ի՞նչ էին։

ւին Թզենի, որթ և ձիթենի չկար. գլխաւոր բերքն էր ցորեն որ մէկին՝ երկու հարիւր և ինչուան իրեք հարիւր կը բերէր։ Արմաւենի ալ շատ կար. Բաբելացիք եղած արմաւին կէսը կ՚ուտէին, կէսէն ալ Ամբրաւօղի անունով տեսակ մը օղի կը շինէին ու գինիի տեղ կը խմէին։



# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

# ԵԳԻՊՏԱՑԻՈՑ

## ԳԼՈՒԽ Ա.

Եգիպտոս. — Գլխաւոր բաժանմանց. — Առաջին թագաւորը. — Օտար թագաւորներ. — Բուսիրիս. — Ոսիմանդ. — Ուքոր. — Մերիս. — Ամենոփիս. — Սեսոստր. — Իր դաստիարակութիւնը. — Իր առջի աշխարհակալութիւնները. — Արշաւանքին պատրաստութիւնները. — Տէրութեանը ընդարձակութիւնը. — Շինել տուած շէնքերը. — Ջրանցքները. — Մեծ պարիսպը. — Սեսոստրի մահը։

1 Եգիպտոս ընդարձակ ձոր կամ հովիտ մըն է. աս հովիտը մէկ ծայրէն մէկալը կ՚ոռոգէ Նեղոս մեծ գետը որ Եթովպիոյ լեռներէն կ՚իջնայ, ու շատ ճիւղ բաժնուած Միջերկրական ծովը

---

1 Եգիպտոս ի՞նչ երկիր է։

կը թափի։ Եգիպտոս խիստ քիչ անձրև կու-գայ, իսկ Եթովպիա վեց ամիս գրեթէ միակերպ. անով Նեղոս գետը սաստիկ կը բարձրանայ ու Եգիպտոսի բոլոր հովիտը ջրով կը ծածկէ, ու ետքը անանկ տիղմ մը կը ձգէ որ երկիրը անով շատ կը պարարտանայ։ Աշնանային գիշերահաւասարի ատենը Եգիպտոս ընդարձակ ծով մը կը դառնայ՝ մէջը տեղ տեղ քաղաքներով ու գեղերով զարդարուած. իսկ ձմեռը բարեբեր ու ծաղկազարդ դաշտի մը կը նմանի։

1 Եգիպտոսի առջի բնակիչն եղաւ Նոյայ որդին Քամ, ետքը անոր որդիքը։ Առջի ատենները Վերին Եգիպտոս միայն կրնար բնակուիլ. մնացած կողմը ճահիճ էր. ան ալ երթալով մէկ կողմէն Նեղոսի ձգած տիղմովը բարձրացաւ, մէկալ կողմանէ ալ բնակչաց ճարտարութեամբը բոլորովին ցամքեցաւ։

2 Ան ատենները Եգիպտոս երեք գլխաւոր մաս կը բաժնուէր. Վերին Եգիպտոս կամ Թեբայիդ որուն մայրաքաղաքն էր Թեբէ. Միջին Եգիպտոս կամ Եպտանոմոս, այսինքն Եօթնանահանգ (որովհետև եօթը նահանգ կը բաժնուէր) որուն մայրաքաղաքն էր Մեմփիս. Ստորին Եգիպտոս որ Միջերկրական ծովուն եզերքը Պլինթինեայ ծոցէն ինչուան արևելեան Սերբոնիս լիճը կը

---

1 Եգիպտոսի առջի բնակիչքը որո՞նք եղան։

2 Հին ատենը Եգիպտոս քանի՞ կը բաժնուէր։ — Վերին Եգիպտոսի մայրաքաղաքը ո՞րն էր։

տարածուէր. գլխաւոր քաղաքներն էին Հելիուպօլիս կամ Արեգ քաղաք և Աղեքսանդրիա։

1 Ստորին Եգիպտոսի մէջ էր նաև Դելտա նահանգը, որ Նեղոսի երկու գլխաւոր ճիւղերուն եւ ծովուն մէջտեղի կտորն էր։ Եւ Դելտա ըսուելուն պատճառն ան է որ եռանկիւնաձև ըլլալով՝ Յունաց Δ (տելթա) տառին նման էր։

2 Եգիպտոսի առաջին Թագաւորն եղաւ Քամայ որդին Մեստրեմ (2126), արտաքին պատմիչներուն Մենէս ըսածը, որ Թեբէ ու Մեմփիս քաղաքները շինեց։ Մենէս Եգիպտացւոց արուեստ ու ճարտարութիւն ալ սորվեցուց, որով շատ հարստացան. բայց անով պերճութեան ալ վարժեցան ու քիչ ատենի մէջ աւրուեցան։ Մենեսի յաջորդներէն մէկը Արաբացւոց դէմ պատերազմի գնացած ատենը սաստիկ անօթութիւն ու ծարաւ քաշելով՝ անանկ փափուկ մեծնալուն վրայ շատ ցաւեցաւ, ու Թեբէ քաղաքին մեհենին մէջ արձանագիր մը փորել տուաւ, որով Մենեսի անունը կը նզովէր որ Եգիպտացւոց փափկութիւն սորվեցուցեր է։

3 Մենեսէն ետքը Եգիպտոսի երկիրը այլ և այլ թագաւորութիւններ բաժնուեցաւ, ու տասնըութը հարստութիւն կամ իշխանութիւն ձևացաւ։

---

1 Դելտա ըսուած նահանգը ո՞ւր կ'իյնար։
2 Եգիպտացւոց առաջին Թագաւորն ո՞վ է։ — Ի՞նչ սորվեցուց Մենէս Եգիպտացւոց։
3 Մենեսէն ետքը ո՞վ տիրապետեց Եգիպտոսի։

1 Եգիպտոսի տիրող օտար ազգաց մէջ առաջին եղան Եթովպացիք, և անոնցմէ տասնըութը թագաւոր նստան։ Անոնց վրայ տեղեկութիւն մը չկայ, և չգիտցուիր թէ երբ վերջացաւ թագաւորութիւննին։

2 Եթովպացւոց ձեռքէն հազիւ թէ ազատեր էր Եգիպտոս, Արաբացի ու Փիւնիկեցի հովիւներ եկան տիրեցին և Ստորին և Միջին Եգիպտոսի մէջ բնակեցան, ու Եգիպտացւոց լեզուովը Հիքսոս ըսուեցան, որ Հովիւ թագաւորներ ըսել է։ Ասոնք Մեմփիսը իրենց մայրաքաղաք ըրին, Հելիուպօլիս կամ Արեգ քաղաքը շինեցին ու մէջը Արեգական (որ իրենց գերագոյն աստուածն էր) փառաւոր մեհեան մը կանգնեցին։ Երկու հարիւր վաթսուն տարի ասոնք թագաւորելէն ետքը՝ Եգիպտոսի մէկալ մասին թագաւորները միացան ու զիրենք հալածեցին։

3 Աս Հովիւ թագաւորաց մէկուն ժամանակը (որ սուրբ գիրքը ընդհանուր Եգիպտոսի թագաւորաց անուանովը Փարաւոն կը կոչէ), Աբրահամ և Սառա Եգիպտոս եկան (2289)։ Ուրիշ մը ատենն ալ Յովսէփ Պետափրէս դահճապետին

---

1 Օտար ազգաց մէջ Եգիպտոսի տիրողները նախ որո՞նք եղան։

2 Եթովպացւոցմէ ետքը որո՞նք տիրեցին Եգիպտոսի։

3 Աբրահամ ո՞ր թագաւորին ատենը գնաց Եգիպտոս։ — Յովսէփ որո՞ւն ատենն էր։

4*

ծախուելուն ետքը պատուոյ հասաւ, ու Իսրայէլացիները Տանայիս երկիրը Գեսեմ ըսուած տեղը բնակեցուց (2097)։

1 Հովիւ Թագաւորներէն ետքը Եգիպտոսի Թագաւորներուն մէջ անուանի է Բուսիրիս, որ Թեբէ քաղաքը շատ մեծցուց, ու բարձր պարըսպով պատեց, և՛ ան պարիսպը հարիւր դուռ ունէր. ամէն մէկ դռնէն մէկէն կրնար հանել տասը հազար զինուոր և երկու հարիւր կառք։ Քաղաքին մէջ չորս մեհեան շինել տուաւ, անոնց ալ չորս կողմը ոսկիով, արծաթով, փղոսկրով ու պատուական քարերով պատած։ Բայց ամէնէն հրաշալի շէնքը պալատն էր՝ այնչափ մեծ որ ստորագրութիւնը ընողները կ'ըսեն թէ մէկ կտորը միայն կրցեր են տեսնել, բայց բոլոր տեսածնին սքանչելի է եղեր, և մէջը աւելի զարմանալին էր կ'ըսեն հարիւր քսան սիւնի վրայ կեցած գեղեցկանկար վերնայարկ սրահը։ Այսոնցմէ զատ կային Թեբէի մէջ ուրիշ փառաւոր շէնքեր, կոթողներ, արձաններ, որոնց աւերակները ինչուան հիմա կեցած են։ Զարմանալի էր նաև Մեմնոնի արձանը, որ արևը վրան զարկած ատենը անոյշ ձայներ կը հանէ կ'ըսէին։ Ստրաբոն ալ լսեր է ան ձայնը, բայց կը տարակուսի որ արձանէն ըլլայ։

---

1 Հովիւ Թագաւորներէն ետքը անուանի Թագաւոր ո՞վ եղաւ։ — Թեբէի մեծութիւնը ո՞րչափ էր։ — Ի՞նչ երևելի շէնքեր կային մէջը։ — Մեմնոնի արձանին վրայ ի՞նչ գիտելիք կայ։

1 Ոսիմանդ, Բուսիրիսի յաջորդներէն մէկը, շատ անուանի եղաւ հոյակապ շէնքերովը: Անոնց մէջ աւելի հռչակաւորն է պալատը, որուն մէջ ճարտարութեամբ քանդակներով ու պատկերնե-րով Բակտրիացւոց վրայ ըրած յաղթութիւնը ձևացընել տուեր էր:

2 Պալատէն քիչ մը հեռու շինել տուեր էր աշխարհիս առաջին գրատունը, որուն վրայ գրուած էր ԲԺՇԿԱՐԱՆ ՀՈԳԻՈՅ: Մեծութեամբն ու փառաւորութեամբը անկէց վար չէր մնար նաև Ոսիմանդի գերեզմանը. ասոր վրան մէկ կանգուն լայնութեամբ ոսկի շրջանակ կար, և շրջապատն էր երեք հարիւր վաթսուն և հինգ կանգուն. ան շրջանակին վրայ նշանած էին տա-րուան ելլելն ու մտնելը և ամիսները: Գերեզմա-նին չորս կողմը բոլոր Եգիպտոսի աստուածոց արձանները կային, որոնց թագաւորը ընծաներ կը նուիրէր, ցուցընելով որ բոլոր կենացը մէջ բարեպաշտ եղեր է ու մարդկանց բարիք ըրեր է: Անոնցմէ զատ ուրիշ հսկայաձև արձան մըն ալ կար աս արձանագրովս. « Ես եմ Ոսիմանդ արքայից արքայ. ով որ կ'ուզէ ինծմէ աս անուա-նը յափշտակել, թող նախ ըրած գործքերէս մէ-կուն մէջ ինծմէ վեր անցնի. »:

---

1 Ոսիմանդ ի՞նչ շէնքեր շինեց:
2 Գրատանը վրայ ի՞նչ գիտելիք կայ: — Գերեզ-մանը ի՞նչպէս էր:

1 Ոսխմանդէն յաջորդեց Ուկոր, որ Մեմփիսը շատ զարդարեց։ Երբոր Նեղոս գետը կը բարձրանար՝ բոլոր քաղաքը ջուր կը կոխէր. ասոր ճար ընելու համար Ուկոր քաղաքին չորս դին ամուր թումբեր շինել տուաւ որ միանգամայն պարսպի տեղ ալ կը բռնէին, անոնց չորս կողմն ալ փոս փորել տուաւ ու մէջը ջրով լեցուց, որով աւելի անառիկ եղաւ քաղաքը։

2 Մերիս (2040), Թէբէի թագաւորներէն մէկը, շատ անուանի է փորել տուած լճին համար, որ իր անունովը Մերիսեան լիճ կ'ըսուի։ Եւ այն լիճը փորել տալուն պատճառը աս է.

3 Որովհետեւ, ինչպէս որ ըսինք, Եգիպտոս անձրեւ չիգար, եւ անոր տեղը ամէն տարի Նեղոս գետը լեցուելով բոլոր երկիրը կ'ոռոգէ պտղաբեր կ'ընէ, երբեմն աս ջուրը չկրնար բոլոր երկիրը ծածկել, երբեմն ալ խիստ շատ կ'ըլլայ ու չափէ դուրս կը կոխէ երկիրը, որով Եգիպտոսի ներքերուն վնաս կ'ըլլայ։ Շատ թագաւորներ մտածեր էին որ մեծ ջրաշտեղի մը շինեն ու օգոստոս ամսուն Նեղոսին սաստիկ բարձրացած ատենը ջուրը հոն լեցընեն, չորութեան տարին ալ երբոր յունուար ամսուն Նեղոսը ցամքի՝ անկէց ջուր տան արտերուն։



1 Ոսխմանդէն ո՞վ յաջորդեց։ — Ի՞նչ շէնքեր ըրաւ։
2 Մերիս թագաւորը ի՞նչ կողմանէ անուանի է։
3 Մերիսեան լիճը ի՞նչ պատճառաւ փորեցին։

1 Այս օգտակար խորհուրդը ուզեց կատարել Մերիս, և մշակելի երկիր չկորսընցընելու համար Լիբիոյ մօտ աւազուտ անբեր երկրի մը մէջ ընդարձակ լիճ մը սկսաւ փորել տալ, շրջապատը իրեք հազար վեց հարիւր ասպարեզ, այսինքն վաթսունըհինգ հազարամեթր, և խորութիւնը կէս ասպարեզ, այսինքն իննսուն մեթր։

2 Որպէս զի ետքի եկողները իմանան թէ աս զարմանալի լիճը բնական չէ, հապա մարդիկ փորեր են ու մէկ թագաւորի ատեն լմնցեր է, Մերիս լճին մէջ երկու հատ հարիւր ութսուն մեթր բարձրութեամբ բուրգ կանգնեց. ասոնց կէսը ջրին տակն էր կէսն ալ ջրէն վեր. ծայրերնին ալ մէյմէկ մարմարիոնէ արձան կար աթոռի վրայ նստած։

3 Ասկէն անցնելէն ետքը Արաբացի կամ Փիւնիկեցի հովիւները նորէն Եգիպտոսի տիրեցին (1613), և Ամենոֆիս ան ատենի թագաւորը իր որդին ու ժողովրդեան մէկ մասը հետը առած՝ գնաց Եթովպիա քաշուեցաւ։ Տասուիրեք տարիէն ետքը շատ զօրքով դարձաւ եկաւ, հովիւներուն յաղթեց, կէս մը սպաննեց, մնացածներն ալ Եգիպտոսէն դուրս քշեց։



1 Ո՞ւր փորուեցաւ Մերիսեան լիճը, և մեծութիւնը ո՞րչափ էր։
2 Լճին մէջ ի՞նչ յիշատակ կանգնեց Մերիս։
3 Ո՞ր թագաւորին ատենը նորէն տիրեցին Արաբացիք Եգիպտոսի։

1 Ամենովփիսի որդին Սեսոստր որ Մեծն Հըռամսէս ալ կ'ըսուի, Եգիպտոսի Թագաւորաց մէջ ամենէն հռչակաւորն է։ Հայրը Ամենովփիս ուզելով որ իր որդին մեծ աշխարհակալ մը ըլլայ՝ բոլոր Եգիպտոսի մէջ նոյն օրը ծնած տղաքը ժողվեց որ հազար ութը հարիւրի չափ էին, ու Սեսոստրի հետ մեծցուց։ Աս տղաքը ամէն տեսակ չարքաշութեան, որսի ու զինուորական կրթութեանց վարժած մէյմէկ կարիճ զօրավարներ եղան։ Ամէնքը իրենց ընկերակից Թագաւորին վրայ կը դողային, ու անոր փառացը համար մեռնիլ աչք առած կը պատերազմէին։ Թագաւոր մը չէ եղած որ Սեսոստրի պէս հաւատարիմ իշխաններ ու քաջ զօրավարներ ունենայ։

2 Դեռ տարիքը չառած՝ Սեսոստր իր մննդակից ընկերներովը գնաց Արաբիա նուաճեց, որ մինչուան ան ատենը աննուաճելի կը կարծուէր։ Անկէց դարձաւ դէպ 'ի արեւմուտք ու մէկէն Լիբիոյ ալ տիրեց։ Աս յաղթութիւններովը սիրտ առաւ Սեսոստր, ու հօրը մեռնելէն ետքը միտքը դրաւ որ բոլոր աշխարհիս տիրէ։

3 Պատերազմի չսկսած նայեցաւ Սեսոստր որ իր հպատակաց սիրտը շահի։ Ոմանց սատակ կը բաժնէր, ոմանց երկիր, ուրիշներուն պատիժ-

—

1 Ի՞նչ գիտելիք կայ Սեսոստրի վրայ։
2 Առաջին արշաւանքը դէպ 'ի ո՞ւր ըրաւ Սեսոստր։
3 Մեծ արշաւանքէն առաջ ի՞նչ պատրաստութիւն տեսաւ։

ները ներեց, պարտքի համար բանտ գրուած մարդիկը ազատեց։ Եգիպտոսը երեւունելվեց նահանգ կամ կուսակալութիւն բաժնեց, ու մէյմէկ հաւատարիմ կուսակալներու յանձնեց։

1 Աս կերպով տէրութիւնը կարգաւորելէն ետքը՝ վեց հարիւր հազար հետեւակով, քսանը-չորս հազար ձիաւորով ու քսանըեօթը հազար սպառազէն կառքով բանակ մը պատրաստեց, և անոնց զօրագլուխ գրաւ իր սննդակիցքը, որոնց քաջութիւնն ու հաւատարմութիւնը առջի պատերազմներուն մէջ փորձեր էր։

2 Այսպիսի պատրաստութեամբ նախ դէպ 'ի հարաւային կողմը արշաւեց Սեսոստր, եթովպացւոց յաղթեց ու տուրքի տեղ անոնցմէ ոս-նիազ, ոսկի ու փղոսկր առաւ։ Ետքը Կարմիր ծովուն վրայ չորս հարիւր նաւով տորմիղ մը հանեց որ բոլոր կղզիներուն ու ծովեզերքին տիրեցին մինչուան Հնդկաստան։

3 Իսկ ինքը ցամաքէն առաջ երթալով՝ բոլոր Ասիոյ տիրեց, անցաւ Հնդկաստան ու մինչուան Գանգէս գետէն անդին տիրեց, ուր ետքը Աղեքսանդր ալ չկրցաւ հասնիլ։ Սկիւթացիք, մինչուան Տանայիս գետին քովի բնակիչներն ալ հնազանդեցան իրեն. Կապադովկիա հարկատու եղաւ,

---

1 Սեսոստրի զօրքը ո՞րչափ էր։
2 Եթովպացւոց ի՞նչպէս յաղթեց։ — Ի՞նչ տուրք առաւ անոնցմէ։
3 Ինչուան ո՞ւր տիրեց Սեսոստր։

մեր Փառնակնահապետին ալ յաղթեց և Հայաստանի տիրեց։ Ուր որ կը տիրէր՝ յաղթութեանը յիշատակ արձաններ կը թողուր՝ վրան գրած. Սեսոստր Թագաւոր Թագաւորաց և տէր տէրանց։ Եւրոպա ալ կ'ուզէր անցնիլ, բայց պաշար չունենալով ետ դարձաւ։

1 Ինը տարուան մէջ այնչափ երկիրներու տիրելէն ետքը՝ անթիւ հարստութեամբ ու գունդագունդ գերիներով դարձաւ մտաւ Սեսոստր Եգիպտոս։ Ան հարստութեան մէկ մասը տաճարներու նուիրեց, մէկ մասն ալ զօրացը բաժնեց. խաղաղութեան ատենն ալ օգտակար շէնքերով Եգիպտոսը զարդարեց։

2 Նախ աստուածոց շնորհակալ ըլլալով այլ և այլ քաղաքներու մէջ հարիւր հատ փառաւոր մեհեան կանգնել տուաւ, ամէն մէկուն մէջ արձանագիր դնելով՝ Թէ Առանց ժողովրդեան վրայ ծանրանալու շինեցի ասոնք. վասն զի ժողովրդեան խնայելը իրեն պարծանք կը սեպէր. և ասանկ շէնքերու՝ հետը բերած գերիները միայն կը գործածէր։

3 Շատ մը շինծու բլուրներ ալ ձևացուց ու բոլոր այգիները հոն փոխադրել տուաւ, որ առաջ տափարակ դաշտի մէջ տնկած էին. վաճա-

---

1 Քանի՞ տարի քշեց Սեսոստրի արշաւանքը։
2 Ի՞նչ շէնքեր շինեց Սեսոստր։
3 Վաճառականութիւնը դիւրացընելու համար ի՞նչ ըրաւ։

ռականութիւնը դիւրացընելու համար Նեղոսին երկու կողմը ինչուան ծով այլ և այլ առուներ ալ բանալ տուաւ։ Անով աս օգուտն ալ եղաւ որ առաջ Թշնամիք Եգիպտոսի մէկ ծայրէն ինչուան մէկալ ծայրը կառքերով ու ձիերով կ՚արշաւէին, անկէց վերջը ալ չէին կրնար։

1 Եգիպտոսի արևելեան կողմն ալ Արաբացւոց և Ասորւոց արշաւանքներէն ազատելու համար Պեղուսիոն քաղաքէն ինչուան Արեգ քաղաքը պարիսպ մը շինել տուաւ որուն երկայնութիւնն էր հազար հինգ հարիւր ասպարէզ. այսինքն երկու հարիւր եօթանասուն բիւր մեթր։

2 Իր նաւատորմղին յաղթութեանցը յիշատակ եղևնափայտէ նաւ մը շինել տուաւ, մէջը արծաթով պատած, դուրսն ալ ոսկիով. ու Թէբէի տաճարին նուիրեց։ Երկու հատ ալ բուրգ կանգնեց, ամէն մէկը յիսունըչորս մեթր բարձր. և վրանին յաղթած ազգերուն անուններն ու անոնց վրայ դրած տուրքերը փորագրել տուաւ։ Մեմփիս քաղաքը Հեփեստոսի տաճարին մէջ իրեն ու իր թագուհւոյն արձանը կանգնել տուաւ միակտուր քարէ, բարձրութիւննին տասուերեք մեթր. իսկ որդւոցը արձաններուն բարձրութիւնը ինը մեթր էր։

---

1 Եգիպտոսի արևելեան կողմը ինչպէս ամրացուց։

2 Նաւատորմղին յաղթութեանցը համար ինչ յիշատակ թողուց։ — Քանի՞ հատ բուրգ շինեց։

1 Այսչափ փառքը մթընցուց Սեսոստր ոչ միայն անյագ փառասիրութեամբ, այլ նաև ատով որ յաղթած թագաւորացը հետ անվայել կերպով կը վարուէր: Յաղթուած թագաւորները ամէն տարի կուգային տուրք ու ընծաներ կը բերէին իրեն. Սեսոստր ալ զիրենք սիրով ու պատուով կ'ընդունէր, բայց երբոր քաղաք մը կամ մեհենի մը այցելութեան երթալու կ'ըլլար, ձիու տեղ ան թագաւորներէն չորսը իր կառքին կը լծէր: Օր մը աս լծուած թագաւորներէն մէկը կառքը քաշելու տեղեն երեսը դէպ 'ի ետին դարձուցած' ուշադրութեամբ անիւին վրայ կը նայէր: Սեսոստր դարձաւ իրեն, Ի՞նչ կ'ընես, ըսաւ. ինչո՞ւ քեզի չես նայիր թէ ո՞վ ես դուն: — Անիւոյն վրայ կը մտածեմ տէր արքայ, ըսաւ խեղճ թագաւորը, որ ինչպէս անդադար շրջանով մը միշտ իր վրան կը դառնայ ու ամենևին տեղ մը չկենար, վարի կողմը վեր կ'ելլէ, վերի կողմը վար կ'իջնայ: Հասկըցաւ Սեսոստր թագաւորին միտքը. մտածեց որ իրաւցընէ անիւոյն պէս անցաւոր և դիւրափոխ են աշխարհիս մեծութիւնն ու յաջողութիւնները. և թէ օր մը կրնայ անանց վիճակը իր գլուխն ալ գալ: Անկէց վերջը ալ չուզեց ան կերպով կառք նստիլ, ու զամէնքը պատուով իրենց երկիրը դարձուց:

---

1 Սեսոստրի մեծ պակասութիւնը ո՞րն եղաւ: — Ի՞նչպէս խրատուեցաւ:

1 Այսպէս ամենայն յաջողութեամբ քառա-սունըչորս տարի թագաւորելէն ետքը աչքը կուրցաւ։ Չկրցաւ աշխարհքիս տիրող Սեսոստրը աս թշուառութեանը համբերել. չուզեց նաև ուրիշ մարդկանց պէս մեռնիլ, ու ինքզինքը մե-ռուց (1558)։

## ԳԼՈՒԽ Բ.

Փերոն. — Ամենոֆիս Բ, Կարմիր ծովը նեղուցուն. — Պրոտէոս. — Հռամփսինիտոս. — Քէոպս. — Մեծ բուրգը. — Քեփրէն. — Միկերին. — Բոկքորիս. — Անիսիս. — Արշաւանք Եթովպացւոց. — Սաբաք Եթովպացին. — Սեթոն. — Անիշխանութիւն. — Երկոտասան թագաւորք. — Բաւիղ. — Փսամմետիքոս. — Նեքաւով. — Փսամմութէս։

1 Սեսոստրին յաջորդեց որդին Փերոն, որ Հռամէս կամ Հռամեսէս ալ կ'ըսուի։ Ասիկայ ոչ հօրը խելքը ունէր և ոչ անոր իշխանասիրու-թիւնը. սկսաւ Իսրայէլացիքը չարչարել ու չա-րաչար ծառայեցընել, Սարրին Եգիպտոսի քա-ղաքներուն պարիսպները անոնց շինել տալ։ Ան-գամ մը Նեղոս գետը տասնըութը կանգուն

---

1 Քանի՞ տարի թագաւորեց Սեսոստր։ — Ի՞նչ-պէս մեռաւ։

1 Սեսոստրին ո՞վ յաջորդեց։

բարձրացեր էր. Փերոն բարկացաւ, ու գետը պատժել ուզելով մէջը նետ նետեց. բայց ետքը ինքը պատժուեցաւ, վասն զի Աստուած ալ զինքը կուրցուց: Իր թագաւորութիւնը քշեց վաթսունըվեց տարի:

1 Ամենովփիս որդին ու յաջորդը (1492), առջի բերան չուզեց հրաման տալ որ Իսրայէլացիք Եգիպտոսէն ելլեն. բայց Մովսեսի ըրած հրաշքներէն ստիպուած՝ հրաման տուաւ որ երթան. ետքը զիրենք արձըկելուն վրայ զղջացաւ, զօրքով ետևնէն ընկաւ, ու Կարմիր ծովուն մէջ իրեններովը խղդուեցաւ:

2 Ամենովփիսէն ետքը ուրիշ շատ թագաւորներ եղան Եգիպտոս, բայց պատմութեանց մէջ անուննին չյիշուիր: Մէջերնէն մէկուն միայն անունը կայ որ Եգիպտացիք Կետեն կ'անուանէին և Յոյնք Պրոտեւս (1218): Ասիկայ Տրոյիոյ պատերազմին ժամանակակից էր, ուր երբոր Մենեղաւոս իր Հեղինէ կինը Պարիսին ձեռքէն առնելու համար Եգիպտոս հանդիպեցաւ, Պրոտեւս սիրով զինքը իր պալատը ընդունեցաւ: Պրոտեւս խելքը միտքը ոսկի դիզելու տուեր էր. անոր համար մեռնելու ատենը ամէն նախորդներէն աւելի ստակ ելաւ քովէն:

3 Պրոտեւսին յաջորդեց Հռամփսինիս (1190):

---

1 Ամենովփիս երկրորդին վրայ ի՞նչ կը պատմուի:
2 Ամենովփիսի յաջորդներուն մէջ որո՞ւն անունը կը յիշուի:
3 Պրոտեւսին ո՞վ յաջորդեց:

Եգիպտացւոց քուրմերը ասոր համար կ'ըսէին թէ ողջ ողջ դժոխք իջեր ու նորէն աշխարհք եկեր է։

1 Հռամփսինիտին յաջորդը Քէոպս ամենայն բռնութեամբ սկսաւ կառավարել Եգիպտացիքը (1178)։ Թագաւորելուն պէս մեհեանները գոցել տուաւ, ամէն տեսակ զոհերը դադրեցուց, և սկսաւ բոլոր Եգիպտացիքը հարուստ՝ աղքատ հասարակաց շէնքերու աշխատցընել. ոմանք կ'երթային հեռու տեղուանք քար կը կտրէին ու ինչուան Նեղոս գետը քաշկըռտելով կը բերէին. ուրիշներն ալ նաւակներով ան քարերը գետէն կ'անցընէին ու Լիբիոյ մօտ լեռան մը վրայ կը հանէին։ Ամէն երեք ամիս աս աշխատաւորները կը փոխուէին ու տեղերնին հարիւր հազար հոգի նոր կ'ընտրուէին։ Տասը տարի աշխատեցան միայն աս քարերը կրելու համար ճամբայ մը շինելու։

2 Քսան տարուան մէջ իրեն գերեզմանի համար մէկ բուրգ մը շինել տուաւ, ու անունը անմահացընելու համար Քէոպս դրաւ։ Բուրգին ձևը քառակուսի էր. և ամէն մէկ ճակատը երկու հարիւր քառասուն մեթր լայնութիւն ու հարիւր քառասունըվեց մեթր բարձրութիւն ու-

---

1 Հռամփսինիտին յաջորդը Քէոպս ինչպէս կառավարեց Եգիպտացիները։

2 Քէոպսի բուրգը ի՞նչ ձև ու ի՞նչ մեծութիւն ունէր։

ներ։ Բոլոր դրսի կողմը սրբատաշ կոկած քարերով պատած էր. ամենէն պզտիկ քարին երկայնութիւնը ինը մեթր էր։ Ճակատին մէկուն վրայ գրած էր թէ աշխատաւորաց համար ճրշակ սոխ, սխտոր և ընդեղէն գնացեր է։ Միայն աս կերակրին համար եղած ծախքն էր հազար վեց հարիւր արծաթ տաղանդ, որ կ'ընէ գրեթէ ինը միլիոն ֆռանք։ Ասկէց կրնայ իմացուիլ թէ ուրիշ նիւթերուն համար ճրշակի ծախք եղած պիտի ըլլայ։ Քէոպս յիսուն տարի թագաւորեց, և իրեն յաջորդեց եղբայրը Քեփրէն։

1 Քեփրէն (1128) ամենայն կերպով եղբօրը հետևեցաւ։ Ինքն ալ անոր պէս ժողովուրդը չարչարելով բուրգ մը շինել տուաւ անոնց։ Բայց իրենը եղբօրը շինել տուածին բարձրութեանը չհասաւ, տասնուերկու մեթրի չափ ցած մնաց. անոր պէս ստորերկրեայ տեղուանք չունի, ու չորս կողմը փոս փորած չէ։ Երկուքն ալ երեսունուերկու մեթր բարձրութեամբ բլրակներու վրայ շինուած էին։ Մեռաւ Քեփրէն յիսունըվեց տարի թագաւորելէն ետքը։

2 Աս երկու ամբարիշտ թագաւորները հարիւր տարիէն աւելի Եգիպտացիքը կեղեքեցին, ու չարաչար աշխատութեամբ հազարաւոր մարդ մեռուցին. և վախճաննին ան էր միայն որ

---

1 Ո՞վ յաջորդեց Քէոպսի։

2 Քէոպս ու Քեփրէն բուրգերը շինել տալով իրենց վախճանին հասա՞ն։

իրենց մէյմէկ փառաւոր գերեզմաններ պատրաստեն. բայց աս իրենց անմիտ ամբարտաւանութիւնը արժանաւոր պատժով պատուհասեցաւ. վասն զի մեռնելէն առաջ իմացան թէ իրենց մարմինը պիտի չթաղուի հոն. հասկըցան որ ժողովուրդը իրենց դիակը քաշկըռտելով պիտի հանէ ան իրենց քրտինքովը ու արեամբը շինուած բուրգերէն, ուստի ծածուկ իրենց ուրիշ անծանօթ գերեզմաններ պատրաստեցին։ Ժողովուրդը ասով գոհ չեղաւ, ուզեց որ ան բռնաւորներուն յիշատակն ալ ջնջուի. ուստի սաստիկ արգելք հանեց որ մէկը չկարենայ անոնց անունը բերան առնել. ան բուրգերուն վրայ ալ Փիլիտոն անունով հովուի մը անունը դրին, և ըսին Բրգանք Փիլիտոնի. վասն զի աս հովիւը բուրգերուն շինուած ատենը անոնց քովերը կ'արածէ եղեր իր ոչխարները։

[1] Քեփրենի յաջորդեց Քէոպսայ որդին Միկերին (1072)։ Ասիկայ ոչ հօրը ամբարշտութեանը հետեւեցաւ և ոչ հօրեղբօրը անգթութեանը, մեհեանները բանալ տուաւ, տուրքերը քիչցուց, աշխատութիւնները դադրեցուց և ազատութիւն տուաւ որ ամէն մարդ իր բանին գործին հետ ըլլայ։ Իրմէ առջիններէն աւելի արդար եղաւ, ամենուն վիշտը կը թեթեւցընէր և աւելի հայր հասարակաց էր քան թէ թագաւոր. և բոլոր Եգիպտոսի մէջ վրան գովեստ կը խօսուէր։

---

[1] Քեփրենին յաջորդ ո՞վ եղաւ։

կերեն. և ասոնք քանի մը պղնձէ զրահ հագած Յոնիացի ու Կարիացի յոյն զինուորներ էին ալեկոծութենէ հոն ընկած։ Յիշեց Փսամմետիքոս պղնձէ մարդկանց պատգամը. առջևնին ելաւ, սիրով զիրենք ընդունեցաւ, ու ետքը անոնց և իրեն կողմը եղող Եգիպտացւոց օգնութեամբը գնաց Եգիպտոսի տիրեց, ու իր տասնըմէկ իշխանակիցները բռնեց մեռուց (671)։

1 Փսամմետիքոս Յոնիացւոց ու Կարիացւոց ծառայութեանը փոխարէն Եգիպտոսի մէջ բարեբեր երկիրներ տուաւ իրենց, ու Եգիպտացւոց տղաքը անոնց յանձնեց որ յունարէն սորվեցընեն։

2 Երբոր ամէն բան կարգի դրաւ՝ պատերազմի ելաւ Փսամմետիքոս, գնաց Պաղեստին՝ Ազովտացւոց ամուր քաղաքը պաշարեց, ու քսանըինը տարուան մէջ հազիւ կրցաւ առնուլ։ Ասոր պէս երկար պաշարում հին պատմութեան մէջ չկայ։

3 Եգիպտացիք ինչուան ան ատենը կը պարծենային թէ ամենէն աւելի հին ազգ իրենք են։ Փսամմետիքոս անձամբ ուզեց ստուգել աս բանս։ Երկու տղայ տուաւ հովուի մը որ այծերու մէջ

---

1 Փսամմետիքոս ի՞նչ հատուցումն ըրաւ Յոնիացւոց ու Կարիացւոց։
2 Ի՞նչ արշաւանք ըրաւ Փսամմետիքոս։
3 Եգիպտացւոց հնութիւնը ի՞նչ կերպով փորձեց։

այծու կաթով մեծցընէ. ոմանք ալ երկու անլեզու կանանց տուաւ կ'ըսեն: Երկու տարիէն երբոր տղոցը քով մարդ գնաց, սկսան տղաքը ձեռքերնին բացած վրան վազելով պեգգոս պեգգոս կանչել: Քննեց իմացաւ Փսամետիքոս որ պեգգոս Փռիւգացւոց լեզուովը Հաց ըսել է եղեր. ասկէց մըտքերնին դրին Եգիպտացիք որ Փռիւգացիք իրենցմէ հին ազգ են, և առջի լեզուն անոնցն է եղեր: Յիսունըչորս տարի խաղաղութեամբ թագաւորելէն ետքը մեռաւ Փսամետիքոս, ու թագաւորութիւնը Նեքաւով որդւոյն թողուց (617):

1 Նեքաւով ուզեց որ Կարմիր ծովը ջրանցքով մը Նեղոս գետին հետ միացընէ: Բայց հարիւր քսան հազար մարդ ան աշխատանքին մէջ փճացընելէն ետքը հազիւ թէ ասպարէզ մը տեղ փորել տուաւ, և պատգամ լսելով թէ Բարբարոսի մը համար է աշխատիլդ, գործքը կիսկատար թողուց: Միջերկրական ծովուն ու Կարմիր ծովուն վրայ նաւեր շինել տուաւ, ու Փիւնիկեցի վարպետ նաւավարներուն հրամայեց որ Ափրիկէի չորս կողմը պտըտին տեսնեն թէ ի՞նչ կայ. անոնք ալ Կարմիր ծովէն ելան, Ափրիկէի ծովեզերքը բոլոր պտըտելով Սեպտէի նեղուցէն Եգիպտոս դարձան:

2 Մակեդդով քաղաքին քով Յուդայի Յով-

---

1 Նեքաւով ի՞նչ երևելի գործք ըրաւ:
2 Ի՞նչ պատերազմներ ըրաւ: — Նեքաւովին յաջորդը ո՞վ եղաւ:

սիա Թագաւորին յաղթեց Նեքաւով, Ասորես-տան մտաւ ու Նաբուպալասարին ձեռքէն շատ քաղաքներ առաւ։ Ետքը անոր Նաբուքոդոնո-սոր տղէն յաղթուած Եգիպտոս դառնալու ա-տենը՝ լսեց Ճամբան որ առանց իրեն հարցընելու Յովսիայի տեղը անոր որդին Յովաքազը Թագա-ւորեցուցեր են Հրեայք․ իրեն կանչեց զինքը ու շղթայակապ Եգիպտոս խրկեց։ Եւ ինքը գնաց Երուսաղէմ Եղիակիմը Թագաւոր նստեցուց, վրան շատ տուրք դրաւ ու դարձաւ Եգիպտոս։ Տասնըվեց տարի Թագաւորեց Նեքաւով ու մե-ռաւ, և տեղը նստաւ Փսամմութէս (601)։

1 Փսամմութեսի Թագաւորութիւնը վեց տարի քշեց, ան միջոցին երևելի դիպուած մը չպատա-հեցաւ։ Ինքը Եթովպացւոց վրայ պատերազմի գնաց ու դառնալու ժամանակը մեռաւ (595)։

---

1 Փսամմութէս քանի՞ տարի Թագաւորեց։

# ԳԼՈՒԽ Գ.

Վափրէս. — Ամասիս. — Փսամմենէս. — Կամբիւսէս Եգիպտոսի կը տիրէ. — Դարեհ. — Քսերքսէս. — Ինարոս. — Ամիրտէոս. — Պարսիկք Եգիպտոսէն կը վռնտուին. — Պաւսիրիս. — Փսամմետիքոս Բ. — Նեխտանեբոս Ա. — Տաքոս. — Նեխտանեբոս Բ. — Արտաշէս. — Մեծն Աղեքսանդր. — Պտղոմէոս Սոտեր. — Փարոս. — Գրադարան. — Պտղոմէոս Փիլադելփոս. — Պտղոմէոս Եւերգետէս. — Իր յաջորդները. — Կղէոպատրա. — Եգիպտոս Հռոմէական տէրութեան մէջ գաւառ կ'ըլլայ:

1 Վափրէս, որ սուրբ գրքին մէջ Փարաւոն Վափրա կ'ըսուի, հօրը մահուընէն ետքը քսանըհինգ տարի թագաւորեց: Առջի բերան քանի մը յաջողութիւններ ունեցաւ. Կիպրոսին առեց, ծովէն ու ցամաքէն Սիդոնը պաշարեց՝ առաւ. Փիւնիկեցիքն ու Պաղեստինը նուաճեց: Աս յաջողութիւններով այնչափ հպարտացաւ որ կարծէր թէ աստուածներն ալ ուզենան զինքը չէին կրնար աթոռէն ձգել. բայց շատ չանցաւ, հասկըցուց իրեն Աստուած թէ իր տէրը երկինքն է, ու ինքը մարդ է հողեղէն: Յուդայի Սեդեկիա

1 Վափրէս ի՞նչպէս ըրաւ թագաւորութիւնը:

թագաւորն ալ յոյսը անոր վրայ դրած էր, և
Վափրէս խօսք տուեր էր որ Նաբուքոդոնոսորին
դէմ օգնէ անոր․ բայց պատերազմին վտանգաւոր
տեղը մատնեց զՍեդեկիան յաղթականին կատա-
ղութեանը․ ան ալ մտաւ Երուսաղէմ՝ կրակ
տուաւ ու քաղաքը այրեց՝ ինչպէս որ Երեմիա
մարգարէացեր էր։

1 Աստուծոյ սպառնացած պատիժն ալ Վա-
փրեսին գլուխը հասաւ։ Երբոր դարձաւ Եգիպ-
տոս ու ապստամբած Կիւրենացիքը նուաճելու
գնաց, յաղթուեցաւ, Եգիպտացիք ալ ոտք ե-
լան։ Վափրէս խրկեց իր Ամասիս զօրավարը որ
խռովութիւնը դադրեցընէ․ ապստամբները բռ-
նեցին զինքը, գլուխը թագ դրին ու կեցցէ ար-
քայ Ամասիս կանչեցին․ Ամասիս ալ զանոնք
ժողվեց ու Վափրեսին դէմ ելաւ։

2 Վափրէս Սայիս քաղաքին մէջ երեսուն հա-
զար Կարիացի և Յոնիացի և ուրիշ վարձուոր
զօրք ժողվեց ու Ամասիսին առջեւն ելաւ։ Ճակա-
տեցան երկու զօրքը Մեմփիս քաղաքին քովե-
րը․ Վափրեսին զօրքերը շատ քաջութեամբ պա-
տերազմեցան, բայց Եգիպտացւոց անհամար
բազմութենէն յաղթուեցան։ Վափրէսը բռնե-
ցին Ամասիսին բերին․ առջի բերան Ամասիս խը-
նայեց անոր, բայց ետքը Եգիպտացւոց ձեռքը
տուաւ որ տարին Սայիս իր պալատին մէջ զինքը
խեղդեցին։

---

1 Վափրէս ինչ կերպով պատժուեցաւ։
2 Ամասիս ինչպէս յաղթեց Վափրեսին։

1 Ան միջոցին Նաբուքոդոնոսոր ալ Հրէաստա-
նէն դարձաւ եկաւ Եգիպտոս. Պեղուսիոն քա-
ղաքէն ինչուան Սիենէ բոլոր երկիրը աւրըշտը-
կեց. բայց ետքը զօրացը մէջ ժանտախտ իյնելով՝
Ամասիսը Թագաւորեցուց իբրև փոխարքայ Ե-
գիպտոսի, ու ինքը Բաբելոն դարձաւ։

2 Ամասիս երբոր ամէն կողմէն հանդարտեցաւ,
տեսաւ որ իր աննշան հասարակ մարդ մը ըլլա-
լուն համար ժողովուրդը զինքը չպատուեր, ա-
սանկ հնարք մը մտածեց։ Իր ոտք լուալու ոսկիէ
կոնքը արձան Թափել տուաւ ու հրապարակը
դրաւ. Եգիպտացիք աս արձանը նոր աստուած
մըն է ըսելով սկսան պաշտել։ Ան ատենը Ամա-
սիս կանչեց զիրենք ու ըսաւ. Աս արձանը որ հի-
մայ այդչափ ջերմեռանդութեամբ սկսաք պաշ-
տել, առաջ ոտք լուալու կոնքս էր. ես ալ ահա
առաջ հասարակ մարդ մըն էի, ետքը ձեր Թա-
գաւորն եղայ, ուրեմն պէտք է որ զիս ալ պա-
տուէք։ Ան օրէն սկսան Եգիպտացիք ամէն Թա-
գաւորական պատիւ տալ իրեն, ու ըսածներուն
սիրով հնազանդիլ։ Իր կողմանէ ալ Ամասիս ան-
խոնջ գործունէութեամբը և իմաստուն կառա-
վարութեամբը արժանի եղաւ ժողովրդեան մե-
ծարանքին։ Կիւրենացւոց հետ հաշտութիւն ը-

---

1 Նաբուքոդոնոսոր Եգիպտոսի վրայ ի՞նչ փոփո-
խութիւն ըրաւ։

2 Ամասիս ի՞նչ հնարքով ինքզինքը պատկառելի
ըրաւ իր հպատակներուն։

րաւ։ Յոյները շատ կը սիրէր, շատ բարիք ըրաւ անոնց և հրաման տուաւ որ ով որ կ'ուզէ գայ Եգիպտոս Նաւկրատ ըսուած նաւահանգիստը բնակի. Պիւթագորաս փիլիսոփան ալ իր աշքունիքը ընդունեցաւ, Կիպրոս կղզւոյն տիրեց։ Շատ փառաւոր շէնքեր շինեց ու շատ կոթողներ ու մարդակերպ սփինքսեր կանգնել տուաւ։ Ամենէն աւելի իր հայրենիքը Սայիս քաղաքը զարդարեց. հոյակապ մեհեան մը շինել տուաւ որ մէջի միակտուր քարէ փորած մատուռը շատ զարմանալի էր, քանզի մէկ կանգուն երկայնութիւն ունէր, տասնըչորս կանգուն լայնութիւն և ութը կանգուն բարձրութիւն. աս քարը Եղեփանտին քաղաքէն Նեղոս գետին մէջէն երկու հազար հոգի երեք տարուան մէջ հազիւ կրցան բերել կ'ըսեն։

1 Ամասիսի թագաւորութեան ատեն շատ ծաղկեցաւ ու փառաւորուեցաւ Եգիպտոս. կ'ըսեն թէ ինչուան քսան հազար քաղաք կար մէջը։ Քառասունըչորս տարի թագաւորեց Ամասիս, ու իրեն յաջորդ թողուց իր Փսամմենէս որդին (526)։

2 Դեռ նոր աթոռը նստեր էր Փսամմենէս, Կամբիւս Պարսից թագաւորը վրան պատերազմի ելաւ։ Պեղուսիոն քաղաքին քով յաղթուեցան

---

1 Ամասիսի թագաւորութեան ատենը ինչ վիճակի մէջ էր Եգիպտոս։

2 Փսամմենէս ինչպէս ըրաւ թագաւորութիւնը։

Եգիպտացիք ու փախան Մեմփիս մտան։ Տասը օրուան մէջ Կամբիւս քաղաքն առաւ, և անով բոլոր Եգիպտոսի տիրեց (525)։ Փսամմենիտն ալ բռնեց, բայց ազատ թողուց, նորէն ալ պիտի թագաւորեցընէր. բայց երբոր լսեց որ անիկայ Եգիպտացիքը ապստամբութեան կը գրգռէ՝ սպաննել տուաւ։

1 Կամբիւս Եգիպտոսի տիրելէն ետքը Եթովպիա արշաւելու ատեն ձախորդութեամբ զօրացը մեծ մասը կորսնցուց. ան բանիս վրայ կատղած երբոր Եգիպտոս կը դառնար՝ տեսաւ որ Ապիս աստուածը գտնելուն համար ուրախացած հանդէս կ'ընէին, և կարծելով թէ իրեն հանդիպած դժբաղդութեանը վրայ կ'ուրախանան, Ապիս աստուծոյն քուրմերը ծեծել տուաւ, Ապիսն ալ իր ձեռքովը վիրաւորեց՝ որ քանի մը օրէն մեռաւ, ետքը մեհեանները կողոպտեց, արձանները կոտրեց, շէնքերը կործանեց, բոլոր երկիրը ապականեց։ Ինքն ալ ձի հեծնելու ատեն թրին վրայ ընկաւ վիրաւորուեցաւ ու Ասորւոց երկիրը մեռաւ (522). Եգիպտացիք կարծեցին որ իրենց Ապիս աստուածը սպաննելուն համար ասանկ պատժուեցաւ։

2 Շմերդ մոգին յաջորդը Դարեհ Վշտաս-

---

1 Կամբիւս ինչ անգթութիւններ ըրաւ Եգիպտոս։

2 Դարեհ ինչպէս վարուեցաւ Եգիպտացւոց հետ։

պետայ. Եգիպտացւոց քուրմերէն գիտութիւն սորվեցաւ, անոնց գրքերը կարդաց ու անոնց հին Թագաւորաց շատին սովորութեանցը հետեւեցաւ։ Ինքն ալ սկսաւ առաջ տանիլ ան ջրանցքը որ Նեքաւով սկսեր էր փորել տալ՝ Նեղոս գետը Կարմիր ծովուն հետ միացընելու համար. բայց քիչ ատենէն թողուց. վասն զի ըսին իրեն թէ Եգիպտոսը Կարմիր ծովուն երեսէն ցած ըլլալով՝ բոլոր երկիրը ջուր կը կոխէ։

1 Պարսից կուսակալներն ու զինուորները շատ անգամ ծաղր կ'ընէին Եգիպտացիքը, անոնց պաշտամունքն ու աստուածները. անոր համար վերջապէս չդիմացան Եգիպտացիք ու ապստամբեցան։ Եւ Դարեհ երբոր զանոնք նուաճելու կը պատրաստուէր՝ մեռաւ (486)։

2 Քսերքսէս իր հօրը Դարեհին խորհուրդը կատարեց ու Եգիպտոսը նորէն նուաճեց (465)։ Երբոր Քսերքսէս սպաննուեցաւ, դարձեալ ուզեցին Եգիպտացիք ազատութիւննին ձեռք ձգել։

3 Լիբիոյ Թագաւորին որդին Ինարոս՝ տեսնելով Եգիպտացւոց փափաքը, եկաւ զանոնք ոտք հանեց ու Թագաւոր գրուեցաւ։ Թագաւորութեանը մէջ հաստատ մնալու համար շատ

---

1 Պարսից կուսակալները ինչպէս կը վարուէին Եգիպտացւոց հետ։

2 Քսերքսէս կրցա՞ւ նուաճել Եգիպտացիները։

3 Ո՞վ եղաւ Եգիպտացիները Պարսից դէմ ոտք հանողը։

զօրք ժողվեց, շատ զօրք ալ դրսէն վարձեց: Աթենացիք իրեն իրեք հարիւր նաւ խրկեցին զօրքերով լեցուն, որ Նեղոսէն ինչուան Մեմփիս գնային ու քաղաքին երկու թաղերուն դիւրաւ տիրեցին: Պարսիկք ու իրենց հաւատարիմ մնացած Եգիպտացիքը երրորդ թաղին մէջ փակուած մնացին. Աթենացիք ալ զանոնք հոն պաշարեցին:

1 Պարսից նաւատորմիղը ծովէն ու զօրքը ցամաքէն Մեգաբիսին առաջնորդութեամբը եկան Եգիպտոս մտան (460): Եգիպտացիք յաղթուեցան. Յոյնք Մեմփիսէն քշուած՝ Պրոսոպիտիս կղզին փախան, հոն տասնըութը ամիս դիմանալէն ետքը Պարսից հետ հաշտութիւն ըրին: Իսկ Ինարոս մատնութեամբ Պարսից ձեռքը ընկաւ ու խաչի վրայ սպաննուեցաւ:

2 Եգիպտացիք անոր որդին Ամիրտէոսը թագաւորեցուցին, որ գնաց Եգիպտոսի ներսերը թագաւորեց, և Պարսիկք չկրցան անոր մօտենալ:

3 Ան տարիները Աթենքին մէջ մեծ անուն հանած էր Կիմոն, ասիկայ չուզելով որ Աթենացիք ուրիշ Յունաց հետ պատերազմին, նայեցաւ որ զանոնք արտաքին պատերազմներու զբաղեցընէ. ուստի Ամիրտէոսի վաթսուն նաւ խրկեց, ինքն ալ կը պատրաստուէր Եգիպտոս երթալու, բայց մահը վրայ հասնելով Կիպրոս կղզին մեռաւ

---

1 Պարսիկք նորէն ինչպէս տիրեցին Եգիպտոսի:
2 Ինարոսի ո՞վ յաջորդեց:
3 Ամիրտէոս ինչպէս յաղթեց Պարսից:

(449)։ Ամիրտէոս ան օգնութենէն զրկուած՝ կը մտածէր որ պիտի չկարենայ երկար ատեն Պարսից զօրութեան դէմ դնել. բայց երբոր Եգիպտացիք խօսք տուին իրեն քաջութեամբ պատերազմելու՝ դիմեց Պարսից վրայ, յաղթեց անոնց ու Եգիպտոսէն հալածեց։ Քիչ մը ետքը Փիւնիկէ գնաց պատերազմով. բայց յաղթուեցաւ, ու անկէց ետքը շատ չապրեցաւ, մեռաւ։

1 Ամիրտէոսին յաջորդեց որդին Պաւսիրիս, որ նորէն Պարսից հարկատու եղաւ։

2 Փսամմետիքոս Բ, որ Պաւսիրիսին յաջորդեց՝ նենգութեամբը միայն անուանի եղաւ։ Տանոս անունով նախարարը Արտաշէսէն ապստամբած ըլլալով, բոլոր հարստութիւնները առած Եգիպտոս եկեր ու Փսամմետիքոսի ապաւիներ էր։ Փսամմետիքոս առջի բերան սիրով ընդունեցաւ զինքը, բայց ետքը անոր գանձերը ձեռք ձգելու համար՝ զինքն ու բոլոր որդիքը մեռցընել տուաւ։

3 Փսամմետիքոսէն ետքը շատ թագաւորներ եղան՝ որոնց անունը միայն կը յիշուի պատմութեանց մէջ. անոնցմէ ետեւ նստաւ Նեկտանեբոս Ա, որ բոլորովին Եգիպտոսը Պարսից ձեռքէն ազատեց (375)։

4 Նեկտանեբոսին յաջորդեց Տաքոս (363)։

---

1 Ամիրտէոսի յաջորդ ո՞վ եղաւ։
2 Փսամմետիքոս Բ, ի՞նչ կողմանէ անուանի է։
3 Փսամմետիքոսին ո՞վ յաջորդեց։
4 Նեկտանեբոսին ո՞վ յաջորդեց։

Երբոր Պարսիկները Յունաստանէն դարձած կը պատրաստուէին նորէն Եգիպտոս արշաւելու, Տաքոս Սպարտացւոցմէ օգնութիւն ուզեց. անոնք ալ շատ զօրք խրկեցին Ագեսիլայոս թագաւորին զօրավարութեամբը։ Երբոր հասան Սպարտացիք՝ Ագեսիլայոսը տեսնելու համար բոլոր Եգիպտացիք ծովեզերքը թափեցան, կարծէին որ մեծահասակ փառաւոր մարդ մըն է, բայց երբոր տեսան որ իննսուն տարեկան, փոքրահասակ խեղճ մարդ մըն է, վրան սկսան խընդալ։ Տաքոս ինչպէս որ խոստացեր էր՝ Ագեսիլայոսը բոլոր զօրաց սպարապետ չըրաւ, ասոր քիչ մը նեղացաւ Ագեսիլայոս. անկէց զատ թագաւորը կ'ուզէր Փիւնիկէ երթալ պատերազմիլ, իսկ Ագեսիլայոս կ'ըսէր թէ պէտք չէ որ թագաւորութենէդ հեռանաս։ Մտիկ չըրաւ Տաքոս, թողուց Եգիպտոսը Ագեսիլայոսին, ինքը գնաց Փիւնիկէ։

1 Ագեսիլայոս Եգիպտացւոց հետ միացաւ, անոր եղբօրորդին Նեկտանեբոսը տեղը թագաւորեցուց։ Իսկ Տաքոս Եգիպտոսէն հալածուած գնաց Պարսից դուռը. Արտաշէս ներեց իրեն ու զինքը զօրավար դրաւ։ Ագեսիլայոս քիչ մը ատեն Նեկտանեբոսին քով կեցաւ, շատ յաղթութիւններ ընել տուաւ անոր, թագաւորութեանը մէջ զինքը հաստատեց ու դարձաւ Սպարտա։

---

1 Ագեսիլայոս զո՞վ թագաւորեցուց Տաքոսի տեղը։

1 Եգիպտացիք Արտաշեսի անհոգութեամբը անկախ Թագաւորութիւննին ձեռք ձգեր էին։ Բայց երբոր Դարեհ Ոխոս անոր յաջորդեց՝ շատ զօրք ժողվեց ու Թեբէէն, Արգոսէն, Փոքր Ասիոյ ուրիշ քաղաքներէն օգնութիւն առած՝ Եգիպտոսի վրայ գնաց։

2 Պարսից զօրավարները երկրին ամէն կողմը աղէկ չգիտնալով Սերբոնիսի ճահիճներուն մէջ շատ մարդ կորսընցուցին. բայց վերջապէս Պարսից զօրքը եկաւ Պեղուսիոն քաղաքին քով բանակեցաւ։ Առջի պատերազմին մէջ Նեկտանեբոս յաղթուեցաւ, ու յուսահատած գնաց Մեմփիս մտաւ փակուեցաւ. իսկ Պեղուսիոնը պաշտպանող Յոյները որ քանի հազարի չափ վարձուոր էին, տեսնելով որ մինակ մնացին՝ Պարսից հետ հաշտութիւն ըրին։ Նեկտանեբոս ալ բոլոր ունեցածը ժողվեց, գնաց Եթովպիա քաշուեցաւ։

3 Ոխոս բոլոր Եգիպտոսի տիրելէն ետքը (350), քաղաքներուն բերդերը կործանեց ու մեհեանները կողոպտեց։ Անկէ ետքը Եգիպտացիք ազգային Թագաւոր չունեցան, և Պարսից գաւառներէն մէկը եղաւ Եգիպտոս ինչուան որ Մեծն Աղեքսանդր Պարսկաստանի տիրելով Եգիպտոսն ալ առաւ։

---

1 Դարեհ Ոխոս ինչպէս տիրեց Եգիպտոսի։
2 Նեկտանեբոս կրցա՞ւ դէմ դնել Պարսից։
3 Եգիպտացւոց ազգային Թագաւորութիւնը ինչպէս վերջացաւ։

1 Աղեքսանդր, Մարէոտիս լճին ու Միջերկրական ծովուն մէջտեղը քաղաք մը շինել տուաւ, որ իր անունովը Աղեքսանդրիա ըսուեցաւ: Ասիկայ երկու մեծ նաւահանգիստ ունենալովը մէջը շատ նաւ կ'առնէր. անոր համար շուտ մը վաճառականութեամբ ու բազմամարդութեամբ ծաղկեցաւ, մէջը շատ փառաւոր շէնքեր շինուեցան, ու եղաւ Եգիպտոսի մայրաքաղաքը, և աշխարհիս ամենէն ծաղկած քաղաքներէն մէկը:

2 Աղեքսանդր երբոր մեռաւ ու զօրավարները անոր տէրութիւնը մէջերնին բաժնեցին: Լագոսի որդին Պտղոմէոս՝ արդէն Աղեքսանդրի ատենը Եգիպտոսի կուսակալ դրուած ըլլալով՝ Եգիպտոսի վրայ թագաւորեց, ու Լագոսեանց ցեղին իշխանութիւնք իրմէ սկսաւ (323):

3 Պտղոմէոս Եգիպտոսի հետ միացուց Լիբիան, Արաբիան, Պաղեստինը և Ստորին Ասորիքը: Հռոդացւոց պաշարուած ատենը իրենց օգնեց. Հռոդացիք ալ անոր անտառ մը նուիրեցին ու հոն իրեն սկսան աստուածական պատիւ ընծայել, և անունը Սոթէր դրին որ Փրկիչ ըսել է:

4 Աղեքսանդրիոյ նաւահանգստին բերանը Փա-

---

1 Աղեքսանդր ի՞նչ շէնք շինեց Եգիպտոսի մէջ:
2 Աղեքսանդրի մահուընէն ետքը ո՞վ տիրեց Եգիպտոսի:
3 Պտղոմէոս ի՞նչպէս ըրաւ թագաւորութիւնը:
4 Ի՞նչ երևելի շէնք շինեց Պտղոմէոս:

Ռոս կղզւոյն մէջ Նաւորդաց լոյս տալու համար աշտարակ մը շինել տուաւ, որ՝ աշխարհիս եօթը հրաշալեաց մէկը սեպուեցաւ: Գիտութիւնները ծաղկեցուց, Աղեքսանդրիոյ հռչակաւոր դրատունը շինեց՝ որուն մէջ եօթը հարիւր հազարէն աւելի գիրք կար կ'ըսեն: Ինքն ալ ոչ միայն ուսումնասէր զօրավար ու Թագաւոր էր, այլ և երևելի մատենագիր. Աղեքսանդրի վարք մը գըրեց որ հիները շատ կը գովեն, և հիմայ կորսուած է:

1 Պարզութիւն շատ կը սիրէր Պտղոմէոս. իր զօրավարներէն Թագաւորական աթոռովը միայն կը զանազանուէր: Ժողովրդեան հետ շատ ընտանութեամբ ու սիրով կը վարուէր. շատ անգամ անոնց հետ կ'երթար կերակուր կ'ուտէր: Երբոր իրեն կ'ըսէին որ Թագաւորին աւելի փառք ու հարստութիւն կը վայլէ, պատասխան կուտար թէ Թագաւորի մը ճշմարիտ փառքն ու մեծութիւնը իր հպատակացը հարստութիւնն է:

2 Պտղոմէոս քառասուն տարի Թագաւորելէն ետքը աթոռէն հրաժարեցաւ, ու իրեն յաջորդ դրաւ որդին Պտղոմէոսը. իսկ ինքը երկու տարիէն մեռաւ:

3 Պտղոմէոս (285) իր երկու եղբարցը հետ

---

1 Բնութեանը կողմանէ ի՞նչ մասնաւոր յատկութիւն ունէր:

2 Պտղոմէոս Սոտեր քանի՞ տարի Թագաւորեց:

3 Սոտերի որդին ի՞նչպես սկսաւ Թագաւորութիւնը:

պատերազմեցաւ որ կ'ուզէին Թագաւորութիւ-
նը ձեռքէն առնուլ, յաղթեց անոնց, բռնեց ու սպաննել տուաւ. ասոր համար հեգնութեամբ Փիլադելփոս այսինքն Եղբայրասէր ըսուեցաւ։ Հռովմայեցւոց հետ բարեկամութիւն ըրաւ. Ասորւոց Անտիոքոս Թագաւորին դաշնակից եղաւ, և իր աղջիկը Բերինիկէն անոր հարս տուաւ։

1 Պտղոմէոս օրէ օր Աղեքսանդրիոյ մատենադարանը ճոխացընելու կը նայէր. ուզեց որ Հրէից աստուածաշնչին յունարէն Թարգմանութիւնն ալ հոն գտնուի. ուստի իր խնդիրքովը Հրէից Եղիազար քահանայապետը ոսկեգիր աստուածաշունչ մը խրկեց անոր, եօթանասունուերկու ալ յունագէտ կարդացող րաբունիներ։ Թագաւորը զանոնք պատուով ընդունեցաւ ու Փարոս կղզին խրկեց. հոն եօթանասունուերկու օրուան մէջ ամբողջ սուրբ գիրքը Թարգմանեցին, և ան Թարգմանութիւնը ըսուեցաւ Թարգմանութիւն Եօթանասնից։ Պտղոմէոս կարդաց ու Հրէից օրինաց արդարութեանն ու իմաստութեանը վրայ շատ զարմացաւ։ Ետքը աղնիւ ընծաներ տալով Թարգմանչաց՝ քահանայապետին ու Երուսաղեմայ տաճարին, պատուով ճամբեց զանոնք (275)։ Գիտնոց հետ տեսնուիլ ալ շատ կը սիրէր ու առատութեամբ զանոնք

---

1 Ուսումնասիրութեան կողմանէ՝ ինչպէս էր Պտղոմէոս Փիլադելփոս։

կը վարձատրէր. ուստի իմաստունք և բանաստեղծք իր արքունեացը զարդերն էին. անոնց մէջ անուանիներն են Լիկոփրոն, Կալլիմաքոս և Թէոկրատէս։

1 Պտղոմէոս ուզելով հաստատցընել իր թագաւորութիւնը՝ ջանաց երկրին մէջ ծաղկեցընել արևելքի վաճառականութիւնը որ ինչուան այն ատենը Տիւրացւոց ձեռքն էր։ Նեքաւոյի սկսել տուած ջրանցքը առաջ տարաւ լմընցուց, ու Կարմիր ծովը Միջերկրական ծովուն հետ միացուց։ Ասով Աղեքսանդրիան աշխարհիս իրեք մասին ալ վաճառականութեան համբարանոցը եղաւ։

2 Փիլադելփոսին յաջորդեց որդին Պտղոմէոս (246), որ Անտիոքոսէն իր քրոջը Բերենիկէին վրէժը առնելու համար, որովհետև Անտիոքոս զանիկայ արձըկեր էր, գնաց Ասորւոց երկրին տիրեց, Եփրատէն անցաւ, ու յաղթութեամբ ինչուան Տիգրիս հասաւ։ Բայց ատէրութեան մէջ անակընկալ խռովութիւն մը ելլելով ետ դարձաւ անբաւ հարստութեամբ, Կամբիւսին տարած Եգիպտացւոց աստուածներուն արձաններն ալ հետը բերաւ։ Եգիպտացիք իրենց կորընցուցած աստուածները նորէն գտնելնուն վրայ շատ ուրախացած՝ Պտղոմէոսին երախտա-

---

1 Վաճառականութիւնը ծաղկեցընելու համար ի՞նչ ըրաւ։

2 Փիլադելփոսին ո՞վ յաջորդեց։

գէտափերկնալու մտքով անունը Ս-Էրճէփէս դրին, որ Բաչէչաչ ըսել է։

1 Պտղոմէոս պատերազմի գնացած ատենը Բերինիկէ կինը վախնալով որ չըլլայ թէ երիկը փորձանքի մը հանդիպի, ուխտ ըրաւ որ եթէ անվտանգ դառնայ Պտղոմէոս՝ իր երկայն մազերը կտրէ ու աստուածներուն նուիրէ։ Երբոր յաղթութեամբ դարձաւ Պտղոմէոս, Բերինիկէ մազերը Աստղիկ կուռքին տաճարը նուիրեց։ Քիչ ատենէն ան մազը գողցուեցաւ. երբոր Պտղոմէոս կ'ուզէր քուրմերը պատժել, Կոնոն Սամոսացի ճարտար չափաբանը, վարպետութեամբ ըսաւ թէ Ան մազը աստուածոց շատ հաճոյ անցնելուն համար՝ երկինքը փոխադրեցին ու համաստեղութեանց կարգը դրին. տեղն ալ ցըցուց Առիւծ համաստեղութեան պոչին վրայ եղած եօթը աստղերը. որ անկէց ետքը զատ համաստեղութիւն եղան ու ըսուեցան Բէրէնիկէան գէս։

2 Եւերգետէսն ալ իր պապուն ու հօրը պէս գիտութիւնները ծաղկեցընելու շատ ջանք ըրաւ. ու քսանըհինգ տարի թագաւորելէն ետքը մեռաւ։

3 Հարիւր տարիի չափ մեծ փառքով թագա-

---

1 Բերինիկէ թագուհւոյն վրայ ի՞նչ կը պատմուի։

2 Եւերգետէս ի՞նչպէս ու ո՞րչափ ատեն թագաւորեց։

3 Պտղոմէոս Եւերգետէսին յաջորդները ի՞նչպէս եղան։

ւորեցին Եգիպտոս աս իրեք թագաւորները։ Բայց իրենց յաջորդները (որ երկու հարիւր տարիի չափ ալ անոնք թագաւորեցին) բոլոր Եգիպտոսը անկարգութեամբ ու անօրէնութեամբ լեցուցին. իրենք զիրենք փափկութեան ու զեղխութեան տուին. իրենց հպատակաց թափած արեամբը գոհ չեղան, անյագ փառասիրութեամբ անդադար մէկզմէկ կը ջարդէին, ինչուան որ բոլոր Եգիպտոսը օտարաց իշխանութեան տակը ձգեցին։

1 Հռովմայեցիք որ առաջ Պտղոմէոս Եղբայրասիրին հետ դաշնակցութիւն ըրեր էին, երբոր ասոնցմէ կանչուեցան որ գան իրենց մէջի ընտանեկան կռիւը դադրեցընեն, կամաց կամաց սկըսան Եգիպտոսի մէջ զօրանալ, ու վերջապէս բոլորովին տիրապետեցին ան երկրին։

2 Պտղոմէոս Աւլետին աղջիկը Կղէոպատրա՝ Եգիպտոսի վերջի թագաւորը եղաւ (44)։ Յուլիոս Կեսար երբոր մեռաւ, Կղէոպատրա Անտոնիոսի կողմը անցաւ, և Ակտիոնի պատերազմէն ու Անտոնիոսի մահուընէն ետքը ջանաց Ոկտաւիանոսին աչքը մտնել, բայց չկրցաւ. ու չուզելով որ Հռովմ տարուի ու Ոկտաւիանոսի յաղթանակին զարդն ըլլայ, ինքզինքը իժի մը խածնել տուաւ ու մեռաւ։ Կղէոպատրային մեռնելէն ետքը Ոկտաւիանոս Եգիպտոսը Հռովմայեց-

---

1 Հռովմայեցիք ի՞նչ կերպով տիրեցին Եգիպտոսի։
2 Եգիպտոսի վերջի թագաւորն ո՞վ եղաւ։

ւոց գաւառ ըլլաւ, ու շատ հարստութիւն Հռովմ տարաւ (30)։

## ԳԼՈՒԽ Դ.

Եգիպտացւոց կրօնքը. — Ոսիրիս. — Ապիս եզը. — Զոհերը. — Քուրմերու կրօնքը. — Հոգեփոխութիւն. — Բուրգեր. — Թագաւորք. — Զինուորք. — Հովիւք. — Արուեստաւորք. — Երկրագործք։

1 Եգիպտացիք առաջ տարերքն ու աստղերը սկսան պաշտել։ Վրան. շատ չանցաւ, աստղերն ու տարերքը անձնաւորեցին, անոնց արձաններ շինեցին, մեհեաններ կանգնեցին, քուրմեր դրին, ու սկսան առջեւնին զոհ մատուցանել։

2 Եգիպտացւոց գլխաւոր աստուածներն էին Ոսիրիս և Իսիս։ Ոսիրիսի անուանով կը պաշտէին Արեգը, Երկինքը և Նեղոս գետը։ Ոսիրիսի վրայ պատմած ճամբորդութիւններն, ու արեւելքի տիրելն ու զանիկայ կրթելը, արեւուն ընթացքն է՝ որ անցնելու տանը ամէն տեղ պտղաբերութիւն կը ձգէ։ Ոսիրիսը կը նկարէին՝ ձեռքը թա-

---

1 Եգիպտացւոց կրօնքն ի՞նչ էր։

2 Իրենց գլխաւոր աստուածները որո՞նք էին։ — Ոսիրիսի վրայ ի՞նչ գիտելիք կայ։ — Իսիսի վրայ ի՞նչ կայ գիտնալիք։

գաւորական գաւազան, և գաւազանին վրայ աչք մը՝ իշխանութեանն ու գիտութեանը նշան։ Իսկ Իսիսի անունով կը պաշտէին Լուսինը, Օդը, Երկիրս և Բնութիւնը։ Իսիսը կը նկարէին կովու գլուխ մը՝ եղջիւրներուն մէջ երկրագունտ կեցուցած։

1 Եգիպտացւոց ուրիշ պաշտած աստուածներն էին Հորոս, որ Յունաց Ապողոնին տեղը կը սեպուէր, և Լոտոս բոյսին ծաղկին վրայ նըստած կը նկարուէր։ Հարպոկրատ, լռութեան աստուածը, կը նկարուէր մէկ մատը բերնին դրած։ Անուբիս, Օսիրիսին ու Իսիսին հաւատարիմ ընկերը, շան գլխով կը նկարուէր։ Տիւփոն, չար ոգին կամ սատանայ, բարեգործ աստուածոց թշնամի, կարմրագոյն մազերով կը նկարէին. անոր համար որոնց մազն որ կարմրագոյն էր՝ Եգիպտացիք կը զզուէին անոնցմէ։

2 Եգիպտացիք կենդանապաշտութիւն ալ կ՚ընէին, ուստի որչափ որ երկիրնին կենդանի կար՝ ո՛րը կը պաշտէին իբրև աստուած. որն ալ մէյմէկ աստուածներու նուիրած էին։ Ասոնց ծառայելու համար մասնաւոր մարդիկ դրուած էին, որ բոլոր ժողովրդեան առջևն ալ պատիւ ունէին իբրև աստուածոց սպասաւորներ. և իրենց պաշտօնը որդւոց որդի էր։ Ան կենդանեաց պէտք եղած ծախքն ալ աս բանիս համար սե-

---

1 Ուրիշ ի՞նչ աստուածներ ունէին Եգիպտացիք։
2 Եգիպտացիք կենդանիներ ալ կը պաշտէի՞ն։

փակուած կալուածներու եկամուտը կ՚ըլլար, Թէպէտ առանձնական մարդիկ ալ շատ ընծա-ներ կուտային։

1 Ան կենդանեաց ոչ միայն առատ ու ազնիւ կերակուրներ կը կերցընէին, այլ և ամէն տե-սակ հոգ ու խնամք ունէին անոնց վրայ։ Ամէն օր կը լուային, անուշահոտ իւղերով կ՚օծէին, ազնիւ դիպակներով կը ծածկէին, փափուկ գորգերու վրայ կը պառկեցընէին, ու առջեւնին անուշահոտ խունկեր կը ծխէին։ Այնչափ էր Եգիպտացւոց աս անբան կենդանեաց ըրած մե-ծարանքն, որ անգամ մը երբոր սաստիկ սով ե-ղեր է Եգիպտոս՝ մարդիկ եղեր են որ մէկզմէկ կերեր են, բայց ան կենդանեաց մէկն ալ չէ դպած։

2 Երբոր ան կենդանեաց մէկը տան մը մէջ սատկէր բոլոր տնեցիք սուգ կը մտնէին ինչպէս թէ իրենցմէ մէկը մեռած ըլլար։ Յանկարծ թէ որ մարդ մըն ալ սրբազան կենդանեաց մէկը սպաննէր, կամաւ սպաննողին պատիժը մահ էր, ակամայ մեռցընողինը տուգանք։ Իսկ թէ որ մե-ռածը քաջահաւ թռչունը կամ բազէ մը ըլլար՝ մեռցընողը թէ ակամայ մեռուցած ըլլար և թէ կամաւ՝ պատիժը միշտ մահ էր։

3 Մեռնելէն ետքը ան կենդանիները կը զմռ-

---

1 Ի՞նչ պատիւներ կ՚ընէին կենդանեաց։
2 Կենդանի մը որ մեռնէր ի՞նչ կ՚ընէին։ — Կեն-դանի սպաննողին պատիժն ի՞նչ էր։
3 Եգիպտացիք կենդանիները ո՞ւր կը թաղէին։

ռէյին ու ամէն տեսակին համար զատ զատ՝ պատրաստուած գերեզմանները կը տանէին։ Ոմանք բուն մեռած տեղերնին կը թաղուէին, ինչպէս շունը, հիլոս կամ Փարաւոնի մուկը, արջը, գայլն ու աղուէսը. ուրիշներն ալ մասնաւոր տեղեր կը թաղուէին, օրինակի համար՝ կատուները Բուբաստիս քաղաքը, բազէները Բուտոյ, և քաջահաւները Հերմոպոլիս։

1 Եգիպտոսի մէջ ամէն տեղ ալ ամէն կենդանի չէր պաշտուէր. կենդանի կար որ մէկ գաւառին մէջ իբրև աստուած կը պաշտուէր, մէկալ գաւառէն իբրև թշնամի կը հալածուէր։ Բայց եզը ամէն Եգիպտացիք ալ մեծ ջերմեռանդութեամբ կը պաշտէին. վասն զի կ'ըսէին թէ Ոսիրիսի հոգին անոր մեռնելէն ետքը եզան մը փորը մտեր է, ու անկէց բոլոր եզներու մէջ կը պտըտի։

2 Ոսիրիսի հոգին ունեցող սեպուած եզը Ապիս կ'ըսուէր. անիկայ այլ և այլ նշաններով կը ճանչնային. այսինքն բոլոր մարմինը սև պիտի ըլլար, ճակտին վրայ քառակուսի ճերմակ խայտուց մը պիտի ունենար, ուսին վրայ արծիւի նման ձև մը, լեզուին տակը բզեզի, աջ կողմին վրայ ալ մահիկ կամ լուսնի եղջիւր մը։ Մեմփիս

---

1 Եգիպտոսի մէջ ամէն տեղ նո՞յն կենդանիները կը պաշտէին։

2 Ոսիրիսի հոգին ունեցող եզը ի՞նչ կ'ըսուէր։ — Ապիս եզին մասնաւոր նշաններն որո՞նք էին։

քաղաքին մէջ երկու փառաւոր մեհեան կար աս եզին համար, մէյմը մեկուն՝ մէյմը մեկալին մէջ կը բնակէր, և քուրմերը անոր անունովը պատգամներ կուտային։ Ամէն տարի տօնը կը կատարուէր, որ եօթը օր կը տևէր. ան օրերը քուրմերը մեծ Թափորով կ՚առնէին եզը վեր վար կը պտըտցընէին, ու ժողովուրդը անոր ամէն մէկ բառաչելուն կամ գլուխը շարժելուն՝ գետին կ՚իյնար երկրպագութիւն կ՚ընէր։

1 Որոշուած էր որ Ապիս եզը այսչափ տարի պիտի ապրէր. երբոր ան ժամանակը հասնէր, քուրմերը զինքը կ՚առնէին Նեղոս գետին եզերքը կը տանէին ու այլ և այլ արարողութիւններով հոն գետը նետելով կը խղդէին։ Մեռնելէն ետքը քուրմերը գլուխնին կը գերծէին, ու բոլոր Եգիպտոս սուգ կը մտնէր ինչուան որ ուրիշ եզ մը գտնուէր։ Ան ատեն ամենուն սուգն ու տրտմութիւնը ուրախութեան կը փոխուէր. կը տանէին նոր Ապիսը Նեղոսի քաղաքը, հոն կանայք քառասուն օր զինքը կը մաքրէին կը դարմանէին. և ան քառասուն օրէն ետքը ամենևին ալ կնիկ մարդ չէր կրնար քովը մօտենալ։ Ետքը փառաւոր զարդարած նաւի մը վրայ կը դնէին եզն ու Նեղոս գետէն հանդիսով Մեմփիս քաղաքը տանելով՝ հոն Հեփեստոսի տաճարը կը դնէին։

---

1 Ապիսը մեռնելու որ ըլլար ինչ կ՚ընէին։

1 Եգիպտացիք ամէն տեղ նոյն տեսակ զոհ չէին ըներ աստուածոց, հապա ամէն գաւառի մէջ տարբեր բաներ կը զոհէին։ Օրինակի համար, Թեբայիդի մէջ այծ միայն զոհ կ՚ընէին, Մանդեսիա ոչխար միայն։ Բայց եզը ամէն գաւառ կը զոհէին, ու կով զոհելու ամենեւին տեղ մը հրաման չկար։

2 Զոհի կենդանիները նախ քուրմերը կը զըննէին, ու որոնց որ կը հաւնէին՝ անոնց վրայ նըշան մը կը դնէին։ Թէ որ մէկը առանց այն նշանին կենդանի մը զոհելու ըլլար՝ պատիժը մահ էր։

3 Զոհին փորը կը լեցընէին բարակ ալիւրով շինած հաց, մեղր, չամիչ, թուզ, տեսակ տեսակ խնկեղէններ ու համեմներ. ետքը վրան ձէթ կը ցանէին ու կ՚այրէին. մնացածը քուրմերն ու զոհին տէրերը կ՚ուտէին։

4 Իսկ զոհին գլուխը մարմնէն փրցընելէն ետքը քուրմերը անոր վրայ անէծք կը կարդային, այսինքն կը խնդրէին աստուածներէն որ Եգիպտոսի ու այն զոհը մատուցանողին վրայ գալու պատիժները՝ այն գլխուն վրայ գան։ Անկէց ետքը կը տանէին գլուխը օտարականաց աժան

---

1 Եգիպտացիք ամէն տեղ նո՞յն տեսակ զոհեր կ՚ընէին։
2 Ո՛ր և իցէ կենդանի զոհ կրնա՞ր ըլլալ։
3 Ի՞նչ կերպով կը պատրաստէին զոհը։
4 Զոհին գլխուն վրայ ի՞նչ արարողութիւն կ՚ընէին։

գնով կը ծախէին. Թէ որ գնող չգտնուէր՝ Նեղոս գետը կը նետէին. իսկ իրենք Եգիպտացիք ամենևին անասնոյ գլուխ չէին ուտեր:

1 Եգիպտացւոց հասարակ ժողովրդեան կրօնքը աս բաներուս վրայ էր. բայց քուրմերը իրենց համար զատ կրօնք մը ունէին, և իրենց վարդապետութիւնները ամենևին դուրս չէին հաներ. իսկ թէ որ մէկը ուզէր իմանալ՝ պէտք էր տեսակ տեսակ փորձերէ անցնէր՝ որ Խորհըրդակցութիւն կ'ըսուէին, ու մեծամեծ երդմունքներ ընէր որ իմացած գաղտնիքները ամենևին դուրս չհանէ: Աս վարդապետութեանց գլխաւորն էր անմահութիւն հոգւոյ. բայց թէ ասոր և թէ ուրիշ նիւթերու վրայ շատ ծուռ մոլորութիւններ ալ ունէին:

2 Կ'ըսէին քուրմերը թէ մարդուս հոգին մարմնէն բաժնուելէն ետքը կ'երթայ կենդանւոյ մը փորը կը մտնէ, անկէց ալ հետզհետէ կ'անցնի ուրիշ կենդանւոյ փորը, անանկով բոլոր ցամաքային, ջրային և օդային կենդանեաց մէջ պտըտելէն ետքը մինչուան իրեք հազար տարի, նորէն կ'երթայ մարդու մը փորը կը մտնէ: Աս հոգւոյ մը մէջ մտնելը տեսակ մը պատիժ կը սեպէին. և որովհետև կը կարծէին թէ մինչուան որ մեռած մարդուն մարմինը բոլորովին չփտտի չը-

---

1 Քուրմերը ի՞նչ մասնաւոր կրօնք ունէին:

2 Հոգւոյ անմահութեան վրայ ի՞նչ կարծիք ունէին քուրմերը:

քայքայի՝ հոգին անկէ չբաժնուիր, ուրիշ կենդանույ մէջ չմտներ, ամէն ջանք կ՚ընէին որ մարմինը ուշ փտտի, և աս է պատճառը որ մեռելները կը զմռսէին:

1 Եգիպտացիք իրեք կարգ բաժնուած էին, քուրմք, զինուորք, երկրագործք ու արուեստաւորք:

2 Եգիպտոսի իրեք մասին մէկը քուրմերուն կալուածներն էին, ու ամենևին տուրք չէին տար: Իրենց ապրուստին համար ալ ամենևին ծախք չէին ըներ. վասն զի զոհի համար տրուած կենդանեաց մսէն կ՚ուտէին ու մէկը մէկալն ալ իրենց գինի կը բերէին, և ոչ միայն ժողովուրդը կը պատուէր զիրենք, հապա նաև թագաւորները, և առանց անոնց հարցընելու բան մը չէին ըներ:

3 Բայց շատ անելորդապաշտական պարտքեր ալ ունէին քուրմերը: Իրենց հագուստը կտաւեղէն միայն պիտի ըլլար, ոտքի ամաննին ալ պապիրէ *, վրանին գլուխնին ամենևին աղտ մը պիտի չըլլար. ուստի պարտըկան էին գիշեր ցո-

---

1 Եգիպտացիք քանի՞ կարգ կը բաժնուէին:
2 Քուրմերը ի՞նչ ազատութիւններ ունէին:
3 Ի՞նչ պարտքեր ունէին քուրմերը:

* Պապիրը ջրի եզերքը կանգնող բոյս մըն է որ Եգիպտոս կը բուսնի, և հին ատենը անոր թերթերուն վրայ գիր կը գրէին:

րեկ երկերկու անգամ պաղ ջրով լուացուիլ։ Ամենեւին ձուկ չէին կրնար ուտել. անոր համար Եգիպտացւոց մասնաւոր մէկ տօնին օրը՝ որ ամէնքը խորված ձուկ կ'ուտէին, քուրմերը ուտելու տեղ իրենց տանը դրան առջեւը ձուկ կ'այրէին։

1 Եգիպտոսի թագաւորաց շատն ալ քրմաց կարգէն էին. թէ որ մէկը զինուորաց կարգէն ալ թագաւոր ընտրուէր, աթոռը նստելուն պէս քուրմերուն կարգը կ'անցնէր. ու անոնց կրօնքին ամէն խորհուրդները կը սորվէր։

2 Թագաւորին կենցաղավարութեանը ու ամէն ընելու գործոցը կարգեր կանոններ դրուած էին, և անոնցմէ դուրս չէր կրնար ելլել. և չէին թողուր որ քովը անանկ մարդահաճոյ ծառաներ գտնուին որ անոնց աչքը մտնելու համար՝ ամէն ուզածնին կատարեն։ Քովը գտնուողներն ալ առաջին կարգի քրմաց ազգականներէն քսան քսանուերկու տարեկան երիտասարդներ էին։

3 Թագաւորին ժամանակն ալ ճիշդ բաժնուած էր։ Առաւօտը կանուխ կ'ելլէր ու տէրութեան բաները կը հոգար. ետքը կ'երթար զոհ ու աղօթք կ'ընէր, մեհենական գրքերու ընթերցմունք մտիկ կ'ընէր՝ որուն մէջ գրուած էին

---

1 Թագաւորներն ո՞ր կարգէն էին։
2 Թագաւորաց վարքն ի՞նչպէս էր։
3 Թագաւորին ժամանակը ի՞նչպէս բաժնուած էր։

Թագաւորաց պարտքերը, և մանաւանդ բարեխառնութեան պարտքը: Իրեն կերակրոց ոչ միայն տեսակները որոշուած էին, հապա նաև անոնց չափը, որ քիչ ու թեթև բան պիտի ըլլար: Հին ատենները արգիլուած էր իրեն գինի խմելը. բայց վերջերը հրաման եղեր էր որ քիչ մը գինի խմէ:

1 Երբոր Թագաւոր մը կը մեռնէր՝ ամէն տուն սուգ կը մտնէր. մեհեանները կը գոցուէին, զոհերը կը դադրէին և ինչուան եօթանասուն օր ամենևին տօն չէր կատարուէր: Այր և կանայք հագուստնին կը պատռէին, գլուխնին հող կը ցանէին, խումբ խումբ փողոցները ողբալով կը պտըտէին, ու օրը երկու անգամ մասնաւոր երգերով իրենց կորսնցուցած Թագաւորին առաքինութիւնները կը յիշէին ու կուլային: Այն միջոցին հաց, գինի, և ուրիշ փափուկ կերակուրներ չէին ուտեր, բաղնիք չէին երթար, ու անոյշ եղերով չէին օծուէր:

2 Յուղարկաւորութեան պատրաստութիւնը լմըննալէն ետքը՝ Թագաւորին մեռելը դագաղով մը կը դնէին անոր համար պատրաստուած գերեզմանին գաւիթը: Այն միջոցին բոլոր կեանքին մէջ անոր ըրած գործողութիւնները կը պատմէին, ու ամէն մարդ հրաման ունէր գալու ըսե-

---

1 Թագաւոր մը որ մեռնէր՝ Եգիպտացիք ինչպէս սուգ կը մտնէին:

2 Թագաւորին թաղումն ինչպէս կ՚ընէին:

6*

լու ինչ յանցանք կամ անիրաւութիւն որ գիտէր վրան։ Ժողովուրդը հոն գիզուած՝ Թագաւորին բարի գործքերն ու առաքինութիւնները լսելով կը գովէր ու կ'օրհնէր. գէշ գործքերն ալ լսելով կ'անիծանէր ու կը նզովէր։ Շատ Թագաւորներ ասանկ ժողովրդեան դատաստանովը դատապարտուած՝ Թաղման պատուէն ու իրենց Թագաւորական գերեզմանէն զրկուեցան. բայց աւելի շատերն ալ ան սոսկալի պատժէն ազատելու համար՝ նայեցան որ արդար ու առաքինի կեանք մը ունենան։

[1] Եգիպտոսի երկիրներուն իրեք մասին մէկն ալ զինուորաց կարգին տրուած էր, ու ասոնք ալ ամէն տուրքէ ազատ էին։ Միայն զինուորական կրթութեան հետ կրնային ըլլալ, ուրիշ արուեստ բանեցընելը իրենց արգիլած էր։ Աս կարգը երկու ցեղ բաժնուած էր. ամէն մէկէն հազարական հոգի կ'ընտրուէին Թագաւորին Թիկնապահ, և ամէն օր իրենց հաց, եզան միս ու գինի կը տրուէր։

[2] Երրորդ կարգը իրեք գլխաւոր դաս կը բաժնուէր, այսինքն Հովիւ, Արուեստաւոր և Երկրագործ։ Երկրագործները քուրմերուն, Թագաւորաց ու զինուորաց երկիրները կը մշակէին։ Արուեստները ժառանգական էին, ուստի որդին

---

1 Զինուորաց կարգը ինչ ազատութիւններ ունէր։

2 Երրորդ կարգին վրայ ինչ գիտելիք կայ։

չէր կրնար հօրը արուեստը թողուլ և ուրիշ արուեստ սորվիլ. այս օրէնքին դէմ ընողը ծանր պատիժներ ունէր.

# ԳԼՈՒԽ Ե.

Դատաստան. — Օրէնք. — Դատախազութիւն. — Գիր. — Աստեղաբաշխութիւն. — Երկրաչափութիւն. — Բժշկութիւն. — Յուղարկաւորութիւն. — Զմռսումըն. — Դատաստան մեռելոց. — Թաղումն։

1 Կրօնքէն ետքը դատաստանական գործողութիւնը ամենահարկաւոր բան երևցած էր Եգիպտացւոց։ Իրեք գլխաւոր քաղաքներէն՝ այսինքն Թեբէէն, Մեմփիսէն ու Հելիուպօլսէն տասնական հոգի կ՚ընտրուէին ու անոնց կը յանձնուէին դատաստանները։ Ասոնք մէջերնէն մէկը նախագահ կ՚ընտրէին, և անոր տեղը դատաւոր իր քաղաքացիներէն մէկ ուրիշ մը կը դրուէր։ Թագաւորը ասոնց մասնաւոր թոշակ կը կապէր, որպէս զի իրենց տնական հոգերէն ազատ ըլլալով՝ կարենան արդարութեան ուշադիր ըլլալ։ Նախագահին թոշակը մէկալ դատաւորներուն թոշակէն աւելի էր։

---

1 Եգիպտացւոց դատաւորները ի՞նչպէս կ՚ընտրուէին։

1 Նախագահը ոսկի շղթայ մը ունէր վիզը, ծայրը ականակուռ պատկեր մը կախած, որ Ճշմարտութիւն կը կոչուէր։ Երբոր այն պատկերը ձեռքը կ'առնէր Նախագահը՝ նշան էր թէ ժողովը պիտի սկսի։ Հրաման չկար որ մարդ իր դատաստանը բերնով պատմէ, կամ փաստաբանի ձեռքով իր դատը պաշտպանէ. վասն զի Եգիպտացիք կ'ըսէին թէ ճարտասանութիւնը դատաւորաց միտքը լուսաւորելու տեղ կրնայ զանոնք մոլորեցնել։ Ամէն մարդ իր դատը գրով կուտար, դատախազն ալ իր պատասխանը գրով կուտար մէկալին գրուածքին նայելով։ Իսկ դատաւորները երկու կողմին գրածները լսելէն ետքը իրենց վճիռը կուտային, և ո՛ր կողմն որ յաղթէր՝ Նախագահը Ճշմարտութեան պատկերը անոր կը դպցնէր, անանկով դատաստանը կը լմըննար։

2 Եգիպտացւոց օրէնքները խիստ շատ էին. գլխաւորներէն մէկ քանին ասոնք են.

3 Սուտ երդում ընողին պատիժը մահ էր։

4 Ով որ կրնար մէկը աւազակի ձեռքէ ազատել կամ պաշտպանել՝ և չազատէր կամ չպաշտպանէր, նոյնպէս մահ էր պատիժը. Թէ որ չկա-

---

1 Նախագահը ի՞նչ մասնաւոր նշան ունէր։ — Դատաստանը ի՞նչ կերպով կ'ըլլար։
2 Ի՞նչ օրէնքներ ունէին Եգիպտացիք։
3 Սուտ երդում ընողին պատիժն ի՞նչ էր։
4 Ի՞նչ օրէնք կար նեղելոց օգնութիւն ընելու։

բենար ալ ազատել՝ պարտական էր գէթ յան-
ցաւորները յայտնելու և դատաւորին մատնե-
լու. և թէ որ չընէր՝ զինքը կը ծեծէին ու երեք
օր անօթի ծարաւ կը պահէին։

1 Ամէն քաղաքացի պարտական էր իր անու-
նը, արուեստը, ապրուստը գրել տալու դատա-
ւորին արձանագրութեան մէջ։ Ով որ ըսածին
մէջը սուտ խառնէր կամ թէ արգիլած արհես-
տի մը տէր գտնուէր, կը մեռցընէին զինքը։

2 Ով որ կամաւ մարդ մը սպաննէր, թէ ա-
զատ ըլլար սպաննուողը և թէ գերի, զինքն ալ
կը սպաննէին։

3 Հայր մը կամ մայր մը երբոր իր որդին մեռ-
ցընէր՝ զինքը չէին սպաններ, հապա կը պար-
տաւորէին որ երեք օր մեռուցած որդւոյն դիա-
կը գիրկը առած կենայ։

4 Հայրասպան կամ մայրասպան տղոց պատի-
ժը սոսկալի էր։ Նախ սրածայր եղէգներով մար-
մինը բզիկ բզիկ կ՚ընէին, ետքը փշերու վրայ կը
պառկեցընէին ու ողջ ողջ կ՚այրէին։

5 Փախստական կամ անհնազանդ զինուորը
վատանուն կ՚ըլլար, ու պատիւն ալ ազատու-
թիւնն ալ կը կորսընցընէր։ Բայց ետքը նորէն



1 Քաղաքացւոց վիճակին վրայ ի՞նչ օրէնք կար։
2 Մարդասպանին պատիժը ի՞նչ էր։
3 Որդեսպանին պատիժը ի՞նչ էր։
4 Ծնողքը սպաննողին ի՞նչ պատիժ կուտային։
5 Փախստական զինուորին պատիժն ի՞նչ էր։

կրնար քաջութեան գործքով մը թէ՛ անունը շահել և թէ պատիւ ու ազատութիւն գտնել։

1 Ով որ ծածուկ բան մը թշնամւոյն իմացընէր՝ լեզուն կը կտրէին։

2 Սուտ ստակ կոխողներուն, նմանապէս կշիռներն ու հասարակաց նշանները խարդախողներուն ու արձանագրութեանց մէջ սուտ բան գրողներուն պատիժ՝ ձեռուընին կը կտրէին։

3 Եգիպտացիք տղոց դաստիարակութեան վրայ շատ հոգ կը տանէին։ Պզտիկուց զանոնք կը վարժեցընէին բոպիկ քալելու և թեթև հագուստ մը հագնելու, խոտեղէն ու ընդեղէն միայն կը կերցընէին անոնց։ Անկէց զատ այլ և այլ կըրթութիւններով անոնց մարմինը կը զօրացընէին, ինչպէս է գօտեմարտութիւնը, ոտքով վազելը, ձիընթացն ու կառարշաւը· իսկ որ բանն որ տըղոց միտքն ու մարմինը կը թուլցընէր՝ անկէ կը զգուշացընէին։

4 Անոր համար ալ Եգիպտացիք թոյլ երաժըշտութիւն չէին սորվեցըներ տղոցն որ անոնց միտքն ու զգայութիւնները չթուլնան· հապա

---

1 Գաղտնիք յայտնողին պատիժն ի՞նչ էր։
2 Սուտ ստակ կոխողին ի՞նչ պատիժ կուտային։
3 Տղոց դաստիարակութեան վրայ ի՞նչ հոգ ունէին։
4 Երաժշտութիւն կը սորվեցընէի՞ն տղոց։ — Եգիպտացւոց չարքաշութեանը վրայ ի՞նչ կը պատմուի։

միայն պատերազմական երաժշտութիւնը։ Այսպիսի կեանք անցընելնուն համար ամէնքն ալ մարմնով առողջ, յաղթանդամ ու կորովի կ՚ըլլային. և Հերոդոտոս կը պատմէ թէ Եգիպտոսի երկիրը պտըտելու ատեն դաշտ մը գնացեր է ուր երկու իրեք հարիւր տարի առաջ Եգիպտացիք Պարսից հետ պատերազմ ըրեր են եղեր, և տեսեր է որ Պարսից գլխուն գանկերը բռնելուն պէս մէկէն կը փշրին, իսկ Եգիպտացւոյը քարի պէս պինդ են եղեր։

1 Մասնաւոր ջանքով կը սորվեցընէին տղոց ծերերը պատուել։ Տղաք երբոր ճամբան ծերու մը հանդիպէին՝ մէկդի կը քաշուէին անոր ճամբայ կուտային. իսկ թէ որ տեղ մը նստած ատեննին ծեր մը մտնէր ներս՝ շուտ մը ամէնքը ոտք կ՚ելլէին, և ինչուան որ չերթար չէին նստեր։

2 Եգիպտացիք երկու տեսակ գիր ունէին, մէկը մեհենական. մէկալը ռամկական կամ հասարակ։ Առջինը՝ որուն Սրբագրոշմ Գիր կամ Մեհենական գրոց կ՚ըսենք, այբուբենի գրեր չէին, հապա այլ և այլ կենդանեաց ու անհիւթ բաներու պատկերներ. և անոնց իւրաքանչիւրին նիւթին, ձևին, կամ մասնաւոր յատկութեանցը համեմատ քուրմերը մէյմէկ նշանակութիւն դրեր էին. զոր օրինակ Բազէն՝ Աստուած կը նշանակէր, Ձուկը՝ ատելութիւն կը նշանակէր, Ձիա-

---

1 Ծերերուն ի՞նչ պատիւ կուտային։
2 Եգիպտացիք քանի՞ տեսակ գիր ունէին։

գետին՝ անամօթութիւն ու ամէն տեսակ չարասրտութիւն։ Սայիս քաղաքին կռատան դրանը վրայ փորած էին տղայ մը ծերու մը քով կեցած, անոր քովն ալ բազէ մը, ետքը ձուկ ու ձիագետի մը, որ ամէնքը մէկտեղ կը նշանակէին. Տղա՛ք և ծերք, անիրաւութիւնը ատելի է Աստուծոյ։

1 Ամէն յիշատակարաններու, մեհեաններու, եւ մանաւանդ կոթողներու վրայ աս սրբագրոշմ գրերով արձանագրութիւններ կային, որ կամ կրօնական բաներ էին, կամ աստուածոց ու թագաւորաց ազգաբանութիւն, կամ անոնց վրայ գովեստ, և կամ դիպուածի մը պատմութիւն։ Միայն քուրմերը գիտէին աս գրերը կարդալ, և ով որ իրենց գաղտնի կրօնքը կը սորվէր՝ անոր միայն կը սորվեցընէին։

2 Իսկ ռամկական գիրը՝ հասարակ այբուբենն էր որ տաճկի գրերուն պէս աջէն դէպ՚ի ձախ կը գրուէր։ Ժողովրդեան գործածածը աս էր, ու պզտիկուց ասիկայ կը սորվեցընէին աղոց։

3 Եգիպտացիք ջրհեղեղէն ետքը ան աստիճան կատարելագործած ու ծաղկեցուցած են երկրագործութիւնն որ առջի հնարողներն իրենք սեպուեր են, բայց իրօք ալ շատ արուեստներ հընարեցին։

---

1 Մեհենական գրերը ի՞նչ բանի կը գործածէին։
2 Ռամկական գիրը ի՞նչպէս էր։
3 Ի՞նչ արուեստ հնարած են Եգիպտացիք։

1 Որովհետև իրենց երկինքը միշտ անամպ ու պայծառ կ'ըլլայ, իրենք ալ առջիններէն եղած են աստղերը դիտելու, և անոնց շրջանները հաշուելու. տարին երեք հարիւր վաթսունըհինգ օր բաժնեցին, այսինքն տասուերկու ամիս, ամէն մէկը երեսնական օր, աւելցած հինգ օրն ալ՝ Աւելեաց: Ամիսը շաբաթ, այսինքն եօթնական օր բաժնուած էր, և ամէն մէկ օրը մէյմէկ մոլորակներու նուիրած էին, ու անոնց անունովը կը կոչուէին:

2 Աստղաբաշխական զննութիւնները գէշի գործածելով մոլորութեանց մէջ ընկան, ու հնարեցին աստեղագիտութիւնը. անով աստղերուն ընթացքը կը դիտէին ու մարդուս գլխէն անցնելու ապագայ բաները կ'իմանանք կ'ըսէին:

3 Եգիպտացիք իրենց երկրին դիրքը պատճառաւ ուրիշ գիտութիւն մըն ալ գտան: Որովհետև Նեղոս ամէն տարի բարձրանալով բոլոր երկիրը կը կոխէր, ու արտերուն սահմանները կը շփոթէր, անանկ որ քաշուելէն ետքը արտերը իրարու խառնուած կ'ըլլային, աս բանիս դարման ընելու համար արտաչափութիւն ու երկրաչափութիւնը գտան:

---

1 Աստղաբաշխութեան մէջ ո՞րչափ ծաղկած էին:
2 Աստեղագիտութիւնն ի՞նչպէս սկսան:
3 Երկրաչափութիւնը ի՞նչ առթով ծաղկեցուցին:

1 Եգիպտոս սաստիկ տաք ըլլալուն համար՝ երկրին բերքերն ալ առատ ու զօրաւոր են. Եգիպտացւոց պէս ամէն բան գիտող ազգը չէր կրնար անոնց այլ և այլ զօրութիւնները չփորձել, ուստի բժշկութեան արուեստն ալ ծաղկեցուցին. և տեսնելով որ ասիկայ շատ ճիւղ բաժնուած ընդարձակ գիտութիւն է, որոշեր էին որ ամէն բժիշկ մէկ մասնաւոր հիւանդութիւն մը բժշկելու ետևէ ըլլայ:

2 Հռչակաւոր բժիշկներէ շինուած հին բժշկարան մը կար, և բժիշկները պարտական էին անոր մէջի ըսած գեղը հիւանդին տալու. Թէ որ անով չբժշկուէր հիւանդը՝ իրենք անպարտ կ՚ըլլային. իսկ թէ որ յանկարծ տարբեր գեղ տային ու հիւանդը մեռնէր՝ զիրենք ալ կը մեռցընէին:

3 Մեռելոց յուղարկաւորութիւնը շատ հանդիսաւոր էր Եգիպտոս ու մասնաւոր արարողութիւններ ունէր: Երբոր մեծ մարդ մը կը մեռնէր՝ տանը մէջ եղող բոլոր կնիկ մարդիկը երեսնին ու գլուխնին ցեխոտած՝ պոռալով կանչելով ու կուրծքերնին ծեծելով քաղաքին մէջ կը պտըտէին. Նոյնպէս կ՚ընէին նաև էրիկ մարդիկ՝ կուրծքերնին բաց: Անկէց ետքը մեռելը

---

1 Բժշկութիւնն ո՞րչափ ծաղկած էր Եգիպտացւոց մէջ:
2 Բժշկութեան վրայ ի՞նչ օրէնք կար:
3 Մեռելոց յուղարկաւորութիւնը ի՞նչպէս կ՚ընէին:

*դիապատիկներու կամ զմռսողներու կը տանէին որ զմռսեն։*

*1 Ասոնք երկաթի գործիով մեռելին ուղեղը քթէն կը հանէին, փորը կը պարպէին, անուշահոտ եղերով ու խնկերով կը լեցընէին, ու եօթանասուն օր բորակի մէջ կը դնէին։ Եւ որովհետեւ փորը բանալու համար պէտք էր կըրել, որ անգթութիւն կը սեպէին, անոր համար կտրողները գործողութիւննին լմնցընելուն պէս կը թողուին կը փախչէին. հոն եղողներն ալ ետեւնէն քար նետելով զանոնք կը հալածէին։ Ետքը բուն դիապատիկները բորակին մէջէն դին կը հանէին կը լուանային, անոյշ եղերով կ'օծէին, մէջն ալ զմռսով, կինամոնով եւ անուշահոտ խնկերով կը լեցընէին, անկէց ետքն ալ ռետինի ու հոտաւէտ եղերու մէջ թաթխած կտաւով կը պատէին ու մեռելին ազգականացը կը յանձնէին, անոնք ալ կ'առնէին ու փայտէ սնտուկի մը մէջ կը դնէին՝ որուն վրան մարդու կերպարանք նկարել կուտային։*

*2 Ասանկով ոչ միայն մարմինը ամբողջ կը մնար, հապա նաեւ կերպարանքն ու գծագրութիւնը, յօնքերն ու արտեւանունքն ալ որոշ կը պահուէին։ Ուստի Եգիպտացւոցմէ շատերը ատեն ատեն իրենց գերեզմանատունը երթալով հոն կը տեսնէին հարիւր տարի առաջ մեռած*

---

*1 Մեռելները ինչպէս կը զմռսէին։*
*2 Մոմիան ինչ էր։*

իրենց նախնեաց ու ազգականաց մարմինները։ Ասոնք են որ ինչուան հիմայ ալ կը գտնուին ու մումիա կ'ըսուին։

1 Զմռսելէն ետքը՝ յուղարկաւորութեան հանդէսը կատարուելէն առաջ հարկ էր մեռելը դատաւորաց առջևը տանիլ որ անցուցած կեանքը քննելով՝ աղէկ կամ գէշ մարդ ըլլալուն վճիռը կտրեն։

2 Դատաւորները լճի մը եզերքը կը ժողվուէին։ Մեռելին ազգականները օրով առաջ կ'երթային կ'իմացընէին անոնց՝ մեռելին անունը, և թէ երբ առջևնին դատաստանի պիտի հանեն։ Որոշեալ օրը մեռելը նաւակի մը մէջ կը դնէին լճին դիմացի կողմէն, և նաւավարին անունը Քարոն կ'ըսուէր։ Մեռելը լճին մէկալ եզերքը չհանած՝ ամէն մարդ կրնար վրան ամբաստանութիւն ընել։ Թէ որ ամբաստանութիւնները ստուգուէին՝ դատաւորները կը վճռէին որ իր ազգատոհմին գերեզմանատանը մէջ չկարենայ թաղուիլ ան մեռելը։ Իսկ թէ որ ամբաստանութիւնները սուտ ելլէին՝ ամբաստանողները սաստիկ կը պատժուէին, ու մեռելը առօք փառօք իր հարցը գերեզմանը կը տանէին։

3 Երբոր վրան ամբաստանութիւն ըլլող մը

---

1 Թաղումը ի՞նչպէս կ'ընէին։
2 Մեռելին վրայ դատաստան ի՞նչպէս կ'ընէին։
3 Մեռելին տէրերը դատաստանը լմննալէն ետքը ի՞նչ կ'ընէին։

ջըլլար՝ ազգականները սուգի հագուստնին կը ձգէին, ու կը սկսէին վրան գովեստներ խօսիլ։ Ցեղին ազնուականութիւնը չէին յիշեր, որովհետև բոլոր Եգիպտացիք ազնուական կը սեպուէին. հապա իր կրթութիւնը, բարեպաշտութիւնը, ժուժկալութիւնը, արդարութիւնը և ուրիշ առաքինութիւնները կը յիշէին ու աստուծոց աղօթք կ'ընէին որ զինքը արդարոց կարգը անցընեն։ Իսկ ժողովուրդը ան գովեստները լսելով կ'ուրախանային, կը գովէին ու իրենք ալ կ'աղօթէին մեռելին համար։ Թէ որ մեռելին ցեղը իրեն համար մասնաւոր գերեզմանատուն ունէր՝ հոն կը տանէին իրեն համար պատրաստուած գերեզմանին մէջ կը դնէին. իսկ անոնք որ գերեզմանատուն չունէին՝ իրենց տունը կը տանէին ու սնտըկովը շիտակ ոտքի վրայ պատին կը կռթնցընէին։

1 Որոնք որ օրինաւոր թաղմանէ կը զրկուէին կամ ամբաստանութեամբ և կամ պարտքերնին չվճարած մեռնելով, տանը մէկ անկիւնը կը ձըգուէին. շատ անգամ ալ իրենց յաջորդները անոնց պարտքը վճարելով կամ անուննին շտկելով, նորէն կը հանէին պատուով իրենց հարցը գերեզմանը կը դնէին։

---

1 Թաղման պատուէն զրկուած մեռելը ինչ կ'ընէին։

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

# ՄԱՐԱՑ ԵՒ ՊԱՐՍԻՑ



Մարաց սկիզբը. — Վարբակէս. — Դէոկէս. — Եկբատան. — Փրաւորտ. — Կիաքսար. — Աժդահակ. — Կիւրոս։

1 Մարաց ազգին նախահայրը կը սեպուի Յաբեթի որդին Մադայ։ Հարիւրաւոր տարիներ Նինուէի թագաւորաց իշխանութեան տակն էին. Վարբակէս կուսակալը զիրենք ապստամբեցուց (785), Սարդանապաղին յաղթեց, Ասորեստանեայց տէրութիւնը վերցուց, ինքը Ասորեստանեայց տէրութենէն ապստամբած մէկալ ազգերուն վրայ թագաւորեց, և Մարաց ազգը ազատ թողուց։



1 Մարաց ազգին նախահայրը ո՞վ է։

1 Մարաստան Ասիոյ բարեբեր ու հարուստ երկիրներէն մէկն էր։ Հիւսիսային կողմը լեռնոտ էր. բայց հարաւային կողմերը բլրակներով և ընդարձակ ծաղկաւէտ դաշտերով զարդարած էին, ու ան տեղի ձին անուանի էր։ Մարք՝ Ասորեստանեայց թագաւորաց ատկէն զատ նաև իրեք հազար ձի, չորս հազար ջորի և հարիւր հազար ոչխար տուրք կուտային։ Իրենք շատ ճարտար մարդիկ էին. մետաքսէ բարակ դիպակներ կը գործէին, ու գեղեցիկ գոյներով կը ներկէին։

2 Մարք ցեղ ցեղ բաժնուած՝ գեղերու մէջ կը բնակէին, ոչ մայրաքաղաք ունէին և ոչ բերդաքաղաք, և իրենց երկրին բնական ամրութեան պատճառաւը երկար ժամանակ ազատ մնացին, խաղաղութեան ատեն մէջերնէն իշխաններ կամ դատաւորներ կ'ընտրէին, պատերազմի ատենն ալ զօրավարներ, և անոնց կը հընազանդէին։

3 Երբոր Վարբակէս մեռաւ, անկարգութիւնները շատցան. օրէ օր երկիրը անապատ կը դառնար։ Դիոկէս անունով խելացի մարդը ելաւ, ու իր քաջութեամբն ու արդարութեամբը ժողովրդեան պատկառելի եղաւ։ Դիոկէսի աչքը թագաւորութեան վրայ էր. բայց փառասէր չէր և-

---

1 Մարաստան ինչպէս երկիր էր։
2 Հին ատենը Մարաց կեանքը ինչպէս էր։
3 Մարաց առջի թագաւորը ո՞վ եղաւ։

նալու համար՝ առջի բերան երբոր զինքը Թագաւոր գնել ուզեցին՝ հրաժարիլ ձեւացուց, բայց ետքը սիրով յանձն առաւ ու ամենայն պերճութեամբ սկսաւ Թագաւորել։ Ժողովուրդը կըրթեց, քաղաքներու մէջ բնակեցուց, բլրի մը վրայ ալ Եկբատան քաղաքը շինեց ամփիթէատրոնի ձեւով իրարմէ բարձր մէջէ մէջ եօթը պարըսպով, որ տէրութեան մայրաքաղաքն եղաւ։

1 Պարիսպներուն ամէն մէկը տարբեր գոյն ունէր. առջինը ճերմակ էր, երկրորդը սեւ, երրորդը կարմիր, չորրորդը կապուտ, հինգերորդը դեղին, վեցերորդը արծաթազօծ, իսկ եօթներորդը ոսկեզօծ։

2 Եօթներորդ պարսպին մէջն էր Թագաւորին պալատան ու գանձը, վեցերորդին մէջ Թագաւորին պաշտօնեաներն ու ծառաները կը բնակէին մէկալ հինկին մէջ ժողովուրդը կը բնակէր, անոնց ալ ամէն մէկը զատ զատ քաղաքներու կը նմանէր։

3 Յանցաւորաց համար խիստ կանոններ դրաւ Դիովկ։ Երբոր կ'իմանար որ մէկը յանցանք մը ըրեր է, մէկէն առջեւը բերել կուտար ու յանցանքին ծանրութեանը համեմատ վրան պատիժ կը գնէր։ Ասոր համար մասնաւոր լրտեսներ ալ

---

1 Եկբատանի պարիսպները ի՞նչ մասնաւոր յատկութիւն ունէին։
2 Թագաւորին պալատն ո՞ւր էր։
3 Դիովկին կառավարութիւնը ի՞նչպէս էր։

դրեր էր որ քաղաքին մէջ կը պտըտէին, ու ոմանք տեսածնին կ'իմացընէին իրեն, ոմանք ալ լսածնին, Դատաստանական բաներու ալ շատ խստութիւն կ'ընէր։ Ամէն մարդ ի՛նչ դատաստան կամ կռիւ որ ունենար՝ գրով Դիովկէին պալատը կը տանէր, ան ալ կը կարդար կը քննէր ու տակը վճիռը գրած իրեն կը դարձընէր։ Ինքը ամենեւին պալատէն դուրս չէր ելլէր, քիչ ալ քիչ անգամ մարդ կ'ընդունէր, անոնք ալ ամենեւին չէին կրնար առջեւը ծիծաղիլ. քթերնին սրբել կամ թքնել. կը վախնար որ չըլլայ թէ անանկ անկիրթ ժողովուրդը քիչ մը ընտանութիւն առնելով՝ սկսի զինքը արհամարհել։

1 Դիովկ իր ժողովուրդը կրթելու ու թագաւորութիւնը հաստատելու նայելով, աշխարհակալութեան ետեւէ չեղաւ, և յիսուն տարի խաղաղութեամբ թագաւորելէն ետքը (660) իրեն յաջորդ թողուց որդին Փրաւորտը՝ որ սուրբ Գրոց մէջ Արփաքսադ կ'ըսուի։

2 Փրաւորտ թագաւորելուն պէս ուզեց տէրութեան սահմանը ընդարձակել. Պարսիկները ու անոնց քովի ազգերը նուաճեց, Ասորեստանեայց ձեռքը եղած գաւառներուն մէկ քանիին վրայ ալ տիրեց։ Նաբուքոդոնոսոր Նինուէի

---

1 Դիովկ քանի՞ տարի թագաւորեց։ — Իր յաջորդն ո՞վ եղաւ։

2 Փրաւորտ ի՞նչպէս ըրաւ թագաւորութիւնը։

Թագաւորը կիրթ զօրքով դէմն ելաւ. Մարք որ դեռ զինուորական կրթութիւն չունէին՝ չկրցան երկար դիմանալ. Փրաւորտ իր քաջութեանը վրայ միայն վստահացած՝ նետուեցաւ Ասորեստանեայց մէջ, շատ մարդ զարկաւ սպաննեց, բայց զօրքը ջարդուեցաւ, ինքն ալ բռնուեցաւ։ Նաբուքոդոնոսոր վրան բարկացած՝ զինքը նետով սպաննել տուաւ, մտաւ Եկբատան, կողոպտեց ու Նինուէ դարձաւ (658)։

1 Կիաքսար, Փրաւորտի որդին, հօրը մահուան վրէժը առնելու մտքով նոր զօրք ժողվեց, կըրթեց զանոնք և Լիւդացւոց վրայ գնաց որ բոլոր Փոքր Ասիոյ տէրեր էին։ Երկու զօրքը դիմացէ դիմաց ճակատեցան, ու հազիւ թէ պիտի սկըսէին իրարու վրայ յարձըկիլ՝ յանկարծ արևը խաւարեցաւ. զօրքերը շփոթեցան, պատերազմէն ետ կեցան։ Ասիկայ առաջին արևու խաւարումն է որ աստղաբաշխները հաշուով իմացան, վասն զի Թաղէս Միլետացին առաջուց ըսեր է թէ ան ատենները արևը պիտի խաւարի։

2 Մարք և Լիւդացիք ան խաւարումը Աստուծոյ պատիժը կարծելով հաշտութիւն ըրին, և Լիւդացւոց Աղիատ թագաւորը իր աղջիկը Արիադնէն Կիաքսարայ անդրանիկ որդւոյն Աժդահակին հետ կարգեց։ Աս երկու ազգերու

---

1 Կիաքսար ի՞նչ պատերազմ ըրաւ։
2 Արևու խաւարումը ի՞նչ ազդեցութիւն ըրաւ զօրացը վրայ։

դրած ուխտերնին հաստատ պահելու համար (ինչպէս շատ արեւելեան ազգաց սովորութիւնն էր) թեւերնին ծակեցին ու իրարու արիւնը լզեցին։

1 Կիաքսար անկէց Ասորեստանեայց վրայ վազեց, ու անոնց Բեթուղուայէն դարձած զօրքին հանդիպելով զամէնքը ջարդեց, ու գնաց Նինուէն պաշարեց։ Բայց լսելով թէ Սկիւթացիք եկեր իր երկիրը կ'ապականեն՝ անոնց դէմ գնաց։ Յաղթուեցան Մարք, եւ Սկիւթացիք հեղեղի պէս Ասիոյ ամէն կողմը տիրեցին. քսան տարի իշխեցին, ու բոլոր երկիրը կողոպտելով անապատ դարձուցին։

2 Օր մը Մարք բոլոր Սկիւթացւոց մեծերը տուներնին սեղանի հրաւիրեցին, ու երբոր անոնք գինովցան՝ զամէնքն ալ թրէ անցուցին. եւ Սկիւթացիք անգլուխ մնալով թողուցին փախան։ Անոնցմէ ազատած՝ նորէն Կիաքսար Ասորեստանեայց վրայ վազեց. Բաբելացւոց Նաբուպալասար թագաւորին հետ միացաւ, Սարակոսը սպաննեց, Նինուէն կործանեց ու Ասորեստանեայց տէրութիւնը վերցուց (648)։ Ասանկ քառասուն տարի թագաւորութիւն ընելէն ետքը մեռաւ Կիաքսար, ու թագաւորութիւնը Աժդա-

---

1 Կիաքսար Ասորեստանեայց ինչպէս յաղթեց առջի անգամ։

2 Սկիւթացւոց բռնութենէն Մարք ինչպէս ազատեցան։

*հակ որդւոյն Թողուց՝ որ սուրբ Գրոց մէջ Աասուերոս կ՚ըսուի* (618)։

1 *Աժդահակ դեռ չթագաւորած՝ երազ մը տեսեր էր որ իր Մանդանէ աղջկանը բերնէն շատ ջուր վազելով բոլոր քաղաքը կը լեցընէր, ու բովանդակ Ասիա կը տարածուէր։ Հարցուց մոգերուն, ըսին որ Մանդանէէն տղայ մը պիտի ծնանի որ բոլոր Ասիոյ պիտի տիրէ։ Թագաւորելէն ետքը Աժդահակ ուրիշ երազ մըն ալ տեսաւ որ Մանդանէէն որթ մը բուսաւ ու բոլոր աշխարհք շուք կ՚ընէր. մոգերը ըսին իրեն թէ Մանդանէէն տղայ մը պիտի ծնանի որ Մարաց թագաւորութիւնը ձեռքէդ պիտի առնէ, ու բոլոր Ասիոյ պիտի տիրէ։ Ասոր վրայ վախցաւ Աժդահակ աղջիկը Մարաց ազգէն իշխանի մը հետ կարգելու. ուստի Մանդանէն Պարսկաստան խրկեց, որ ան ատենը Մարաց ձեռքն էր, ու Պարսից Կամբիւս իշխանին հետ կարգեց։*

2 *Երբոր տղայ մը ծնաւ Մանդանէէն՝ Աժդահակ զինքը քովը կանչեց ու տղան առաւ Արբակ իշխանին տուաւ որ երթայ ծածուկ սպաննէ. բայց Արբակ վախնալով որ օր մը Մանդանէէն կ՚իմանայ ու որդւոյն սպանութեանը վրէժը կը հանէ, տղան տարաւ թագաւորին հովիւներէն մէկուն տուաւ որ տանի հեռու անտառի մը մէջ ձգէ որ մեռնի։ Հովիւը կը կատարէ հրամանն ու*

---

1 *Աժդահակ ի՞նչ երազներ տեսաւ։*
2 *Մանդանէին տղան ի՞նչ ըրաւ Աժդահակ։*

կը դառնայ իր կնկանը կը պատմէ։ Ան գիշերը իր կինը մեռած տղայ մը կը ծնանի, կ'առնու անիկայ կը տանի ձգած տղուն հետ կը փոխէ կուգայ. կինն ալ տեսնելով որ գեղեցիկ, կայտառ տղայ մըն է, կը սիրէ ու կը սկսի իր որդւոյն պէս հոգալ, մեծցնել։ Եւ որովհետև կնոջ անունը Շպակ էր որ քած կը նշանակէ պարսկերէն, ետքը սկսան ըսել թէ Կիւրոսը մատակ շուն մը մեծցուցեր է։ Իսկ Արպակայ ծառաները տղան մեռած գտնելով՝ առին թաղեցին, կարծելով որ Կիւրոսն է։

¹ Կիւրոս տասուերկու տարեկան եղած ատենը, օր մը երբոր իր հասակակից տղոց հետ խաղ կը խաղար, տղաքը զինքը թագաւոր ձևացուցին, ինքն ալ իրեն չհնազանդողները պատժել տուաւ։ Անոնց մէջ իշխանի մը զաւակ ալ կայ եղեր, անիկայ կերած ծեծը կ'երթայ հօրը կը պատմէ, ան ալ հովուին տղուն վրայ թագաւորին գանգատ կ'ընէ։ Աժդահակ առջևը բերել կուտայ զանիկայ ու կը յանդիմանէ։ Կիւրոս անվախ պատասխան կուտայ. Տէր արքայ, քու հպատակներէդ մէկը թէ որ չհնազանդի ինչ կ'ընես. հարկաւ կը պատժես զինքը որ հնազանդիլ սորվի թագաւորին. ես ալ նոյնպէս ըրի, որովհետև զիս իրենց թագաւոր դրին։ Աժդահակ տղուն աս համարձակ ու ազնուական կերպին, տուած խելացի պատասխաններուն ու

¹ Ինչպէս յայտնուեցաւ Կիւրոս։

կերպարանքին նայելով ճանչցաւ որ անիկայ իր թոռն է, մանաւանդ երբոր անոր հայրը սեպուած հովիւն ու Արբակը կանչելով ճշմարտութիւնը լսեց, ու ամենևին տարակոյս չմնաց։

1 Մոգերը կանչեց հարցուց Աժդահակ. պատասխան տուին թէ Տղուն թագաւորելուն վրայ տեսած երազդ կատարուեր է, որովհետև իր հասակակիցները գլուխը թագ դրեր ու թագաւորեցուցեր են զինքը. ու ասկէց ետքը թագաւորելիք չունի։ Աս ուզած պատասխանին վրայ Աժդահակ համոզուեցաւ, Կիւրոսը Պարսկաստան հօրը քով խրկեց որ հոն դաստիարակուի։ Բայց սաստիկ բարկացաւ Արբակին անհնազանդութեանը վրայ ու անգութ կերպով վրէժը հանեց։ Օր մը Արբակայ հրամայեց որ իր որդին պալատը խրկէ. առաւ տղան մորթեց՝ գլուխն ու ոտքին ձեռքին թաթերը պահեց, միսը եփել տուաւ ու սեղանի ատեն հօրը առջևը հանեց։ Արբակ չգիտնալով կերաւ որդւոյն մարմինը։ Հարցուց անօրէն Աժդահակ. Արբակ, ի՞նչպէս է. — Շատ համով է, տէր արքայ, ըսաւ խեղճ հայրը. — Թէ որ համով կ'ուտուի սիրելւոյ միսը՝ ինչո՞ւ իմ թոռս ողջ պահեցիր, ըսաւ Աժդահակ, ու տղուն գլուխն ու թաթերն ալ առջևը հանել տուաւ։ Սոսկացաւ Արբակ, սիրտը

---

1 Աժդահակ Կիւրոսը ճանչնալէն ետքը ի՞նչ ըրաւ։ — Արբակայ դէմ ի՞նչ անգթութիւն ըրաւ։

կորանցաւ, և հաստատ միտքը դրաւ որ Աժդահակայ անգթութեանը վրէժը առնէ։

1 Կիւրոս Պարսկաստան գնաց, Պարսից օրէնօքը կրթուեցաւ, և իր ընկերակցացը հետ շատ քաջութիւններ կ'ընէր։ Ձեռաց տակէն Արբակ սկսաւ զինքը դրգռել որ չվախնայ ապստամբել Աժդահակայ դէմ. Ես պատրաստ եմ, ըսաւ, քեզի օգնելու. Կիւրոս ալ սկսաւ Պարսիկները ոտք հանել։ Օր մը զիրենք ժողվեց փշոտ դաշտ մը տարաւ ու հրամայեց որ մանգաղներով մաքրեն. ինչուան իրիկուն արիւն քրտինք մտան, հազիւ մաքրեցին։ Պատուիրեց իրենց որ երկրորդ օրն ալ հագուած սգուած նորէն գան. անոնք երբոր եկան՝ զիրենք ծաղկաւէտ դաշտի մը մէջ նստեցուց ու փառաւոր սեղան մը ըրաւ իրենց. կերան, խմեցին, զուարճացան։ Երբոր սեղանէն ելան՝ հարցուց իրենց Կիւրոս թէ Ո՞ր օրը աւելի աղէկ էր. երեկուանը թէ այսօրուանը։ Պատասխանեցին յայտնի էր. Երեկ ինչուան իրիկուն աշխատեցանք, ըսին, հոգիներս բերաննիս եկաւ, իսկ այսօր հանգիստ կերանք խմեցինք և ուրախացանք։ — Ուրեմն, ըսաւ Կիւրոս, եթէ ըսածիս մտիկ ընէք՝ ասանկ մէկ օր մը չէ բոլոր կեանքերնիդ հանգստութեամբ և ուրախութեամբ կ'անցընէք. հետս եկէք, յուսամ որ աստուածոց օգնութեամբը ու ձեր քաջութեամբը կ'երթանք Մարաց կը յաղթենք, ու

---

1 Կիւրոս ի՞նչպէս Աժդահակայ դէմ ելաւ։

կերպարանքին նայելով՝ ճանչցաւ որ անիկայ իր թոռն է, մանաւանդ երբոր անոր հայրը սեպուած հովուին ու Արքակը կանչելով՝ ճշմարտութիւնը լսեց, ալ ամենեւին տարակոյս չմնաց:

1 Մոգերը կանչեց հարցուց Աժդահակ. պատասխան տուին թէ Տղուն թագաւորելուն վրայ տեսած երազդ կատարուեր է, որովհետեւ իր հասակակիցները գլուխը թագ դրեր ու թագաւորեցուցեր են զինքը. ալ ասկէց ետքը թագաւորելիք չունի: Աս ուզած պատասխանին վրայ Աժդահակ համոզուեցաւ, Կիւրոսը Պարսկաստան հօրը քով խրկեց որ հոն դաստիարակուի: Բայց սաստիկ բարկացաւ Արքակին անհնազանդութեանը վրայ ու անգութ կերպով վրէժը հանեց: Օր մը Արքակայ հրամայեց որ իր որդին պալատը խրկէ. առաւ տղան մորթեց՝ գլուխն ու ոտքին ձեռքին թաթերը պահեց, միսը եփել տուաւ ու սեղանի առեն հօրը առջեւը հանեց: Արքակ չգիտնալով կերաւ որդւոյն մարմինը: Հարցուց անօրէն Աժդահակ. Արքակ, ինչպէս է. — Շատ համով է, տէր արքայ, ըսաւ խեղճ հայրը. — Թէ որ համով կ'ուտուի սիրելւոյ միսը՝ ինչո՞ւ իմ թոռս ողջ պահեցիր, ըսաւ Աժդահակ, ու տղուն գլուխն ու թաթերն ալ առջեւը հանել տուաւ: Սոսկացաւ Արքակ, սիրտը

---

1 Աժդահակ Կիւրոսը ճանչնալէն ետքը ինչ ըրաւ: — Արքակայ դէմ ինչ անգթութիւն ըրաւ:

կորուսեցաւ, և հաստատ միտքը դրաւ որ Աժդահակայ անգթութեանը վրէժը առնէ։

1 Կիւրոս Պարսկաստան գնաց. Պարսից օրէնքը կրթուեցաւ, և իր ընկերակցացը հետ շատ քաջութիւններ կ'ընէր։ Ձեռաց տակէն Արշակ սկսաւ զինքը գրգռել որ չվախնայ ապստամբիլ Աժդահակայ դէմ. Ես պատրաստ եմ, ըսաւ, քեզի օգնելու. Կիւրոս ալ սկսաւ Պարսիկները ոտք հանել։ Օր մը զիրենք ժողվեց փշոտ դաշտ մը տարաւ ու հրամայեց որ մանգաղներով մաքրեն. ինչուան իրիկուն արիւն քրտինք մտան, հազիւ մաքրեցին։ Պատուիրեց իրենց որ երկրորդ օրն ալ հագուած սպուած նորէն գան. անոնք երբոր եկան՝ զիրենք ծաղկաւէտ դաշտի մը մէջ նստեցուց ու փառաւոր սեղան մը ըրաւ իրենց. կերան, խմեցին, զուարճացան։ Երբոր սեղանէն ելան՝ հարցուց իրենց Կիւրոս թէ Ո՞ր օրը աւելի աղէկ էր. երեկուա՞նը թէ այսօրուանը։ Պատասխանեցին յայտնի էր. Երեկ ինչուան իրիկուն աշխատեցանք, ըսին, հոգինիս բերաննիս եկաւ, իսկ այսօր հանգիստ կերանք խմեցինք և ուրախացանք։ — Ուրեմն, ըսաւ Կիւրոս, եթէ ըսածիս մտիկ ընէք՝ ասանկ մէկ օր մը չէ բոլոր կեանքերնիդ հանգստութեամբ և ուրախութեամբ կ'անցընէք. հետս եկէք, յուսամ որ աստուածոց օգնութեամբը ու ձեր քաջութեամբը կ'երթանք Մարաց կը յաղթենք, ու

---

1 Կիւրոս ի՞նչպէս Աժդահակայ դէմ ելաւ։

զանոնք՝ մեզի կը ծառայեցընենք։ Ամէնքը մէկ բերան խօսք տուին, իրենց Թագաւոր դրին զինքը, և Կիւրոս սկսաւ պատերազմի պատրաստութիւն տեսնել։

1 Մեր Երուանդեան Տիգրան Թագաւորը որ շատ անգամ տեսեր էր Կիւրոսը ու իր որդւոյն պէս զինքը կը սիրէր, երբոր լսեց թէ բոլոր Պարսիկք հետը միաբաներ՝ զինքը Թագաւոր դըրեր են, ուրախակցութեան համար մարդ խըրկեց ու հետը բարեկամութեան դաշինք դրաւ։

2 Երբոր իմացաւ Աժդահակ թէ Կիւրոս Տիգրանին հետ բարեկամացեր է, սաստիկ սկսաւ վախնալ. գիտէր թէ Տիգրանին զօրութեանը պիտի չկարենայ դէմ դնել։ Անանկ վախի մէջ՝ սարսափելի երազ մըն ալ տեսաւ որ Հայաստանի սառով պատած լեռան մը ծայրը ծիրանազգեստ ու բարձրահասակ կին մը նստած՝ իրեք կարիճ դիւցազուններ ծնաւ որ բոլոր աշխարհիս կը տիրէին. անոնցմէ մէկն ալ վիշապի վրայ հեծած վազեց իրեն վրայ, ու հետը կռուելով զինքը վիրաւորեց, ու Թագաւորութիւնը ձեռքէն առաւ։ Այս վախով սարսափած արթընցաւ Աժդահակ ու գիշերանց իշխանները ժողովքի կանչեց. պատմեց տեսած երազը, խորհուրդ ը-

---

1 Մեր Տիգրան Թագաւորը ի՞նչպէս բարեկամացաւ Կիւրոսին հետ։

2 Աժդահակ Կիւրոսի և Տիգրանայ բարեկամութիւնն որ լսեց՝ ի՞նչ ըրաւ։

րին որ Տիգրանայ քոյրը իրեն կին առնէ, ու անոր ձեռքովը Տիգրանը մեռցրնէ, որպէս զի չըկարենայ Կիւրոսին օգնել։

1 Շատ ընծաներով մարդ խրկեց Աժդահակ Տիգրանին և ուզեց որ քոյրը Տիգրանուհին իրեն կին տայ, որ զինքը տիկնանց տիկին պիտի ընէ։ Չգիտնալով Տիգրան անոր նենգաւոր միտքը՝ հաւանեցաւ, շուտով կամքը կատարեց։ Շատ սիրով ընդունեցաւ Աժդահակ Տիգրանուհին, աչքը մտնելու համար զինքը տիկնանց տիկին ըրաւ, և ամէն բան անոր խորհրդովը կ'ընէր, ինչուան որ վրան վստահանալով յայտնեց անոր իր միտքը և ըսաւ թէ, Տիգրան Կիւրոսին հետ միաբաներ է զիս և զքեզ մեռցրնելու, ուստի պէտք է որ դուն հնարք մը գտնես, եղբայրդ մեռցրնել տաս, ապա թէ ոչ՝ զքեզ տիկնութենէդ կը ձգեմ, խայտառակ կ'ընեմ։ Խորագէտ և իմաստուն Տիգրանուհին իմացաւ Աժդահակայ նենգութիւնը, ծածուկ հաւատարիմ մարդկանց ձեռքով եղբօրը հասկըցուց։ Պատերազմի պատրաստուեցաւ Տիգրան. Կիւրոսի ալ մարդ խրկեց որ շուտ ընէ ընելիքը. և երբոր Աժդահակ խաբէութեամբ Տիգրանը տեսնուելու կը կանչէր։ Տիգրան վրան պատերազմի ելաւ, ան միջոցին Կիւրոսն ալ եկաւ հասաւ. Արբակ ալ որ իր զօրացը սպարապետ գրեր էր Աժդահակ՝

---

1 Աժդահակ Տիգրանուհւոյն ինչ պատիւներ ըրաւ։ — Աժդահակայ մահն ինչպէս եղաւ։

պատերազմին սաստկացած ատենը Կիւրոսին կողմն անցաւ։ Այն ատենը Աժդահակ յուսահատութենէն կատղած՝ Տիգրանին վրայ վազեց, զարկաւ Տիգրան նիզակը անոր սիրտը, ու թոքին կէսը նիզակին հետ մէկտեղ դուրս հանեց, մեռած ինկաւ Աժդահակ, և Կիւրոս Մարաց և Պարսից տիրեց։

1 Անկէ ետքն ալ Կիւրոս մեր Տիգրան թագաւորին օգնութեամբը շատ յաղթութիւններ ըրաւ։ Լիւդացւոց Կրեսոս թագաւորին վրայ գնաց ու տասնըչորս օր Սարդիկէ մայրաքաղաքը պաշարելով առաւ (548)։ Կ'ըսեն թէ Կիւրոսի զօրքը ներս մտնելու ատեն անոնցմէ մէկը Լիւդացի մը տեսնելով առանց գիտնալու որ ինքը Կրեսոսն է, երբոր թուրը կը վերցընէ որ զարնէ, Կրեսոսին քովը կեցած իր համր տղան հօրը մեռնելուն վրայ սաստիկ ցաւելէն լեզուն կը բացուի ու կը կանչէ. Թուրդ վար առ, Կրեսոս հայրս կը սպաննես։ Զինուորը մէկէն ձեռքը վար կ'առնէ, Կրեսոսը Կիւրոսին կը տանի։

2 Կիւրոս հրաման տուաւ որ Կրեսոսը ողջ ողջ այրեն։ Պատրաստեցին փայտակոյտը, և մէջը մտնելու պատրաստուած ատենը մտածելով թէ ինչ երջանկութենէ ինչ թշուառութեան հասաւ, յիշեց Կրեսոս ան խելացի խօսքն

---

1 Կիւրոսի առաջին յաղթութիւններն որո՞նք եղան։

2 Կիւրոս ինչպէս ուզեց մեռցընել Կրեսոսը։

որ Սողոն ըսեր էր իրեն, ու այրած սրտով բարձրաձայն իրեք անգամ Սողոն, Սողոն, Սողոն կանչեց։ Կիւրոս որ հոն բոլոր իշխաններովը եկեր էր, առջեւը կանչել տուաւ ու հարցուց թէ ինչո՞ւ համար այն հռչակաւոր մարդը կանչեցիր. Յիշեցի, ըսաւ, Սողոնին խօսքը. վասն զի ատենով երբոր իրեն հարցուցի թէ ինծմէ աւելի երջանիկ մարդ տեսա՞ր ես, պատասխան տուաւ ինծի թէ Անկարելի է մարդուս երջանիկ ըսել՝ վախճանը տեսնելէն առաջ։ Կիւրոսին սիրտը շարժեցաւ, կրակը մարել տուաւ, Կրեսոսին ներեց, ու ինչուան ետքը թագաւորական պատուով իր քովը պահեց *։

1 Երբոր սկսան զօրքը Սարդիկէ մտած կողոպտել աւերել քաղաքը, Կրեսոս Կիւրոսին քովը կեցած՝ սկսաւ զարմանք ցուցընել։ Կիւրոս երբոր պատճառը անոր հարցուց, Կը զարմանամ, ըսաւ, որ զօրքդ կը կողոպտեն այն քաղաքը՝ որ այլ Կրեսոսին չէ, Կիւրոսին է։ Հարցուց Կիւրոս. Հապա ի՞նչ պէտք է ընել։ — Արգիլէ, ըսաւ, որ քաղաքը չկողոպտեն, որպէս զի անոր

---

1 Կիւրոս Կրեսոսի հետ ի՞նչպէս վարուեցաւ։

* Աս դիպուածը Խորենացին այլ և այլ Յոյն հեղինակներէ օգտուելով մեր Արտաշէս Ա, Պարթեւ թագաւորին վրայ կը պատմէ, որ շատ հաւանական չերեւնար։

նալու համար՝ առջի բերան երբոր զինքը Թագաւոր գնել ուզեցին՝ հրաժարիլ ձեւացուց, բայց ետքը սիրով յանձն առաւ ու ամենայն պերճութեամբ սկսաւ Թագաւորել։ Ժողովուրդը կրթեց, քաղաքներու մէջ բնակեցուց, բլրի մը վրայ ալ Եկբատան քաղաքը շինեց ամփիթէատրոնի ձեւով իրարմէ բարձր մէջէ մէջ եօթը պարսպով, որ տէրութեան մայրաքաղաքն եղաւ։

1 Պարիսպներուն ամէն մէկը տարբեր գոյն ունէր. առջինը ճերմակ էր, երկրորդը սեւ, երրորդը կարմիր, չորրորդը կապոյտ, հինգերորդը դեղին, վեցերորդը արծաթազօծ, իսկ եօթներորդը ոսկեզօծ։

2 Եօթներորդ պարսպին մէջն էր Թագաւորին պալատան ու գանձը, վեցերորդին մէջ Թագաւորին պաշտօնեաներն ու ծառաները կը բնակէին մէկալ հինկին մէջ ժողովուրդը կը բնակէր, անոնց ալ ամէն մէկը զատ զատ քաղաքներու կը նմանէր։

3 Ցանցաւորաց համար խիստ կանոններ գրաւ Դիովկ։ Երբոր կ'իմանար որ մէկը յանցանք մը ըրեր է, մէկէն առջեւը բերել կուտար ու յանցանքին ծանրութեանը համեմատ վրան պատիժ կը դնէր։ Ասոր համար մասնաւոր լրտեսներ ալ

---

1 Եկբատանի պարիսպները ի՞նչ մասնաւոր յատկութիւն ունէին։

2 Թագաւորին պալատն ո՞ւր էր։

3 Դիովկին կառավարութիւնը ի՞նչպէս էր։

գրեր էր որ .քաղաքին մէջ կը պտըտէին, ու ոմանք տեսածնին կ'իմացընէին իրեն, ոմանք ալ լսածնին, Դատաստանական բաներու ալ շատ խստութիւն կ'ընէր։ Ամէն մարդ ինչ դատաստան կամ կռիւ որ ունենար՝ գրով Դիոկէսին պալատը կը տանէր, ան ալ կը կարդար կը քննէր ու տակը վճիռը գրած իրեն կը դարձընէր։ Ինքը ամենևին պալատէն դուրս չէր ելլէր, քովն ալ քիչ անգամ մարդ կ'ընդունէր, անոնք ալ ամենևին չէին կրնար առջևը ծիծաղիլ. քթերնին սրբել կամ թքնել. կը վախնար որ չըլլայ թէ անանկ անկիրթ ժողովուրդը քիչ մը ընտանութիւն տեսնելով՝ սկսի զինքը արհամարհել։

1 Դիոկէս իր ժողովուրդը կրթելու ու թագաւորութիւնը հաստատելու նայելով, աշխարհակալութեան ետևէ չեղաւ, և յիսուն տարի խաղաղութեամբ թագաւորելէն ետքը (660) իրեն յաջորդ թողուց որդին Փրաւորտը՝ որ սուրբ Գրոց մէջ Արփաքսադ կ'ըսուի։

2 Փրաւորտ թագաւորելուն պէս ուզեց տէրութեան սահմանը ընդարձակել. Պարսիկները ու անոնց քովի ազգերը նուաճեց, Ասորեստանեայց ձեռքը եղած գաւառներուն մէկ քանիին վրայ ալ տիրեց։ Նաբուքոդոնոսոր Նինուէի

---

1 Դիոկէս քանի՞ տարի թագաւորեց։ — Իր յաջորդն ո՞վ եղաւ։

2 Փրաւորտ ի՞նչպէս ըրաւ թագաւորութիւնը։

թագաւորը կիրթ զօրքով դէմն ելաւ. Մարք որ դեռ զինուորական կրթութիւն չունէին՝ չկրցան երկար դիմանալ. Փրաւորտ իր քաջութեանը վրայ միայն վստահացած՝ նետուեցաւ Ասորեստանեայց մէջ, շատ մարդ զարկաւ սպաննեց, բայց զօրքը ջարդուեցաւ, ինքն ալ բռնուեցաւ: Նաբուքոդոնոսոր վրան բարկացած՝ զինքը նետով սպաննել տուաւ, մտաւ Եկբատան, կողոպտեց ու Նինուէ դարձաւ (658):

1 Կիաքսար, Փրաւորտի որդին, հօրը մահուան վրէժը առնելու մտքով նոր զօրք ժողվեց, կըրթեց զանոնք և Լիւդացւոց վրայ գնաց որ բոլոր Փոքր Ասիոյ տէրեր էին: Երկու զօրքը դիմացէ դիմաց ճակատեցան, ու հազիւ թէ պիտի սկըսէին իրարու վրայ յարձըկիլ՝ յանկարծ արևը խաւարեցաւ. զօրքերը շփոթեցան, պատերազմէն ետ կեցան: Ասիկայ առաջին արևու խաւարումն է որ աստղաբաշխները հաշուով իմացան, վասն զի Թալէս Միլէտացին առաջուց ըսեր է թէ ան ատենները արևը պիտի խաւարի:

2 Մարք և Լիւդացիք ան խաւարումը Աստուծոյ պատիժը կարծելով հաշտութիւն ըրին, և Լիւդացւոց Ալիատ թագաւորը իր աղջիկը Արիադնէն Կիաքսարայ անդրանիկ որդւոյն Աժդահակին հետ կարգեց: Աս երկու ազգերու

---

1 Կիաքսար ի՞նչ պատերազմ ըրաւ:

2 Արևու խաւարումը ի՞նչ ազդեցութիւն ըրաւ զօրացը վրայ:

դրած ուխտերնին հաստատ պահելու համար (ինչպէս շատ արևելեան ազգաց սովորութիւնն էր) թևերնին ծակեցին ու իրարու արիւնը լզեցին։

1 Կիաքսար անկէց Ասորեստանեայց վրայ վազեց, ու անոնց Բեաբղուայէն դարձած զօրքին հանդիպելով զամէնքը ջարդեց, ու գնաց ինչուան Նինուէն պաշարեց։ Բայց լսելով թէ Սկիւթացիք եկեր իր երկիրը կ'ապականեն՝ անոնց դէմ գնաց։ Յաղթուեցան Մարք, և Սկիւթացիք հեղեղի պէս Ասիոյ ամէն կողմը տիրեցին. քսան տարի իշխեցին, ու բոլոր երկիրը կողոպտելով անապատ դարձուցին։

2 Օր մը Մարք բոլոր Սկիւթացւոց մեծերը տներնին սեղանի հրաւիրեցին, ու երբոր անոնք գինովցան՝ զամէնքն ալ թրէ անցուցին. և Սկիւթացիք անգլուխ մնալով թողուցին փախան։ Անոնցմէ ազատած՝ նորէն Կիաքսար Ասորեստանեայց վրայ վազեց. Բաբելացւոց Նաբուպաղասար թագաւորին հետ միացաւ, Սարակոսը սպաննեց, Նինուէն կործանեց ու Ասորեստանեայց տէրութիւնը վերցուց (648)։ Ասանկ քառասուն տարի թագաւորութիւն ընելէն ետքը մեռաւ Կիաքսար, ու թագաւորութիւնը Աժդա-

---

1 Կիաքսար Ասորեստանեայց ինչպէս յաղթեց առջի անգամ։

2 Սկիւթացւոց բռնութենէն Մարք ինչպէս ազատեցան։

հակ որդւոյն Թողուց՝ որ սուրբ Գրոց մէջ Ասուերոս կ'ըսուի (618)։

1 Աժդահակ դեռ չթագաւորած՝ երազ մը տեսեր էր որ իր Մանդանէ աղջկանը բերնէն շատ ջուր վազելով բոլոր քաղաքը կը լեցընէր, ու բովանդակ Ասիա կը տարածուէր։ Հարցուց մոգերուն, ըսին որ Մանդանէէն տղայ մը պիտի ծնանի որ բոլոր Ասիոյ պիտի տիրէ։ Թագաւորելէն ետքը Աժդահակ ուրիշ երազ մըն ալ տեսաւ որ Մանդանէէն որթ մը բուսաւ ու բոլոր աշխարհք շուք կ'ընէր. մոգերը ըսին իրեն թէ Մանդանէէն տղայ մը պիտի ծնանի որ Մարաց թագաւորութիւնը ձեռքէդ պիտի առնէ, ու բոլոր Ասիոյ պիտի տիրէ։ Ասոր վրայ վախցաւ Աժդահակ աղջիկը Մարաց ազգէն իշխանի մը հետ կարգելու. ուստի Մանդանէն Պարսկաստան խրկեց, որ ան ատենը Մարաց ձեռքն էր, ու Պարսից Կամբիւս իշխանին հետ կարգեց։

2 Երբոր տղայ մը ծնաւ Մանդանէն՝ Աժդահակ զինքը քովը կանչեց ու տղան առաւ Արբակ իշխանին տուաւ որ երթայ ծածուկ սպաննէ. բայց Արբակ վախնալով որ օր մը Մանդանէն կ'իմանայ ու որդւոյն սպանութեանը վրէժը կը հանէ, տղան տարաւ թագաւորին հովիւներէն մէկուն տուաւ որ տանի հեռու անտառի մը մէջ ձգէ որ մեռնի։ Հովիւը կը կատարէ հրամանն ու

---

1 Աժդահակ ի՞նչ երազներ տեսաւ։
2 Մանդանէին տղան ի՞նչ ըրաւ Աժդահակ։

կը դառնայ իր կնկանը կը պատմէ։ Ան գիշերը իր կինը մեռած տղայ մը կը ծնանի, կ՚առնու անիկայ կը տանի ձգած տղուն հետ կը փոխէ կուգայ. կինն ալ տեսնելով որ գեղեցիկ, կայտառ տղայ մըն է, կը սիրէ ու կը սկսի իր որդւոյն պէս հոգալ, մեծցընել։ Եւ որովհետեւ կնոջ անունը Ըսպակ էր որ քած կը նշանակէ պարսկերէն, ետքը սկսան ըսել թէ Կիւրոսը մատակ շուն մը մեծցուցեր է։ Իսկ Արբակայ ծառաները տղան մեռած գտնելով՝ առին թաղեցին, կարծելով որ Կիւրոսն է։

[1] Կիւրոս տասուերկու տարեկան եղած ատենը, օր մը երբոր իր հասակակից տղոց հետ խաղ կը խաղար, տղաքը զինքը թագաւոր ձեւացուցին, ինքն ալ իրեն չհնազանդողները պատժել տուաւ։ Անոնց մէջ իշխանի մը զաւակ ալ կայ եղեր, ասիկայ կերած ծեծը կ՚երթայ հօրը կը պատմէ, ան ալ հովուին տղուն վրայ թագաւորին գանգատ կ՚ընէ։ Աժդահակ տղեկը բերել կուտայ զանիկայ ու կը յանդիմանէ։ Կիւրոս անվախ պատասխան կուտայ. Տէր արքայ, քու հպատակներէդ մէկը թէ որ չհնազանդի ինչ կ՚ընես. հարկաւ կը պատժես զինքը որ հնազանդիլ սորվի թագաւորին. ես ալ նոյնպէս ըրի, որովհետեւ զիս իրենց թագաւոր դրին։ Աժդահակ տղուն աս համարձակ ու ազնուական կերպին, տուած խելացի պատասխաններուն ու

---

1 Ի՞նչպէս յայտնուեցաւ Կիւրոս։

կերպարանքին նայելով՝ ճանչցաւ որ անիկայ իր թոռն է, մանաւանդ երբոր անոր հայրը սեպուած հովիւն ու Արբակը կանչելով ճշմարտութիւնը լսեց, ալ ամենևին տարակոյս չմնաց։

1 Մոգերը կանչեց հարցուց Աժդահակ. պատասխան տուին թէ Տղուն թագաւորելուն վրայ տեսած երազդ կատարուեր է, որովհետև իր հասակակիցները գլուխը թագ դրեր ու թագաւորեցուցեր են զինքը. ալ ասկէց ետքը թագաւորելիք չունի։ Աս ուզած պատասխանին վրայ Աժդահակ համոզուեցաւ, Կիւրոսը Պարսկաստան հօրը քով խրկեց որ հոն դաստիարակուի։ Բայց սաստիկ բարկացաւ Արբակին անհնազանդութեանը վրայ ու անգութ կերպով վրէժը հանեց։ Օր մը Արբակայ հրամայեց որ իր որդին պալատը խրկէ. առաւ տղան մորթեց՝ գլուխն ու ոտքին ձեռքին թաթերը պահեց, միսը եփել տուաւ ու սեղանի ատեն հօրը առջևը հանեց։ Արբակ չգիտնալով կերաւ որդւոյն մարմինը։ Հարցուց անօրէն Աժդահակ. Արբակ, ի՞նչպէս է. — Շատ համով է, տէր արքայ, ըսաւ խեղճ հայրը. — Թէ որ համով կ'ուտուի սիրելւոյ միսը՝ ինչո՞ւ իմ թոռս ողջ պահեցիր, ըսաւ Աժդահակ, ու տղուն գլուխն ու թաթերն ալ առջևը հանել տուաւ։ Սոսկացաւ Արբակ, սիրտը

---

1 Աժդահակ Կիւրոսը ճանչնալէն ետքը ի՞նչ ըրաւ։ — Արբակայ դէմ ի՞նչ անգթութիւն ըրաւ։

կործանեցաւ, և հաստատ միտքը դրաւ որ Աժդա-
հակայ անգթութեանը վրէժը առնէ։

1 Կիւրոս Պարսկաստան գնաց. Պարսից օրէ-
նօքը կրթուեցաւ, և իր ընկերակցացը հետ շատ
քաջութիւններ կ'ընէր։ Ջեռաց տակէն Արբակ
սկսաւ զինքը գրգռել որ չվախնայ ապստամբի
Աժդահակայ դէմ. Ես պատրաստ եմ, ըսաւ,
քեզի օգնելու. Կիւրոս ալ սկսաւ Պարսիկները
ոտք հանել։ Օր մը զիրենք ժողվեց փշոտ դաշտ
մը տարաւ ու հրամայեց որ մանգաղներով մաք-
րեն. ինչուան իրիկուն արիւն քրտինք մտան,
հազիւ մաքրեցին։ Պատուիրեց իրենց որ երկ-
րորդ օրն ալ հագուած սգուած նորէն գան. ա-
նոնք երբոր եկան՝ զիրենք ծաղկաւէտ դաշտի
մը մէջ նստեցուց ու փառաւոր սեղան մը ըրաւ
իրենց. կերան, խմեցին, զուարճացան։ Երբոր
սեղանէն ելան՝ հարցուց իրենց Կիւրոս թէ Ո՞ր
օրը աւելի աղէկ էր. երեկուանը թէ այսօրուա-
նը։ Պատասխանեին յայտնի էր. Երեկ ինչուան
իրիկուն աշխատեցանք, ըսին, հոգինիս բերան-
նիս եկաւ, իսկ այսօր հանգիստ կերանք խմեցինք
և ուրախացանք։ — Ուրեմն, ըսաւ Կիւրոս, ե-
թէ ըսածիս մտիկ ընէք՝ ասանկ մէկ օր մը չէ բո-
լոր կեանքերնիդ հանգստութեամբ և ուրախու-
թեամբ կ'անցընէք. հետս եկէք, յուսամ որ
աստուածոց օգնութեամբը ու ձեր քաջու-
թեամբը կ'երթանք Մարաց կը յաղթենք, ու

1 Կիւրոս ինչպէս Աժդահակայ դէմ ելաւ։

զանոնք՝ մեզի կը ծառայեցընենք։ Ամէնքը մէկ բերան խօսք առելին, իրենց Թագաւոր ըրին զինքը, և Կիւրոս սկսաւ պատերազմի պատրաստութիւն տեսնել։

1 Մեր Երուանդեան Տիգրան Թագաւորը որ շատ անգամ տեսեր էր Կիւրոսը ու իր որդւոյն պէս զինքը կը սիրէր, երբոր լսեց թէ բոլոր Պարսիկք հետը միաբաներ՝ զինքը Թագաւոր ըրեր են, ուրախակցութեան համար մարդ խըրկեց ու հետը բարեկամութեան դաշինք գրաւ։

2 Երբոր իմացաւ Աժդահակ թէ Կիւրոս Տիգրանին հետ բարեկամացեր է, սաստիկ սկսաւ վախնալ. գիտէր թէ Տիգրանին զօրութեանը պիտի չկարենայ դէմ դնել։ Անանկ վախի մէջ սարսափելի երազ մըն ալ տեսաւ որ Հայաստանի սառով պատած լեռան մը ծայրը ծիրանազգեստ ու բարձրահասակ կին մը նստած՝ իրեք կարիճ դիւցազուններ ծնաւ որ բոլոր աշխարհիս կը տիրէին. անոնցմէ մէկն ալ վիշապի վրայ հեծած վազեց իրեն վրայ, ու հետը կռուելով զինքը վիրաւորեց, ու Թագաւորութիւնը ձեռքէն առաւ։ Այն վախով սարսափած արթընցաւ Աժդահակ ու գիշերանց իշխանները ժողվել կանչեց, պատմեց տեսած երազը, խորհուրդ ը-

---

1 Մեր Տիգրան Թագաւորը ինչպէս բարեկամացաւ Կիւրոսին հետ։

2 Աժդահակ Կիւրոսի և Տիգրանայ բարեկամութիւնն որ լսեց՝ ինչ ըրաւ։

*րին որ Տիգրանայ քոյրը իրեն կին առնէ, ու անոր ձեռքովը Տիգրանը մեռցընէ, որպէս զի չըկարենայ Կիւրոսին օգնել։*

*1 Շատ ընծաներով մարդ խրկեց Աժդահակ Տիգրանին և ուզեց որ քոյրը Տիգրանուհին իրեն կին տայ, որ զինքը տիկնանց տիկին պիտի ընէ։ Զգիտնալով Տիգրան անոր նենգաւոր միտքը՝ հաւանեցաւ, շուտով կամքը կատարեց։ Շատ սիրով ընդունեցաւ Աժդահակ Տիգրանուհին, աչքը մտնելու համար զինքը տիկնանց տիկին ըրաւ, և ամէն բան անոր խորհրդովը կ՚ընէր, ինչուան որ վրան վստահանալով յայտնեց անոր իր միտքը և ըսաւ թէ, Տիգրան Կիւրոսին հետ միաբաներ է զիս և զքեզ մեռցընելու, ուստի պէտք է որ դուն հնարք մը գտնես, եղբայրդ մեռցընել տաս, ապա թէ ոչ՝ զքեզ տիկնութենէդ կը ձգեմ, խայտառակ կ՚ընեմ։ Խորագէտ և իմաստուն Տիգրանուհին իմացաւ Աժդահակայ նենգութիւնը. ծածուկ հաւատարիմ մարդկանց ձեռքով եղբօրը հասկըցուց։ Պատերազմի պատրաստուեցաւ Տիգրան. Կիւրոսի ալ մարդ խրկեց որ շուտ ընէ ընելիքը. և երբոր Աժդահակ խաբէութեամբ Տիգրանը տեսնուելու կը կանչէր։ Տիգրան վրան պատերազմի ելաւ, ան միջոցին Կիւրոսն ալ եկաւ հասաւ. Արբակ ալ որ իր զօրացը սպարապետ դրեր էր Աժդահակ՝*

---

*1 Աժդահակ Տիգրանուհւոյն ինչ պատիւներ ըրաւ։ — Աժդահակայ մահն ինչպէս եղաւ։*

պատերազմին սաստկացած ատենը Կիւրոսին կողմն անցաւ։ Այն ատենը Աժդահակ յուսահատութենէն կատղած՝ Տիգրանին վրայ վազեց, զարկաւ Տիգրան նիզակը անոր սիրտը, ու թոքին կէսը նիզակին հետ մէկտեղ դուրս հանեց, մեռած ընկաւ Աժդահակ, և Կիւրոս Մարաց և Պարսից տիրեց։

1 Անկէ ետքն ալ Կիւրոս մեր Տիգրան թագաւորին օգնութեամբը շատ յաղթութիւններ ըրաւ։ Լիւդացւոց Կրեսոս թագաւորին վրայ գնաց ու տասնըչորս օր Սարդիկէ մայրաքաղաքը պաշարելով առաւ (548)։ Կ'ըսեն թէ Կիւրոսի զօրքը ներս մտնելու ատեն անոնցմէ մէկը Լիւդացի մը տեսնելով առանց գիտնալու որ ինքը Կրեսոսն է, երբոր թուրը կը վերցնէ որ զարնէ, Կրեսոսին քովը կեցած իր համր տղան հօրը մեռնելուն վրայ սաստիկ ցաւելէն լեզուն կը բացուի ու կը կանչէ. Թուրդ վա՛ր առ, Կրեսոս հայրս կը սպաննես։ Զինուորը մէկէն ձեռքը վար կ'առնէ, Կրեսոսը Կիւրոսին կը տանի։

2 Կիւրոս հրաման տուաւ որ Կրեսոսը ողջ ողջ այրեն։ Պատրաստեցին փայտակոյտը, և մէջը մտնելու պատրաստուած ատենը մտածելով թէ ինչ երջանկութենէ ինչ թշուառութեան հասաւ, յիշեց Կրեսոս ան խելացի խօսքն

---

1 Կիւրոսի առաջին յաղթութիւններն որո՞նք եղան։

2 Կիւրոս ի՞նչպէս ուզեց մեռցընել Կրեսոսը։

որ Սողոն ըսեր էր իրեն, ու այրած սրտով բարձրաձայն իրեք անգամ Սողոն, Սողոն, Սողոն կանչեց։ Կիւրոս որ հոն բոլոր իշխաններովը եկեր էր, առջևը կանչել տուաւ ու հարցուց թէ ինչո՞ւ համար ան հռչակաւոր մարդը կանչեցիր. Յիշեցի, ըսաւ, Սողոնին խօսքը. վասն զի ատենով երբոր իրեն հարցուցի թէ ինծմէ աւելի երջանիկ մարդ տեսե՞ր ես, պատասխան տուաւ ինծի թէ Անկարելի է մարդուս երջանիկ ըսել՝ վախճանը տեսնելէն առաջ։ Կիւրոսին սիրտը շարժեցաւ, կրակը մարել տուաւ, Կրեսոսին ներեց, ու ինչուան ետքը թագաւորական պատուով իր քովը պահեց *։

1 Երբոր սկսան զօրքը Սարդիկէ մտած կողոպտել աւերել քաղաքը, Կրեսոս Կիւրոսին քովը կեցած՝ սկսաւ զարմանք ցուցընել։ Կիւրոս երբոր պատճառը անոր հարցուց, Կը զարմանամ, ըսաւ, որ զօրքդ կը կողոպտեն ան քաղաքը՝ որ ալ Կրեսոսին չէ, Կիւրոսին է։ Հարցուց Կիւրոս. Հապա ի՞նչ պէտք է ընել։ — Սարդիկէ, ըսաւ, որ քաղաքը չկողոպտեն, որպէս զի անոր

---

1 Կիւրոս Կրեսոսի հետ ի՞նչպէս վարուեցաւ։

* Աս դէպուածը Խորենացին ալ և ալ Յոյն հեղինակներէ ստուգելով մը Արտաշէս Ա, Պարթև թագաւորին վրայ կը պատմէ, որ շատ հաւանական չերեւնար։

հարստութիւնը ու վայելչութիւնը տեսնողները առնողին գովէստ տան․ իսկ թէ որ կողոպտեն, ոչ միայն քաղաքը կը փճանայ, այլ նաև զօրքը կը հարըստանայ, ու քեզի կը սկսի մտիկ չընել։ Հաւանեցաւ Կիւրոս, աւարառութիւնը արգիլեց, և Կրեսոսին իմաստութեանը վրայ զարմացած՝ զինքը սիրեց ու իրեն խորհրդականն ըրաւ։

1 Կրեսոսի աչքը չէր կտրէր Կիւրոսին հետ պատերազմելու, բայց Դեղփեայ պատգամախօսին պատգամովը յորդորուեցաւ, որ աս էր․ Կրեսոս անցեալ ընդ Ալիս գետ, քակեսցէ զիշխանութիւնս։ Կրեսոս կարծեց որ Մարաց իշխանութիւնը պիտի քակէ։ Բայց երբոր բոլորովին հակառակը պատահեցաւ, Կիւրոսի հրամանովը երկու ոսկի շղթայ խրկեց Դեղփիսի աստուծոյն՝ մեղադրելով զանիկայ որ այնչափ ընծաներ առաւ ու իրեն անանկ անիրաւ պատգամ տուաւ։ Բայց դիւրաւ պատգամախօսը մեկնութիւնը տուաւ թէ քակեսցէ զիշխանութիւն ըսելով՝ Կրեսոսին իշխանութիւնը կ'իմանար և ոչ թէ Մարացը։

2 Յոնիացիք, Դորացիք ու Եւողացիք երբոր լսեցին թէ Կիւրոս Սարդիկէն առեր է, դեսպան խրկեցին և ուզեցին հետը դաշինք դնել․ բայց որովհետև Կիւրոս զիրենք առաջ յորդո-

---

1 Ինչէ՞ն յորդորուած էր Կրեսոս Կիւրոսի դէմ պատերազմի ելլելու։

2 Յոնիացւոց վրայ ի՞նչպէս տիրեց Կիւրոս։

րեր էր ու չէին ուզած, անոնց սանկ առակով մը պատասխան տուաւ. Ձկնորսը տեսնելով որ ծովը շատ ձուկ կայ, կը սկսի սրինգով անուշ երգել, որպէս զի ձայնին քաղցրութեանը զմայլած իրեն անձնատուր ըլլան. բայց տեսնելով որ անոնք սրնգին անուշ ձայնը բանի տեղ չեն դներ, ուռկանը կը նետէ ու անոնցմէ շատը կը բռնէ, անոնք ծովեզերք ելլելնուն պէս կը սկսին կայտռել ցատքռտել. ընդունայն տեղ հիմայ կը կաքաւէք, կ'ըսէ, վասն զի քիչ մը առաջ երբոր ձեզի սրինգով կ'երգէի՝ ան ատենը պէտք էիք ցատքռտել։ Հասկըցան Կիւրոսին միտքը ու պատերազմի պատրաստուեցան։ Արպակը վրանին խաւրեց Կիւրոս ու զանոնք նուաճեց։

1 Կիւրոս Ասորւոց երկրին ու Արաբիոյ տիրելէն ետքը՝ մեր Տիգրան Թագաւորին հետ գընաց Բաբելոնը պաշարեց՝ առաւ, ու ամբարիշտ Բաղտասարն ալ սպաննեց (538)։ Հրէից Բաբելոնի մէջ եօթանասուն տարուան գերութիւնը լմնցած ըլլալով, հրովարտակաւ հրաման տուաւ իրենց որ Երուսաղէմ երթան Աստուծոյ տաճարը շինեն։

2 Հարիւր քսան գաւառ կամ կուսակալութիւն բաժնեց Կիւրոս իր տէրութիւնը, և ա-

---

1 Բաբելոնն ի՞նչպէս առաւ, ու Հրէից ի՞նչպէս ազատութիւն տուաւ։

2 Կիւրոս իր տէրութիւնը քանի՞ կուսակալութիւն բաժնեց։

նոնց վրայ իրեք գլխաւոր իշխան դրաւ, որոնց մէջ առաջինն էր Դանիէլ. անոր համար վրան նախանձեցան ու առիւծներու գուբը ձգել տուին։ Ան հարիւր քսան կուսակալութեանց մէջն էին Պարսկաստան, Մարաստան, Ասորեստան, Արաբիա, Ասորիք, Կապադովկիա, Մեծ ու Փոքր Փռիւգիա, Լիւդիա, Կարիա, Փիւնիկէ, Կիլիկիա, Պափլագոնիա, Սակք, Բակտրիա, Հնդկաստան, Կիպրոս կղզին և Եգիպտոս։ Եւ որպէս զի աս ընդարձակ տէրութեանը մէջ տուած հրամանները շուտով կատարուին՝ Կիւրոս կանոնաւոր սուրհանդակներ ու թղթատարներ դրաւ, որ ինչուան ան ատենը չկային։

1 Առատաձեռնութիւնը թագաւորավայել առաքինութիւն է կ'ըսէր Կիւրոս, և ինքը հարըստանալու տեղ իր հպատակները կը նայէր որ հարստացընէ։ Օր մը Կրեսոս իրեն ըսաւ թէ, Ասանկ ուրիշներուն տալով դուն պիտի աղքատնաս, որ եթէ ուզես՝ կրնաս աշխարհիս ամէնէն հարուստ թագաւորն ըլլալ։ Հարցուց Կիւրոս. Ան ատենը ո՞րչափ ստըկի տէր կրնայի ըլլալ։ Կրեսոս չափազանց ստակ մը ըսաւ։ Կիւրոս մէկէն պզտիկ տոմսակ մը գրեց իր իշխաններուն, իմացուց որ ստըկի կարօտութիւն ունի. շուտ մը Կրեսոսին ըսածէն աւելի բերին Կիւրոսի. Ահա իմ գանձերս. ըսաւ Կիւրոս Կրեսոսին, ահա ան սնտուկները՝ որոնց մէջ իմ հարստու-

---

1 Կիւրոսի առատաձեռնութիւնը ինչպէս էր։

Թիւններս կը պահեմ՝ հպատակաց սիրտն ու սէրն է։

1 Երբ Կիւրոս Սկիւթացւոց վրայ գնաց, ու չկարենալով անոնց յաղթել՝ բանակը առատ գինի ու միս թողլով փախչիլ ձևացուց. անոնք ալ եկան կերան խմեցին, գինովցան։ Գիշերանց վրանին հասաւ Կիւրոս, շատը ջարդեց, շատն ալ գերի բռնեց, որոնց մէջ էր նաև անոնց Տոմիւր թագուհւոյն որդին։ Թագուհին շատ աղաչեց Կիւրոսին որ իր որդին ետ դարձընէ. չտուաւ Կիւրոս. տղան ալ յուսահատութենէն ինքզինքը սպաննեց։ Ան ատենը Տոմիւր նորէն Կիւրոսի վրայ պատերազմի ելաւ, ու փախչիլ ձևացընելով զինքը նեղ տեղուանք ձգեց. ու մեծ ջարդ տուաւ. հոն Կիւրոսն ալ մեռաւ եօթանասուն տարեկան, քսանըինը տարի թագաւորելէն ետքը. և Տոմիւր որդւոյն մահուան վրէժը հանելու համար՝ Կիւրոսին գլուխը կըտրեց, և մարդու արիւնով լեցուցած տիկի մը մէջ դրաւ՝ ըսելով. Կենդանութեանդ ատենն որ չկշտացար՝ մեռնելէդ ետքը կշտացիր մարդու արիւնով։

2 Կիւրոսի մարդիկը մարմինը ձեռք ձգեցին ու տարին Պարսկաստան Պասարգադա քաղաքը փառաւոր շիրմի մը մէջ թաղեցին, ու ինչպէս

---

1 Կիւրոս Սկիւթացւոց դէմ ի՞նչ արշաւանք ըրաւ։

2 Կիւրոսի մարմինը ո՞ւր թաղուեցաւ։

կը պատմէն, վրան ասանկ տապանագիր մը փորեցին. Ո՛վ մարդ, ես Կիւրոսն եմ, որ Պարսից թագաւորութիւնը կանգնեցի և Ասիոյ թագաւոր եղայ. գերեզմանիս վրայ մի՛ նախանձիր։

[1] Աժդահակայ և Կիւրոսի պատմութիւնը գլխաւորապէս Երոդոտոս ու Քսենոփոն կը պատմեն, բայց իրարմէ բոլորովին տարբեր. մենք ալ աւելի Երոդոտոսին հետևեցանք, որ աւելի նման է նաև մեր Խորենացւոյն պատմածին. միայն Երոդոտոս կ'ըսէ թէ նախ Աժդահակ Կիւրոսին հետ պատերազմեցաւ, և Կիւրոս զինքը բռնեց, թագաւորութիւնը ձեռքէն առաւ ու պալատին մէջ փակեց ինչուան մահը։

Իսկ Քսենոփոնի Կիւրոսին վրայ պատմածները բոլորովին շինծու պատմութիւն կը սեպուին. վասն զի ինքը Դաստիարակութիւն Կիւրոսի ըսուած գրքին մէջ չէ ուզած Կիւրոսի ճարտար պատմութիւնը գրել և ցուցընել թէ Կիւրոս ինչպէս էր, հապա թէ իրեն պէս թագաւոր մը ինչպէս պէտք էր որ ըլլար։ Անոր համար մեր Տիգրանայ պատմութիւնն ալ ուզածին պէս ծըռելով կը պատմէ, և անկէց առած է նաև Ռոլէն և ուրիշ Եւրոպացի պատմիչները։ Բայց որչափ ալ առասպելախառն ըլլայ Քսենոփոնին գրածը, աս յայտնի կ'երևնայ նաև անոր պատմածներուն մէջ ալ թէ մեր Տիգրան թագաւորը ան

---

1 Աժդահակայ և Կիւրոսի պատմութեան գլխաւոր աղբիւրները որո՞նք են։

տաենը անուանի է եղեր, Կիւրոսին սիրելի, ու պատերազմներուն մէջ անոր օգնական եղեր է։ Իսկ Կիւրոսին համար կ՚ըսէ թէ իր պալատին մէջ եօթանասուն տարեկան մեռաւ հանգստութեամբ։



# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

# ՊԱՐՍԻՑ



## ԳԼՈՒԽ Ա.

Կամբիւս. — Եգիպտոս կը տիրէ. — Անգթութիւններ. — Պրեքսասպ. — Կրեսոս. — Կամբիւսի մահը. — Ծմերդ մոգ. — Օտան. — Կոտորած մոգուց։

1 Կիւրոսին յաջորդեց որդին Կամբիւս (529)։ Աթոռը նստածին պէս սկսաւ Եգիպտոսի վրայ դիմելու պատրաստութիւն տեսնել, որովհետեւ Ամասիս Թագաւորը Կիւրոսին տուած հարկը իրեն չէր ուզեր տալ։ Երբոր Եգիպտոսի մօտեցաւ՝ իմացաւ Կամբիւս որ Ամասիս մեռեր է, եւ որդին Փսամենէս տեղը անցնելով պատերազմի կը պատրաստուի։



1 Կիւրոսին ո՞վ յաջորդեց։ — Կամբիւս ի՞նչպէս սկսաւ թագաւորութիւնը։

1 Տեսաւ Կամբիւս որ Եգիպտոս մտնելու համար հարկ է Պեղուսիոն ամուր քաղաքին տիրել. և այսպիսի հնարքով ան քաղաքն առաւ։ Երբոր իմացաւ թէ քաղաքին պահապանները Եգիպտացի են, անոնց պաշտած կենդանիներէն՝ շուն, կատու, ոչխար, մէյմէկ գունդ զօրացը առջևը ձգեց, ու սկսան անոնցմով քաղաքին վրայ դիմել. Պեղուսացիք վախնալով որ չըլլայ թէ թըշնամիքը սպաննենք ըսելով իրենց աստուածներէն մէկը սպաննեն, ամենևին զէնք չբանեցուցին, և Կամբիւս դիւրութեամբ ներս մտաւ, քաղաքին տիրեց։

2 Փսամմենէս Թագաւորը բազմութեամբ զօրաց դէմն ելաւ, և ճակատեցան երկու զօրքը։ Պատերազմը չսկսած՝ Փանէս Յոյն զօրավարը դժգոհութեամբ մը Փսամմենեսին կողմէն Կամբիւսին կողմը անցեր՝ անոր ճամբայ կը ցուցընէր. մէկալ Յոյներն անոր երկու որդիքը բռնեցին երկու բանակին մէջ տեղը մորթեցին ու արիւննին խմեցին։ Բայց աս բարբարոսական վրէժխընդրութեամբ յաղթութիւնը կորսնցուցին. վասն զի Պարսիկք ան անմեղ արիւնն որ տեսան՝ կատաղաբար պատերազմելով յաղթեցին անոնց, մեծ ջարդ տուին, և հազիւ քիչ մարդիկ Փսամմենեսի հետ կրցան Մեմփիս փախչիլ։

---

1 Պեղուսիոն քաղաքին ի՞նչպէս տիրեց Կամբիւս։
2 Եգիպտացւոց ի՞նչ կերպով յաղթեց։

1 Կամբիւս նաւով մը դեսպան խրկեց Մեմփիս որ ինքնակամ անձնատուր ըլլան. Մեմփիսացիք բռնեցին դեսպանները կտոր կտոր ըրին։ Քիչ ատենի մէջ Կամբիւս պատերազմով քաղաքն առաւ, և իր դեսպան խրկած նաւուն մէջը քանի հոգի որ կային՝ ամէն մէկուն համար Մեմփիսի իշխաններէն տասնական հոգի սպաննեց, Փսամենէսն ալ բռնեց՝ պատուով պահեց։ Բայց երբոր իմացաւ թէ անիկայ նորէն խռովութիւն հանելու կը ջանայ՝ ցլու արիւն խմցուց անոր ու մեռուց։

Անկէց Սայիս գնաց, ուր էին Եգիպտացւոց թագաւորներուն գերեզմանները. և սրտին ոխը առնելու համար՝ Ամասիսին դիակը գերեզմանէն հանեց ու մեծ նախատինքով այրել տուաւ։

2 Անկէ ետքը Կամբիւս երկու արշաւանք ալ ըրաւ, որ մէկմէկէ ձախորդ գնացին։ Առաջինը Ամմոնացւոց վրայ էր. վասն զի երբոր վրանին յիսուն հազար զօրք խրկեց որ երթան Արամազդայ Ամմոնի մեհեանը կողոպտեն, յանկարծ փոթորիկ մը ելաւ, բոլոր զօրքն ալ անապատի մէջ աւազի տակ թաղուեցան։

3 Նորէն շատ զօրք ժողվեց Կամբիւս և ան-

---

1 Ի՞նչ անգթութիւններ ըրաւ Կամբիւս Մեմփիսի ու Սայիսի մէջ։
2 Կամբիւս Եգիպտոսի տիրելէն ետքը ի՞նչ արշաւանք ըրաւ։
3 Երկրորդ արշաւանքը ո՞րն եղաւ։

ճամբ ուզեց երթալ Եթովպիոյ տիրել. բայց առաջուց դեսպաններ խրկեց որ երթան երկիրը դիտեն, և անոնց հետ Եթովպացւոց շատ մը ծիրանի, ոսկի ապարանջանք ու խնկեղէններ ընծայ խաւրեց։ Ընծաները ծաղր ըրին Եթովպացիք. վասն զի անանկ աւելորդ բաներ չէին գործածեր. և իմանալով որ դեսպաններն ալ լրտեսելու համար եկեր են՝ զանոնք ալ անարգեցին. բայց իրենց թագաւորը Կամբիւսին մէկ լայնալիճ խոշոր աղեղ մը խրկեց որ Պարսիկք հազիւ կրնային վերցընել, իսկ լարել ամէնևին չէին կրնար։ Ան աղեղով թագաւորը առաջ նետ մը նետեց ու ըսաւ. Թէ որ Պարսիկներն ինծի պէս աս աղեղը կարենան գործածել, ան ատեն թող գան Եթովպացւոց հետ պատերազմին։

1 Աս որ լսեց Կամբիւս՝ սաստիկ բարկացաւ, ու առանց զօրացը համար բաւական պաշար առնելու՝ ճամբայ ելաւ։ Քիչ ատենէն անանկ սաստիկ սով ընկաւ զօրացը մէջ՝ որ բեռնակիր գրաստները ուտելէն ետքը սկսան նաև վիճակով մէկզմէկ ուտել։ Կամբիւսին հոգը չէր. կատաղութեամբ զանոնք առաջ կը քշէր, որովհետև ան ատենն ալ իր սեղանին վրայ ազնիւ կերակուրներ պակաս չէին. բայց ետքը վախնալով որ չըլլայ թէ զօրքը յուսահատութենէն իր գլխուն փորձանք մը բերեն, միտքը փոխեց ու մնացած քիչ զօրքովը Թեբէ դարձաւ։

---

1 Երկրորդ արշաւանքը ի՞նչ վերջ ունեցաւ։

1 Թեբէ քաղաքը հոյակապ ու մեծագանձ մեհեաններով լեցուն էր. ամէնքն ալ կողոպտեց Կամբիւս ու կրակ տուաւ այրեց. Ոսիմանդէ շիրմին անուանի շրջանակն ալ հանեց հետը տարաւ։

2 Անկէ դարձաւ Մեմփիս, տեսաւ որ բոլոր քաղաքը ուրախացած կը պարեն, հանդէս կ'ընեն. կարծելով որ ասոնք իր զօրացը ջարդուելուն վրայ անանկ կ'ուրախանան, բարկացաւ, իշխանները կանչեց հարցուց, ու երբոր իրեն ըսին թէ Մեր Ապիս աստուածը գտնուելու համար կ'ուրախանանք, կարծեց թէ անոնք զինքը կը խաբեն, աւելի բարկացաւ, ու մէկէն զանոնք սպաննել տուաւ։ Ետքը քուրմերը կանչեց. երբոր անոնք ալ նոյն պատասխանը տուին, զարմացաւ Կամբիւս. Թէ որ անանկ քաղցր ու ընտանի աստուած մը ունիք, ըսաւ, որ ինչուան ձեզի հետ կը տեսնուի, բերէք մէյմը ես ալ տեսնեմ։ Տեսաւ որ եզ մը առին հանդիսով առջեւը բերին, կատղեցաւ՝ մէջքէն թուրը հանեց, եզան ազդրին զարկաւ վիրաւորեց, ու քուրմերուն անխելքութիւնը յանդիմանելով՝ ծեծել տուաւ զանոնք, հանդէսը կատարող Եգիպտացիքն ալ սպաննել տուաւ։ Քուրմերը լալով ողբալով տարին Ապիսը իր մեհեանը, որ հոն քանի մը օրէն ետքը վէրքէն ցաւէն մեռաւ։

---

1 Թեբէի մէջ ի՞նչ ըրաւ Կամբիւս։
2 Ապիս եզը ի՞նչպէս սպաննեց։

1 Կամբիւս ոչ միայն օտարաց արեամբը իր բնական անգթութիւնը կը կշտացնէր, հապա նաև իր ընտանեացը անմեղ արիւնով։ Երբոր Եթովպացւոց թագաւորին խրկած աղեղը եկաւ, ու բոլոր Պարսից մէջ միայն Կամբիւսին եղբայրը Շմերդ կրցաւ զանիկայ գործածել, վախցաւ Կամբիւս որ զանիկայ իր տեղը չթագաւորեցընեն, մանաւանդ որ երազ մըն ալ տեսեր էր որ Շմերդ իր աթոռը կը նստէր. բռնեց զինքը Պարսկաստան խրկեց, ու ծածուկ Պրեքսասպ իր սիրելի իշխանին պատուիրեց որ հոն զինքը սպաննէ (522)։

2 Կամբիւս իր ախտամոլ բարքովը պզտիկ քրոջը Մերովէին վրայ սէր ձգեց. ու հետը ուզեց կարգուիլ. բայց առաջ օրէնսգիտաց ու մոգերուն խորհուրդ հարցուց։ Անոնք իր մոլեգին կատաղութենէն վախնալով, Օրէնք է, ըսին, որ եղբայր ու քոյր իրարու հետ չեն կրնար կարգուիլ. բայց աս օրէնքն ալ կայ որ Պարսից թագաւորները ի՛նչ որ ուզեն կրնան ընել։ Աս երկդիմի պատասխանը վճիռ սեպելով Կամբիւս, քրոջը հետ կարգուեցաւ, և ուր որ երթար զինքն ալ հետը կը տանէր։

3 Բայց իր անխելք կատաղութեամբը Մերովէին ալ չխնայեց։ Օր մը մէկտեղ գազանամար-

---

1 Իր եղբայրը ինչո՞ւ սպաննեց Կամբիւս։
2 Ի՞նչ կերպով իր քոյրը իրեն հարս ըրաւ։
3 Ի՞նչ պատճառաւ սպաննեց իր քոյրը։

տի գնացին, ուր շուն մը առիւծի մը հետ կը կը-ռուէր. երբոր սկսաւ շունը տկարանալ ու յաղ-թուելու մօտ էր, ուրիշ շուն մը անոր օգնու-թիւն հասաւ. զօրացաւ անով առջի շունը և ա-ռիւծին յաղթեց։ Ասոր վրայ զուարճացաւ Կամ-բիւս. բայց Մերովէ սկսաւ լալ։ Երբոր շատ բռ-նադատեց Կամբիւս թէ ինչու կուլայ, Ծմերդ-եղբօրս մահը միտքս ընկաւ, ըսաւ քոյրը, որ աս շնէն ալ դժբաղդ գտնուեր էր։ Դեռ խօսքը բե-րանն էր խեղճ Մերովէին, Կամբիւսին կատա-ղութիւնը բռնեց, ոտքովը զարկաւ փորուն՝ որ յղի ըլլալուն ընկաւ մեռաւ։

[1] Մարդուարիւն թափելը՝ Կամբիւսին զուար-ճութիւն մը դարձեր էր. օր չէր անցներ որ մարդ մը չսպաննէ. Պրեքսասպ իր սիրելի իշ-խանն ալ չկրցաւ անոր անգթութենէն ազատիլ։ Օր մը հարցուց իրեն Կամբիւս թէ Պարսիկներն ինծմէ գո՞հ են։ — Քաջութեանդ վրայ ամէնքը կը զարմանան, ըսաւ, տէր արքայ, բայց քիչ մը կը գանգատին որ շատ գինի կը խմես։ — Ու-րեմն, ըսաւ Կամբիւս, կը կարծեն որ ես գինի խմելով խելքս կը կորսնցընեմ. դուն տես ուրեմն և ինծի իրաւունք տուր։ Ծուռ մը գինի բերել տուաւ, սովորականէն աւելի խմեց, ու Պրեք-սասպին որդւոյն՝ որ իր մատռուակն էր, հրա-մայեց որ երթայ սրահին ծայրը ձախ ձեռքը գլուխը դրած շիտակ անշարժ կենայ. լարեց ա-

1 Պրեքսասպին որդւոյն մահն ինչպէս եղաւ։

ղեզը, Շիտակ սրտին՝ ըսաւ ու նետեց։ Նետը բանալ տալաւ տղուն սիրտը, ու նետին վէրքը հօրը ցուցընելով ըսաւ. Աղէկ նշան առե՞ր եմ թէ չէ. ուրեմն գինովութեանս ատեն ալ ըրածս գիտեմ։ Թշուառական հայրը սրտին ցաւէն մե-կէն մարելու իյնալու տեղ՝ վատութեամբ եղաւ ըսաւ թէ, Ապողոնն ալ սանկ ճարտարու-թեամբ չէր կրնար նետ նետել։ Անոր համար աղէկ կ'ըսէ Սենեկա. Հարուածը ամբարիշտ, անոր գովեստը ամբարշտագոյն.

1 Անգամ մըն ալ Կրեսոս, որ հօրը Կիւրոսին պէս իրեն ալ խորհրդականն էր. զինքը քիչ մը խրատելուն համար բարկացաւ Կամբիւս, ու մէկէն հրամայեց որ զինքը սպաննեն։ Մարդիկը գիտնալով որ ետքը պիտի զղջայ, գաղտուկ ողջ պահեցին Կրեսոսը։ Իրաւցընէ երկրորդ օրը սկը-սաւ լալ ու ափսոսալ վրան։ Ան ատենը երբոր Կրեսոս ողջ է ըսին, ուրախացաւ, կանչեց քո-վը. բայց անոր տեղը զինքը ողջ պահողները սպաննել տուաւ։

2 Թէպէտ և ինքը Կամբիւս կարգ կանոն և ար-դարութիւն չէր գիտեր, բայց կ'ուզէր ու ուրիշ-ները գիտնան ու պահեն։ Օր մը լսեց թէ իր իշ-խաններէն մէկը անիրաւութիւն մը ըրեր է, հրա-ման տուաւ որ ողջ ողջ մորթը քերթեն հանեն

---

1 Կրեսոսն ինչո՞ւ ուզեց մեռցընել։
2 Արդարութեան ինչպէս վրէժխնդիր էր Կամ-բիւս։

վրայէն ու դատաստանի ատեն անոր նստած աթոռին վրայ անցընեն. և անոր տեղը որդւոյն՝ դըրաւ; որպէս զի հօրը մորթին վրայ նստելով՝ պաշտօնը յիշէ ու արդարութեամբ դատաստան կտրէ:

[1] Կամբիւսին աս անգթութեանցը հետևող եղաւ Ովրեստէս Սարդիկէի նախարարը, որ նոր-օրինակ մահուամբ մը մեռցընել տուաւ զՊոլիկրատէս Սամոսի բռնաւորը:

Աս Պոլիկրատեսին բոլոր կենացը մէջ ամէն բան ուզածին պէս յաջողեր էր, և ամենևին անհանգստութիւն կամ ձախորդութիւն չէր ունեցած: Ամասիս Եգիպտացւոց թագաւորը որ իրեն նիզակակից ու բարեկամ էր, նամակ մը կը գրէ ըսելով որ Այնչափ երկարատև երջանկութիւնը աղէկ բան չէ. օր մը չէ նէ օր մը այն ժանտ աստուածներն որ մարդկանց երջանկութեանը վրայ կը նախանձին՝ գլուխդ մեծ դժբաղդութիւն մը կը բերեն. ուստի խրատ կուտամ քեզի որ դուն կամօքդ քեզի վիշտ մը հասցընես: Խօսքին մտիկ ըրաւ Պոլիկրատէս, ու օր մը իր իշխաններուն հետ նաւակով երթալու ատեն՝ իր անգին զմրուխտ մատնին ծածուկ ծովը նետեց: Քանի մը օրէն ձկնորսները մեծ ձուկ մը կը բռնեն, Պոլիկրատեսին ընծայ կը բերեն. ան ձկան փորէն մատնին դուրս կ'ելլէ, կ'առնէ Պո-

---

1 Կամբիւսին անգթութեանցը իր իշխաններն ալ կը հետևէին:

ղիկրատէս, կը զարմանայ և շատ կ'ուրախանայ. Ամասիս աս բանս որ լսեց, հրաժարեցաւ անոր բարեկամութիւնէն, որպէս զի գլուխը մեծ դժբաղդութիւն մը գալու որ ըլլայ՝ ինքը վրան չցաւի, իբր թէ երջանկութեան ու յաջողութեան ատենը միայն կ'ըլլայ բարեկամութիւն: Բայց Ամասիսին խօսքը իրաւցընէ կատարուեցաւ: Նախարարներէն մէկը միշտ Ովրեստէսը կը նախատէր որ չկրցաւ Սամոս կղզւոյն տիրելու. նախատինքին չդիմացաւ Ովրեստէս, միտքը դրաւ որ Սամոսի տիրէ: Գիտնալով որ Պողիկրատէս Սամոսի իշխանը շատ արծաթասէր մարդ է, անանկ ձևացուց թէ ինքը Կամբիւսէն ապըստամբեր է ու կ'ուզէ անոր վրայ պատերազմի ելլել. Բայց նախ կ'ուզեմ, ըսաւ, գանձերս քու քովդ ապահովցընել, կէսն ալ փոխարէն քեզի տալ: Չկրցաւ Պողիկրատէս հաւատալ որ անիկայ այնչափ գանձ ունենայ. ուստի մարդ խրկեց որ ստուգէ: Ովրեստէս շատ տոպրակներ քարով լեցուց, անոնց բերանը մէյմէկ քիչ ոսկի դրաւ ու եկողներուն ցըցուց: Պողիկրատէս երբոր լսեց ոսկւոյն ձայնը, չկրցաւ դիմանալ. բարեկամները Մի երթար ըսին, մտիկ չըրաւ՝ ելաւ գնաց. Ովրեստէս ալ բռնեց զինքը կախել տուաւ: Պողիկրատէս նախանձելի երջանկութեամբ անցուցած կեանքը՝ ոսկիին սիրոյն համար կախաղանով լմնցուց. Թէպէտ և Ովրեստէս ալ իր անգթութեանը պտուղը չկրցաւ՝ երկար ատեն վայելել. վասն զի Դարեհ թագաւորելուն պէս զինքը ան յանցանքին համար Պողիկրատեսի եղբօրը աղաչանքովը սպաննել տուաւ:

1 Յետագայ ատենը Կամբիւս թագաւորութիւնը ձեռքէն չհանելու համար իր եղբայրը սպանել տուեր էր. անոր տեղը ուրիշ Սմերդ մը ձեռքին թագաւորութիւնը առաւ: Վասն զի Կամբիւս Եգիպտոսի վրայ երթալու ատենը՝ իր տեղը Պարսկաստան Պատիզիթ մոգպետը ձգեր էր. ասիկայ տեսնելով որ ըրած անգթութեանցը համար Կամբիւսին վրայ ամէնքը դժգոհ էին, առաւ իր Սմերդ մոգ եղբայրը՝ որ Կամբիւսին Սմերդ եղբօրը շատ նման էր. և անոր մահը դեռ շատերը չէին իմացած, ու Կիւրոսին որդին Սմերդը աս է ըսելով զամէնքը հաւանեցուց, ու զանիկայ Պարսից վրայ թագաւոր դրաւ (522):

2 Կամբիւս Պարսկաստան դառնալու ատենը աս ապստամբութիւնը լսելով՝ մէկէն ճամբայ ելաւ որ երթայ ապստամբները նուաճէ. բայց ձի հեծնելու ատեն՝ դիպուածով թուրը պատեանէն ելաւ, ինքը անոր վրան ինկաւ, ազդրը վիրաւորեցաւ ու քանի մը օրէն մեռաւ:

3 Սմերդ մոգը իր խաբէութիւնը ծածկելու համար՝ պալատէն դուրս չէր ելլէր, և ամէն բան ներքինեաց ձեռքով կ՚ընէր: Փաղավրդեան սիր-

---

1 Սմերդ մոգը ինչպէս ապստամբեցաւ Կամբիւսէն:

2 Կամբիւս ինչպէս մեռաւ:

3 Սմերդ մոգը առջի թերան ինչպէս հաստատեց թագաւորութեանը մէջ:

որ վաստըկելու համար՝ իրեք տարի ջանանք տուրքէ ու զինուորագրութենէ ազատ ըլլալ, և ասոր ընծաներով քրեն շատ կուսակիցներ ժողվեց։

1 Ոտան նախարարը վրան կասկածի երթալով իր Փեդիմա աղջկանը որ Թագաւորին կանանցը մէկն էր, մարդ խրկեց հարցուց թէ Իրաւցընէ անիկայ Կամբիւսին եղբայրը Ճմէրդն է. անիկայ պատասխան տուաւ թէ Կիւրոսի որդին Ճմէրդը ես չեմ տեսած, անիկայ ալ չեմ ճանչնար։ Ոտան դարձեալ մարդ խրկեց իրեն ու ըսաւ որ Կիւրոսին աղջկանը Ատոսային հարցընէ թէ անիկայ իր Ճմէրդ եղբայրն է։ Անոր ալ պատասխան տուաւ Փեդիմա թէ Առջի օրուընէ Թագաւորը զմեզ իրարմէ զատեց ու ամէնեւին մէկզմէկ չենք կրնար տեսնել ու խօսիլ։ Ան ատենը ըսաւ իրեն Ոտան թէ Ո՛ր գիշերն որ քովդ գայ Թագաւորը՝ վարպետութեամբ մը նայէ թէ ականջ ունի՞ թէ չէ. որովհետեւ Ճմէրդ մոգին ականջը յանցանքի մը համար Կիւրոս կտրել տուեր էր։ Տեսաւ Փեդիմա որ ականջ չունի. իմացուց հօրը, և խարդախութիւնը դուրս ելաւ։

2 Անանկ խաբեբայ մարդ մը Թագաւոր ունե-

---

1 Ճմէրդ մոգին խաբէութիւնը ի՞նչպէս իմացուեցաւ։

2 Ոտան նախարարը ի՞նչպէս ետևէ եղաւ Ճմէրդ մոգը իշխանութենէն ձգելու։

նալը նախփոխինք ստիպելով Ոտան, գնաց իր հետը վեց նախարար միաբանեց որ ասոր ճար մը տեսնեն, իրենց օրինաւոր թագաւոր մը գտնեն։ Ասոնց մէջ ամենէն անուանին էր Դարեհ որդի Վշտասպեայ՝ որ Պարսկաստանի կուսակալն էր։

2 Երբոր ասոնք մէջերնին խօսք դրին որ պէտք երթային թագաւորը սպաննէին, մէյմըն ալ յանկարծ Պրեքսասպ մոգերէն ստիպուելով որ երթայ ժողովրդեան վկայութիւն տայ թէ Կամբիւսին Տմերդ եղբայրը ես չսպաննեցի, ու ինքն է թագաւորողը, ելաւ բարձր աշտարակի մը վրայ, ու ճշմարտութիւնը ամենուն քարոզեց թէ, Կիւրոսի որդին Տմերդը՝ Կամբիւսին հրամանովը ես իմ ձեռքովս սպաննեցի, և հիմակուան թագաւորողը Տմերդ մոգն է։ Ներեցէք ինծի ով դիք, ներեցէք և դուք ժողովուրդք․ վասն զի ոչ եթէ ուզելով անոր արիւնը թափեցի, այլ այնպիսի թագաւորին հրամանը զիս ստիպեց, ըսաւ ու ինքզինքը աշտարակէն վար նետեց և մեռաւ։ Ժողովուրդը տակն ու վրայ եղաւ, մոգերը իրար անցան․ ան միջոցին վազեցին դաւակիցները պալատը, Տմերդն ու Պատիսիթը բռնեցին մեռուցին, ու գլուխնին կտրած ժողովրդեան ցըցուցին։ Ժողովուրդը աս նենգութեան վրայ կատղած՝ վազեց մէկալ մոգերուն ու անոնց կուսակցացը վրայ, ջարդեց զանոնք, և որոշեց որ ամէն տարի նոյն օրը տօն տօնեն

---

2 Ի՞նչպէս սպաննուեցաւ Տմերդ մոգը։

բոլոր Պարսկաստան ու անունը դնեն Կոտորած Մոգաց։ Ան տօնին օրը մոգերը վախերնէն տներնին քաշուած՝ ամենևին դուրս չէին երևնար։

## ԳԼՈՒԽ Գ.

Դարեհ Վշտասպեայ կը թագաւորէ. — Ապստամբութեան Բաբելացւոց. — Զոպիւրոս. — Արշաւանք Սկիւթացւոց վրայ. — Աշխարհագրութիւն Հնդկաստանի. — Ապստամբութիւն Յոնիացւոց. — Կործանումն Միլետոսի. — Մարդոնիոսի առաջնորդութեամբ Յունաստանի վրայ եղած արշաւանքը. — Երկրորդ արշաւանք Յունաստանի. — Պարսիկք կը յաղթուին. — Ապստամբութիւն Եգիպտացւոց. — Քսերքսէս Դարեհի կը յաջորդէ. — Դարեհի մահը.

1 Վեց նախարարները մեջերնին շատ վէճ ըրին թէ ինչ տեսակ կառավարութիւն հաստատեն։ Ոմանք ռամկապետութիւն կ'ուզէին, ուրիշները ազնուապետութիւն. բայց Դարեհ Վշտասպեայ՝ անոնց երկուքին ալ վնասները առջևնին դնելով ըսաւ թէ Պէտք է դարձեալ միա-

---

1 Սմերդ մոգին տեղ ո՞վ և ի՞նչպէս թագաւորեց։

պետութիւն հաստատենք, և ցուցուց որ Կիւրոսի տանն միապետութեամբ իրենք այսչափ մեծցան, փառաւորուեցան։ Ամէնքը անոր հաւանեցան, և որովհետև օրինաւոր ժառանգ չկար ու իրենցմէ մէկը պէտք էր որ թագաւորէր, տեղ մը որոշեցին որ երկրորդ օրը երթան հոն արևը պաշտեն, և որունն որ ձին առաջ խնջայ՝ անիկայ ըլլայ իրենց թագաւորը։

Աս բանս Դարեհին ձիապանը իմանալով, առջի իրիկուընէ որոշուած տեղը մատակ ձի մը կը տանի կը կապէ, իր տիրոջը ձին ալ հոն կը տանի՝ անոր կը ցուցընէ։ Առաւօտը երբոր ամէնքը իրենց ձին հեծած հոն եկան՝ Դարեհի ձին սկսաւ խնջալ։ Մէկէն իշխանները վար իջան, ու երկրպագութիւն ընելով Դարեհի, Կեցցէ արքայ Դարեհ կանչեցին, ու զինքը թագաւորեցուցին (522)։

1 Դարեհ զանոնք առաջին իշխան ու խորհրդական ըրաւ, և հրաման տուաւ որ երբ ալ ուզեն՝ համարձակ կարենան իր քովը գալ. որովհետև Պարսից մէջ օրէնք կար որ առանց թագաւորին մասնաւոր հրամանին՝ չէին կրնար իշխանները քովը երթալ։ Ձիապանն ալ իշխանութեան հասուց, և իր արձանը փորել տուաւ ձիու վրայ նստած, տակը աս արձանագրով.

---

1 Իր իշխանակիցներն ի՞նչ պատուոյ հասուց Դարեհ։

ԴԱՐԵՀ ՎՇՏԱՍՊԵԱՆ, ԵԲԱՐԵՍ ԱԽՈՌԱՊԵՏԻՆ ՁԵՌ-ՔՈՎԸ ՊԱՐՍԻՑ ԹԱԳԱՒՈՐ ԵՂԱՒ:

1 Դարեհի թագաւորութեան երրորդ տարին Սամարացիք Հրէից վրայ ամբաստանութիւն ը-րին ու տաճարին շէնքը դադրեցընել տուին: Հրեայք Դարեհի դիմեցին, ան ալ քննել տուաւ Կիւրոսին անանկ տուած հրովարտակը, ու նո-րէն հրամայեց որ տաճարը շինեն:

Անկէ ետքը Եսթերայ խնդրանքովը, որ Աստի-նէին տեղ իրեն թագուհի ըրեր էր, ասոր հրո-վարտակին հակառակ՝ Հրէից նպաստաւոր հրո-վարտակ մը հանեց, ու անօրէն Համանը մեռցը-նել տուաւ *:

2 Երախտագիտութեամբն ալ իր անունը շատ մեծցուց Դարեհ, ու թագաւորաց և ամէն մար-դու բարի օրինակ եղաւ: Առաջնով երբոր ինքը Կամբիւսին քովը ծառայ էր, Սամոսի Պողիկրա-տէս բռնաւորին եղբայրը Սիղոսոն իրեն մէկ փա-ռաւոր պատմուճան մը ընծայ տուեր էր, որուն ինքը փոխարէն մը չէր կրցած ընել: Երբոր Դա-

---

1 Հրէից ի՞նչ ազատութիւններ տուաւ Դարեհ:
2 Դարեհի երախտագիտութեան վրայ ի՞նչ կը պատմուի:

* Ուսերիոս կ'ըսէ թէ Աստինէն՝ աշխարհին մատենա-գրոց Ասուերոս ըսածն է, ուրիշ Գրէքին ու Արտաշէս՝ և ուրիշներուն Ասուերոս ըսածը ալ Դարեհ Վշտասպեանն է:

րէն Թագաւորեց, Սեղոսոն Շօշ գնաց, ու պալատին դուռը կեցած՝ մարդ խրկեց Թագաւորին թէ Երախտաւոր Յոյն մը եկեր է: Զարմացաւ Դարեհ. ուզեց իմանալ թէ ով է, ու անոր հրամայեց որ մարդը ներս բերեն: Տեսաւ Դարեհ իր երախտաւորը, միտքը եկաւ անոր երախտիքը. չամըչցաւ առջի նուաստութեանը վրայ՝ որ պատմուճանի մը փոխարէն չէր կրցած ընել. գովեց Սեղոսոնին առատաձեռնութիւնը որ առանց բանի մը ակընկալութեան՝ իրեն անանկ պատմուճան մը ընծայ ըրեր էր. և Ես ալ թէ որ իբրև Դարեհ ծառայ չկրցայ, գէթ հիմա իբրև Դարեհ Թագաւոր քեզի փոխարէն մը ընեմ, ըսաւ և շատ գանձ անոր պարգև տուաւ: Բայց որովհետև Սեղոսոն ուրիշ բան իրմէ խնդրելու եկեր էր, և կ'ուզէր որ Սամոսը՝ որ Պոլիկրատէս եղբօրը ձեռքէն Ովրետէս առեր էր՝ նորէն իրեն դարձընէ, ան խնդիրքն ալ կատարեց Դարեհ:

1 Քանի մը տարիէն ետքը Բաբելացիք Պարսից տուած նեղութիւններէն ձանձրացած՝ գըլուխ քաշեցին, Բաբելոնը ամրացուցին ու ամէն պատրաստութիւն տեսան, և որպէս զի գիղած պաշարմնին երկար ատեն բաւէ, որչափ որ ծեր ու անկարող մարդիկ կային՝ զամէնքն ալ սպաննեցին որ աւելորդ տեղը հաց չուտեն: Դարեհ

---

1 Ի՞նչ պատճառաւ Բաբելացւոց վրայ ելաւ:

անհամար զօրքով վրանին գնաց, ու քաղաքը պաշարեց։

1 Տասնըինը ամիս պաշարած կեցաւ, Կիւրոսին պէս շատ հնարքներ բանեցուց, ճար չեղաւ. և երբոր յուսահատած կը մտածէր Դարեհ, Զոպիւրոս՝ եօթը իշխաններէն մէկը, քիթն ու ականջները կտրած արիւնլուայ դիմացն ելաւ։ Սոսկաց Դարեհ, հարցուց թէ Ո՞վ ըրաւ աս անգթութիւնը։ — Քու փառացդ համար ես ըրի, տէր արքայ, ըսաւ Զոպիւրոս. հրաման տուր ինծի, որ ասանկ քու ձեռքէդ փախածի պէս երթամ ու Բաբելոնը ձեռքդ մատնեմ։ Հրաման տուաւ թագաւորը. Զոպիւրոս գնաց ու վէրքերն ու վազած արեան կաթիլները Բաբելացւոց ցուցընելով, Ձեզի համար աս վիճակիս հասայ, կ՚ըսէր. վասն զի ըսի Դարեհին թէ չենք կրնար քաղաքին տիրել, պէտք է պաշարումը վերցընենք։ Վրան ցաւեցան Բաբելացիք, հաւատացին ըսածին, ու ձեռքը զօրք տուին որ Դարեհէն վրէժը առնէ։

2 Ան քիչ զօրքով (ինչպէս որ Դարեհին հետ խօսք դրեր էր) քանի մը յաղթութիւններ ըրաւ Զոպիւրոս Պարսից վրայ, և շատ մարդ ջարդեց անոնցմէ, ինչուան որ Բաբելացիք բոլորովին

---

1 Զոպիւրոս ինչ հնարք բանեցուց Բաբելոնի տիրելու համար։

2 Դարեհ ինչպէս առաւ Բաբելոն քաղաքը։

վրան վստահացած, բոլոր զօրաց սպարապետ ըրին զինքը։ Ան ատենը ինքն ալ դռները բա-ցաւ, քաղաքը մտանեց (510)։

1 Մտաւ Դարեհ Բաբելոն, հարիւր պղնձի դռները վերուց, պարիսպներն ալ փլուց որպէս զի մէյմըն ալ չկարենան ապստամբիլ, ապստամ-բաց գլխաւորները բռնեց, երեք հազար հոգի սպաննել տուաւ. պաշարման ատենը Բաբելա-ցիք անգթութեամբ կանանց մեծ մասը սպաններ էին, ինքը նորէն քովի ազգերէն կնիկ մարդիկ ժողվեց բերաւ որ նորէն շատնան։ Զոպիւրոսի ալ հաւատարմութեանը փոխարէն՝ Բաբելոնին եկամուտը անոր տուաւ, ու մեծամեծ պատիւ-ներու հասուց զինքը։

2 Բաբելոնի դռներէն մէկուն վրայ Նիտոկրիս Թագուհւոյն փառաւոր գերեզմանը կար, ու վրան գրած էր որ իր յաջորդները ինչուան վերջի աստիճանի կարօտութեան մէջ չիյնան՝ չը-բանան և մէջի գանձը չառնուն։ Ան գերեզմանը ինչուան Դարեհի ատեն գոց մնացեր էր. Դարեհ կարծելով թէ մէջը շատ գանձ կայ՝ բացաւ ու մէջը աս նախատական արձանագիրը քանդակած գտաւ. Թէ որ դու ընչաքաղց ու անարգ ագա-հութեան գերի չըլլայիր, մեռած մարդու շիրիմը չէիր բանար։

---

1 Բաբելոն մտնելէն ետքը ի՞նչ ըրաւ Դարեհ։
2 Նիտոկրիս Թագուհւոյն գերեզմանն ի՞նչ էր։

1 Օր մը Ինտափեռնէս նախարարը ուզեց թա-
գաւորին առջևն ելլել, բայց ծառաները չթո-
ղուցին. բարկացաւ Ինտափեռնէս, թուրը քա-
շեց ու շատերը վիրաւորեց. լսեց Դարեհ ու
բարկացաւ, և վախնալով որ չըլլայ թէ իրեն
դաւաճանութիւն մը ընեն, Ինտափեռնէսը բո-
լոր ընտանեօքը 'ի մահ դատապարտեց: Ամէն օր
Ինտափեռնեսին կինը Դարեհին դուռը ընկած
կ'աղաչէր որ իրենց խնայէ. գթացաւ վրան թա-
գաւորը, զինքը ազատեց, և անոր ըսաւ որ ըն-
տանեացը մէջէն մէկ հոգի մըն ալ զո՛վ ուզէ
ընտրէ ազատէ: Խեղճ կինը զամէնքն ալ կ'ու-
զէր ազատել. երկար ատեն մտածեց ու եղ-
բայրն ընտրեց: Զարմացաւ Դարեհ որ փոխա-
նակ էրիկը կամ որդւոց մէկը ընտրելու՝ եղ-
բայրը ընտրեց. հարցուց պատճառը. Էրիկ կամ
որդի նորէն կրնամ ունենալ, ըսաւ կինը, բայց
եղբայր ոչ երբեք. որովհետև ծնողքը մեռեր
էին: Իսկ Դարեհ անոր եղբօրը հետ անդրանիկ
որդին ալ ազատեց:

2 Դարեհ ինչպէս որ Սեղոսոնին խոստացեր
էր, երբոր Սարդիկէի Ովրետէս նախարարը
մեռցընել տուաւ ու Սամոսի իշխանութիւնը
անոր ձեռքը տուաւ, Ովրետեսի պալատին
մարդիկն ալ բռնեց Շօշ բերաւ ու բանտ դնել

---

1 Ինտափեռնէս նախարարին վրայ ի՞նչ կը պատ-
մուի:

2 Ո՞վ էր Դեմոկեդէս:

տուաւ։ անոնց մէջն էր նաև Պողիկրատեսին անուանի բժիշկը Դեմոկեդէս։

1 Օր մը որսի ատեն ձիէն ընկաւ Դարեհ ու ոտքը սաստիկ ցաւցուց. բժիշկները ցաւը անցընելու տեղ աւելի զայրացուցին։ Դեմոկեդէս շղթայակապ բանտը կեցած մոռծելու ատենը՝ բռնեցին զինքը շղթաներովը Դարեհին առջևը բերին։ Հարցուց թագաւորը թէ Բժշկութիւն գիտես։ — Չեմ գիտեր ըսաւ Դեմոկեդէս. կը վախէր որ եթէ բժիշկ ըլլալը իմացուի՝ չկրնար Պարսկաստանէն ազատիլ ու իր սիրելի հայրենիքը Կրոտոն երթալ։ Չհաւատաց Դարեհ, հրամայեց որ տանջեն զինքը ինչուան որ չխոստակը զուրցեց, ու քանի մը օրուան մէջ թագաւորը առողջացուց։ Ան ատենը Դարեհ անոր երկըթէ շղթաներուն տեղը զոյգ մը ոսկի շղթայ պարգևեց. ու հրաման տուաւ ներքինեաց որ զինքը կանանոցը տանին ու ցուցընեն տիկնաց զթագաւորն առողջացընող մարդը. անոնք ալ շատ ընծաներ տուին անոր, և մէկ օրուան մէջ հարըստացաւ Դեմոկեդէս։

2 Ուրիշ բժշկութեամբ մըն ալ Դեմոկեդեսի անունը աւելի հռչակուեցաւ։ Կիւրոսին աղջիկը Ատոսա (որ Դարեհի կանանց մէկն էր), քաղցկեղ ունեցեր էր. երբոր շատ սաստկացաւ՝ Դեմոկեդեսին իմացուց. անիկայ ալ խօսք տուաւ

---

1 Դեմոկեդէս ի՞նչ առթով բանտէն ելաւ։
2 Ի՞նչպէս գարձուց զինքը Դարեհ իր հայրենիքը։

զինքը բժշկելու, միայն թէ թագաւորէն հրամանն առնէ որ հայրենիքը դառնայ։ Խոստացաւ Ատոսա, հիւանդութենէն ազատեցաւ, ու տուած խօսքը կատարեց։

1 Դարեհ կը փափաքէր այնպիսի երկրի մը տիրել՝ ուր որ իր նախորդները ոտք կոխած չըլլան. ուստի Սկիւթացւոց երկրին տիրել ուզեց։ Արտաւան եղբայրը շատ ջանաց որ միտքը դարձընէ, ըսելով թէ Անոնց յաղթելը շատ դժուար է, յաղթեսնէ ալ՝ ամենևին օգուտ մը չունի։ Մտիկ չըրաւ Դարեհ, եօթը հարիւր հազար զօրքով ճամբայ ելաւ. եօթը հարիւր ալ նաւ ունէր, որոնց նաւավարները Փոքր Ասիոյ ծովեզերքը բնակող Յոյներն էին։

2 Նաւէ կամուրջով Թրակիա անցաւ և Գետացիքը նուաճեց։ Ուսկից որ կ'անցնէր՝ յիշատակի համար կոթողներ կը կանգնէր։ Իստրոս գետին քովը երբոր հասաւ (որ հիմայ Դանուբ կ'ըսուի), նաւակամուրջ մը շինել տուաւ Յոնիացւոց, և անոնց յանձնեց որ զանիկայ պահեն. ինքը անցաւ ու Սկիւթացւոց երկիրը մտաւ։

3 Սկիւթացիք իմանալով թէ Պարսիկք վրանին պատերազմի կուգան, բոլոր իրենց կանայքն ու տղաքը հեռու հիւսիսային կողմերը ղրկեր

---

1 Ի՞նչ պատճառաւ Սկիւթացւոց վրայ գնաց։
2 Ի՞նչպէս անցաւ Եւրոպա։
3 Սկիւթացիք Դարեհի դէմ ելա՞ն։

էին. ջրհորներն, աղբիւրները, արօտներն ալ ապականեր էին որ Պարսիկները ուտելու բան չգտնեն ու ետ դառնան, իրենք ալ դէպ ՚ի երկրին ներսերը քաշուեր էին որպէս զի Դարեհ յուսահատի, և կամ հոն պաշարուի մնայ։

1 Ան անբեր անապատին մէջ՝ Դարեհին բանակը սով տիրեց։ Յուսահատեցաւ Դարեհ, մարդ խրկեց Սկիւթացւոց Թագաւորին ու ըսաւ. Ինչո՞ւ համար դիմացէս անդադար կը փախչիս. Թէ որ կարողութիւն ունիս՝ կեցիր որ պատերազմով յաղթես, իսկ թէ որ կարողութիւն չունիս, տէրդ ճանչցիր ու անոր հնազանդէ։ Թագաւորը պատասխան տուաւ. Մի՛ կարծեր թէ քեզմէ վախնալուս համար առաջ կը վազեմ, այլ խաղաղութեան ատենը ինչ որ կ՚ընեմ՝ հիմակուան ըրածս ալ նոյն է. մենք ոչ քաղաք ունինք և ոչ անդաստաններ՝ որ անոնց քով կենանք պաշտպանենք. Թէ որ դուն մեզի հետ պատերազմիլ կ՚ուզես՝ գնա առաջ մեր հարց գերեզմանները բաց նայէ թէ մենք ի՛նչ մարդիկ ենք. նայէ որ ուրիշ ազգաց տիրես. մեր տէրը միայն Արամազդ է։

2 Քանի մը օրէն ետքը Սկիւթացիք խրկեցին Դարեհի թռչուն մը, մուկ մը, գորտ մը ու

---

1 Ի՞նչպէս յուսահատեցաւ Դարեհ Սկիւթացիքը նուաճելէն։

2 Սկիւթացիք ի՞նչ նշանական բաներ խրկեցին Դարեհի։

հինգ նետ։ Դարեհ մեկնեց թէ մուկն ու գորտը կը նշանակեն թէ Սկիւթացիք երկիրնին ու ջըրերնին կ'ուզեն իրեն տալ. թռչունը՝ թէ իրենց ձիաւորներն ալ ապրանք տան, հինգ նետն ալ՝ թէ բոլոր զէնքերնին։ Բայց եօթը նախարարաց մէկը Գոբրիաս՝ ատոյգ մեկնութիւնը տուաւ. Սկիւթացւոց միտքը աս է ըսաւ. ինչպէս որ թռչունի պէս չկարենաք թռչիլ, մկան պէս գետնի տակ մտնել, ու գորտի պէս ջրին մէջ բնակիլ՝ չէք կրնար մեր նետերէն ազատիլ։ Ամէնքը աս մեկնութեան հաւնեցան. Դարեհ ալ անանկով որ զօրքը սովէն ծարաւէն ապրանք ջարդուի՝ ետ դարձաւ։ Սկիւթացիք Պարսից ետևէն ընկան, Դանուբէն անցան ու Թրակիան ինչպէս Ելլեսպոնտոս՝ որ Պարսից ձեռքն էր՝ աւրըշարկեցին։

1 Դարեհ իր տէրութեան արևելեան սահմանը աւելի ընդարձակել ուզելով, նաւատորմիղ մը պատրաստեց ու Սկիւլաքս անունով Կարիացի նաւապետին յանձնեց որ երթայ ան երկիրները զննէ։ Սկիւլաքս Ինդոս գետին երկու եզերքը եղած երկիրները պտըտեցաւ ինչուան անոր բերանը, Պապ-էլ-Մանտեպի նեղուցէն Կարմիր ծովը մտաւ ու հասաւ Եգիպտոս. իրեք տարի քշեց աս ճամբորդութիւնը։ Իսկ անկէց ետքը շատ զօրքով Դարեհ Սկիւլաքսին հետ գընաց ու ան երկիրներուն տիրեց։

---

1 Դարեհ ուրիշ ինչ աշխարհակալութիւն ըրաւ։

1 Քիչ ատենէն Յոնիացիք ուզեցին գլուխ վերցընել, ազատութիւննին ձեռք ձգել. ուստի Աթենացւոցմէ և Սպարտացւոցմէ օգնութիւն խնդրեցին: Սպարտացիք յանձն չառին. իսկ Աթենացիք Պարսից սրդողած ըլլալով որ Պիսիստրատ բռնաւորին Իպպիաս որդւոյն պաշտպանութիւն ըրեր էին, Յոնիացւոց քսան նաւ օգնութիւն խրկեցին: Յոնիացիք Սարդիկէ քաղաքն առին ու այրեցին (504), բայց երբ Պարսիցմէ յաղթուեցան, մնացած Աթենացիք իրենց հայրենիքը փախան, Դարեհ ալ Սարդիկէին այրելուն վրայ սաստիկ բարկացած՝ երդում ըրաւ որ վրէժը հանէ, ու բոլոր Յունաց դէմ պատերազմ բանայ:

2 Յոնիացիք մինակ մնալով առջի բերան չյուսահատեցան, պատերազմը առաջ տարին, շատ անգամ Պարսից զօրավարներուն յաղթեցին. բայց երբ երբոր բոլոր նիզակակիցները ձեռքերնին քաշեցին՝ յաղթուեցան. Պարսիկք ծովէն ու ցամաքէն Միլետոն քաղաքը պաշարեցին որ Յոնիական դաշնակցութեան կեդրոնն էր, առին ու կործանեցին. մէկալ ապստամբած քաղաքներն ալ Պարսից հնազանդեցան, և որոնք որ չուզեցին հնազանդիլ՝ այրուեցան:

---

1 Ի՞նչ պատճառաւ ու ի՞նչպէս սկսաւ Դարեհ Յունաց հետ պատերազմիլ:

2 Յոնիացիք ի՞նչպէս նուաճուեցան:

1 Յոնիացիքը նուաճելէն ետքը ուզեց Դարեհ անոնց օգնող Աթենացիքն ու Երետրիացիքն ալ պատժել. ու շատ զօրքով վրանին խրկեց իր փեսան Մարդոնիոսը (496)։ Մարդոնիոս Թրակիոյէն Մակեդոնիա մտաւ. նաւատորմիղն ալ ծովեզերքէն անոնց ետևէն կուգար։ Աթոս լեռան մօտ մրրիկ մը ելաւ ու Պարսից նաւատորմիղէն իրեք հարիւր նաւէն աւելի ընկղմեց, ու քսան հազար հոգիէն աւելի խղդուեցան։ Նոյն ատենը ցամաքին զօրքն ալ զարնուեցաւ. վասն զի Թրակիացիք գիշերանց վրանին վազեցին ու շատ մարդ ջարդեցին, Մարդոնիոսն ալ վիրաւորեցին։ Ասանկ ծովէն ցամաքէն զօրքը կորսնցուցած՝ դարձաւ Մարդոնիոս Ասիա։

2 Դարեհ նորէն զօրք խրկելէն առաջ ուզեց իմանալ թէ Յոյնք ինչ մտքի վրայ են։ Պարսիկք սովորութիւն ունէին որ երկրի մը վրայ պատերազմ չըրացած՝ մարդ կը խրկէին ան երկրին հողն ու ջուրը ուզելու։ Դարեհ ալ Յունաստանի քաղաքներուն դեսպան խրկեց և հողն ու ջուրը ուզեց։ Շատ քաղաքներ վախցան հնազանդեցան. բայց Սպարտացիք և Աթենացիք բանեցին դեսպանները, մէկը ջրհորը նետեցին, մէկալն ալ փոսի մը մէջ ձգեցին ըսելով թէ Գընացէք առէք։ Ետքը Սպարտացիք մտածելով որ ըրածնին իրաւանց ազգաց դէմ էր, Դարեհին

---

1 Մարդոնիոս ինչպէս յաղթուեցաւ։
2 Դարեհ Յունաց ինչ կերպով դեսպան խրկեց։

մարդ խրկեցին Թողութիւն ուզեցին. Թագաւորն ալ ներեց անոնց։

1 Դարեհ պատրաստած զօրքին զօրավար դրաւ Դատ անունով Մարը՝ և իր եղբօրորդին Արտափեռնէսը, պատուիրելով որ երթան Երետրիան ու Աթէնքը կողոպտեն, տներն ու մեհեանները այրեն և բնակիչքը իրեն խրկեն։ Դատ ու Արտափեռն վեց հարիւր նաւով և հինգ հարիւր հազար զօրքով ճամբայ ելան. Նաքսոս կղզւոյն տիրեցին, մայրաքաղաքը մոխիր դարձուցին, մեհեանները այրեցին։ Երկու մատնիչներու ձեռքով Երետրիոյ ալ տիրեցին, և բնակիչքը շղթայակապ Պարսկաստան խաւրեցին։ Դարեհ անոնց գեղ մը տուաւ Շօշ քաղաքին մօտ որ հոն բնակին։

2 Պարսիկք Իպպիասայ առաջնորդութեամբը մտան նաև Ատտիկէ ու հասան Մարաթոնի դաշտերը։ Դատին զօրքն էր հարիւր հազար հետևակ և տասը հազար ձիաւոր. իսկ Աթենացւոցը տասը հազար միայն։ Բայց անոնց զօրավարը Միլտիադէս այնպէս յարմար տեղ ընտրեց ու զօրքը աղէկ շարեց, և զօրքն ալ այնպէս քաջութեամբ պատերազմեցան՝ որ Պարսիկք չկրցան դէմ դնել. ջարդուեցան, ու բանակնին չկրնա-

---

1 Պարսիկք ի՞նչ յաղթութիւններ ըրին առջի բերան։

2 Պարսիկք ի՞նչպէս յաղթուեցան Աթենացւոցմէ։

լով դառնալ՝ նաւերը փախցին։ Ետևնէն ընկան Աթենացիք, ձեռքերնէն եօթը նաւ առին, շատն ալ այրեցին (490)։

[1] Դարեհ միտքը դրաւ որ ուրիշ բանակ մը հանէ և ինքն անոր գլուխ կենայ։ Եւ երբոր ան պատրաստութեան հետ էր, Եգիպտացիք ապըստամբեցան։ Անով ալ չյուսահատեցաւ, անոնց դէմ՝ ալ զօրաւոր բանակ մը կազմեց։ Երբոր ամէն բան պատրաստ էր, ուզեց իրեն յաջորդ մը ընտրել, վասն զի Պարսից թագաւորները սովորութիւն ունէին որ պատերազմի չգացած՝ իրենց յաջորդ մը կ՚ընտրէին, որպէս զի մեռնելու որ ըլլային՝ յաջորդին համար կռիւ չըլլէր։ Դարեհ առջի կնկանէն իրեք որդի ունէր՝ իրեքն ալ թագաւորելէն առաջ ծնած. Կիւրոսի Ատոսսա աղջըկանէն ալ չորս որդի, ամէնքն ալ թագաւորելէն ետքը ծնած. Ատոսսայի անդրանիկ որդին Քըսերքսէսը իրեն յաջորդ ընտրեց։ Եւ երբոր զօրքերը պատրաստած ճամբայ ելլելու վրայ էր, յանկարծ հիւանդացաւ ու երեսունըվեց տարի թագաւորելէն ետքը մեռաւ (486)։

---

1 Մարաթոնի պատերազմէն ետքը ինչ ըրաւ Դարեհ։

## ԳԼՈՒԽ Գ.

Քսերքսէսի Եգիպտոսը նուաճելը. — Յունաստանի արշաւանքը. — Մահը. — Արտաշէս Երկայնաձեռն. — Քսերքսէս Բ. — Սոգդիանոս. — Ողոս կամ Դարեհ Նոթոս. — Արտաշէս Մնեմոն. — Ապստամբութիւն և մահ Կրտսերոյն Կիւրոսի. — Դաշնագրութիւն Անտալկիդեայ. — Ողոս. — Անգթութիւններն ու ապականութիւնները. — Բագոա ներքինին. — Արշէս. — Դարեհ Կոդոման. — Աղեքսանդրէն յաղթուիլը. — Մահը։

1 Քսերքսէս հօրը յաջորդելուն պէս սկսաւ անոր առաջադրութիւնները կատարել ու պատրաստութիւն տեսնել։ Երկրորդ տարին գնաց Եգիպտոսը նուաճեց, Աքեմենէս եղբայրը կուսակալ դրաւ հոն ու ինքը ետ դարձաւ։ Կարծէր Քսերքսէս որ Յունաց ալ նոյնպէս դիւրաւ պիտի կարենայ յաղթել։

2 Իր հօրեղբայրը Արտաբանոս շատ ջանաց որ Քսերքսեսին ալ միտքը դարձնէ որ Յունաստան

---

1 Քսերքսէս թագաւորելուն պէս ինչ ըրաւ։

2 Յունաստանի արշաւանքը ինչպէս սկսաւ։

չարչարուէ. Միայն Աթենացիք, կ'ըսէր, մեր թանակը խորտակեցին, որուն զօրավարները Դատ և Արտափեռն՝ քաջ մարդիկ էին. հապա ինչ պիտի ըլլայ երբոր բոլոր Յունաստան մեր վրայ ելլէ։ Մտիկ չըրաւ Քսերքսէս, շողոքորթութեան ձայնին մտիկ ըրաւ որ փառասէր Մարդոնիոսին բերնովը հետը կը խօսէր, ու փառաւոր յաղթութիւններ կը խոստանար անոր։ Սրդողեցաւ Քսերքսէս Արտաւանին վրայ. Գնա, ըսաւ, շնորհակալ եղիր աստուածոց որ ինծի ազգական գտնուեր ես. բայց քեզի պատիժ ան ըլլայ որ հոս կանանց քովը կենաս՝ որոնց հաւասարեցար կնամարդի վատութեամբդ. իսկ ես կ'երթամ՝ ուր որ փառքն ու քաջութիւնը կ'առաջնորդեն ինծի։ Երկրորդ օրը զղջացաւ Քըսերքսէս՝ ըրածին վրայ, Արտաւանին սիրտը առաւ, ու զինքն հետը մէկտեղ տարաւ։

1 Քսերքսէս յաղթութիւնը աւելի ապահովըցընելու համար՝ Կարքեդոնացւոց հետ դաշնակցութիւն ըրաւ, ու խօսք առաւ անոնցմէ որ իրեն Յունաստանի վրայ յարձըկած ատենը՝ անոնք ալ Սիկիլիա ու Իտալիա բնակող Յունաց վրայ վազեն՝ որ չկարենան իրենց հայրենակցացը օգնել։ Աս վախճանաւ Կարքեդոնացւոց զօրապետը Ամիլկար՝ Սպանիայէն, Գաղղիայէն և Իտալիայէն շատ զօրք ժողվեց։

---

1 Քսերքսէս Յունաց դէմ որոնց հետ դաշնակցութիւն ըրաւ։

1 Թագաւորութեանը հինգերորդ տարին ելաւ Քսերքսէս Շուշէն Սարդիկէ երթալու՝ և հասաւ Փռիւգիոյ Կելենէ քաղաքը՝ ուր կը բնակէր Լիւդացւոց Թագաւորը Պիւթիոս, որ ան ատենը Քսերքսեսէն զատ իրեն պէս հարուստ մարդ չկար: Ասիկայ Քսերքսէսն ու իր զօրքերը սիրով ընդունեցաւ, և բոլոր գանձերը Քսերքսեսին տուաւ որ պատերազմի ծախքերուն գործածէ. Տունս պահելու համար, ըսաւ, ինծի տարեկան եկամուտս բաւական է: Զարմացաւ Քսերքսէս Պիւթիոսին առատաձեռնութեանը վրայ, ու անկէ վար չմնալու համար, բան մը չառնելէն զատ՝ շատ ստակ ալ ինքը տուաւ անոր: Բայց երբոր Քսերքսէս անոր հինգ որդիքն առած պատերազմ կը տանէր, Պիւթիոս խնդրեց որ անդրանիկ որդին իրեն թողու որ ծերութեանը մխիթարութիւն ըլլայ. Բարկացաւ Քսերքսէս, մէկէն հրամայեց որ աչքին առջևը զանիկայ երկու կտոր ընեն. Շնորհակալ եղիր, ըսաւ, որ զքեզ ու մէկալ որդիքդ ալ չսպաննեցի: Ետքը հրամայեց որ զօրաց անցնելու դրան երկու կողմը կախեն տղուն մարմինը. ու անկէց անցուց զօրքը:

2 Քիչ օրուան մէջ Կելենեէն հասաւ Սարդի-

---

1 Կելենէ քաղաքին մէջ ինչ ընդունելութիւն գտաւ Քսերքսէս:

2. Ի՞նչ պատրաստութեամբ ելաւ Քսերքսէս Յունաց վրայ:

կէ, ուր պիտի ժողվուէր բոլոր ցամաքային զօրքը (480). Իսկ ծովային զօրքը Փոքր Ասիոյ ծովեզերքէն դէպ 'ի Ելլեսպոնտոս առաջ կուգար: Քսերքսէս մեծագործութեան անուն ձգելու համար, անբաւ ծախքով Աթոս լեռը ծակել տուաւ, որ ցամաքակղզիի պէս դէպ 'ի ծովուն մէջ երկընցած էր, և այնչափ մեծ էր բանալ տուած ջրանցքը՝ որ մէջէն երկու նաւ քովէ քով կրնային անցնիլ: Ետքը հրաման տուաւ որ Ելլեսպոնտոսին եօթը ասպարէզ լայն նեղուցին վրայ նաւակամուրջ մը շինեն, որ զօրքը Ասիայէն Եւրոպա անցընէ:

1 Ան կամուրջը քիչ ատենի մէջ լմընցաւ. բայց յանկարծ փոթորիկ մը ելաւ փլուց, նաւերն ալ ցրուեց: Ասոր վրայ կատղեցաւ Քսերքսէս, ծովը պատժելու համար զոյգ մը շղթայ մէջը ձգել տուաւ և հրամայեց որ իրեք հարիւր ալ գաւազան անոր զարնեն. կամրջին ճարտարապետները գլխատել տուաւ, անոնց տեղը ուրիշ աւելի վարպետ ճարտարապետներ ընտրեց, և հրամայեց որ երկու կամուրջ քովէ քով շինեն, մէկը զօրաց անցնելուն համար, մէկալն ալ բեռները կրելու: Առջինն էր իրեք հարիւր վաթսուն նաւ իրարու կպած, մէկալը իրեք հարիւր տասնըչորս նաւ. վրանին հաստ փայտեր շարած, անոնց վրայ տախտակ պատած ու հողով ծած-

---

1 Ելլեսպոնտոսի վրայի կամուրջները ինչպէս շինուած էին:

կած. երկու կողմն ալ վանդակապատ բարձրա-
նուցած՝ որ ձիերը ծովը չտեսնեն ու չխրտին:

1 Կամուրջներուն շէնքը որ լմնցաւ, երկրորդ-
առաւօտը կանուխ վերէն վար մրտենիներով
զարդարեցին զանոնք, ու տեղ տեղ անուշահոտ
խունկեր կը ծխէին: Քսերքսէս ոսկի բաժակով
իրենց մեծ աստուծոյն արեգական գինի նուի-
րեց և անոր հովանաւորութիւնը խնդրեց որ
երթայ բոլոր Եւրոպայի տէրը, ետքը ան բա-
ժակն ու ոսկի Թուր մը ծովը նետեց: Եօթն օր
ու եօթը գիշերուան մէջ հազիւ կրցան զօրքը
դիմացի կողմը անցնիլ:

2 Երբոր Աբիւդոս քաղաքը հասան, Քսերք-
սէս զօրացը հանդէս ըրաւ. բարձր տեղ մը ելած
տեսաւ դաշտին երեսը որ մրջիւնի պէս անթիւ
մարդիկ տարածուած իր կամացը կը հնազան-
դէին, առաջ զուարճացաւ. բայց շուտով ան ու-
րախութիւնը տրտմութիւն դարձաւ, ու սկսաւ
լալ: Հարցուց Արտաւան թէ ինչո՞ւ յանկարծ
լալ սկսար, տէր արքայ, ի՞նչ ունիս: Քսերքսէս
մեր Արտաշէս Թագաւորին պէս պատասխան
տուաւ. Մտածեցի, ըսաւ, որ ասկէց հարիւր
տարիէն աս զինուորներէն մէկն ալ պիտի չմնայ:
Արտաւան անկէց առիթ առնելով յորդորեց
զինքը, որ եթէ հպատակացը կեանքը երկընցը-

---

1 Կամուրջներէն անդին ի՞նչպէս անցան:
2 Ո՞ւր տեղ և ի՞նչպէս հանդէս ըրաւ Քսերքսէս
իր զօրացը:

նել ձեռքը չէ, գէթ երջանիկ ընէ զիրենք՝ վրա-
նին գութ ունենայ:

1 Պարսիկք ոտքերնին Եւրոպա կոխելուն
պէս, Ելլեսպոնտոսէն անդին եղած ազգերը հը-
նազանդեցան անոնց. որով աւելի շատցաւ Քը-
սերքսեսին թէ ցամաքային և թէ ծովային զօր-
քը: Երբոր հասան Թերմոպիլէ կամ Ջերմա-
գրունք ըսուած տեղը, զօրաց թիւն էր երկու
միլիոն վեց հարիւր քառասունըմէկ հազար, թող
ան բանակին ետևէն եկող կնիկ մարդիկն ու
ծառաները, որ զօրքէն աւելի էին կ'ըսեն:

2 Քսերքսէս կարծէր թէ ան աշխարհակոյտ
բանակաւը երևնալուն պէս՝ Յոյնք սարսափած
կամ պիտի փախչէին, և կամ մէկէն իրեն պիտի
հնազանդէին: Ոչ մէկը եղաւ և ոչ մէկալը: Տե-
սաւ որ անոնք իր ճամբան արգիլելու ալ կը պա-
տրաստուին, շատ զարմացաւ: Սպարտացւոց
երկու թագաւորներէն մէկը Դեմարատ, իր հայ-
րենիքէն աքսորուած՝ Քսերքսեսին քովը կը բը-
նակէր, հասկըցուց անոր Լակեդեմոնացւոց քա-
ջութիւնը՝ որոնց յանձնուած էր Թերմոպիլէի
պահպանութիւնը: Բայց անիկայ՝ մտիկ չըրաւ:

3 Քանի մը օր ալ սպասեց Քսերքսէս, յուսա-
լով որ Յոյնք ետ քաշուին. երբոր տեսաւ որ ա-
նոնք օրէ օր պատերազմելու կը պատրաստուին՝

---

1 Պարսից զօրքը ո՞րչափ էր:
2 Յոյնք ամէնքն ալ հնազանդեցա՞ն Քսերքսեսի:
3 Ի՞նչպէս յաղթուեցաւ Քսերքսէս:

յարձըկեցաւ վրանին, ու Թերմոպիլէէն անցնելու համար իր զօրացը ընտիր գունդերը կորսընցուց. Սաղամինայի քով ալ երբոր նաւատորմըղին մէկ մասը ջարդուեցաւ, Քսերքսէս ինքզինքը հազիւ Ելլեսպոնտոս ձգեց, և անկէց ձկնորսի նաւակով մը Ասիա անցաւ ու հասաւ Սարդիկէ։ Յունաստան Մարդոնիոսը թողեր էր իրեք հարիւր հազար զօրքով, ան ալ Պղատէայի քով յաղթուեցաւ, նաւատորմիղն ալ Միգաղէ հրուանդանին քով զարնուեցաւ Յունաց հետ, ու դարձեալ շատ նաւ կորանցընելով յաղթուեցաւ։

1 Քսերքսէս Սարդիկէ եղած ատենը իր Մասիստէս եղբօրը կնկանը վրայ սէր ձգեց, ինչ բան որ ըրաւ, ինչ որ խոստացաւ՝ չկրցաւ պարկեշտ կնկան միտքը դարձընել։ Բայց անոր աղջիկը Արտայինտէ՝ մօրը առաքինութիւնը չունեցաւ, ու հաւանեցաւ Քսերքսեսին կամացը։ Ամէստրիս Քսերքսեսի թագուհին, իր ձեռքովը փառաւոր պատմուճան մը հիւսած էր էրկանը։ Օր մը որ Քսերքսէս Արտայինտէն ստիպեց որ իրմէ բան մը խնդրէ, Արտայինտէ ան պատմուճանը ուզեց. Քսերքսէս ալ դէմ չկարենալով կենալ, անմտութեամբ կատարեց խնդիրը։ Առաւ Արտայինտէ ան պատմուճանն ու յաղթութեան նշանի պէս վրան ձգեց։

---

1. Քսերքսէս Սարդիկէ գտնուած ատենը ինչ դիպուած եղաւ։

Ան որ տեսաւ Ամեստրիս, միտքը դրաւ որ անոր մօրմէն վրէժը հանէ։ Թագաւորին ծննդեան տօնին օրը՝ Թագաւորը սովորութիւն ունէր որ Թագուհին ինչ որ խնդրէր իրմէ կուտար․ ան օրը Ամեստրիս Մասիստեսին կինը խնդրեց։ Վատ Թագաւորը չկրցաւ չէ ըսել, ու խեղճ կինը վրէժխնդիր Թշնամւոյն ձեռքը մատնեց։ Իսկ անգութ Ամեստրիսը անոր ծիծերն, լեզուն, քիթը, ականջներն ու շրթունքը կտրել տուաւ ու աչքին առջեւը շներուն ձգեց որ ուտեն․ անանկ անգամահատ այլանդակած տունը խրկեց։ Մասիստէս տունն որ դարձաւ ու ընկերոջը ողորմելի կերպարանքը տեսաւ, սոսկաց; վրէժխնդրութեան ոգւով վառուած՝ շուտ մը անով տեղովը Բակտրիա գնաց որ զօրք ժողվէ Քսերքսեսին դէմ։ Բայց Քսերքսէս մէկէն մարդ հասցուց ետեւէն ու բոլոր տնովը ճամբան զէնքը սպաննել տուաւ։ Աղէկ որ աս տեսակ վրէժխնդրութեան ուրիշ օրինակ մը չկայ պատմութեանց մէջ։

1 Քսերքսէս իր զօրացն ու նաւատորմղին նորէն յաղթուելուն դոյժն որ առաւ՝ Սարդիկէէն ելաւ դէպ 'ի Պարսկաստան գնաց, և ճամբան Յունաց բոլոր քաղաքներուն մեհեանները այրել տուաւ բաց 'ի Եփեսոսի Արտեմեայ տաճարէն։ Պարսկաստան հասնելէն ետքը՝ անանկ չարաչար յաղթուելուն վրայ սիրտը կոտրած՝ ալ չուզեց պատերազմ ընել, աշխարհակալութեան

---

1 Ինչպէս մեռաւ Քսերքսէս։

եռանդը մարեցաւ, ու ինքզինքը բոլորովին զեղխութեան տուաւ. Ժողովուրդն ալ սկսաւ զինքը արհամարհել։ Արտաւան Քսերքսեսին սիրելի անձնապահապետը, Թագաւորին Միհրդատ անունով սենեկապետին հետ միաբանեցաւ, մտաւ Քսերքսեսին սենեակն ու քունին մէջ զարկաւ զինքը սպաննեց (465)։

1 Ետքը մէկէն գնաց Քսերքսեսի երրորդ որդւոյն, որ Արտաշէս Երկայնաձեռն * կ'ըսուէր, զուրցեց թէ Մեծ եղբայրդ Դարեհ ժամ մը առաջ Թագաւորելու համար հայրդ սպաննեց, զգոյշ կեցիր, զքեզ ալ կ'ուզէ մեռցընել։ Բարկացաւ Արտաշէս, գնաց Արտաւանայ հետ Դարեհը սպաննեց, և ինքը նստաւ աթոռը։

2 Արտաւանայ միտքն ան էր որ կուսակիցները շատցընէ, ու ետքը Արտաշէսն ալ սպաննէ, ինքը Թագաւորէ։ Իմացաւ Արտաշէս անոր միտքը, բռնեց զինքը սպաննել տուաւ, և որովհետև Արտաւան եօթը կարիճ տղաք ունէր և շատ

---

1 Իրեն ո՞վ յաջորդեց։
2 Արտաւան ինչպէս մեռաւ։

* Արտաշէսին Երկայնաձեռն կամ Երկայնաբազուկ ըսուելուն պատճառը՝ Ստրաբոն կ'ըսէ թէ թևերը շատ երկայն էին, այնպէս որ ոտքի վրայ կեցած ատենը ծունկերուն կը հասնէին։ Իսկ Պլուտարքոս կ'ըսէ թէ աջ թևը ձախ թևէն երկայն էր։

կուսակիցներ, անոնց դէմ պատերազմի ելաւ, զամէնքն ալ ջնջեց։ Հօրը դաւաճան Միհրդատ սննեկապետն ալ բռնեց ու չարաչար մահուամբ կուր ըսուած տանջանքով մեռուց։

Այն անգութ տանջանքը աս կերպով կուտային։ Կուրի կամ մակոյկի մէջ կռնըկի վրայ մահապարտը կը պարկեցընէին, չորս անկիւնէն ուժով պրկած, անոր վրայ ուրիշ կուր մըն ալ կ'անցընէին ու մանաւոր ծակերէ ձեռուըները, ոտուըներն ու գլուխը դուրս կը հանէին. Այն տանջանքին ատենը բանի բերնէն կերակուր կը խոթէին ու կաթով խառնած մեղր կը խմցընէին, բոլոր երեսը կը քսէին ու դուրս տեղ արեւու մէջ կը դնէին որ ճանճերը վրան թափին. Իսկ մէջը աղտեղութեննէն որդեր կը դոյանային ու բոլոր մարմինը կը կրծէին։ Անանկ տասնըհինգ կամ քսան օր անտանելի տանջանքի մէջ կը մեռնար մահապարտը։

[1] Արտաշեսին մեծ եղբայրը Վշտասպ՝ Բակտրիայի կուսակալ էր. երբոր իմացաւ թէ պզտիկ եղբայրը թագաւորեց, պատերազմի ելաւ ու յաղթուեցաւ։ Իսկ Արտաշէս ամէն կողմէն հանգստացած՝ սկսաւ կարգերը կանոնները նորոգել, տէրութեան մէջ մնած անկարգութիւնները վերցընել. և ամենուն սիրելի եղաւ։ Աս Արտաշէսն է որ Եզրի ու Նեէմիի հրաման տուաւ Երուսաղէմ դառնալու։

---

1 Արտաշէս իր թագաւորութեանը մէջ հաստատուելէն ետքը ի՞նչ ըրաւ։

1 Թագաւորութեանը հինգերորդ տարին ելաւ Քսերքսէս Շօշէն Սարդիկէ երթալու՝ և հասաւ Փռիւգիոյ Կեղենէ քաղաքը՝ ուր կը բնակէր Լիւդացւոց թագաւորը Պիւթիոս, որ ան ատենը Քսերքսեսէն զատ իրեն պէս հարուստ մարդ չկար։ Ասիկայ Քսերքսէսն ու իր զօրքերը սիրով ընդունեցաւ, և բոլոր գանձերը Քսերքսեսին տուաւ որ պատերազմի ծախքերուն գործածէ. Տուն պահելու համար, ըսաւ, ինծի տարեկան եկամուտս բաւական է։ Զարմացաւ Քսերքսէս Պիւթիոսին առատաձեռնութեանը վրայ, ու անկէ վար չմնալու համար, բան մը չառնելէն զատ՝ շատ ստակ ալ ինքը տուաւ անոր։ Բայց երբոր Քսերքսէս անոր հինգ որդիքն առած պատերազմի կը տանէր, Պիւթիոս խնդրեց որ անդրանիկ որդին իրեն թողու որ ծերութեանը մխիթարութիւն ըլլայ. Բարկացաւ Քսերքսէս, մէկէն հրամայեց որ աչքին առջևը զանիկայ երկու կտոր ընեն. Շնորհակալ եղիր, ըսաւ, որ զքեզ ու մէկալ որդիքդ ալ չպատժեցի։ Ետքը հրամայեց որ զօրաց անցնելու գրան երկու կողմը կախեն տղուն մարմինը, ու անկէց անցուց զօրքը։

2 Քիչ օրուան մէջ Կեղենէէն հասաւ Սարդիս.

---

1 Կեղենէ քաղաքին մէջ ինչ ընդունելութիւն գտաւ Քսերքսէս։

2 Ի՞նչ պատրաստութեամբ ելաւ Քսերքսէս Յունաց վրայ։

կէ, ուր պիտի ժողվուէր բոլոր ցամաքային զօրքը (480). Իսկ ծովային զօրքը Փոքր Ասիոյ ծովեզերքէն դէպ 'ի Ելլեսպոնտոս առաջ կուգար։ Քսերքսէս մեծագործութեան անուն ձգելու համար, անբաւ ծախքով Աթոս լեռը ծակել տուաւ, որ ցամաքակղզիի պէս դէպ 'ի ծովուն մէջ երկընցած էր, և այնչափ մեծ էր բանալ տուած ջրանցքը՝ որ մէջէն երկու նաւ քովէ քով կրնային անցնիլ։ Ետքը հրաման տուաւ որ Ելլեսպոնտոսին եօթը ասպարէզ լայն նեղուցին վրայ նաւակամուրջ մը շինեն, որ զօրքը Ասիայէն Եւրոպա անցընէ։

1 Ան կամուրջը քիչ ատենի մէջ լմընցաւ. բայց յանկարծ փոթորիկ մը ելաւ փլուց, նաւերն ալ ցրուեց։ Ասոր վրայ կատղեցաւ Քսերքսէս, ծովը պատժելու համար զոյգ մը շղթայ մէջը ձգել տուաւ և հրամայեց որ երեք հարիւր ալ գաւազան անոր զարնեն. կամրջին ճարտարապետները գլխատել տուաւ, անոնց տեղը ուրիշ աւելի վարպետ ճարտարապետներ ընտրեց, և հրամայեց որ երկու կամուրջ քովէ քով շինեն, մէկը զօրաց անցնելուն համար, մէկալն ալ բեռները կրելու։ Առջինն էր երեք հարիւր վաթսուն նաւ իրարու կպած, մէկալը երեք հարիւր տասնըչորս նաւ. վրանին հաստ փայտեր շարած, անոնց վրայ տախտակ պատած ու հողով ծած-

---

1 Ելլեսպոնտոսի վրայի կամուրջները ի՞նչպէս շինուած էին։

կած. երկու կողմն ալ վանդակապատ բարձրաճուցած՝ որ ձիերը ծովը չտեսնեն ու չխրտին։

1 Կամուրջներուն շէնքը որ լմընցաւ, երկրորդ առաւօտը կանուխ վերէն վար մրտեններով զարդարեցին զանոնք, ու տեղ տեղ անուշահոտ խունկեր կը ծխէին։ Քսերքսէս ոսկի բաժակով իրենց մեծ աստուծոյն արեգական գինի նուիրեց և անոր հովանաւորութիւնը խնդրեց որ երթայ բոլոր Եւրոպայի տիրէ, ետքը ան բաժակն ու ոսկի թուր մը ծովը նետեց։ Եօթն օր ու եօթը գիշերուան մէջ հազիւ կրցան զօրքը դիմացի կողմը անցնիլ։

2 Երբոր Աբիւդոս քաղաքը հասան, Քսերքսէս զօրացը հանդէս ըրաւ. բարձր տեղ մը ելած տեսաւ դաշտին երեսը որ մրջիւնի պէս անթիւ մարդիկ տարածուած իր կամացը կը հնազանդին, առաջ զուարճացաւ. բայց շուտով ան ուրախութիւնը տրտմութիւն դարձաւ, ու սկսաւ լալ։ Հարցուց Արտաւան թէ Ինչո՞ւ յանկարծ լալ սկսար, տէր արքայ, ի՞նչ ունիս։ Քսերքսէս մեր Արտաշէս թագաւորին պէս պատասխան տուաւ. Մտածեցի, ըսաւ, որ ասկէց հարիւր տարիէն աս զինուորներէն մէկն ալ պիտի չմնայ։ Արտաւան անկէց առիթ առնելով յորդորեց զինքը, որ եթէ հպատակացը կեանքը երկընցը-

---

1 Կամուրջներէն անդին ինչպէս անցան։

2 Ո՞ւր տեղ և ի՞նչպէս հանդէս ըրաւ Քսերքսէս իր զօրացը։

նել ձեռքը չէ, գէթ երջանիկ ընէ զիրենք՝ վրա-
նին գութ ունենայ։

1 Պարսիկք ոտքերնին Եւրոպա կոխելուն պէս, Ելլեսպոնտոսէն անդին եղած ազգերը հընազանդեցան անոնց. որով աւելի շատցաւ Քսերքսեսին թէ ցամաքային և թէ ծովային զօրքը։ Երբոր հասան Թերմոպիլէ կամ Ջերմագրունք ըսուած տեղը, զօրաց թիւն էր երկու միլիոն վեց հարիւր քառասունըմէկ հազար, թող ան բանակին ետևէն եկող կնիկ մարդիկն ու ծառաները, որ զօրքէն աւելի էին կ'ըսեն։

2 Քսերքսէս կարծէր թէ սա աշխարհակոյտ բանակաւը երևնալուն պէս՝ Յոյնք սարսափած կամ պիտի փախչէին, և կամ մէկէն իրեն պիտի հնազանդէին։ Ոչ մէկը եղաւ և ոչ մէկալը։ Տեսաւ որ անոնք իր ճամբան արգիլելու ալ կը պատրաստուին, շատ զարմացաւ։ Սպարտացւոց երկու թագաւորներէն մէկը Դեմարատ, իր հայրենիքէն աքսորուած՝ Քսերքսեսին քովը կը բնակէր, հասկըցուց անոր Լակեդեմոնացւոց քաջութիւնը՝ որոնց յանձնուած էր Թերմոպիլէի պահպանութիւնը։ Բայց անիկայ՝ մտիկ չըրաւ։

3 Քանի մը օր ալ սպասեց Քսերքսէս, յուսալով որ Յոյնք ետ քաշուին. երբոր տեսաւ որ անոնք օրէ օր պատերազմելու կը պատրաստուին՝

---

1 Պարսից զօրքը ո՞րչափ էր։
2 Յոյնք ամէնքն ալ հնազանդեցա՞ն Քսերքսեսի։
3 Ի՞նչպէս յաղթուեցաւ Քսերքսէս։

յարձըկեցաւ վրանին, ու Թերմոպիլէէն անցնելու համար իր զօրացը ընտիր գունդերը կորսընցուց· Սաղամինայի քով ալ երբոր նաւատորմըղին մէկ մասը ջարդուեցաւ, Քսերքսէս ինքզինքը հազիւ Ելլեսպոնտոս ձգեց, և անկէց ձկնորսի նաւակով մը Ասիա անցաւ ու հասաւ Սարդիկէ։ Ցունաստան Մարդոնիոսը թողեր էր իրեք հարիւր հազար զօրքով, ան ալ Պղատէայի քով յաղթուեցաւ, նաւատորմիղն ալ Միգաղէ հրուանդանին քով զարնուեցաւ Ցունաց հետ, ու դարձեալ շատնաւ կորսնցընելով յաղթուեցաւ։

1 Քսերքսէս Սարդիկէ եղած ատենը իր Մասիստէս եղբօրը կնկանը վրայ սէր ձգեց, ինչ բան որ ըրաւ, ինչ որ խոստացաւ՝ չկրցաւ պարկեշտ կնկան միտքը դարձընել։ Բայց անոր աղջիկը Արտայինտէ՝ մօրը առաքինութիւնը չունեցաւ, ու հաւանեցաւ Քսերքսեսին կամացը։ Ամեստրիս Քսերքսեսի թագուհին, իր ձեռքովը փառաւոր պատմուճան մը հիւսած էր էրկանը։ Օր մը որ Քսերքսէս Արտայինտէն ստիպեց որ իրմէ բան մը խնդրէ, Արտայինտէ ան պատմուճանը ուզեց· Քսերքսէս ալ դէմ չկարենալով կենալ, անմտութեամբ կատարեց խնդիրը։ Առաւ Արտայինտէ ան պատմուճանն ու յաղթութեան նշանի պէս վրան ձգեց։

---

1. Քսերքսէս Սարդիկէ գտնուած ատենը ինչ դիպուած եղաւ։

Ան որ տեսաւ Ամեստրիս, միտքը դրաւ որ անոր մօրմէն վրէժը հանէ: Թագաւորին ծննդեան տօնին օրը՝ Թագաւորը սովորութիւն ունէր որ Թագուհւոյն ինչ որ խնդրէր իրմէ կուտար. ան օրը Ամեստրիս Մասիստեսին կինը խնդրեց: Վատ Թագաւորը չկրցաւ չէ ըսել, ու խեղճ կինը վրէժխնդիր Թշնամւոյն ձեռքը մատնեց: Իսկ անգութ Ամեստրիսը անոր ծիծերն, լեզուն, քիթը, ականջներն ու շրթունքը կտրել տուաւ ու աչքին առջեւը շներուն ձգեց որ ուտեն. անանկ անգամահատ այլանդակած տունը խրկեց: Մասիստէս տուն որ դարձաւ ու ընկերոջը ողորմելի կերպարանքը տեսաւ, սոսկաց; վրէժխնդրութեան ոգւով վառուած՝ շուտ մը անով տեղովը Բակտրիա գնաց որ զօրք ժողվէ Քսերքսեսին դէմ: Բայց Քսերքսէս մէկէն մարդ հասցուց ետեւէն ու բոլոր անովը ճամբան զինքը սպաննել տուաւ: Աղէկ որ աս տեսակ վրէժխնդրութեան ուրիշ օրինակ մը չկայ պատմութեանց մէջ:

1 Քսերքսէս իր զօրացն ու նաւատորմղին նորէն յաղթուելուն գոյժն որ առաւ՝ Սարդիկէէն ելաւ դէպ 'ի Պարսկաստան գնաց, և ճամբան Յունաց բոլոր քաղաքներուն մեհեանները այրել տուաւ բաց 'ի Եփեսոսի Արտեմեայ տաճարէն: Պարսկաստան հասնելէն ետքը՝ անանկ չարաչար յաղթուելուն վրայ սիրտը կոտրած՝ ալ չուզեց պատերազմ ընել, աշխարհակալութեան

1 Ինչպէս մեռաւ Քսերքսէս:

եռանդը մարեցաւ, ու ինքզինքը բոլորովին զեղխութեան տուաւ. Ժողովուրդն ալ սկսաւ զինքը արհամարհել։ Արտաւան Քսերքսեսին սիրելի անձնապահապետը, Թագաւորին Միհրդատ անուանով սենեկապետին հետը միաբանեցաւ, մտաւ Քսերքսեսին սենեակն ու քունին մէջ զարկաւ զինքը սպաննեց (465)։

1 Երբոր մէկէն գնաց Քսերքսեսի երրորդ որդւոյն, որ Արտաշէս Երկայնաձեռն * կ'ըսուէր, զուրցեց թէ Մեծ եղբայրդ Դարեհ ժամ մը առաջ թագաւորելու համար հայրդ սպաննեց, զգոյշ կեցիր, զքեզ ալ կ'ուզէ մեռցընել։ Բարկացաւ Արտաշէս, գնաց Արտաւանայ հետ Դարեհը սպաննեց, և ինքը նստաւ աթոռը։

2 Արտաւանայ միտքն ան էր որ կուսակիցները շատցընէ, ու երբոր Արտաշէսն ալ սպաննէ, ինքը թագաւորէ։ Իմացաւ Արտաշէս անոր միտքը, բռնեց զինքը սպաննել տուաւ, և որովհետև Արտաւան եօթը կարիճ տղաք ունէր և շատ

---

1 Իրեն ո՞վ յաջորդեց։
2 Արտաւան ինչպէս մեռաւ։

* Արտաշէսին Երկայնաձեռն կամ Երկայնաբազուկ ըսուելուն պատճառը՝ Ստրաբոն կ'ըսէ թէ ձեռները շատ երկայն էին, այնպէս որ ոտքի վրայ կեցած ատենը ծունկերուն կը հասնէին։ Իսկ Պլուտարքոս կ'ըսէ թէ աջ ձեռքը ձախ ձեռքէն երկայն էր։

կուսակիցներ, անոնց դէմ պատերազմի ելաւ, զամէնքն ալ ջնջեց։ Հօրը դաւաճան Միհրդատ սեննեկապետն ալ բռնեց ու չարաչար մահուամբ կուր ըսուած տանջանքով մեռուց։

Այն անգութ տանջանքը աս կերպով կուտային։ Կուրի կամ մակոյկի մէջ կռնըկի վրայ մահա-պարտը կը պառկեցընէին, չորս անկիւնէն ու-ժով պրկած, անոր վրայ ուրիշ կուր մըն ալ կ'անցընէին ու մասնաւոր ծակերէ ձեռուընե-րը, ոտուըներն ու գլուխը դուրս կը ձգէին. ան տանջանքին ատենը բանի բերնէն կերակուր կը խոթէին ու կաթով խառնած մեղր կը խըմցը-նէին, բոլոր երեսը կը քսէին ու դուրս տեղ ա-րեւու մէջ կը դնէին որ ճանճերը վրան թափին. իսկ մէջը աղտեղութենէն որդեր կը գոյանային ու բոլոր մարմինը կը կրծէին։ Անանկ տասնը-հինգ կամ քսան օր անտանելի տանջանքի մէջ կը մնար մահապարտը։

1 Արտաշեսին մեծ եղբայրը Վշտասպ՝ Բակ-տրիայի կուսակալ էր. երբոր իմացաւ թէ պըզ-տիկ եղբայրը թագաւորեց, պատերազմի ելաւ ու յաղթուեցաւ։ Իսկ Արտաշէս ամէն կողմէն հանգստացած՝ սկսաւ կարգերը կանոնները նո-րոգել, տէրութեան մէջ մնած անկարգութիւն-ները վերցընել, և ամենուն սիրելի եղաւ։ Աս Արտաշէսն է որ Եզրի ու Նեէմիի հրաման տուաւ Երուսաղէմ դառնալու։

---

1 Արտաշէս իր թագաւորութեանը մէջ հաստա-տուելէն ետքը ի՞նչ ըրաւ։

1 Տեսնելով Արտաշէս որ Կիմոն Աթենացին օրէ օր տիրելով առաջ կուգայ, փութաց առջեւն առնելու, և Թեմիստոկլէսը զօրավար ընտրեց. բայց անոր մեռնելովը արգիլուեցաւ, և Յունաց հետ հաշտութիւն ըրաւ։

2 Արտաշէսի թագաւորութեան հինգերորդ տարին Եգիպտացիք ապստամբեցան, Լիբէացւոց Ինարոս իշխանը իրենց թագաւոր դրին, և Աթենացւոցմէ օգնութիւն ուզեցին. անոնք ալ նաւատորմիղ մը խրկեցին Եգիպտացւոց։

3 Արտաշէս նախ անոնց վրայ Աքիմենիդէս եղբայրը խրկեց որ գնաց յաղթուեցաւ, ու պատերազմի մէջ մեռաւ։ Ետքը նորէն զօրք խրկեց Արտաշէս Մեգաբիս զօրավարին հետ, որ վեց տարի պատերազմելով բոլորովին յաղթեց Եգիպտացւոց, բայց մեծերուն հետ դաշինք դրաւ որ զիրենք չմեռցընէ. Յոյնք ալ բոլոր նաւերնին կորսնցուցած՝ ամօթով ետ դարձան։ Ուրիշ յիսուն Յունաց նաւեր՝ եղածը չգիտնալով օգնութիւն կ'երթային. երբոր Նեղոսի մէջ մտան, Պարսիկք ծովէն հասան ետեւնին առին, ու ծովէն ցամաքէն զարնելով ամէնքն ալ ջնջեցին։

4 Արտաշէսի մայրը Ամեստրիս հինգ տարի

---

1 Յունաց դէմ արշաւանքը ինչպէս եղաւ։
2 Եգիպտացիք երբ ու ինչպէս ապստամբեցան Արտաշէսի դէմ։
3 Արտաշէս ինչպէս նուաճեց Եգիպտացիքը։
4 Ամեստրիս ինչ նոր անգթութիւն ըրաւ։

կ'աղաչէր անոր որ Եգիպտոսէն եկած գերիները քրեն տայ՝ որ մեռած որդւոյն հոգւոյն համար զոհ ընէ։ Արտաշէս երբը երբը չդիմանալով անոր թախանձանքին, իրաւանց ազգաց դէմ դաշինքը ոտքի տակ առաւ, ու մօրը անիրաւ կամքը կատարեց։ Առաւ խեղճ գերիներն ան անգութ Ամեստրիսը, Ինարոսը խաչել տուաւ՝ մէկալնոնց ալ գլուխը կտրեց։

1 Մեգաբիւս բարկացաւ աս անիրաւութեան վրայ, մանաւանդ որ խօսք տուողն ու դաշինքը դնողը ինքն էր. ելաւ գնաց Ասորիք, պատերազմի ելաւ ու երկու անգամ Արտաշէսի զօրացը յաղթեց։ Արտաշէս տեսաւ որ բռնութեամբ չկրնար զանիկայ նուաճել, խրկեց անոր քանի մը իշխաններու հետ իր եղբայրն ու քոյրը որ գնացին սիրտը առին, ու յորդորեցին որ գայ Թագաւորին հնազանդի։ Եկաւ Մեգաբիւս, Արտաշէս ալ ներեց իրեն։

2 Օր մը որսի ատեն առիւծ մը Թագաւորին վրայ վազեց, Մեգաբիւս վտանգը աչքը առած՝ վըզեց առիւծը սպաննեց։ Արտաշէս շնորհակալ ըլլալու տեղ հրաման տուաւ որ գլուխը կտրեն, Վասն զի զինք արհամարհեց, կ'ըսէր, որսս ձեռքէս յափշտակեց։ Բայց երբը քրոջն ու մօրը աղաչանքովը մշտնջենաւոր աքսոր խրկեց զինքը։

---

1 Մեգաբիւս ինչո՞ւ պատերազմ բացաւ Արտաշէսի դէմ։

2 Ուրիշ ի՞նչ կը պատմուի Մեգաբիւսին վրայ։

Հինգ տարիէն ետքը աղքատի հագուստով փախաւ եկաւ Մեգաբիս Շօշ. և նորէն զօքանչին ու կնկանը աղաչանքովը Թագաւորին հետ հաշտուեցաւ, ու ինչուան մահը հետը սիրով գնաց։

1 Քառասունըմէկ տարի Թագաւորելէն ետքը մեռաւ Արտաշէս, ու իրեն յաջորդ Թողուց իր մէկ հատիկ որդին Քսերքսէս Բ, որ քառասունըհինգ օր միայն Թագաւորեց։ Վասն զի օր մը երբոր սաստիկ գինովցած կը քնանար՝ Արտաշեսի հարճորդին Սոգդիանոս ներս մտաւ՝ սպաննեց զինքը ու տեղը նստաւ։

2 Աթոռը նստելուն պէս, հօրը հաւատարիմ Բակուր ներքինին սուտ պատճառով մը քարկոծել տուաւ։ Այս երկու սպանութեամբը բոլոր ժողովրդեան ատելի եղաւ. ինքն ալ սկսաւ վախնալ որ չըլլայ թէ իր եղբայրներն ալ զինքը ըսպաննեն, Թագաւորութիւնը ձեռքէն առնեն. աւելի Ովքոսէն վախնալով որ Վրկանի երկիրն էր, խաբէութեամբ անոր գրեց որ գայ։ Իմացաւ Ովքոս անոր միտքը, կուսակիցները շատցուց, ու զօրքով վրան գնաց. ամէնքը Ովքոսին կողմն անցան ու զինքը Թագաւորեցուցին։

3 Քանի որ Սոգդիանոս կենդանի էր՝ Ովքոս չէր կրնար հանգիստ Թագաւորել։ Երդում ը-

---

1 Ի՞նչպէս մեռաւ Արտաշէս և իրեն ո՞վ յաջորդեց։
2 Սոգդիանոս ի՞նչպէս ըրաւ Թագաւորութիւնը։
3 Ովքոս ի՞նչպէս վարուեցաւ Սոգդիանոսին հետ։

րաւ Ովքոս որ եթէ եղբայրը քովը գայ, ոչ թըրրով զէնքը կը սպաննէ, ոչ թունով և ոչ այլ անօթութեամբ: Հաւատաց Սոգդիանոս, ու իր բարեկամաց խորհուրդը արհամարհելով որ խրատ կուտային որ չերթայ՝ գնաց Ովքոսին քովը, հետը դաշինք դրաւ. ան ալ բռնեց զինքը առանց երդմանը դէմ ընելու՝ նոր գիւտով մը մոխրի մէջ խեղդեց, վեց ամիս ու տասնըհինգ օր թագաւորելէն ետքը:

1 Անկէց ետքը սովորական պատիժներու կարգը անցաւ Պարսկաստան աս մոխրի մէջ մարդ խեղդելը, բայց մեծ յանցանք ունեցողներուն միայն պահուած էր. և աս կերպով կը խեղդէին. բարձր աշտարակի մը կէսը մոխիր կը լեցընէին և յանցաւորը բարձրէն գլխիվայր մէջը կը նետէին, չորս կողմէն ալ անիւներով մոխիրը կը խառնէին ինչուան որ մարդը խեղդուէր:

2 Ովքոս անունը փոխեց Դարեհ դրաւ, Նոթոս մականունով որ Հարճորդի ըսել է: Դարեհ բոլոր թագաւորութեանը ատեն ապստամբութիւններէ աչք չբացաւ: Նախ Արշէզ եղբայրը տեսնելով որ Դարեհ Սոգդիանոսը սպաննեց՝ ինքն ալ ուզեց զինքը սպաննել ու տեղը անցնիլ. և իրեն օգնական գտնելով Արտափիրոս իշխանը Մեգաբիւզին որդին՝ եղբօրմէն ապստամբեցաւ,

---

1 Մոխրով խեղդելը ի՞նչ պատիժ էր Պարսից մէջ:
2 Ովքոս կամ Դարեհ ի՞նչպէս սկսաւ թագաւորութիւնր:

ու վրան պատերազմի ելաւ։ Քանի մը անգամ պատերազմելէն ետև՝ Արտիփիոսին զօրքը ջարդուեցան, ինքն ալ վիրաւորուած ձեռք ընկաւ։ Դարեհին քոյրն ու կինը Պարիսատիս՝ խորամանկութեամբ խրատ տուաւ անոր որ Արտիփիոսը ազատ պահէ, որպէս զի Արշէզն ալ յուսալով որ իրեն ալ բան չըներ Դարեհ՝ անձնատուր ըլլայ։ Ինչպէս որ եղաւ. և երկուքն ալ մէկէն մոխրի մէջ խղդեցին։

1 Պարսից Թագաւորները սովորութիւն ունէին որ ամէն բան իրենց ներքինիի ձեռքով կ'ընէին, և անոնց ուզածը առաջ կ'երթար։ Աս իրեքին մէջէն Արտոքսար ըսուածը ան աստիճան յանդգնեցաւ՝ որ ինչուան ուզեց Թագաւորը սպաննել ու ինքը տեղը նստիլ. բայց իմացուեցաւ դաւաճանութիւնը, և Պարիսատիս սաստիկ տանջանքներով մեռցնել տուաւ զինքը։

2 Ամէն բանէն աւելի Եգիպտացւոց ապստամբութիւնը վիշտ եղաւ Դարեհի։ Եգիպտացիք Պարսից բռնութիւններէն ձանձրացած՝ Ամիրտէոսի գրգռութեամբը ոտք ելան, և անոր որդւոյն Պաւսիրիսի ատենը հաշիւ կրցան Պարսիկք զանոնք նորէն նուաճել։

3 Դարեհ իր պզտիկ որդին Կիւրոսը Փոքր Ա-

---

1 Դարեհի դէմ ի՞նչ դաւաճանութիւն ըրաւ Արտոքսար։

2 Ո՞ր ազգը ապստամբեցաւ Դարեհի դէմ։

3 Դարեհ ի՞նչ պաշտօն տուաւ իր Կիւրոս որդւոյն։ — Ի՞նչպէս մեռաւ։

սիրոյ վրայ կուսակալ դրաւ։ Հոն երթալուն պէս՝ Կիւրոս իր փառասէր բնաւորութեանը առջի ցոյցը տուաւ. սկսաւ պահանջել որ թագաւորի պատիւ տան իրեն։ Օր մը երկու հօրաքեռորդիքը առանց ձեռքերնին թեզանիքով գոցելու առջևը կեցեր էին, բարկացաւ, երկուքն ալ մեկէն սպաննել տուաւ։ Ու որովհետև միայն թագաւորին առջևը պարտական էին մեծամեծները ծածկած ձեռքով կենալու, Կիւրոսին ըրած պատուասիրութիւնը Դարեհին գէշ երևցաւ, ու անմեղ քեռորդւոցը մահուան վրայ ալ սաստիկ սրդողելով հիւանդ ձևացաւ ու զինքը կանչեց որ տեսնէ. Կիւրոս երբոր հասաւ, Պարիսատիսին աղաչանքովը Դարեհ հետը հաշտուեցաւ., բայց ինքը քանի մը օրէն մեռաւ Բաբելոնի մէջ, և իրեն յաջորդ թողուց որդին Արշակը։ Երբոր հարցուց անոր Արշակ թէ Կեանքիդ մէջ ինչ աղէկ բան ըրիր որ ես ալ անոր հետևիմ. պատասխան տուաւ Դարեհ. Ինչ որ արդարութիւնն ու կրօնքը կը պահանջէր՝ անիկայ ինծի օրէնք բռնեցի։

1 Արշակ թագաւորելուն պէս անունը փոխեց՝ Արտաշէս դրաւ. ու զարմանալի յիշողութիւն ունենալուն համար Մնեմոն կամ Յուշեղ ըսուեցաւ և Պասարգատ քաղաքը գնաց որ օրինաւոր

---

1 Արշակ ի՞նչպէս թագաւորեց։ — Պարսից թագաւորները ինչ արարողութեամբ կը թագաւորէին։

կերպով պարսիկ քուրմերէն պաշտուէր: Հոն Աթենասայ փառաւոր մեհենին մէջ նորընտիր Թագաւորը իր հագուստը կը հանէր ու Կիւրոսի հագուստը կը հագնէր, որ շատ երկիւղածութեամբ հոն կը պահէին, որպէս զի անոր հետ Կիւրոսին հոգին ալ ըզգենու, և անոր ըրած բարի գործոցը հետևի: Ետքը թուզ մը կ'ուտէր, բեւեկնիի տերև մը կը ծամէր ու քացախով խառնած կաթ կը խմէր: Աս անոր նշան էր որ թագաւորութեան քաղցր ու փառաւոր իշխանութեանը մէջ շատ ալ դառնութիւններ ու վիշտեր խառնուած են:

1 Երբոր Արտաշէս մեհենին մէջ կը հանուէր որ Կիւրոսին հագուստը հագնի, Կրտսերն Կիւրոս ուզեց ան միջոցին զինքը սպաննել, ու միտքը գաղտուկ յայտնեց իրեն բարեկամ քուրմին. անիկայ ալ շուտ մը գնաց թագաւորին իմացուց: Արտաշէս հրամայեց որ մէկէն սպաննեն Կիւրոսը. բայց Պարիսատիս մայրը լալով ողբալով զինքը ազատեց, եղբօրը հետ հաշտեցուց, ու նորէն իր տեղը խրկել տուաւ. Կիւրոս ալ գնաց սկսաւ պատերազմի պատրաստուիլ՝ Յունաց օգնութեամբը:

2 Երկու կողմէն ալ պատրաստուեցան, Արտաշէսին զօրքը մէկ միլիոնի կը հասնէր, իսկ

---

1 Կիւրոս ի՞նչպէս դէմ ելաւ Արտաշէսի:
2 Կիւրոսի և Արտաշէսի պատերազմը ի՞նչպէս եղաւ:

Կիւրոսինը հարիւր տասնուերեք հազար էր, բայց տասնուերեք հազարը պատերազմափորձ կիրթ Յոյն զինուորներ էին։ Պատերազմը սկսաւ Բաբելոնէն քիչ մը հեռու Կունաքսա ըսուած տեղը. Կղէարքոս խրատ տուաւ Կիւրոսին որ պատերազմին մէջ չմտնէ, ինքզինքը վտանգի չդնէ. դարձաւ Կիւրոս անոր՝ Ի՞նչ կ'ըսես, ըսաւ. կ'ուզես որ թագաւորութեան համար պատերազմած ատենս ինքզինքս թագաւոր ըլլալու անարժա՞ն ցուցընեմ։ Պատերազմին սաստկացած ատենը Կիւրոս կը տեսնէ հեռուէն եղբայրը, կը վազէ սաստկութեամբ, առջևն եկածը կը կոտրէ կ'անցնի, Արտաշեսին կը հասնի, կը զարնէ անոր ձին կը սպաննէ. Թագաւորը գետին կ'իյնայ, բայց շուտ մը ուրիշ ձիու վրայ կը ցատքէ. ուրիշ հարուած մըն ալ կ'իջեցընէ անոր Կիւրոս ու զինքն ալ կը վիրաւորէ. ան ատեն Թագաւորը ամեհի առիւծի պէս կատղած՝ կը յարձակի Կիւրոսին վրայ, կը զարնէ նիզակը անոր քունքին, ու մեռած գետինը կը փռէ զանիկայ։ Կը հրամայէ Մեսաբատ ներքինւոյն որ Կիւրոսին գլուխն ու աջ թևը կտրէ զօրաց առջևէն տանի. ետքը անոր զօրացը ետևէն կ'իյնայ կը հալածէ, որ անգլուխ մնալով կը ցրուին։

1 Անկէց ետքը Արտաշէս Լակեդեմոնացւոց հետ պատերազմ ըրաւ, և իր նաւատորմիղին զօ-

---

1 Արտաշեսի Լակեդեմոնացւոց դէմ պատերազմը ի՞նչպէս լմնցաւ։

րավար դրաւ Կոնոն Աթենացին։ Անտալկիդաս Պարսից հետ դաշինք դրաւ, ու բոլոր Ասիոյ մէջ եղած Յունաց քաղաքները անոնց իշխանութեան տակը ձգեց. անով պատերազմը դադրեցաւ (387)։

1 Արտաշէս Կիպրոս կղզւոյն ալ տիրեց որ ապըստամբեր էր։ Եգիպտացիք նորէն Ա. Նեկտանեբոսին առաջնորդութեամբը գլուխ քաշեցին. շատ ատըկէ ելաւ ու պատրաստութիւններ տեսաւ Արտաշէս, բայց չկրցաւ զանոնք նուաճել։

2 Հին և Նոր պատմութեանց մէջ անգութ և վրէժխնդիր կանանց ահաւոր օրինակ եղած է Պարիսատիս անզգամ թագուհին, որուն անգըթութեանց մէկ քանին հոս յիշենք։ Արտաշէսի Ստատիրա կնոջը քոյրը Ռոքսանէն կէս մէջքէն սղոցել տուաւ, որովհետև անոր եղբայրը Տէրիտեւքմոս՝ քրոջը վրան սէր ձգելով ուզեր էր Ամեստրիս կինը սպաննել՝ որ Պարիսատիսին աղջիկն էր, ու զանիկայ առնուլ։

3 Կիւրոսի մեռնելէն ետքը երդում ըրաւ Պարիսատիս որ անոր մահուան պատճառ եղողները սպաննէ. անոր համար Կարիացի զինուոր մը որ կը պարծէր թէ Ես սպաննեցի Կիւրոսը, տասը

---

1 Արտաշէս Կիպրացւոց ու Եգիպտացւոց ապըստամբութեանը դէմ ինչ ըրաւ։
2 Պարիսատիս ինչ կողմանէ անուանի է։
3 Կիւրոսը մեռցնողներուն դէմ ինչ վրէժխնդրութիւն ըրաւ։

որ սաստիկ տանջել տալէն ետքը հրամայեց որ աչուըները փորեն, ու ականջէն հալած պղինձ լեցընեն որ մեռնի։

Միհրդատ անունով իշխան մը սեղանի վրայ քիչ մը գինեհարած՝ Կիւրոսի մահուանը վրայ ուրախութիւն ցուցընելուն համար, կուր տանջանքով մեռաւ։

1 Կ'ուզէր Մեսաբատ ներքինւոյն գլխուն ալ փորձանք մը բերել, որ Կիւրոսին գլուխն ու ձեռքը կտրեր էր։ Անգամ մը Թագաւորին հետ հազար դահեկանի նարտ խաղաց, կամաւ յաղթուեցաւ, ու մէկէն ստակը համրեց։ Նորէն ուզեց խաղալ ան դաշինքով որ յաղթողը ուզած ներքինին առնէ յաղթուողէն. ամէն ճարտարութիւնը թափեց Պարիսատիս, քարերն ալ յաջող եկան, յաղթեց Թագաւորին, ու փոխարէն Մեսաբատ ներքինին ուզեց։ Առաւ, ու առանց Թագաւորին գիտնալուն՝ ողջ ողջ կաշին հանեց, ու զինքը գլխիվայր խաչել տուաւ։

2 Կը տեսնէր Պարիսատիս որ Թագաւորին իր վրայ ցըցուցած սէրը զինքը չորսմեցընելու համար է միայն, և բուն սէրը Ստատիրա կնոջը վըրան է. միտքը դրաւ որ անոր կեանքը վերցընէ։ Բայց որովհետև անանկ եղեր էր որ մարդ քովը մօտենալու կը վախնար. սկսաւ երկար ատեն սուտ բարեկամութիւն ձևացընել Ստատիրային։

---

1 Մեսաբատ ներքինին ի՞նչպէս սպաննեց։
2 Ստատիրա Թագուհին ի՞նչպէս մեռաւ։

Օր մը սեղանի վրայ խորված հաւ մը բերին, կէսը կտրեց Պարիսատիս՝ ինքը կերաւ, կէսն ալ Ստատիրային տուաւ. ան խեղճը հազիւ թէ քիչ մը կերաւ՝ սաստիկ փորու ցաւ մը բռնեց զինքը, սեղանէն ելաւ, վրան քանի մը ժամ անցաւ՝ մեռաւ։ Քննեց իմացաւ Թագաւորը որ դանակին մէկ երեսը թոյն քսած է եղեր. թոյն քըսողը մեռցընել տուաւ *, Պարիսատիսն ալ Բաբելոնի մէջ փակեց, ու երդում ըրաւ որ քանի որ անիկայ հոն է՝ ինքը Բաբելոն ոտք չկոխէ։

1 Երբոր ծերացաւ Արտաշէս, որովհետև իրեք որդի ունէր. Դարեհ, Արիասպ և Ովքոս, յիսուն ալ հարճորդիք, որպէս զի իր մեռնելէն ետքը մէջերնին խռովութիւն չըլլայ՝ հրաման տուաւ որ իր կենդանութեանը ատեն իր անդրանիկ որդին Դարեհը թագ դնէ։ Դարեհ թագաւորութիւնը աւելի հաստատելու համար՝ հօրը հարճերուն մէկն ալ իրեն կին ուզեց. երբոր Արտաշէս չտուաւ, Դարեհ բարկացաւ ու հայրը սպաննել ուզեց. դաւաճանութիւնը իմացուե-

---

1 Արտաշէս քանի՞ որդի ունէր, և անոնց մէջէն ո՞րը իրեն յաջորդ անուանեց։

* Պարսկաստան մարդ թունաւորողին պատիժը աս էր. մեծ երկանաքարի մը վրայ թունաւորողին գլուխը կը դնէին, անոր վրայ ալ ուրիշ երկանաքար մը, ու փակինին վրայ կը դարձնէին մինչև որ մէջի գլուխը բոլորովին ճզմուէր։

ցաւ, Արտաշէս զինքը սպաննեց։ Ան ատենը Ով-քոս պզտիկ որդին ոտք ելաւ, իր Արիասպ եղ-բայրն ու Արտաշէսին սիրելի Արշամ հարճորդին սպաննեց որ ինքը Թագաւորէ։

1 Արտաշէս ան ծերութեանը ատեն սաստիկ երկու զաւակը մէկէն կորսնցընելով, սրտին ցաւէն Թագաւորութեանը քառասունըչորրորդ տարին իննսունըչորս տարեկան մեռաւ (361)։

2 Ովքոս Թագաւորութիւնը հաստատելու ժամանակ ունենալու համար՝ տասը ամիսի չափ հօրը մահը ծածկեց, անոր անունովը ինքզինքը յաջորդ ընտրել տուաւ, և անունը փոխեց Ար-տաշէս դրաւ։ Ժողովրդեան ատելութենէն ալ վախնալով որ յանկարծ կրնան զինքը ձգել, տե-ղը ուրիշ մը դնել, բոլոր Թագաւորականցեղը ջնջեց, Ովքոս քոյրը ողջ ողջ Թաղել տուաւ, մօրեղբայրն ալ հարիւր որդւոցը ու Թոռանցը հետ ոչխարի պէս բակի մը մէջ փակեց ու նե-տով մեռցընել տուաւ, որովհետև ամէնքն ալ Պարսկաստանի մէջ անուանի, կտրիճ մարդիկ էին։

3 Փոքր Ասիա և Ասորիք ապստամբեր էին, շատ զօրքով գնաց Ովքոս զանոնք նուաճեց, զօրքը Փիւնիկէին վրայ դարձուց. և Մենտորի Հռոդացւոյն մատնութեամբը քիչ ատենի մէջ

---

1 Ի՞նչպէս մեռաւ Արտաշէս։
2 Ովքոս ի՞նչ կերպով սկսաւ Թագաւորութիւնը։
3 Ի՞նչ աշխարհակալութիւններ ըրաւ։

տիրեց Սիդոն քաղաքին: Սիդոնացիք տեսնելով որ քաղաքնին մատնուեցաւ, յուսահատած աներնուն կրակ տուին ու իրենք ալ մէջը այրեցան, և միայն երին մարդիկը քառասուն հազար էին: Անոնց թշուառութիւնը օրինակ եղաւ ամենուն, և բոլոր Փիւնիկէն հնազանդեցաւ:

1 Անկէ անցաւ Եգիպտոս, զամէնքը հնազանդեցուց. շատ քաղաքներուն պարիսպները կործանեց, մեհեանները աւրեց, կողոպտեց, ու մեհենական գրուածները վերուց տարաւ: Անոնց Ապիս աստուածն ալ իշու մը առջին զոհել տուաւ, որովհետև Եգիպտացիք ծաղրելով իրեն էշ կանչեր էին՝ բնական ծոյլ ու դանդաղ ըլլալուն համար. իսկ ինքը սպառնացեր էր անոնց որ ցուցընէ թէ ինքը էշ չէ՝ հապա առիւծ է, և թէ իրենց անարգած էշը կրնայ իրենց պաշտածուն եզը պատռել: Ապիսը իշու մը դիմացը զոհելէն ետքը, միսն ալ խորվել տուաւ ու իր ծառաներուն բաժնեց: Ետքը անցաւ հարստութեամբ Բաբելոն դարձաւ:

2 Ովքոս ասանկ յաջողութեամբ ապստամբներն ու Եգիպտոսը նուաճելէն ետքը՝ ինքզինքը զեղխութեան տուաւ, և տէրութեան հոգը Բագու ներքինւոյն յանձնեց: Աս Բագուա ներքինին Եգիպտացի ըլլալով՝ Ովքոսին իր կրօնին ըրած անարգութեանցը վրայ շատ նեղացեր էր, ուս-

1 Ովքոս ինչ նախատինք ըրաւ Եգիպտացւոց:
2 Ինչպէս մեռաւ:

ալ իշխանութիւնը ձեռքը անցնելուն պէս՝ Ովքոսին Թագաւորութեանը քսանըմէկերորդ տարին անոր Թոյն խմցուց, և անոր տեղը ուրիշ մարդ մը Թաղել տալով՝ գիակը կատուներու առջևը նետեց. անով ալ վրէժը չկարենալով առնել, ոսկորներն ալ Թուրի, դանակի կոթ շինել տուաւ անոր անգթութեանը նշան, որ մեռնելէն ետքն ալ նորէն մարդ կը մեռցընէ (340)։

1 Բագոս նաև Թագաւորին բոլոր որդիքը սպաննել տուաւ, և Արշէզը որ ամենէն պզտիկն էր՝ աԹոռը նստեցուց, յուսալով որ անոր անունովը ինքը պետութիւնը կառավարէ։ Արշէզ ամէն իշխանութիւն Բագոսին ձեռքը տուաւ, բայց երբոր անոր չարութիւնը իմացաւ, ուզեց զինքը մեռցընել. փութացաւ Բագոս, ինքը զանիկայ սպաննեց, ու բոլոր անոր կուսակիցները Թրէ անցուց (338)։ Արշէզ երկու տարի միայն Թագաւորեց։

2 Ետքը Բագոս Դարեհ Նոթոսի ցեղէն Կոդոմանոսը Թագաւորեցուց, որ պատերազմի մէջ հսկայ մը սպաննելուն համար՝ Հայաստանի մէկ մասին վրայ կուսակալ դրուեր էր։ Կոդոմանոս Թագաւորելուն պէս անունը փոխեց Դարեհ դըրաւ։ Բագոս տեսնելով որ Դարեհ կ'ուզէ մինակ Թագաւորել, ջանաց որ զինքն ալ Թունաւորէ.

---

1 Ովքոսին ո՞վ յաջորդեց։
2 Արշէզին յաջորդ ո՞վ եղաւ։

բայց իմացաւ Դարեհ, և թունով լեցուն գաւաթը որ իրեն խմելու կուտար տիրանենգ Բագուն, բանի անոր խմցուց, որ քիչ ատենի մէջ սաստիկ ցաւերով մեռաւ։

1 Ան ատենները Աղեքսանդր Մակեդոնացին Ելլեսպոնտոսէն անցնելով բոլոր Ասիոյ տիրելու կուգար։ Դարեհ զօրք ժողվեց, անոր դէմ գնաց, Իսսոսի քով զարնուեցաւ Մակեդոնացւոց հետ, յաղթուեցաւ. ու հազիւ փախչելով կրցաւ ազատիլ (333)։ Արբեղայի քով նորէն յաղթուելով Եկբատան գնաց ու սկսաւ նոր զօրք ժողվել (331)։ Երբոր Աղեքսանդրի վրայ նորէն երթալու կը պատրաստուէր, Բեսոս ու Նաբարզան նախարարները յանկարծ զինքը բռնեցին, ոսկի շղթաներով կապեցին, կառքի մը վրայ դրին ու սկսան Բակտրիա տանիլ։

2 Աղեքսանդր Եկբատան գնաց տեսաւ որ Դարեհ հինգ օրէն 'ի վեր անկէց ելեր է, ետևէն ընկաւ որ Ճամբան բռնէ։ Երբոր Պարսից երկիրը մօտեցաւ, Բեսոս Դարեհին կառքին քովը եկաւ և ուզեց որ զինքը ձի հեծցընէ ու հետը տանի. երբոր չուզեց անոր հնազանդիլ Դարեհ՝ նետով մը չարաչար վիրաւորեց զինքը Բեսոս, ու տարաւ մէկդի ձգեց, ուր քիչ ատենէն մեռաւ (330) յիսուն տարեկան, ութը տարի թագաւորելէն ետքը. և Պարսկաստան Աղեքսանդրի ընդարձակ տէրութեան մէկ գաւառն եղաւ։

---

1 Աղեքսանդրի դէմ ի՞նչպէս ելաւ Դարեհ։
2 Ի՞նչպէս մեռաւ։

# ԳԼՈՒԽ Դ.

Արեւապաշտութիւն. — Կրակապաշտութիւն. — Որմիզդ, Արհմն. — Մոգք. — Թագաւոր. — Թագաժառանգ արքայորդի. — Դատաւորականութիւն. — Սովորութիւնք. — Մափէան գունդ:

1 Տարրապաշտութեան մէջ ամենէն հին ու աւելի մարդուս տկարամտութեանը բնական՝ արեւու պաշտօնն է. ուստի Պարսիկք ալ մեծ երկիւղածութեամբ արեւը կը պաշտէին, մանաւանդ ելլելու ատենը: Ընտիր ձիերով փառաւոր կառքեր կը նուիրէին արեւուն. երբեմն ալ եզներ կը զոհէին, ու ան ատենը կը կոչէին զինքը Միհր աստուած:

2 Արեւապաշտութեան հետեւանքն էր Կրակապաշտութիւնը, ուստի կրակն ալ սկսան պաշտել Պարսիկք. զոհ մատուցանելէն առաջ անոր օգնութիւնը կը խնդրէին, ուր որ երթար թագաւորը՝ կրակն ալ հանդիսով առջեւէն կը տանէին, և երկինքէն իջած սեպելով կրակը, մոգերուն յանձնուած էր անոր պահպանութիւնը,

---

1 Պարսիկք հին ատենը ի՞նչ կը պաշտէին:
2 Կրակը ի՞նչպէս կը պաշտէին:

բայց իմացաւ Դարեհ, և Թունով լեցուն գաւաթը որ իրեն խմելու կուտար տիրանենգ Բագուն, բռնի անոր խմցուց, որ քիչ ատենի մէջ սաստիկ ցաւերով մեռաւ։

1 Այն ատենները Աղեքսանդր Մակեդոնացին Ելլեսպոնտոսէն անցնելով բոլոր Ասիոյ տիրելու կուգար։ Դարեհ զօրք ժողվեց, անոր դէմ գնաց, Իսսոսի քով զարնուեցաւ Մակեդոնացւոց հետ, յաղթուեցաւ. ու հազիւ փախչելով կրցաւ ազատիլ (333)։ Արբելայի քով նորէն յաղթուելով Եկբատան գնաց ու սկսաւ նոր զօրք ժողվել (331)։ Երբոր Աղեքսանդրի վրայ նորէն երթալու կը պատրաստուէր, Բեսոս ու Նաբարզան նախարարները յանկարծ զինքը բռնեցին, ոսկի շղթաներով կապեցին, կառքի մը վրայ դրին ու սկսան Բակտրիա տանիլ։

2 Աղեքսանդր Եկբատան գնաց տեսաւ որ Դարեհ հինգ օրէն 'ի վեր անկէց ելեր է, ետևէն ընկաւ որ Ճամբան բռնէ։ Երբոր Պարսից երկիրը մտեցաւ, Բեսոս Դարեհին կառքին քովը եկաւ և ուզեց որ զինքը ձի հեծցընէ ու հետը տանի. երբոր չուզեց անոր հնազանդիլ Դարեհ՝ նետով մը չարաչար վիրաւորեց զինքը Բեսոս, ու տարաւ մէկդի ձգեց, ուր քիչ ատենէն մեռաւ (330) յիսուն տարեկան, ութը տարի թագաւորելէն ետքը. և Պարսկաստան Աղեքսանդրի ընդարձակ տէրութեան մէկ գաւառն եղաւ։

---

1 Աղեքսանդրի դէմ ի՞նչպէս ելաւ Դարեհ։
2 Ի՞նչպէս մեռաւ։

# ԳԼՈՒԽ Դ.

Արեւապաշտութիւն. — Կրակապաշտութիւն. — Որմիզդ, Արհմն. — Մոգք. — Թագաւոր. — Թագաժառանգ արքայորդի. — Դատաւորականութիւն. — Սովորութիւնք. — Մաքէան գունդ:

1 Տարրապաշտութեան մէջ ամենէն հին ու աւելի մարդուս տկարամտութեանը բնական՝ արեւու պաշտօնն է. ուստի Պարսիկք ալ մեծ երկիւղածութեամբ արեւը կը պաշտէին, մանաւանդ ելլելու ատենը: Ընտիր ձիերով փառաւոր կառքեր կը նուիրէին արեւուն. երբեմն ալ եզներ կը զոհէին, ու ան ատենը կը կոչէին զինքը Միհր աստուած:

2 Արեւապաշտութեան հետեւանքն էր Կրակապաշտութիւնը, ուստի կրակն ալ սկսան պաշտել Պարսիկք. զոհ մատուցանելէն առաջ անոր օգնութիւնը կը խնդրէին, ուր որ երթար թագաւորը՝ կրակն ալ հանդիսով առջեւէն կը տանէին, և երկնքէն իջած սեպելով կրակը, մոգերուն յանձնուած էր անոր պահպանութիւնը,

---

1 Պարսիկք հին ատենը ի՞նչ կը պաշտէին:
2 Կրակը ի՞նչպէս կը պաշտէին:

և կեցած տեղը Ատրուշան կամ Կրակատուն կ'ըսուէր. և Թէ որ յանկարծ կրակը մարէր՝ մեծ դժբաղդութեան նշան կը սեպէին։ Կրակի զոհ շատ անգամ Պարսիկք տղաքնին մէջը կը նետէին, կամ բոցին վրայէն անցընելով կ'այրէին։ Նոյնպէս կը պաշտէին նաև Պարսիկք ջուրը, հողը և հովերը։

1 Ունէին երկու ուրիշ աստուածներ ալ Որմիզդ և Արհմն. Որմիզդը, որ Արամազդ ալ կ'ըսուի, բարեաց արարիչ կ'ըսէին, Արհմն ալ չարեաց։

2 Պարսիկք իրենց աստուածներուն ոչ արձան կը կանգնէին, ոչ մեհեան, ոչ բագին։ Իրենց զոհերը միշտ բաց տեղ կ'ընէին, և շատ անգամ ալ բարձրաւանդակներու ու լեռներու Վրայ։

3 Մոգերը կրօնքի և օրինաց աւանդապահներն էին, առանց անոնց և ոչ Թագաւորը կրնար զոհ մատուցանել. իրենք էին նաև Պարսից իմաստուններն ու գիտունները։ Ասոնց առաջին գլուխն ու աղանդապետը կը սեպուի Զրադաշտ մոգը։

4 Թագաւորը ժողովրդեան մէջ Աստուծոյ

---

1 Ուրիշ աստուածներ չունէի՞ն։
2 Իրենց աստուածներուն կռատուն կը շինէի՞ն։
3 Մոգերը ի՞նչ էին։
4 Թագաւորը ի՞նչ մասնաւոր սովորութիւններ ունէր։

տէս պատիւ ունէր՝ իբրև փոխանորդ Աստուծոյ, և կ'ըսուէր Արքայից արքայ։ Բոլոր տարին մէկ տեղ մը չէր կենար. քովի տասնըհինգ հազար պալատականներովը տարուոյն չորս եղանակները մէյմէկ տեղ կ'անցընէր։ Գարունը Եկբատան, Մարաստանի զովարարագեղ դաշտերուն մէջ. ամառը Շօշ, Պարսկաստանի հովասուն լեռներուն տակ. ձմեռը բարեխառն Բաբելոնի մէջ։ Թագաւորը իբրև միահեծան տէր բոլոր տէրութեան՝ ամենէն աղնիւ կերակուրներն ու ըմպելիքները ինքը կ'ուտէր ու կը խմէր։ Յունաց պատմիչները կ'ըսեն թէ Քոասպիս գետին ջուրը միայն կը խմէր, և ճամբորդութեանը ատեն արծաթ ամաններու մէջ գրած՝ սայլերով հետը կը պտըտցընէին այն ջուրը։ Սեղանին աղը Ափրիկէի մէջ եղած Արամազդայ Ամմոնի տաճարէն կը բերուէր. գինին Ասորւոց Քալիբոն քաղաքէն (որ է հիմակուան Հալէպը). հացին ցորենն ալ Եւոլիայէն։ Ուր որ երթար թագաւորը, տեղացիք մէկէն երկրին աղնիւ պտուղները և ուտելիքն իրեն ընծայ կը տանէին։

1 Թագաւորութիւնը որդւոց որդի էր, և հօրը ժառանգ անդրանիկն էր. ասիկայ երբոր կը ծնանէր, բոլոր Պարսկաստան զոհեր կը մատուցուէին, տեսակ տեսակ ուրախութիւններ, հանդէսներ կ'ըլլային. և այն օրը ամէն տարի տօն կը կատարուէր։ Ետքը կը յանձնուէր արքայոր-

---

1 Թագաւորին յաջորդը ինչպէս կ'ընտրուէր։

դէն դայեակներու որ մեծցընեն, բնաւորութիւնը շտկեն, ձի հեծնելու և որսի վարժեցընեն ։

1 Երբոր տասնըչորս տարեկան կ՚ըլլար՝ չորս անուանի իմաստուն և առաքինի վարժապետներ կը դնէին քովը․ մէկը անոր մոգութիւն ու կրօնքի բաները կը սորվեցընէր․ երկրորդը՝ ճըշմարտութիւն և արդար դատաստան կարել․ երրորդը՝ իր ցանկութեանցը վրայ տիրել, ու ախտերէն չյաղթուիլ․ չորրորդը՝ սիրտ տալու անոր որ ամէն բանէ չվախնայ, միշտ խելացի ու արիական վստահութիւն մը ունենայ ։

2 Հասարակ մանչ տղոց գլխաւոր դաստիարակութիւնը հինգ տարուընէ ինչուան քսանը՝ սա իրեք բանն էր․ ձի հեծնել, նետ նետել և ճշմարիտ խօսիլ ։

3 Բնութեամբ խիստ գինեսէր էին Պարսիկք, ինչուան ծանր ու հարկաւոր գործողութեանց ատենը՝ անդադար գինի կը խմէին ։

4 Ճամբան երկու Պարսիկ իրարու որ հանդիպէին, թէ որ նոյն աստիճանի ըլլային՝ երկուքն ալ մէկզմէկ բարևելով իրարու բերանը կը պագ-

---

1 Թագաժառանգ արքայորդւոյն վրայ ի՞նչ խընամք կ՚ըլլար ։
2 Հասարակ տղոց դաստիարակութիւնն ի՞նչպէս էր ։
3 Գինեսիրութիւննին ի՞նչ աստիճանի էր ։
4 Պարսիկք ի՞նչպէս կը բարևէին մէկզմէկ ։

նէին․ թէ որ քիչ մը վարի աստիճանի ըլլար մէ-
կը՝ երեսնին կը պագնէին․ իսկ թէ որ աստիճան-
նին բոլորովին տարբեր ըլլար՝ ստորնագոյնը կը
ծռէր մէկալին երկրպագութիւն կ'ընէր։

1 Կորիճ պատերազմողներէն ետքը կը պա-
տուէին Պարսիկք շատ զաւկի տէր մարդիկը․ և
թագաւորը այնպիսեաց ամէն տարի պարգևներ
կը խաւրէր։

2 Պարսիկք ոչ Եգիպտացւոց պէս կը զմռսէին
իրենց մեռելները, և ոչ Յունաց պէս կ'այրէին․
հապա մեր նախնեաց պէս կը թաղէին՝ որ ամե-
նէն բնականն է։

3 Անուանի Հեծելագունդ մը ունէին Պար-
սիկք, որուն մենք Մատեան կամ Մատենիկ
գունդ կ'ըսենք։ Ասոնք տասը հազար կորիճ ու
ընտիր երիտասարդներ էին, որ պատերազմի ա-
տեն թագաւորին կենացը պահպանութիւն կ'ը-
նէին։ Աս գնդէն մէկը թէ որ յանկարծ իյնար,
մէկէն ետևէն ուրիշ մը տեղը կը յաջորդէր, որ-
պէս զի միշտ գունդը ամբողջ մնայ իբրև անմահ.
և աս է պատճառը որ ուրիշ ազգերն ալ ասոր
Անմահ գունդ կ'ըսեն։

---

1 Ո՞ր մարդիկը աւելի պատուաւոր էին Պարսից
մէջ։
2 Մեռելնին ի՞նչ կ'ընէին։
3 Ի՞նչ անուանի գունդ ունէին։

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

# ՊԱՐԹԵՒԱՑ



Արշակ Ա Պարթեւ. — Արշակ Բ. — Արշական. — Արշէզ. — Արշաւիր. — Տարդատ. — Արտաշէս, Կարէն, Սուրէն, Կոշմ. — Պահլաւ. — Շէննակ ու Արդան. — Հրահատ. — Խոսրով. — Դարեհ Վոլոգէս. — Մանէճ պօրաձոր. — Սմբատ Բագրատունի. — Պերոզ Ա Վոլոգէս. — Արտաւան. — Արտաշիր Սասանեան։

1 Մեծին Աղեքսանդրի մահուընէն ետքը (324) անոր զօրավարները իշխեցին Պարսկաստանի վրայ։ Անոնցմէ մէկը Սելեւկոս Նիկանոր՝ Ասորւոց թագաւորութիւնը հաստատեց, ու



1 Աղեքսանդրի մահուընէն ետքը ո՞վ տիրեց Պարսկաստանի։

Պարսկաստանը Ասորւոց երկրին հետ միացուց (312)։ Անտիոքոս Թէոսի ատենը Պարթեւաց * իշխանը Արշակ ապստամբեցաւ Սելեւկացւոցմէ, անոնց Ագաթոկղ կուսակալը բռնեց սպաննեց, եւ ինքը գնաց Քուշաստան Բահլ քաղաքը՝ Պարթեւաց, Պարսից, Մարաց վրայ թագաւորեց, ու Արշակունեաց թագաւորութիւնը հաստատեց (246)։

1 Արշակ օրէ օր թշնամեացը վրայ նոր նոր

---

1 Արշակ ինչպէս սկսաւ իր թագաւորութիւնը։

* Պարթեւաց ազգին ծագմանը վրայ այլ եւ այլ կարծիքներ կան. շատերը, ինչպէս նաեւ Խորենացին, կ'ըսեն թէ Աբրահամու Քետուրա կնոջը զաւկըներէն սերած են։ Եգիպտացիք. անոնցմէ առնելով ուրիշներն ալ կ'ըսեն թէ Սեսոստր երբոր Պարսկաստանը նուաճեց, տասնըհինգ հազար Սկիւթացի գերիներէն զատ փարա հոն բնակեցուց, եւ անոնց անունը Պարսիկները Պարթեւ դրին, որ օտարական կամ պանդուխտ ըսել է. անոնցմէ էր Արշակ։

Պարթեւաց ու Սասանեանց վրայ հիմնական օտարազգի պատմագիրները խիստ քիչ տեղեկութիւն կը տնեն, դրամներն ալ շատ անորոշ է։ Բայց որովհետեւ մեր ազգային պատմութիւնը աղէկ հասկընալու համար շատ հարկաւոր է մեզի գիտնալ գէթ ան թագաւորաց գործերն որ անմիջապէս մեզի հետ վերաբերութիւն ունեցեր են, ասոր համար թէ Պարթեւաց եւ թէ Սասանեանց թագաւորներուն մէջէն զանոնք միայն, եւ կամ որոնց վրայ որ արտաքին պատմութեանց մէջ յիշատակի արժանի բան մը կայ՝ հոս կը դնենք։

յաղթութիւններ ընելով, ինքզինքը և իր ազգը այնչափ փառաւորեց որ ինչուան անոր անունովը բոլոր տիրած ազգերն ալ Պարթեւ ըսուեցան, ինչպէս Պարսիկք և Մարք, որոնց մէջ մտան ետքը նաև Հայերը։ Անտիոքոս Թէոսի որդին Սելեւկոս Կալլինիկոս՝ շատ զօրքով վրան եկաւ որ զինքը նուաճէ, տիրած երկիրները ձեռքէն առնէ. դէմ ելաւ Արշակ, զօրքը ջարդեց, Բաբելոնի տիրեց, զինքն ալ բռնեց. բայց վեհանձնութեամբ իրեն բան մը չըրաւ, նորէն իր աթոռը դարձուց Անտիոք։

1 Ան միջոցին Եգիպտոսի Հելիուպօլիս քաղաքին մէջ երեւցեր էր Փիւնիկ ըսուած հրաշալի թռչունը, որ մէկալ թռչունները անոր գեղեցկութեանը վրայ զարմանալով չորս կողմը առած անդադար ճռուողելով կը թռչտին եղեր։ Քուրմերը մեկնութիւն կուտան թէ անիկայ կը նշանակէ Արշակայ թագաւորութիւնը, Արշակունեաց ծագումը, ու ամենուն վրայ տիրապետելը։

2 Արշակ ստակ մը կոխել տուաւ, մէկ երեսը իր դէմքը փորագրած, մէկալ երեսն ալ ամբողջ ինքը աթոռ նստած՝ և ձեռքը երկընցուցած որ աստուածուհւոյ մը ձեռքէ արմաւենիի ճիւղ մը առնէ, չորս կողմն ալ փորուած էր յունարէն.

---

1 Արշակայ աշխարհակալութեան ատենները ի՞նչ դիպուած կը պատմուի։
2 Ի՞նչ ստակ կոխեց Արշակ։

Արքայից արքայի Արշակայ, բարերարի, երեւելւոյ յունասէրի. յամսեանն Գորպիէի (որ Մակեդոնացւոց ամիս մըն էր): Իրմէ ետքն ալ Արշակունի Թագաւորաց շատը այն տառը գործածեցին, որ ինչուան հիմա կը գտնուի Թանգարաններու մէջ: Իսկ դրուածքին յունարէն ըլլալուն պատճառն այն է որ այն ատենները յունարէնը շատ ծաղկած ըլլալով ամէն արքունեաց լեզու դարձեր էր:

1 Մեծն Անտիոքոս Հայոց Արտաւազդ իշխանը հնազանդեցընելէն ետքը, զօրքը Արշակայ վրայ դարձուց, ու հինգ տարի անօգուտ տեղը պատերազմելէն ետև, սախպուեցաւ Վրկանի աշխարհը ու բոլոր Պարթեւաստանը տալով հետը հաշտութիւն ընել ու ետ դառնալ (210): Քաջութեամբ երեսունըմէկ տարի թագաւորեց Արշակ ու իրեն յաջորդ թողուց Արտաշէս որդին (215), որ ինքն ալ քսանըմէկ տարի թագաւորեց և տեղը նստաւ որդին Արշակ Բ, որ նաև Միհրդատ Ա կ'ըսուի (189):

2 Աս Արշակը մեծամեծ քաջութեանցն ու աշխարհակալութեանցը համար Մեծ ըսուեցաւ, և երկրի ու ծովու Թագաւոր. տէրութեան սահմանը Եփրատ գետէն ինչուան Ինդոս գետը տարածեց, և ինքզինքը աստուած անուանեց, ինչպէս որ յայտնի է դրամներուն վրայ գրուած

---

1 Ի՞նչպէս մեռաւ Արշակ, և իրեն ո՞վ յաջորդեց:
2 Արշակ Բ ինչո՞ւ Մեծ ըսուեցաւ, և ի՞նչ քաջութիւններ ըրաւ:

Բելոս բառէն որ աստուած ըսել է։ Ասորւոց Թագաւորը Դեմետր Նիկատոր շատ զօրքով Բաբելոնի վրայ եկաւ. դէմն ելաւ Արշակ, զօրքը կոտրեց, զինքը գերի բռնեց, շղթայակապ Պարթեւաստան բերաւ, ու ետքը Հռոգոգոնէ աղջիկը հետը կարգեց։ Նիկատորին եղբայրը Անտիոքոս Սիդիացին երբոր լսեց թէ Արշակ Ասորիքը թողեր՝ Պարթեւաստան գնացեր է, շատ զօրքով եկաւ որ նորէն երկրին տիրէ. հասաւ Արշակ, զօրքը ջարդեց, զինքն ալ պատերազմի մէջ սպաննեց։

1 Թագաւորութեանը քառասներորդ տարին անհամար զօրքով մտաւ Արշակ Հայաստան, փախուց Արտաւազդը, թագաւոր դրաւ Հայոց վրայ իր Վաղարշակ եղբայրը, ու ինքը դարձաւ Պարթեւաստան։ Անանկ փառաւոր յաղթութիւններով յիսունուիրեք տարի թագաւորեց Արշակ, և իրեն յաջորդեց որդին Արշական (136)։

2 Ասոր թագաւորութեանը քանըչորրորդ տարին՝ մեր Արտաշէս Ա. թագաւորը նախագահութիւնը Պարսից ձեռքէն առաւ. վասն զի ինչուան ան ատենը Պարսից թագաւորները առաջին կը սեպուէին, իսկ մերինները երկրորդ։ Երեսուն տարի թագաւորեց Արշական (96)։

---

1 Հայաստանի ինչպէս տիրեց։

2 Արշականայ ատեն ինչ ըրաւ մեր Արտաշէս Ա. թագաւորը։

Հռովմայեցւոց վրայ յարձակեցաւ Արշամ, անոնց ձեռքէն Ասորին Հայաստանը առաւ, Արշաւիրն ալ Վերին Հայաստանը Մարաց ձեռքէն առաւ, ու հոն իր տեղը Արտաշիաս իշխանը փոխարքայ դրաւ։

1 Բայց Արշաւիր երբոր Մարաստանէն ու Վերին Հայաստանէն Հռովմայեցիքը վռնտեց՝ սկսաւ Պարսից հետ խստութեամբ վարուիլ. նախարարները ձանձրացան, զինքը ձգեցին, ու տեղը Տարգաս անունով մէկը դրին։ Վերին Հայաստանէն և ուրիշ տեղերէն զօրք ժողվեց Արշաւիր, վրան պատերազմի ելաւ։ Երկար ատեն քշեց պատերազմը, բայց երկու կողմն ալ անպարտելի մնացին։ Ան ատենը երկուքն ալ Օգոստոս Հոկտաւիանոս կայսեր դիմեցին և օգնութիւն խնդրեցին, բայց անիկայ մէկուն ալ չօգնեց, թողուց որ մէկզմէկ ջարդելով՝ երկուքն ալ տկարանան։

2 Վերջապէս զօրացաւ Արշաւիր, հալածեց Տարգասը. և երբոր Հոկտաւիանոս Ասորիք եկաւ՝ անոր դեսպան խրկեց, որ սիրով ընդունեցաւ դեսպանները։ Երբոր Տարգաս Հոկտաւիանոսի ապաւինեցաւ, չօգնեց անոր, առաւ ձեռքէն Արշաւիրի որդին՝ որ անիկայ յափշտակեր էր, ու Հռովմ պատանդ խաւրեց։ Արշաւիր եր-

1 Տարգասայ հետ ի՞նչ պատերազմ ունեցաւ։
2 Հոկտաւիանոս ինչուան ետքը չխառնուեցա՞ւ Արշաւիրի ու Տարգասայ կռիւներուն մէջ։

բոր լսեց՝ նորէն դեսպան խրկեց Հոկտաւիանոսին, աղաչելով որ Տարգասը իր ձեռքը մատնէ, ու իր որդին ետ դարձընէ։ Բայց Հոկտաւիանոս երկուքն ալ գոհ ընել ուզելով Տարգասը ազատ թողուց, Արշաւրին ալ որդին ուրիշ Պարսից հետ խրկեց, ուզելով ինքն ալ որչափ որ անցած պատերազմներու մէջ Պարսիկք Հռովմայեցւոցմէ դրօշակ կամ գերի բռներ են՝ ետ դարձընէ. և Արշաւիր կամքը կատարեց։

1 Երբոր Հայերը Հռովմայեցւոց խրկած Երուազը չուզելով Տիգրան Կրտսերը իրենց թագաւոր դրին, ու Հռովմայեցւոց հետ սկսան պատերազմիլ. Արշաւիր ալ ամենայն կերպով անոնց օգնեց, ու Հռովմայեցւոց բարեկամութենէն ետ կեցաւ։ Բայց երբոր լսեց թէ Օգոստոս կայսրը Գայիոսը անհամար զօրքով վրան կը խրկէ, դեսպան խրկեց Հռովմ ինքզինքը արդարացուց, ու խնդրեց որ նորէն բարեկամութեան դաշինք դնեն. յանձն առաւ Օգոստոս, բայց ուզեց որ Հայաստանը թողու Արշաւիր։

2 Քառասունըվեց տարի թագաւորելէն ետքը երբոր մեռաւ Արշաւիր (14), իրեք մանչ զաւակ թողուց, Արտաշէս, Կարէն, Սուրէն, և Կոշմ անունով աղջիկ մը։ Ասոնց մէջ սաստիկ խռովութիւն ընկաւ, վասն զի Արտաշէս կ՚ուզէր որ

---

1 Արշաւիր ի՞նչ առթով աւրուեցաւ ու նորէն հաշտուեցաւ Հռովմայեցւոց հետ։

2 Արշաւրին ո՞վ յաջորդեց։

ինքը որդւոց որդի ժառանգէ, մէկալ եղբայր-
ները չէին ուզեր։ Պարսից նախարարները ա-
սոնցմէ մէկն ալ չուզեցին, ու դեսպան խրկեցին
Հռոմ և խնդրեցին որ Արշակունին չորս հարճոր-
դւոյը մէկը որ Հռոմ պատանդ էին, իրենց
վրայ թագաւորեցընեն։ Կայսրն ալ Վոնոնը թա-
գաւորեցուց ու Պարսկաստան խրկեց. բայց մէ-
կալ արքայորդիքը զինքը իբրև խորթ վռընտե-
ցին, և թագաւորութիւնը իրարու ձեռքէն յա-
փշտակելով՝ երկիրը տակնուվրայ կ՚ընէին։

1 Մեր Աբգար թագաւորը շատ զօրքով վրա-
նին գնաց, զանոնք հաշտեցուց, Արտաշէսը թա-
գաւորութեան մէջ հաստատեց, և մէջերնին
կարգ դրաւ որ Արտաշէս որդւոց որդի թագա-
ւորէ, և իր եղբայրները՝ որ իրենց Բահլ քաղա-
քին անունովը Պահլաւք կ՚ըսուէին. Պարսից
նախարարներուն մէջ ամենէն պատուաւորներն
ըլլան իբրև թագաւորազունք. և երբոր Արտա-
շէսի ցեղը լմըննայ՝ անոնցմէ մէկը նստի թագա-
ւոր (25)։ Ասոնցմէ իրեք անուանի Պահլաւունի
ցեղ ելաւ, որ կ՚ըսուէին Կարենի Պահլաւ, Սու-
րենի Պահլաւ և Ասպահապետի Պահլաւ՝ Կոչմին
էրկանը իշխանութեան անունէն։ Մեր սուրբ
Գրիգոր Լուսաւորիչն ալ Սուրենեան Պահլաւի
ցեղէն էր։

---

1 Արշակունի յաջորդացը կռիւն ինչպէս դադրե-
ցաւ։

1 Երբոր Զենոն մեռաւ, որ Հռովմայեցիք Վերին Հայոց վրայ թագաւոր դրեր էին. Արտաշէս ուզեց նորէն իր Արշէզ որդին անոնց վրայ թագաւորեցընել, որ առաջ մէյմը Հայերը զինքը վռընտեր էին. երբոր նորէն չուզեցին՝ մեծ որդին Արշակը թագաւորեցուց։ Տեսնելով թէ կայսրը ձայն չհաներ՝ սկսաւ տէրութիւնն ալ ընդարձակել, ու Կապադովկիան առաւ (35)։

2 Բայց երբոր իրեններուն ալ սկսաւ նեղութիւն տալ, Շեննակ և Աբգոն ներքինները քանի մը նախարարներու հետ միաբանելով, ծածուկ դեսպան խրկեցին Տիբեր կայսեր՝ խնդրելով որ իրենց վրայ Արշաւրին Հրահատ հարճորդին որ Հռովմ պատանդ էր՝ թագաւոր դնէ. Անիկայ երբոր գայ՝ մենք Արտաշէսը կը հալածենք կ'ըսէին։

3 Տիբեր աս բանիս վրայ ուրախացած՝ մէկէն թագաւոր կը դնէ Հրահատը ու Պարսկաստան կը խրկէ, պատուիրելով որ ինչուան հոն չհասնի՝ մարդու բան չըսէ։ Ինչպէս կ'ըլլայ՝ Արտաշէս դաւաճանութիւնը կ'իմանայ. Աբգոնը կերակրի կը հրաւիրէ, ու թոյն կը խմցընէ զինքը կը մեռցընէ. Շեննակն ալ անանկ կը բռնէ՝ որ բան մը չկրնար իրեն ընել։

---

1 Արտաշէս ո՞վ ուզեց Վերին Հայոց վրայ թագաւորեցընել։
2 Արտաշէսին դէմ ի՞նչ դաւաճանութիւն եղաւ։
3 Տիբեր կայսրը կրցա՞ւ Հրահատը թագաւորեցընել։

1 Հրահատ Ասորեստան հասած ատենը կը հիւանդանայ կը մեռնի։ Տիբեր տեղը անոր Տարդատ ազգականը կը խաւրէ. և որպէս զի կարենայ դիւրաւ թագաւորել, Վրաց Փարսման թագաւորին, Միհրդատ քաջ եղբօրն ալ գրեց որ զօրքով Վերին Հայոց վրայ երթան ու զանոնք նեղեն, որպէս զի Արտաշէս հոն իր որդւոյն օգնութեան երթալու ատենը՝ Տարդատ դիւրաւ կարենայ Պարսկաստան մտնել թագաւորել։

2 Միհրդատ իր եղբօրմէն օգնութիւն առած, նախ Արշակայ ծառաները կաշառելով զանիկայ սպաննել տուաւ, ետքն ալ գնաց Արտաշատ քաղաքը առաւ ու հոն թագաւորեց։ Արտաշէս երբոր որդւոյն մահը ու Միհրդատայ թագաւորելը լսեց՝ սաստիկ բարկացաւ, շուտ մը շատ զօրք ժողվեց. Արշէզ պզտիկ որդւոյն տուաւ որ երթայ եղբօրը մահուան վրէժը Միհրդատէն առնու։ Բայց Միհրդատ մէկէն եղբօրը Փարսմանին գրեց, անիկայ ալ Ալանքն ու Սարմատացիքը հետը առած անոր օգնութեան եկաւ. իսկ Հայոց կէսը Պարսից կողմը անցան՝ կէսն ալ Վրաց։

3 Հոն Փարսման և Միհրդատ ճակատեցան Արշէզի դէմ, ու շատ մարդ ջարդեցին զօրքէն. Փարսման անձամբ յարձակեցաւ Արշէզին վրայ, զարկաւ թուրը, սաղաւարտը ծակեց վիրաւո֊

---

1 Հրահատայ տեղը ո՞վ ընտրուեցաւ։
2 Միհրդատ ի՞նչպէս սպաննեց Արշակը։
3 Արշէզ ի՞նչպէս վիրաւորուեցաւ։

րեց, ուղեց մէյմըն ալ իջեցընել, չկրցաւ, փա-խաւ ձին, և Արշեզին Թիկնապահները վազեցին վրայ հասան. բայց Պարթեւ զօրաց մէջ ձայն ել-լելով թէ արքայորդին Արշէզ մեռաւ, ամէնքը չփոթեցան փախան. և Փարսման զօրանալով նո-րէն Հայոց վրայ Միհրդատ եղբայրը Թագաւոր դրաւ (36):

1 Յաջորդ տարին նորէն զօրք ժողվեց Արտա-շէս, եկաւ որ Վիրին Հայքը նուաճէ. բայց Մի-հրդատ Հայոց ու Վրաց օգնութեամբը զինքը փախուց: Երբոր նորէն կը պատրաստուէր Ար-տաշէս պատերազմի, գուժկան հասաւ իրեն թէ Վիտելլիոս Հռովմայեցին մեծ պատրաստու-թեամբ վրան կուգայ, միտքը փոխեց. բայց Ճեննակ առաջուց Վիտելլիոսէն խրատուելով սկսաւ Պարթեւ նախարարները Արտաշէսին դէմ գրգռել, ինչուան որ Թագաւորը մինակ անօգ-նական մնալով թողուց Վրկանայ կողմերը փա-խաւ:

2 Երբոր լսեց Վիտելլիոս, Տարադատը հետն առած շատ զօրքով եկաւ զինքը Պարթևաստան Թագաւորեցուց: Ճեննակին հետ մէկտեղ շատ նախարարներ Տարադատին առջեն ելան՝ առին զինքը Տիզոն տարին, ու հոն մեծ հանդիսով Թագաւորեցուցին:

---

1 Արտաշէս ինչպէս փախաւ:
2 Տարադատ ինչպէս Թագաւորեց:

Բելոս բառէն որ աստուած ըսել է։ Ասորւոց Թագաւորը Դեմետր Նիկատոր շատ զօրքով Բաբելոնի վրայ եկաւ. դէմն ելաւ Արշակ, զօրքը կոտրեց, զինքը գերի բռնեց, շղթայակապ Պարթեւաստան բերաւ, ու ետքը Հռոդոգոնէ աղջիկը հետը կարգեց։ Նիկատորին եղբայրը Անտիոքոս Սիդիացին երբոր լսեց թէ Արշակ Ասորիքը թողեր՝ Պարթեւաստան գնացեր է, շատ զօրքով եկաւ որ նորէն երկրին տիրէ. հասաւ Արշակ, զօրքը ջարդեց, զինքն ալ պատերազմի մէջ սպաննեց։

1 Թագաւորութեանը քառասներորդ տարին անհամար զօրքով մտաւ Արշակ Հայաստան, փախուց Արտաւազդը, Թագաւոր դրաւ Հայոց վրայ իր Վաղարշակ եղբայրը, ու ինքը դարձաւ Պարթեւաստան։ Անանկ փառաւոր յաղթութիւններով յիսունուիրեք տարի Թագաւորեց Արշակ, և իրեն յաջորդեց որդին Արշական (136)։

2 Ասոր Թագաւորութեանը քսանըչորրորդ տարին՝ մեր Արտաշէս Ա Թագաւորը նախագահութիւնը Պարսից ձեռքէն առաւ. վասն զի ինչուան ան ատենը Պարսից Թագաւորները առաջին կը սեպուէին, իսկ մերինները երկրորդ։ Երեսուն տարի Թագաւորեց Արշական (96)։

---

1 Հայաստանի ինչպէս տիրեց։
2 Արշականայ ատեն ինչ ըրաւ մեր Արտաշէս Ա Թագաւորը։

1 Արշէզ Արշականայ թոռը երբոր թագաւորեց (64), մեր Տիգրան թագաւորին որդին Տիրան հօրմէն ապստամբեցաւ, գնաց Պարսկաստան իրմէ օգնութիւն ուզեց. Արշէզ նախագահութիւնը ձեռք ձգելու մաքով Տիրանին հետ մէկտեղ եկաւ Այրարատայ նահանգը, Արտաշատ քաղաքը պաշարեց. բայց չկարենալով առնել՝ ետ դարձաւ: Երբոր մեր Տիգրան թագաւորը տեսաւ որ մինակ պիտի չկարենայ Հռովմայեցւոց դէմ դնել, նախագահութիւնը տալով՝ Արշէզին հետ ուզեց հաշտուիլ: Ուրախութեամբ յանձն առաւ Արշէզ. Տիգրանին աղջիկը իր Բակուր որդւոյն կին առաւ, և շատ զօրքով զինքը Հայաստան խրկեց, որ մեր Բարզափրան քաջ զօրապետին հետ մեծամեծ քաջութիւններ ըրին, ու շատ տեղերու տիրեցին: Երեսունուերկու տարի թագաւորեց Արշէզ, և իրեն յաջորդեց որդին Արշաւիր, որ և Հրահատ կամ Փրատատ կ'ըսուի (32):

2 Արշաւիր՝ Տիգրանայ եղբօրորդւոյն Արշամին զօրք խրկեց օգնութեան, ետքն ալ երբոր անիկայ յաղթուած փախաւ Պարսկաստան՝ սիրով ընդունեցաւ զինքը, և նոր զօրք ժողվելով՝ մէկտեղ գնացին ապստամբ Մարքը նուաճեցին, որ իրենց դէմ Հռովմայեցւոց կ'օգնէին. ետքը

---

1 Արշէզ ի՞նչ արշաւանք ըրաւ դէպ'ի Հայաստան:
2 Արշաւիր ի՞նչպէս վարուեցաւ մեր Արշամ թագաւորին հետ:

Հռովմայեցւոց վրայ յարձակեցաւ Արշամ, անոնց ձեռքէն Ստորին Հայաստանը առաւ, Արշաւիրն ալ Վերին Հայաստանը Մարաց ձեռքէն առաւ, ու հոն իր տեղը Արտաշէս իշխանը փոխարքայ դրաւ։

1 Բայց Արշաւիր երբոր Մարաստանէն ու Վերին Հայաստանէն Հռովմայեցիքը վռնտեց՝ սկսաւ Պարսից հետ խստութեամբ վարուիլ. նախարարները ձանձրացան, զինքը ձգեցին, ու տեղը Տարգամ անունով մէկը դրին։ Վերին Հայաստանէն և ուրիշ տեղերէն զօրք ժողվեց Արշաւիր, վրան պատերազմի ելաւ։ Երկար ատեն քշեց պատերազմը, բայց երկու կողմն ալ անպարտելի մնացին։ Ան ատենը երկուքն ալ Օգոստոս Հոկտաւիանոս կայսեր դիմեցին և օգնութիւն խնդրեցին, բայց անիկայ մէկուն ալ չօգնեց, թողուց որ մէկզմէկ ջարդելով՝ երկուքն ալ տկարանան։

2 Վերջապէս զօրացաւ Արշաւիր, հալածեց Տարգամը. և երբոր Հոկտաւիանոս Ասորիք եկաւ՝ անոր դեսպան խրկեց, որ սիրով ընդունեցաւ դեսպանները։ Երբոր Տարգամ Հոկտաւիանոսի ապաւինեցաւ, չօգնեց անոր, առաւ ձեռքէն Արշաւիրի որդին՝ որ անիկայ յափշտակեր էր, ու Հռովմ պատանդ խաւրեց։ Արշաւիր եր-

---

1 Տարգամայ հետ ի՞նչ պատերազմ ունեցաւ։
2 Հոկտաւիանոս ինչուան ետքը չխառնուեցա՞ւ Արշաւիրի ու Տարգամայ կռիւներուն մէջ։

քոր լսեց՝ նորէն դեսպան խրկեց Հոկտաւիանոսին, աղաչելով որ Տարդատը իր ձեռքը մատնէ, ու իր որդին ետ դարձընէ։ Բայց Հոկտաւիանոս երկուքն ալ գոհ ընել ուզելով՝ Տարդատը ազատ թողուց, Արշաւրին ալ որդին ուրիշ Պարսից հետ խրկեց, ուզելով ինքն ալ որչափ որ անցած պատերազմներու մէջ Պարսիկք Հռովմայեցւոցմէ գրօշակ կամ գերի բռներ են՝ ետ դարձընէ. և Արշաւիր կամքը կատարեց։

1 Երբոր Հայերը Հռովմայեցւոց խրկած Երուազը չուզելով՝ Տիգրան Կրտսերը իրենց Թագաւոր դրին, ու Հռովմայեցւոց հետ սկսան պատերազմիլ. Արշաւիր ալ ամենայն կերպով անոնց օգնեց, ու Հռովմայեցւոց բարեկամութենէն ետ կեցաւ։ Բայց երբոր լսեց թէ Օգոստոս կայսրը Գայիոսը անհամար զօրքով վրան կը խրկէ, դեսպան խրկեց Հռովմ ինքզինքը արդարացուց, ու խնդրեց որ նորէն բարեկամութեան դաշինք դնեն. յանձն առաւ Օգոստոս, բայց ուզեց որ Հայաստանը թողու Արշաւիր։

2 Քառասունըվեց տարի թագաւորելէն ետքը երբոր մեռաւ Արշաւիր (14), իրեք մանչ զաւակ թողուց, Արտաշէս, Կարէն, Սուրէն, և Կոշմ անունով աղջիկ մը։ Ասոնց մէջ սաստիկ խռովութիւն ընկաւ, վասն զի Արտաշէս կ՚ուզէր որ

---

1 Արշաւիր ինչ առթով աւրուեցաւ ու նորէն հաշտուեցաւ Հռովմայեցւոց հետ։

2 Արշաւրին ով յաջորդեց։

ինքը որդւոց որդի ժառանգէ, մէկալ եղբայրները չէին ուզեր։ Պարսից նախարարները ալ նոյնպէս մէկն ալ չուզեցին, ու դեսպան խրկեցին Հռոմ և խնդրեցին որ Արշաւրին չորս հարճորդւոյը մէկը որ Հռոմ պատանդ էին, իրենց վրայ թագաւորեցընեն։ Կայսրն ալ Վոնոնը թագաւորեցուց ու Պարսկաստան խրկեց. բայց մէկալ արքայորդիքը զինքը իբրև խորթ վռնտեցին, և թագաւորութիւնը իրարու ձեռքէն յափշտակելով՝ երկիրը տակնուվրայ կ՚ընէին։

1 Մեր Աբգար թագաւորը շատ զօրքով վրանին գնաց, զանոնք հաշտեցուց, Արտաշէսը թագաւորութեան մէջ հաստատեց, և մէջերնին կարգ դրաւ որ Արտաշէս որդւոց որդի թագաւորէ, և իր եղբայրները՝ որ իրենց Բահլ քաղաքին անունովը Պահլաւք կ՚ըսուէին. Պարսից նախարարներուն մէջ ամենէն պատուաւորներն ըլլան իբրև թագաւորազունք. և երբոր Արտաշէսի ցեղը լմըննայ՝ անոնցմէ մէկը նստի թագաւոր (25)։ Ասոնցմէ իրեք անուանի Պահլաւունի ցեղ ելաւ, որ կ՚ըսուէին Կարենի Պահլաւ, Սուրենի Պահլաւ և Ասպահապետի Պահլաւ՝ Կոշմին էրկանը իշխանութեան անունէն։ Մեր սուրբ Գրիգոր Լուսաւորիչն ալ Սուրենեան Պահլաւի ցեղէն էր։

---

1 Արշաւրի յաջորդացը կռւին ինչպէս դադրեցաւ։

1 Երբոր Զենոն մեռաւ, որ Հռովմայեցիք Վերին Հայոց վրայ թագաւոր դրեր էին. Արտաշէս ուզեց նորէն իր Արշէզ որդին անոնց վրայ թագաւորեցընել, որ առաջ մէյմը Հայերը զինքը վռընտեր էին. երբոր նորէն չուզեցին՝ մեծ որդին Արշակը թագաւորեցուց: Տեսնելով թէ կայսրը ձայն չհաներ՝ սկսաւ տէրութիւնն ալ ընդարձակել, ու Կապադովկիան առաւ (35):

2 Բայց երբոր իրեններուն ալ սկսաւ նեղութիւն տալ, Շեննակ և Աբգոն ներքինիները քանի մը նախարարներու հետ միաբանելով, ծածուկ դեսպան խրկեցին Տիբեր կայսեր՝ խնդրելով որ իրենց վրայ Արշաւրին Հրահատ հարճորդին որ Հռովմ պատանդ էր՝ թագաւոր դնէ. Անիկայ երբոր գայ՝ մենք Արտաշէսը կը հալածենք կ'ըսէին:

3 Տիբեր աս բանիս վրայ ուրախացած՝ մէկէն թագաւոր կը դնէ Հրահատը ու Պարսկաստան կը խրկէ, պատուիրելով որ ինչուան հոն չհասնի՝ մարդու բան չըսէ: Ինչպէս կ'ըլլայ՝ Արտաշէս դաւաճանութիւնը կ'իմանայ, Աբգոնը կերակրի կը հրաւիրէ, ու թոյն կը խմցընէ զինքը կը մեռցընէ. Շեննակն ալ անանկ կը բռնէ՝ որ բան մը չկրնար իրեն ընել:

---

1 Արտաշէս ո՞վ ուզեց Վերին Հայոց վրայ թագաւորեցընել:
2 Արտաշէսին դէմ ի՞նչ դաւաճանութիւն եղաւ:
3 Տիբեր կայսրը կրցա՞ւ Հրահատը թագաւորեցընել:

1 Հրահատ Աստրեստան հասած ատենը կը հիւանդանայ կը մեռնի։ Տիբեր տեղը անոր Տարագատ ազգականը կը խաւրէ. և որպէս զի կարենայ դիւրաւ Թագաւորել, Վրաց Փարսման Թագաւորին, Միհրդատ քաջ եղբօրն ալ գրեց որ զօրքով Վերին Հայոց վրայ երթան ու զանոնք նեղեն, որպէս զի Արտաշէս հոն իր որդւոյն օգնութեան երթալու ատենը՝ Տարագատ դիւրաւ կարենայ Պարսկաստան մտնել Թագաւորել։

2 Միհրդատ իր եղբօրմէն օգնութիւն առած, նախ Արշակայ ծառաները կաշառելով զանիկայ սպաննել տուաւ, ետքն ալ գնաց Արտաշատ քաղաքը առաւ ու հոն Թագաւորեց։ Արտաշէս երբոր որդւոյն մահը ու Միհրդատայ Թագաւորելը լսեց՝ սաստիկ բարկացաւ, շուտ մը շատ զօրք ժողվեց. Արշէզ պզտիկ որդւոյն տուաւ որ երթայ եղբօրը մահուան վրէժը Միհրդատէն առնու։ Բայց Միհրդատ մէկէն եղբօրը Փարսմանին գրեց, անիկայ ալ Ալանքն ու Սարմատացիքը հետը առած անոր օգնութեան եկաւ. իսկ Հայոց կէսը Պարսից կողմը անցան՝ կէսն ալ Վրաց։

3 Հոն Փարսման և Միհրդատ ճակատեցան Արշէզի դէմ, ու շատ մարդ ջարդեցին զօրքէն. Փարսման անձամբ յարձակեցաւ Արշէզին վրայ, զարկաւ Թուրը, սաղաւարտը ծակեց վիրաւո-

---

1 Հրահատայ տեղը ո՞վ ընտրուեցաւ։
2 Միհրդատ ի՞նչպէս սպաննեց Արշակը։
3 Արշէզ ի՞նչպէս վիրաւորուեցաւ։

րեց, ուզեց մէյմըն ալ իշխեցընել, չկրցաւ, փախաւ ձին, և Արշէզին Թիկնապահները վազեցին վրայ հասան. բայց Պարսից զօրաց մէջ ձայն ելլելով թէ արքայորդին Արշէզ մեռաւ, ամէնքը չփոթեցան փախան. և Փարսման զօրանալով՝ նորէն Հայոց վրայ Միհրդատ եղբայրը թագաւոր դրաւ (36):

1 Յաջորդ տարին նորէն զօրք ժողվեց Արտաշէս, եկաւ որ Վերին Հայքը նուաճէ. բայց Միհըրդատ Հայոց ու Վրաց օգնութեամբը զինքը փախուց: Երբոր նորէն կը պատրաստուէր Արտաշէս պատերազմի, գուժկան հասաւ իրեն թէ Վիտելլիոս Հռովմայեցին մեծ պատրաստութեամբ վրադ կուգայ, միտքը փոխեց. բայց Ճեննակ առաջուց Վիտելլիոսէն խրատուելով՝ սկսաւ Պարսից նախարարները Արտաշեսին դէմ գրգռել, ինչուան որ թագաւորը մինակ անօգնական մնալով՝ թողուց Վրկանայ կողմերը փախաւ:

2 Երբոր լսեց Վիտելլիոս, Տարադատը հետն առած շատ զօրքով եկաւ զինքը Պարսկաստան թագաւորեցուց: Ճեննակին հետ մէկտեղ շատ նախարարներ Տարադատին առջևն ելան՝ առին զինքը Տիզբոն տարին, ու հոն մեծ հանդիսով թագաւորեցուցին:

---

1 Արտաշէս ի՞նչպէս փախաւ:
2 Տարադատ ի՞նչպէս թագաւորեց:

1 Բայց քիչ ատենէն նախարարաց մեծ մասը հետը աւրուեցան, նորէն Արտաշէսը կանչեցին. ան ալ յանկարծակի Սկիւթացւոց օգնութեամբը եկաւ. Տարագատ Ասորւոց երկիրը Հռովմայեցւոց քովը փախաւ, և Արտաշէս եկաւ նորէն աթոռը նստաւ։

2 Երկրորդ տարին լսելով որ Կալիգուղա կայսր նստեր է, հետը հաշտութիւն ըրաւ ու շատ ընծաներով մէկտեղ Դարեհ որդին ալ Հռովմ պատանդ խաւրեց։ Բայց քանի մը տարիէն ետքը Խուտարդ անունով մէկը՝ որ իր եղբայրը կը կարծուի, զինքը սպաննեց ու տեղը անցաւ (45)։

3 Խուտարդին յաջորդեց Արտաշէսի որդին Դարեհ Վողոգէս (51), որ շատ զօրքով Վերին Հայոց վրայ յարձակեցաւ, Հռոմիզդ թագաւորին հետ հալածեց անկէ Վրացիքը, շատ քաղաքներու տիրեց, և Արտաշատայ մէջ Տիրիթ եղբայրը թագաւորեցուց. և Արշակունի ըլլալուն համար՝ սիրով ընդունեցան զինքը Հայք։

4 Երբոր եղբօրմէն լսեց Դարեհ թէ Հռովմայեցիք Հայոց վրայ Տիգրան անունով մէկը թագաւոր դրեր են, կը սպասէր որ Վրկանաց հետ պատերազմը լմնցընէ որ անոնց վրայ ալ

---

1 Արտաշէս երկրորդ անգամ ի՞նչպէս թագաւորեց։
2 Ի՞նչպէս մեռաւ։
3 Խուտարդին ո՞վ յաջորդեց։
4 Մանեճի արշաւանքը ի՞նչպէս եղաւ։

երթայ․ մէյմըն ալ դուժկան եկաւ թէ Տիգրան ելեր Պարսից երկիրները կ'աւրըշտըկէ, բարկացաւ Դարեհ, մէկէն զօրք ժողվեց, Մանէճ զօրավարին տուաւ որ երթայ Վերին Հայոց վրայ, Տիգրանը հալածէ, ու նորէն իր եղբայրը Տիրիթը թագաւորեցընէ, խօսք տալով որ ինքն ալ Վրկանաց պատերազմը լմընցընելուն պէս օգնութեան հասնի։

Մանէճ, Պարսից և Ասորեստանեայց զօրքովը յանկարծ Ապարան քաղաքին վրայ հասնելով, Տիգրանը մէջը պաշարեց և առնելու կը ջանար․ ան միջոցին Դարեհ ալ Միջագետք հասնելով, Հռովմայեցւոց զօրավարը Կորբուղոն՝ անոր մարդ խրկեց թէ Ինչո՞ւ համար Հռովմայեցւոց հետ ըրած բարեկամութիւնդ աւրեցիր․ առած քաղաքներդ ետ տուր կ'ըսէր, ապա թէ ոչ՝ մենք ալ քու սահմանդ կը մտնենք։ Դարեհ ուզելով կայսեր ձեռքովը բանը լմընցընել, Ներոնին դեսպան խրկեց, ու Մանէճին հրաման տուաւ որ առած քաղաքները թողու՝ ետ քաշուի։

1 Դեսպաններն Հռովմ չհասած, Ներոն կայսրը Բետոս Կեննեննիոս անուանի մարդը Տիգրանին օգնութիւն խրկեր էր։ Դեսպաններն ալ երբոր հասան, չհաւանեցաւ անոնց Ներոն, ու Բետոսին գրեց որ շուտ պատերազմով Պարսիկ-

---

1 Ներոն կայսրը ի՞նչ պատերազմ ունեցաւ Դարեհի հետ։

ները Հայաստանէն հալածէ։ Բետոս սկսաւ մեծամեծ ապստամբներով զօրքը առաջ քշել. բայց անգլիէն Դարեհ Պարսից ու Հայոց զօրքովը հասաւ, զարնուեցաւ, մեծ ջարդ տուաւ Հռովմայեցւոց, բոլոր տիրած տեղերնին ձեռքերնէն առաւ, ու զամէնքը ցրուեց փախուց. Բետոս ալ վախէն ամօթէն գնաց անտառիկ տեղ մը քաշուեցաւ, ու Կորբուղոնին գրեց որ բանը գէշ է՝ շուտ իրեն օգնութեան հասնի (66)։

1 Եկաւ Կորբուղոն, տեսաւ որ բռնութեամբ Պարթեւաց յաղթելը դժուար է, ուզեց խաղաղութեամբ լմնցընել. Դարեհը յորդորեց որ թշնամութիւնը թողու, կայսեր խրկէ եղբայրը որ զինքը թագաւորեցընէ։ Համոզուեցաւ Դարեհ, Կորբուղոնին խօսքը կատարեց, և Ներոն Տիրիթը Վերին Հայոց թագաւոր պսակեց։

2 Երբոր Երուանդ Սանատրկոյ որդիքը մեռցընել տուաւ, Սմբատ Բագրատունին անոր Արտաշէս պզտիկ որդին ազատելով Պարսկաստան փախուց՝ Դարեհին քովը։ Դարեհ առաջուց Սմբատայ անունն ու քաջութիւնները լսած ըլլալով՝ շատ պատուով զինքը ընդունեցաւ ու իրեն զօրավար ըրաւ, Արտաշէս արքայորդին ալ իր որդւոցը հետ գրաւ (69)։ Եւ թէպէտ շատ

---

1 Դարեհ ինչպէս հաշտուեցաւ Հռովմայեցւոց հետ։

2 Դարեհ մեր Երուանդ թագաւորին ատենը Հայոց հետ ինչ գործ ունեցաւ։

ջանաց Երուանդ մեծամեծ ընծաներով Դարե-
հին միտքը դարձընել որ Արտաշէսը իր ձեռքը
տայ, յանձն չառաւ Դարեհ։

1 Սմբատ Դարեհին պատերազմներուն մէջ
շատ քաջութիւններ ընելով և անուշ բնաւո-
րութեամբը թէ անոր և թէ բոլոր Պարսից նա-
խարարներուն սիրելի եղեր էր։ Ասոնք գիտնա-
լով որ Սմբատ կը փափաքի Արտաշէսը թագա-
ւորեցընել, օր մը Դարեհին առջևը անոր քա-
ջութիւններն ու հաւատարմութիւնը գովելով
ըսին թէ Պէտք է որ փոխարէն մը ընես անոր։
Հարցուց Դարեհ թէ Արդեօք ինչ կրնամ ընել
որ անոր հաճոյական ըլլայ. անոնք ալ ըսին թէ
Կը բաղձայ ինքը որ քու ազգականդ Սանատրը-
կոյ որդին Արտաշէսը՝ Հայոց թագաւոր դնես։
Հաւանեցաւ Դարեհ, ու մէկէն Սմբատը կան-
չեց, զօրք տուաւ որ երթայ Երուանդը ձգէ,
Արտաշէսը տեղը թագաւորեցընէ (88)։

2 Քառասուն տարի քաջութեամբ թագաւո-
րելէն ետքը մեռաւ Դարեհ Վողոգէս (91)։

3 Ասոր յաջորդներուն մէջ երրորդը Պերոզ Ա
Վողոգէս (129), երբոր լսեց թէ Անտոնինոս
Պիոս կայսրը Հայոց Տիրան թագաւորին թագ
խրկեր է՝ շատ դժուարը եկաւ, ու սկսաւ պա-
տերազմի պատրաստութիւն տեսնել որ երթայ
Տիրանը թագաւորութենէն ձգէ, բայց կայսրէն
սպառնալիք գալով միտքը փոխեց (140)։

---

1 Սմբատ Բագրատունին ինչպէս օգնեց։
2 Դարեհ քանի՞ տարի թագաւորեց։
3 Պերոզ Վողոգէսին վրայ ինչ կը պատմուի։

1 Երբոր Մարկոս Աւրելիոս կայսր նստաւ, Պերոզ շատ զօրքով Ասորւոց երկիրը գնաց. անկէ Հռովմայեցիքը վանեց ու շատ յաղթութիւններ ըրաւ, ետքը Հայոց հետ միանալով Կեսարիոյ վրայ դիմելու կը սպառնար (161):

2 Վախցաւ Կապադովկիոյ իշխանը Սեւերիանոս. պատգամ հարցուց, և Կրեսոսին պէս պատգամախօսէն խաբուած՝ սիրտ ըրաւ, պատերազմի ելաւ: Վրան Խոսրով զօրավարը խրկեց Պերոզ, որ Պարսից ու Հայոց զօրքովը գնաց, թրէ անցուց Հռովմայեցւոց լեգէոնները, և Սեւերիանոսն ալ նետով զարկաւ սպաննեց: Իսկ Վողոգէս Տիզբոն դարձաւ, ու ըրած յաղթութեանցը համար Պերոզ այսինքն Յաղթող ըսուեցաւ, և երեսունըչորս տարի թագաւորելէն ետքը մեռաւ (162):

3 Պերոզին թոռը Արտաւան (212), Միջագետք գնաց, Անտոնինոս Կարակալլա կայսեր հետ պատերազմեցաւ, և անոր զօրացը մեծ ջարդ տալով՝ զինքն ալ փախուց (217): Այս յաղթութեանը վրայ շատ ուրախացաւ Արտաւան, կրկին թագով պսակուեցաւ, և ամբարտաւանութեամբ՝ Բոլոր աշխարհիս պիտի տիրեմ կ'ըսէր.

---

1 Մարկոս Աւրելիոս կայսեր ատենը ի՞նչ արշաւանք ըրաւ Պերոզ:

2 Կապադովկիոյ մէջ ի՞նչ յաղթութիւն ըրաւ իր զօրավարը:

3 Արտաւան ի՞նչպէս ըրաւ թագաւորութիւնը:

աստեղագիտութեան ալ շատ հմուտ ըլլալով՝ անդադար մոլորակաց ընթացքը կը դիտէր, հըմայութիւններ կ՚ընէր, և Թագաւորութեանը մեծնալը կը գուշակէր։ Բայց հակառակը եղաւ. վասն զի խրոխտ ու ամբարտաւան կերպին համար նախարարները հետը աղէկ չէին, մանաւանդ Արտաշիր Սասանեան Պարսիկ նախարարը, որ առթի կը սպասէր որ ապստամբի ու ինքը անոր տեղը Թագաւորէ։

1 Օր մը պալատին մէջ տիկնոջը հետ նստած ատենը սկսաւ Թագաւորը աստղերը դիտելով հմայութիւն ընել, ու դարձաւ անոր՝ Թէ որ այսօր մէկը իր տիրոջը դէմ ապստամբելու ըլլայ՝ բանը կը յաջողի, անոր համար ես ալ Թագաւորութեանս վրայ շատ կը վախնամ, ըսաւ (225)։ Թագաւորին ան խօսքերը Թագուհւոյն Արտադուխտ նաժիշտը հոն գտնուելով լսելուն պէս՝ մէկէն կ՚երթայ Արտաշիրին կ՚իմացընէ, որ իր ազգականն ալ է եղեր. կը յորդորէ զինքն որ շուտով ապստամբութեան խորհուրդը կատարէ։ Կ՚ուրախանայ Արտաշիր, և երդմամբ կը խոստանայ՝ որ զինքը Պարսից Թագուհի ընէ, կ՚երթայ Պարսից և Ասորեստանեայց նախարարներուն սիրտը կը վաստըկի, և անոնց հաւանութեամբը Արտաւանին երկու պատգամաւոր կը խրկէ որ ինքիրմէ հրաժարի Թագաւորութե-

---

1 Արտաշիր Սասանեան ինչ կերպով գլուխ վերուց Արտաւանայ դէմ։

նէն. Վասն զի, կ՚ըսէր, ասկէ վերջը չեն ուզեր Պարսիկք իրենց վրայ Պարթեւ Թագաւոր՝ հապա Պարսիկ կ՚ուզեն։

1 Թագաւորը բարկանալով պատգամաւորները աղջէն կը վռնտէ, և ստուգելով թէ իրաւցընէ Արտաշիր ուրիշ նախարարներուն հետ միաբանած՝ Թագաւորութիւնը ձեռքէն առնելու ետեւէ է, մէկէն զօրք կը ժողվէ, անոր վրայ կ՚երթայ. Արտաշիր ալ նախարարներուն հետ զօրք կը ժողվէ դէմը կ՚ելլէ ու տարի մը ամբողջ կը պատերազմին։ Առջի պատերազմներէն երկու կողմն ալ անպարտելի ելան, բայց ետքը երբոր Արտաւանայ քովը միացած քանի մը նախարարներն ալ Արտաշիրին կողմը անցան, տկարացաւ Արտաւան, և դէմ չկարենալով դնել՝ ձգեց փախաւ։ Գնաց նորէն զօրք ժողվեց եկաւ, ու երբոր երկու կողմն ալ ճակատած պատրաստ կեցեր էին, յանկարծ Արտաշիր եկաւ մէջ տեղը կեցաւ, ու սկսաւ Արտաւանին կանչել. Ինչո՞ւ համար փուճ տեղը զօրքդ կը ջարդես, միտքդ բեր մէյմը թէ պալատիդ մէջ Թագաւորութեանդ կործանմանը համար կնկանդ ի՞նչ ըսիր։ Զարմացաւ Արտաւան, Ի՞նչ դաւն է եղեր կինը ըսաւ, և առանց գիտնալու թէ նաժիշտն էր իմացընողը՝ հրամայեց որ մէկէն Թագուհին ըսպաննեն։ Եւ անանկ դաւնացեալ հոգւով յու-

---

1 Արտաւանայ և Արտաշրի պատերազմներն ի՞նչպէս եղան։

սանձատարար յարձըկեցաւ Արտաշրին վրայ, զարկաւ նիզակը որ զինքը սպաննէ, փախաւ ձեռքէն Արտաշիր, և շուտ մը ետ դարձաւ, վը-րան վազեց ու զարկաւ զինքը սպաննեց Թագա-ւորութեանը հնգետասաներորդ տարին։

1 Ան տենը միաբանեցան նախարարները ու Արտաշիր Սասանայ որդին Պարսից Թագաւոր դրին։ Եւ աս կերպով Պարթեւազանց Արշակու-նեաց Թագաւորութիւնը 475 տարի քշելէն ետ-քը վերջացաւ, ու տեղը Պարսից երկրորդ ինք-նակալութիւնը՝ այսինքն Սասանեանց ցեղին Թագաւորութիւնը սկսաւ (226), որուն վրայ Միջին դարու պատմութեան մէջ կը խօսինք։

---

Ի՞նչպէս Թագաւորեց Արտաշիր։



# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

# ԿԱՐՔԵԴՈՆԱՑՒՈՑ



## ԳԼՈՒԽ Ա.

Դիրքը. — Բիրսա. — Կարքեդոն. — Կարքեդոնացւոց կառավարութեան ձեւը. — Վաճառականութիւն. — Ծովային զօրութիւն. — Առաջին դաշնադրութիւն Հռովմայեցւոց հետ. — Դաշնադրութիւն Քսերքսեսի հետ. — Կոտորած Կարքեդոնացւոց 'ի Սիկիլիա. — Յաղթութիւն Աննիբաղայ 'ի Սիկիլիա. — Իմիլկոնի և Դիոնեսիոսի դաշնադրութիւնը։

1 Կարքեդոնի հիմնադիրը կը սեպուի Եղիսա Տիւրացի Թագուհին, որ Դիդէ ալ կ'ըսուի։ Ասիկայ Տիւրոսի Պիգմալիոն Թագաւորին քոյրն էր. Պիգմալիոն արծաթասէր ու անգութ իշխանը, Դիդէի Ակերբաս անունով երկանը հարստութիւնը ձեռք ձգելու համար զանիկայ սպան-



1 Կարքեդոնի հիմնադիրը ո՞վ է։

նել տուաւ. բայց Դիդէ երկանը բոլոր գանձերն առաւ փախաւ։

1 Դիդէ Միջերկրականի ծովէն Ափրիկէի ծովեզերքը ելաւ, և հոն տեղի բնակիչքը շատ սիրով ընդունեցան զինքը (888)։ Որպէս զի Ափրիկեցիք վրան կասկածի չերթան, Դիդէ իրեն բնակութեան համար այնչափ երկիր միայն ուզեց գնել՝ որչափ տեղ որ կը բռնէ եզան մը կաշին. անոնք ալ երբոր սիրով հրամանը տուին, առաւ կաշին բարակ բարակ կտրեց փոկ ըրաւ, ու իրարու միացընելով՝ անոնց երկայնութեանը հաւասար ընդարձակ երկիր մը առաւ. հոն բերդաքաղաք մը շինեց և անունը դրաւ Բիւրսա, որ եզան կաշի կը նշանակէ։

2 Ետքը քաղաք մըն ալ շինեց Դիդէ և անունը դրաւ Կարքեդոն, որ Նոր քաղաք ըսել է եղեր. քովի ազգերուն ալ խոստացաւ որ տարուէ տարի անոնց տուրք տայ։ Գետուղիոյ թագաւորը Յարբաս ուզեց Դիդէն իրեն կին առնել, սպառնալով որ եթէ չուզէ՝ վրան պատերազմի ելլէ։ Դիդէ երկանը մեռնելէն ետքը ուխտ ըրեր էր որ այրի մնայ. ուստի կարգուելէն առաջ՝ մեռած երկանը հոգւոյն հետ հաշտուելու համար զոհ ընել ձևացընելով, մեծ փայտակոյտ մը պատրաստել տուաւ, ու հադուստին տակը թուր մը պահած՝ ելաւ շարուած

---

1 Դիդէ ի՞նչ հնարքով տեղ առաւ Ափրիկէի մէջ։
2 Ի՞նչ քաղաք շինեց։ — Ի՞նչպէս մեռաւ։

փայտերուն վրայ, ու զարկաւ ինքզինքը սպաննեց։

1 Դիդէ Թագուհւոյն մահուընէն վերջը Կարքեդոն ուրիշ թագաւոր չունեցաւ, հասարակապետութիւն մը եղաւ, ու ինչուան եօթը նոյն կառավարութեանը մէջ մնաց։ Իշխանութիւնը երկու դատաւորաց, ծերակուտին ու ժողովրդեան ձեռքն էր։

2 Երկու դատաւորները Սոֆէտ կ'ըսուէին. աս սոփետները տարուէ տարի կ'ընտրուէին։ Իրենք ծերակոյտը ժողովքի կը կանչէին. ժողովին մէջ վեր կը նստէին, ժողովին նիւթը անոնց կ'առաջարկէին, ու անոնց հաւանութիւնը կ'առնէին։ Մեծ դատաստաններու ու պատերազմներու որոշմունքն ալ իրենք կ'ընէին. շատ անգամ իրենք նաև զօրաց հրամանատար կ'ըլլային։ Երբոր տարին կը լմըննար, դատաւոր կ'ըլլային. որով իշխանութիւն կ'ունենային դատաստան կարելու, ուրիշներուն հաւանութեամբը նոր օրէնքներ առաջարկելու, ու հարկապահանջներէն հաշիւ ուզելու։

3 Ծերակուտին մէջի մարդիկը բոլոր տարիքնին առած ազնուական, հարուստ, խելացի և արդիւնաւոր անձինք էին։ Ի՛նչ նամակ որ գրէին զօրավարները՝ ծերակուտին առջևը կը բացուէր.

---

1 Դիդէէն ետքը Կարքեդոնի ո՞վ իշխեց։
2 Դատաւորաց իշխանութիւնը ի՞նչ էր։
3 Ծերակուտին պաշտօնն ի՞նչ էր։

հոն դարձեալ օտար ազգաց դեսպանները կ'ընդունէին ու պատերազմի կամ խաղաղութեան վճիռ կուտային։ Որ բանի վրայ որ ամէնքը կը միաբանէին ու բոլոր քուէները այս կ'ելլէին՝ մէկէն անիկայ կը վճռէին, իսկ թէ որ տարաձայնութիւն ըլլար մէջերնին՝ ան ատենը ժողովուրդը կ'որոշէր։

1 Զօրավարաց իշխանասիրութեանը սանձ դնելու համար, որ երկար ատեն զօրավարութիւն ընելով ու հրամայելու վարժելով օր մը յանկարծ չթագաւորեն ու հասարակապետութիւնը չկործանեն, հարիւր չորս խորհրդականով ատեան մը դրեր էին։ Ասոնց պարտքն էր զօրավարներէն հաշիւ պահանջել, ու անոնց բռնած կերպը քննել։ Իշխանութիւննին առջի բերան մշտնջենաւոր էր, բայց երբոր սկսան ան իշխանութիւնը դէշի գործածել, Մեծն Աննիբաղ իր դատաւորութեան ատենը տարեկան ըրաւ։

2 Շատ չանցաւ՝ Կարքեդոնացիք իրենց մեծ եղած ազգաց տարեկան տուրքտալը դադրեցուցին։ Մաւրիտանացւոց ու Նումիդացւոց վրայ յարձըկեցան, յաղթեցին ու իշխանութիւննին Ափրիկէի մէջ տարածեցին։ Ան ատենը սկսան Կարքեդոնացիք ու Կիւրենացիք իրենց տէրութեան սահմաններուն վրայ կռիւ ընել։ Կիւրե-

---

1 Դերագոյն ատեանը ի՞նչ բանի համար էր։
2 Կարքեդոնացիք ի՞նչ կերպով սկսան աշխարհակալութիւն ընել։

նէ՝ Միջերկրական ծովուն արեւելեան եզերքը մեծ ու հարուստ քաղաք մըն էր, ու Կարքեդոնէն ընդարձակ աւազուտ դաշտով մը միայն կը զատուէր՝ առանց գետի ու լեռան։ Կարքեդոնացիք ու Կիւրենացիք կը նայէին որ կռիւը լմըննալիք չունի, օր ու ժամ կ'որոշեն որ նոյն ատենը երկու քաղաքէն երկերկու երիտասարդ ելլեն, և ո՛ւր որ իրարու հանդիպին՝ ան ըլլայ երկու տէրութեանց սահմանը։ Կարքեդոնացիք երկու եղբարքը կը խրկեն, որ կ'երթան կը յաղթեն։ իսկ Կիւրենացւոց խրկածները տեսնելով որ շատ ետև մնացին, ու քաղաք որ դառնան խաղք պիտի ըլլան՝ Կարքեդոնացւոց վրայ զըրպարտութիւն ըրին թէ որոշուած ատենէն առաջ Կարքեդոնէն ելեր են, և դաշինքը չուզեցին պահել՝ ինչուան որ երկու եղբարք ալ Փիլենք կ'ըսուէին, ճշմարտութիւնը ցուցընելու համար իրարու հանդիպած տեղերնին ողջ ողջ չթաղուին։ Քաջընթաց Փիլենք հայրենեաց սիրոյն համար յանձն առին աս դառն վկայութիւնը. և իրենց երախտագէտ մայրը՝ այսինքն Կարքեդոն քաղաքը, իր կորիճ որդւոցը գերեզմանին վրայ երկու բագին կանգնել կուտայ, որ կ'ըսուին Բագինք Փիլենեանց։

1 Առջի յաջողութիւններէ սիրտ առած Կարքեդոնացիք շատ նաւատորմիղներ պատրաստեցին, Սարդինիայի ու Բաղէարեան կղզիներուն *

---

1 Ծովու վրայ ի՞նչպէս զօրացան Կարքեդոնացիք։

* Հիմայ Մայորքա, Մինորքա կ'ըսուին։

տիրեցին, Սպանիա անցան, ու հոն շատ աշխարհակալութիւններ ըրին, ետքը Սիկիլիոյ մեծ մասն ալ նուաճեցին։

1 Կարքեդոնացիք Հռովմայեցւոց պէս պատերազմասէր ազգ չէին որ բոլորովին երկրակալութեանց ետեւէ ըլլան. իրենց գլխաւոր գործքը վաճառականութիւն էր որով այնչափ հարստացան ու զօրացան, և կարծես թէ վաճառականութիւննին աւելի ծաղկեցընելու և տարածելու համար միայն կը պատերազմէին, ու հեռաւոր աշխարհներու կը տիրէին։

2 Եգիպտոսէն կտաւ, պապիր, ցորեն, նաւու առագաստներ ու պարաններ կ'առնէին. Կարմիր ծովուն եզերքէն համեմք, խնկեղէն, օծանելիք, ոսկի, մարգարիտ և ազնիւ գոհարներ. Տիւրոսէն ու Փիւնիկէէն ծիրանի և որդան կարմիր, ոսկեհուռ ազնիւ դիպակներ, մեծագին կարասիք, ծաղկենկար օթոցներ, գորգեր. վերջապէս ամէն տեղ կ'երթային՝ կենաց ու պերճութեան համար հարկաւոր եղած բաները կը փնտռէին կը գնէին։

3 Կարքեդոնացւոց զինուորական զօրութիւնը իրենց դաշնակից թագաւորներն ու հարկատու ազգերն էին, որոնցմէ ստակի հետ զօրք ալ կ'առնէին, նմանապէս վարձուոր զինուորները

---

1 Վաճառականութեան մէջ ի՞նչպէս էին։
2 Դրսէն ի՞նչ վաճառք կը բերէին։
3 Իրենց զինուորական ուժը ի՞նչ էր։

և իրենց քաղաքակիցները։ Ամէն երկրէ կ'ընտրէին Կարքեդոնացիք անուանի գնդերը կ'առնէին. Նումիդիայէն թեթև, խրոխտ, արընթաց և անխոնջ այրուձի կ'առնէին, և իրենց բանակին գլխաւոր զօրութիւնը ան էր. Բաղէարեան կղզիներէն անուանի վարպետ պարսաւորներ. Սպանիայէն անպարտելի հետևակ զօրք. Լիգուրիայէն ու Գաղղիայէն զօրաւոր ու պատերազմափորձ գունդեր, և Յունաստանէն ամէն պատերազմական գործողութեանց յարմար զինուորներ։

Ասանկով Կարքեդոնացիք քիչ ատենի մէջ առանց իրենց գեղերն ու քաղաքները անմարդի ձգելու, արուեստաւորաց ձեռագործը խափանելու, վաճառականութիւնը դադրեցընելու, կամ իրենց ծովային զօրքը տկարացընելու՝ մեծամեծ բանակներ կը հանէին։ Օտարի արիւնովը որ ստըկով գնած էին՝ աշխարհներ ու տէրութիւններ կը նուաճէին, և օտար ազգերը իրենց մեծութեանը գործիք կ'ընէին. իրենք ստակ միայն կուտային, ան ստակն ալ դարձեալ իրենց վաճառականութեամբը օտար ազգերէն կը ժողվէին։ Յանկարծ պատերազմի մէջ զօրքը թէ որ ջարդուէր՝ Կարքեդոնի մարմինը միայն, սանկ ըսենք, թեթև մը կը վիրաւորուէր, և հոգին միշտ կենդանի կը մնար։

1 Ստոյգ չգիտցուիր թէ երբ սկսած են Կար-

---

1 Ե՞րբ սկսան Կարքեդոնացիք Ափրիկէէն դուրս աշխարհակալութիւններ ընել։

քեդոնացիք իրենց աշխարհակալութիւնները։ Առջի դաշնադրութիւնը որ Հռովմայեցիք հետերնին ըրին, ու զանոնք Ափրիկէի, Սարդինիոյ ու Սիկիլիոյ մէկ մասին տէր ճանչցան՝ Հռովմայ հասարակապետութեան հաստատուած տարին էր (510)։

1 Քսերքսէս Կարքեդոնացւոց օգնութիւնը հարկաւոր ճանչցաւ Յունաստանի տիրելու համար։ Կարքեդոնացիք ալ որ բոլոր Սիկիլեոյ տիրելու կը փափաքէին, խօսք տուին որ անոր Յունաստանի վրայ վազած ատենը՝ իրենք ալ Սիկիլիա ու Իտալիա բնակող Յունաց վրայ յարձըկին։

2 Իրեք տարուան պատրաստութենէն ետքը Ամիլկար զօրավարը ահաւոր բանակով Սիկիլիա եկաւ, ու գնաց Հիմերա քաղաքը պաշարեց։ Քաղաքացիք նեղն ընկած՝ Սիրակուսայի Գեղոն թագաւորին դիմեցին։ Մէկէն ճամբայ ելաւ Գեղոն, և իմանալով թէ Ամիլկար դաշնակից զօրաց կը սպասէ՝ հնարքով մը Ամիլկարին ուզածին չափ զօրք ինքը խրկեց, որ անոր ուզած ատենը հասաւ Կարքեդոնացւոց բանակը, անոնք ալ խաբուելով ընդունեցան։ Ան ատենը ասոնք յանկարծ Ամիլկարին վրայ վազեցին, զինքը սպաննեցին ու նաւերն ալ այրեցին. Գեղոն անոնց շփոթած ատենը, մէկ մասը ջարդեց, շատն

---

1 Քսերքսեսի հետ ինչ դաշնակցութիւն ըրին։
2 Ի՞նչպէս անցան Սիկիլիա։

ալ գերի ըլլալ։ Կարքեդոնացիք նեղն ընկած՝ ուզեցին հաշտութիւն ընել. յանձն առաւ Գելոն. պատերազմին ծախքը անոնց վճարել տուաւ, և անոնց ստըկովը երկու մեհեան շինեց որոնց մէջ պիտի պահուէին դաշնագիրները։ Աս Կարքեդոնացւոց կոտորածը Թերմոպիլէի պատերազմին օրը հանդիպած է (480)։

1 Սեգեստացւոց աղաչանքովը (որ Սերակուսացւոց և Սելինացւոց հետ կը պատերազմէին) Կարքեդոնացիք Ամիլկարին թոռը Աննիբաղը * շատ զօրքով անոնց օգնութիւն խրկեցին (412)։ Եկաւ Աննիբաղ Սելինան քաղաքը պաշարեց առաւ, ու բոլոր մէջի հարստութիւնը կողոպտեց. անկէ անցաւ Հիմերա քաղաքը պաշարեց, առաւ ու կործանեց, իրեք հազար գերի բռնեց, ու իր պապը սպաննած տեղերնին սաստիկ տանջանքներով ան գերիները մեռուց։ Երբոր Աննիբաղ Կարքեդոն դարձաւ անբաւ աւարներով, բոլոր քաղաքը առջևն ելած ուրախութեամբ զինքը ներս բերին։

2 Ան յաղթութեամբը սիրտ առին Կարքեդոնացիք, և ուզեցին բոլոր Սիկիլիոյ տիրել. Նո-

---

1 Սելինան քաղաքին ինչպէս տիրեցին Կարքեդոնացիք։

2 Ակրագանդ քաղաքը ինչպէս առին։

* Պէտք չէ շփոթել ասիկայ Մեծն Աննիբաղէն հետ, որուն վրայ վերջը պիտի խօսինք։

րէն զօրք ժողվեցին, Աննիբաղայ յանձնեցին. և ծերութեանը պատճառաւ Իմիլկոնը իրեն օգնական տուին: Եկաւ Աննիբաղ, ութը ամիս պաշարեց բազմահարուստ և ամրապարիսպ Ակրագանդ քաղաքը. Ակրագանդացիք սովուն չըդիմանալով, ծերերն ու հիւանդները թողուցին՝ մօտ Գեղա քաղաքը քաշուեցան. իսկ Կարքեդոնացիք մտան Ակրագանդ, զամէնքը ջարդեցին, ու շատ ոսկի, արծաթ, ազնիւ ամաններ ու արձաններ կողոպտեցին տարին. անոնց մէջ էր նաև Փաղերեան հռչակաւոր ցուլը՝ որ Ակրագանդին առջի բռնաւորներէն մէկը շինել տուեր էր: Սիրակուսայի բռնաւորը Դիոնեսիոս Երէց Գեղային օգնութիւն հասաւ. բայց անօգուտ. անոր ալ տիրեցին Կարքեդոնացիք, և Իմիլկոն դադրեցուց պատերազմը. դաշինք դրաւ Դիոնեսիոսին հետ որ Կարքեդոնացիք Սիկիլիոյ մէջ առջի երկիրներէն զատ ունենան նաև Սելինոն, Ակրագանդ, Հիմերա և Գեղա քաղքըները, և դարձաւ Կարքեդոն:

[1] Դիոնեսիոս Կարքեդոնացւոց դէմ դնելու բաւական պատրաստութիւն տեսնելէն ետքը, իր միտքը ժողովրդեան հասկըցուց որ կ'ուզէ Սիկիլիան Կարքեդոնացւոց ձեռքէն ազատել, և օր մը յանկարծ հրաման տուաւ որ Սիկիլիայի մէջ գտնուող բոլոր Կարքեդոնացիքը թրէ ան-

---

1 Դիոնեսիոս Երէց ինչպէս յաղթեց Կարքեդոնացւոց:

ցընեն։ Վրայ հասաւ Իմիլկոն զօրավարը, բոլոր Դիոնեսիոսին տիրած երկիրները նորէն ետ առաւ, ինքը Սիրակուսա փախուց, մեհեանները կողոպտեց, և գերեզմանները կործանեց, մանաւանդ Գեղոնինը՝ որ կը կարծուէր թէ անոր դպչիլ չըլլար։ Բայց այս յաջողութիւնը քիչ տևեց. վասն զի Իմիլկոնին զօրացը մէջ սաստիկ ժանտախտ ընկաւ, Դիոնեսիոսն ալ առեն գըտաւ, վրանին վազեց, մեծ ջարդ տուաւ. նաւերուն ալ կէսին կրակ տուաւ, և կէսը կողոպտեց։ Իմիլկոն յուսահատած՝ խնդրեց Դիոնեսիոսէն որ գոնէ զիրենք ազատ թողու որ երկիրնին երթան. ան ալ Կարքեդոնի բնակչացը միայն հրաման տուաւ. անոնց հետ մէկտեղ գիշերանց փախաւ Իմիլկոն Կարքեդոն, և չուզելով իր քաջ պատերազմակցացը մեռնելէն վերջը ամօթալից կեանք մը անցընել, մտաւ իր տունը, դուռը հանեց քովէն բոլոր բարեկամները, կինն ու որդիքը, և զարկաւ ինքզինքը սպաննեց։ Այսպիսի գործողութիւնը հին հեթանոսները քաջութիւն կը սեպէին, բայց մենք իրաւամբ վատ յուսահատութիւն կը համարինք. վասն զի ճըշմարիտ քաջասրտութիւնը ան է՝ որ դիմանայ մարդ ամէն դժբաղդութեանց արիութեամբ համբերել։

1 Կարքեդոնացւոց դժբաղդութենէն առիթ

---

1 Ափրիկեցիք ինչո՞ւ համար Կարքեդոնացւոց վրայ ելան։

առնելով դանդաղեցան Ափրիկեցիք թէ ինչո՞ւ համար անոնք իրենց հայրենակիցքը Սիկիլիա թշնամւոյն ձեռքը թողուցին, և բազմութեամբ Կարքեդոնի վրայ դիմեցին, բայց աղէկ որ վրանին գլխաւոր մը ու զինուորական կրթութիւն չունենալով, մէկալ կողմէն ալ բերած ուտելիքնին հատնելով՝ շուտով ցրուեցան։

1 Երբոր Դիոնեսիոս Երիցուն տեղը որդին Դիոնեսիոս Բռնաւորը նստաւ, Կարքեդոնացիք ան ատենի խռովութիւնը յարմար ժամանակ սեպելով՝ իրենց Մագոն զօրավարը Սիրակուսացւոց վրայ խրկեցին (348). բայց օգուտ մը չտեսան. վասն զի Սիրակուսացիք Կորնթացւոց մէ օգնութիւն ուզեցին, և Տիմոլէոն զօրավարը եկաւ յաղթեց անոնց։ Մագոն Կարքեդոն հասնելուն պէս դատաստանի կանչուեցաւ, իմացաւ թէ զինքը պիտի կախեն, ինքզինքը սպաննեց. Կարքեդոնացիք ալ մեռած դիակը առին կախեցին։ Ամիլկարն ու Աննիբաղը նորէն խրկեցին Կարքեդոնացիք, անոնց ալ յաղթեց Տիմոլէոն, ու Սիկիլիոյ մէջ տիրած տեղերէն շատը ձեռքերնէն առնելով՝ հաշտութիւն ըրաւ (340)։

2 Քիչ ատեններ ետքը Աննոն՝ Կարքեդոնացւոց անուանի զօրավարներէն մէկը, կ'ուզէր որ հասարակապետութիւնը վերցընէ ու ինքը ամե-

---

1 Դիոնեսիոս Բռնաւորին ատենը ի՞նչ արշաւանք ըրին Կարքեդոնացիք Սիկիլիա։
2 Աննոնի դաւաճանութիւնը ինչպէս եղաւ։

նուն վրայ Թագաւորէ. աս մաքով որոշեց որ բոլոր իշխանները իր աղջկանը հարսնիքին հրաւիրէ, ու ամենուն Թոյն խմցընէ։ Երբոր դաւաճանութիւնը իմացուեցաւ, Աննոն նայեցաւ որ խորամանկութեամբ չկրցածը բռնութեամբ կատարէ. քսան հազար սպառազէն գերի հետը առած՝ գնաց ամուր բերդ մը քաշուեցաւ, ու սկսաւ անկէ Ափրիկեցիքը ոտք հանել. բայց ան ալ չյաջողեցաւ. վասն զի անոնք բռնեցին զինքը կապած Կարքեդոն բերին. սաստիկ ծեծեցին, աչուըները հանեցին, Թեւերն ու ծնկուըները կոտրտեցին, ու խաչ հանեցին։ Իրեն պատճառաւ բոլոր ընտանիքն ալ 'ի մահ դատապարտուեցան. որպէս զի ոչ անոր ապիրատութեան հետեւող մնայ, և ոչ մահուանը վրէժխնդիր (330)։

1 Երբոր Կարքեդոնացիք աս խռովութիւններուն զբաղած էին, Տիւրացիք մեծին Աղեքսանդրի դէմ օգնութիւն ուզեցին Կարքեդոնացուոցմէ (332)։ Շատ ցաւեցան Կարքեդոնացիք իրենց հայրենակցացը Թշուառութեան վրայ, բայց հազիւ իրենք զիրենք պաշտպանելու զօրութիւն ունենալով՝ չկրցան անոնց օգնել. միայն անոնց խրկած կնիկ մարդիկը, տղաքն ու ծերերը շատ սիրով ընդունեցան։

---

1 Տիւրացւոց կրցա՞ն օգնել Կարքեդոնացիք Մեծին Աղեքսանդրի դէմ։

# ԳԼՈՒԽ Բ.

Ագաթոկլ. — Ամիլկար Սիրակուսա գերի կը բռնուի. — Դաւաճանութիւն Բոմիլկարայ. — Յաղթութիւնք Կարքեդոնացւոց յԱփրիկէ. — Դաշնադրութիւն Հռովմայեցւոց և Կարքեդոնացւոց. — Պատերազմ Մամերտացւոց. — Կարքեդոնացիք ծովու վրայ կը յաղթուին. — Յաղթութիւնք Ռեգուղոսի. — Կարքեդոնացիք յաղթուած Հռովմայեցւոց հետ հաշտութիւն կ'ընեն. — Ապստամբութիւն վարձկան զօրաց յԱփրիկէ և 'ի Սարդինիա։

1 Ագաթոկլ Սիկիլիացին, որ Կարքեդոնացւոց ձեռքովը առաջ եկեր ու Սիրակուսայի իշխան եղեր էր, սկսաւ իր բարերարներուն դէմ ելլել։ Կարքեդոնացիք շատ զօրքով Ամիլկարը վրան խրկեցին, որ եկաւ շատ պատերազմներու մէջ անոր յաղթեց, ու Սիրակուսայի մէջ զինքը պաշարեց։ Ագաթոկլ մինակ ճարլով իր անգըթութիւններուն համար, միտքը դրաւ որ Ափրիկէի մէջ պատերազմի Կարքեդոնացւոց հետ. Սիրակուսան եղբօրը յանձնեց, և աս յանդուգն խորհուրդը մարդու մը չյայտնած՝ տասնըհինգ հազար զօրքով ու նաւատորմղով մը ճամբայ ե-

---

1 Ագաթոկլ ինչպէս յաղթեց Կարքեդոնացւոց։

լաւ (310)։ Երբոր հասան ասոնք Աֆրիկէ, ան ատենը յայտնեց զօրացը իր միտքը, քաջալերեց զանոնք ու ըսաւ. Հայրենեաց կորսուած փառքը գտնելու համար եկանք հոս. զեղխ ու վատ մարդկանց հետ է մեր պատերազմը, և Կարքեդոնացւոց հարստութիւնը պիտի ըլլայ մեր յաղթանակը, որով մեր որդիքը երջանիկ պիտի ըլլան։ Այսպիսի խօսքերէն երբոր զօրքը սիրտ առաւ, ան ատենը Ագաթոկղ Նաւատորմիղն այրեց որ յուսահատած պատերազմին կամ յաղթելու կամ մեռնելու մաքով։ Անանկով յանկարծ Կարքեդոնացւոց վրայ յարձակեցաւ, յաղթեց անոնց, շատ քաղաքներու տիրեց, և երկրին մէկ մասը ոտք հանեց։

1 Կարքեդոնացիք համարելով թէ ասիկայ աստուածոց պատիժն է, որովհետև իրենց Կռոնոս*

---

1 Կարքեդոնացիք Ագաթոկղէն յաղթուելով ինչ ըրին։

* Կարքեդոնացիք գլխաւոր երկու աստուած ունէին. մէյմը Ուրանիա, որ Երկնային ըսել է, այսինքն լուսինը. երկրորդը Կռոնոս, որ սուրբ Գրոց մէջ Մողոք կ'ըսուի, որուն առջին մարդ կը զոհէին. մանաւանդ մեծ դժբաղդութեան մը հանդիպած ատեն մեծամեծներն իրենց որդիքը զոհ կ'ընէին, որ անոր բարկութիւնը անցնի։ Շատ անգամ հասարակ ժողովուրդն ալ ծորջանքներէ տղաք ծախու հա-

կուռքին օտարազգի տղաք գներ զոհ ըրեր էին, երկու հարիւր ազնուական տղայ առին անոր զոհեցին, իրեք հարիւր հոգիի չափ ալ որ կերպով մը ան գործողութեան պատճառ եղեր էին՝ իրենք զիրենք կամաւ զոհեցին։ Բայց ան գարշելի ու անգութ աւելորդապաշտութեամբ պատիժները քիչնալու տեղ, ամէն չարիք Կարքեդոնացւոց գլուխը թափեցան։

1 Ամիլկար, որ քովի զօրքէն հինգ հազար հոգի Ափրիկէ խրկեր էր Կարքեդոնի օգնելու, յանկարծական յարձակմամբ Սիրակուսան առնել ուզելով՝ գերի ընկաւ. սաստիկ տանջանքներով մեռուցին զինքը Սիրակուսացիք, ու գլուխը կտրելով՝ Ափրիկէ Ագաթոկլի խրկեցին։

---

1 Ամիլկար ինչպէս մեռաւ։

Մարդ տղաքներն զոհ կ'ընէին. Ու տղայ չունեցողը աղքատի մը տղայ կը գնէր ու կը զոհէր։ Իսկ զոհ ընելու համար երբեմն կրակի մէջ կը ձգէին, երբեմն ալ Կռոնոսի պղնձէ արձանը կարմրցուցած՝ տղաքը մէջը կը դնէին. Ու անոնց կանչըռտըռտելուն ձայնը չլսելու համար՝ Թմբուկներ, ուրիշներ կը զարնէին։ Երբեմն ալ Պարսից ու Բաբելացւոց պէս բոցին վրայէն մէյն կ'անցընէին, բայց անանկով ալ շատ անգամ կը մեռնէին ան խեղճերը։ Թէպէտ ուրիշ շատ կռապաշտ ազգերու մէջ ալ կար աս մարդազոհը, բայց Կարքեդոնացւոց մէջ խիստ հասարակ դարձեր էր. երբեմն հարիւրն ու երկու հարիւրը մէկէն կը զոհէին։

1 Ան միջոցին փառասէր Բոմիլկար զօրավարը ատեն գտնելով՝ ուզեց հայրենեացը վրայ բռնանալ (308)։ Գլուխը շատ մարդ ժողված սկսաւ իրեն դէմ եղողները մեռցընել. բայց վերջապէս ձեռք ընկաւ ու խաչի վրայ մեռաւ։

2 Ագաթոկղ կարծելով թէ ալ ամէն յաջողութիւն իր ձեռքն է, Նորէն Սիկիլիա անցաւ, բայց խաբուեցաւ. վասն զի ան միջոցին Կարքեդոնացիք սկսան անոր տիրած երկիրներն առնուլ, զօրացը յաղթեցին, ու ապստամբած ազգերը նուաճեցին։ Նորէն Ափրիկէ անցաւ Ագաթոկղ, բայց չկարենալով յաղթել, վատութեամբ զօրքն ու որդիքը հոն թողուց ու Սիկիլիա փախաւ։ Զօրքն ալ նեղանալով որ զիրենք թշնամւոյն ձեռքը մատնեց ու փախաւ, անոր որդիքը բռնեցին սպաննեցին ու Կարքեդոնացւոց անձնատուր եղան։

3 Քանի մը տարի ետքը Հռովմայեցիք Եպիրոսի Պիւրոս թագաւորին յաղթութիւններէն աչքերնին վախցած՝ Կարքեդոնացւոց հետ ըրած դաշինքնին նորոգեցին (280)։ Կարքեդոնացիք ալ վախնալով որ Պիւռոս շատ զօրանալով կրնայ Սիկիլիոյ ալ տիրել, Հռովմայեցւոց նաւա-

---

1 Բոմիլկար զօրավարին ապստամբութիւնը ի՞նչ վերջ ունեցաւ։

2 Ագաթոկղի արշաւանքը ի՞նչ վերջ ունեցաւ։

3 Ի՞նչ պատճառաւ Հռովմայեցիք Կարքեդոնացւոց հետ ունեցած դաշինքնին նորոգեցին։

տօրմիղ մը խրկեցին օգնութիւն, բայց անոնք կարօտութիւն չունենալով՝ ետ դարձուցին։

1 Կարքեդոնացւոց կասկածը իրաւ ելաւ։ Վասն զի երբոր գնացին Սիրակուսան պաշարեցին, Սիրակուսացիք Պիւռոսի դիմեցին. որ մէկէն Սիկիլիա անցաւ, ու շուտ մը ետեւէ ետեւ բաց 'ի Լիլիբէոնէն՝ բոլոր Կարքեդոնացւոց տիրած քաղքըները առաւ (273), ու անիկայ ալ պաշարեց. բայց ան միջոցին Իտալիայէն լուր առնելով Պիւռոս՝ որ զինքը հոն կը կանչէին, երթալու ատենը նաւին վրայ կեցած՝ աչքը մէյմը Սիկիլիոյ վրայ դարձուց, ու քովիններուն ըսաւ. Ա՜հ, ինչ գեղեցիկ մրցարաններ կը թողունք հոս Կարքեդոնացւոց ու Հռովմայեցւոց։ Աս գուշակութիւնը շատ չանցաւ կատարուեցաւ։ Հազիւ թէ Սիկիլիայէն հեռացեր էր՝ բոլոր կորսնցուցած տեղերնուն նորէն տիրեցին Կարքեդոնացիք։ Բայց շատ չանցաւ, Հռովմայեցիք որ իրենց դաշնակիցներն էին՝ Պիւռոսէն աւելի ահաւոր թշնամիներ գտնուեցան իրենց։ Ու պատճառն աս եղաւ։

2 Ագաթոկղի վարձկան Կամպանիացի զօրքը յանկարծակի յարձըկելով, Մեսսանա քաղքին տիրեր, բնակիչքը թրէ անցուցեր, ու իրեն մէջը բնակելով՝ Մամերտացիք ըսուեր էին։ Սիրա-

---

1 Պիւռոս ինչպէս անցաւ Սիկիլիա։

2 Ինչ պատճառաւ սկսաւ Հռովմայեցւոց ու Կարքեդոնացւոց պատերազմը։

կուսացիք երբոր եկան զասոնք պաշարեցին, մէջերնին երկպառակութիւն ընկաւ, ոմանք Կարքեդոնացիքը օգնութիւն կանչեցին, ու միջնաբերդը անոնց ձեռքը տուին, ոմանք ալ Հռովմայեցիքը, և անոնք քաղաքը առին: Հռովմայեցիք շուտ մը Կարքեդոնացիքը միջնաբերդէն քըշեցին, քանի մը պատերազմի մէջ ալ յաղթեցին անոնց, ու ձեռքերնէն Ակրագանդ քաղաքը առին:

1 Հռովմայեցիք ուզեցին ծովու վրայ ալ յաղթել Կարքեդոնացւոց. ուստի շուտով նաւատորմիղ մը շինել տուին, ու Դուիլլիոս հիւպատոսին յանձնեցին. ան ալ գնաց յաղթեց Կարքեդոնացւոց, և ութսուն նաւերնին առաւ (260): Երկու տարի ետքը Հռեգուղոս ու Մանլիոս հիւպատոսներն ուրիշ նաւական պատերազմ մըն ալ ըրին, ու դարձեալ Կարքեդոնացւոց յաղթեցին:

2 Աս յաղթութենէն ետքը երկու հիւպատոսները Ափրիկէ գնացին. բայց Մանլիոս ետ կանչուելով Հռեգուղոս միայն հոն մնաց, և ունեցած քիչ զօրքովը շատ պատերազմներ ըրաւ, միշտ յաղթող եղաւ, և երկու հարիւր քաղաքէն աւելի առաւ, ինչուան որ Կարքեդոնացիք

---

1 Ծովու վրայ ինչպէս յաղթուեցան Կարքեդոնացիք:

2 Հռեգուղոս ինչպէս զօրացաւ Կարքեդոնացւոց վրայ:

ստիպուեցան հաշտութիւն խնդրելու։ Բայց չգիտցաւ Հռեգուղոս ըրած յաղթութիւնները պտղաբեր ընել. անանկ ծանր պայմաններ առաջարկեց, որ Կարքեդոնացիք սկսան յուսահատաբար պատերազմի պատրաստութիւն տեսնել։

1 Ան միջոցին Քսանթիպպոս Լակեդեմոնացի անուանի զօրավարը Կարքեդոնացւոց օգնութիւն եկաւ. սիրտ տուաւ անոնց, զօրքերնին կրթեց կարգաւորեց, ու բոլորովին յաղթեց Հռովմայեցւոց (255). Հռեգուղոս, հետն ալ ուրիշ հինգ հարիւր Հռովմայեցիք գերի ընկան։ Կարքեդոնացիք մեռելները կողոպտեցին, ու գերիներին ետեւնին ձգած՝ յաղթանակով Կարքեդոն մտան. Ժողովրդեան ուրախութեանը չափ չկար, արք և կանայք, ծերք և տղաք մեհեանները կըվազէին, ու ձեռքերնին տարածած աստուածոց շնորհակալ կ'ըլլային։

2 Քանի մը տարի Հռեգուղոսը բանտի մէջ պահելէն ետքը, ուզեցին զինքը իրենց դեսպաններուն հետ Հռովմ ղրկել ու խնդրել որ երկու կողմէն գերիներու փոփոխութիւն ընեն. միանգամայն խօսք առին իրմէ որ եթէ ծերակոյտը չհաւանի իրենց առաջարկութեանը, Հռեգուղոս նորէն ետ դառնայ։ Չհաւանեցաւ ծերակոյտը. Հռեգուղոս դարձաւ ետ, ու Կարքեդոնացիք սաստիկ տանջանքներով մեռուցին զինքը։

---

1 Ի՞նչպէս գերի ընկաւ։

2 Հռեգուղոսի վերջն ի՞նչպէս եղաւ։

1 Հռովմայեցիք նոր նաւատորմիղ մը պատրաստեցին, ու Կարքեդոնացւոց հետ զարնուեցան, յաղթեցին. բայց քիչ ատենէն իրենք ալ անոնցմէ երկու անգամ յաղթուեցան: Վերջապէս Լուտատիոս հիւպատոսը Կարքեդոնացւոց նաւատորմիղը բոլորովին ջարդեց, և Հռովմայեցիք ծովու տիրեցին (242): Կարքեդոնացիք անկէ ետքը չկարենալով Սիկիլիա եղած զօրացը օգնել, հրաման տուին անոնց Ամիլկար Բարկաս զօրապետին որ հաշտութիւն ուզէ: Յանձն առին խնդիրքը Հռովմայեցիք, բայց աս պայմանով որ Կարքեդոնացիք Սիկիլիայէն ելլեն, Սիրակուսացւոց կամ անոնց դաշնակցացը հետ պատերազմ չընեն, և Հռովմայեցւոց քսան տարուան մէջ վճարեն երկու հազար երկու հարիւր եւբիական արծաթ տաղանդ (այսինքն տասնըմէկ միլիոն ֆռանք): Ասանկով լմնցաւ առաջին Պունիկեան պատերազմը, որ անընդհատ քսանուերեք տարի քշեց (241):

2 Վրան շատ չանցաւ՝ ուրիշ մեծ վտանգի մը մէջ ընկաւ Կարքեդոն: Ափրիկէ գնացող վարձուոր զօրքերը իրենց թոշակը շուտով չառնելնուն համար ապստամբեցան, ու բոլոր Ափրիկէի քաղաքներն ոտք հանեցին, Ուտիկէ և Իպպոնա քաղաքներն ալ պաշարեցին: Ամէնքը մէկէն եօ-

---

1 Առաջին Պունիկեան պատերազմը ինչպէս լմնցաւ: — Քանի՞ տարի քշեց:

2 Երեքամեան կամ Լիբէական պատերազմը ո՞րն է:

*թանասուն հազարի չափ էին. և իրենց գլուխ դրին Սպենդիոս Կամպանիացի փախստական գերին, և Մաթոս Ափրիկեցին: Ան ատենը ըսկըսաւ Երեքամեան Լիբէական պատերազմը, որ մէջի եղած այնչափ արիւնհեղութեանցը համար Անհաշտելի ըսուեցաւ: Երկու կողմէն ալ ամենեւին գերի պահել չկար. բռնածնին մէկէն կը սպաննէին: Կարքեդոնացիք Գիսկոն զօրավարը խրկեցին որ հաշտութիւն ընէ. ան կատաղի վարձկանները բռնեցին խեղճը, ձեռուըները կտրեցին, ծնկուըները կոտրտեցին, ու ողջ ողջ զինքը գետինը թաղեցին. Նոյնպէս ըրին նաև բոլոր քովի մարդիկը: Վերջապէս երբոր զօրաց սպարապետ ընտրուեցաւ Մեծն Ամիլկար, հնարքով մը վարձկանները քշեց տարաւ նեղ ու դժուար կիրճերու մէջ ձգեց. հոն այնչափ սաստկացաւ սովը մէջերնին որ սկսան մէկզմէկ ուտել: Սպենդիոս ապստամբաց գլխաւորներէն ինը հոգի հետը առած՝ եկաւ Ամիլկարին հետ հաշտուելու: Հաւանիլ ձևացուց Ամիլկար՝ աս պայմանով որ մէջերնէն տասը հոգի իր ձեռքը տան. անոնք հաւանութիւն տուածնուն պէս, Դուք էք ան տասը հոգին՝ ըսաւ, ու բոլորն ալ բռնեց խաչել տուաւ: Ան ատենը անգլուխ մնացած քառասուն հազար զօրքը պաշարեց, ու անանկ ջարդ մը տուաւ՝ որ մէջերնէն մէկ հոգի մը չկըրցաւ ազատիլ: Մաթոսին գունդն ալ բռնուեցաւ, ուր երկոր ատեն ան խեղճերուն ձայնովը ու հեծութիւններովը գազանամարտութեան տեսարաններուն մէջ զուարճացան Կարքեդոնացիք:*

1 Սարդինիոյ մէջ եղած վարձուոր զօրքերը Ափրիկէի վարձկանաց նայելով, որչափ որ Կարքեդոնացի կար իրենց քով սպաննեցին ու կղզւոյն տիրեցին։ Սարդինիոյ նորէն տիրելու համար շատ պատրաստութիւններ ըրին Կարքեդոնացիք։ Իսկ Հռովմայեցիք համարելով թէ ան պատրաստութիւնները իրենց համար են, Կարքեդոնացւոց վրայ պատերազմի ելան։ Կարքեդոնացիք ուզեցին հաշտութիւն ընել. ուստի նոր դաշնագրութիւն մը ըրին (235), որ բոլոր Սարդինիա Հռովմայեցւոց ըլլայ, ու Կարքեդոնացիք պատերազմ չընելու համար վեց միլիոն ֆռանքէն աւելի ստակ տան անոնց։

---

1 Սարդինիա կղզին ի՞նչպէս Հռովմայեցւոց ձեռքն անցաւ։

# ԳԼՈՒԽ Գ.

Ամիլկար Բարկաս. — Աննիբալայ մանկութիւնը. — Ասդրուբաղ. — Սագունտոնի պաշարումը. — Աննիբալայ Իտալիա անցնիլը. — Պատերազմ Զամայ. — Աննիբալայ աքսորն ու մահը. — Կարքեդոնացիք Մասինիսայէն կը յաղթուին. — Կարքեդոնի կործանումը։

1 Երբոր սկսան Հռովմայեցիք Սպանիոյ մէջ աշխարհակալութիւններ ընել, Կարքեդոնացիք վախնալով որ օր մը բոլոր երկրին ալ պիտի տէրապետեն, զօրքով Ամիլկար Բարկասը վրանին խրկեցին (236)։ Ամիլկար հետը մէկտեղ տարաւ իր ինը տարեկան Աննիբաղ որդին, բայց նախ բագնի վրայ երդուընցուց որ մահու չափ ատէ Հռովմայեցիքը, ետքը հետը մէկտեղ տարաւ։

2 Ամիլկար պատերազմին մէջ սպաննուեցաւ (228). տեղը Կարքեդոնացիք Սպանիա խրկեցին անոր Ասդրուբաղ փեսան, որ գնաց հոն Նոր Կարքեդոնը շինեց, որ հիմայ Կարթագինէ կ'ը-

---

1 Ի՞նչ պատճառաւ նորէն պատերազմ բացին Կարքեդոնացիք Հռովմայեցւոց դէմ։

2 Ամիլկարայ ո՞վ յաջորդեց։

սուխ, և Հռովմայեցւոց հետ դաշինք դրաւ որ Կարքեդոնացիք Իբերոս գետէն անդին չանցնին։

1 Աստրուբաղ ութը տարի Սպանիան կառավարելէն ետքը՝ երբոր Գաղղիացի զինուորէ մը նենգութեամբ սպաննուեցաւ, զօրքը անոր յաջորդ դրին Ամիլկար Բարկասին որդին Աննիբաղը, որ երեք տարիէ 'ի վեր Սպանիոյ մէջ էր, և քսանըհինգ տարեկան էր։

2 Աննիբաղ միտքը դրաւ որ Իտալիոյ մէջ զարնուի Հռովմայեցւոց հետ, և նախ ջանաց որ շուտով Սպանիան նուաճէ։ Պաշարեց ու առաւ Սագունտոն քաղաքը (219)։ Անցաւ Պիրենեան լեռներէն ու Հռոդանոս գետէն, և տասնըհինգ օր ձիւներու և սառերու և դժուար ճամբաներու մէջէն անցնելով ու թշնամեաց հետ պատերազմելով Ալպեան լեռներէն անցաւ Իտալիա, Տիկինոս գետին քով յաղթեց Սկիպիոնի, Տրեբիոյ մօտ ալ Սեմպրոնիոսի։ Իրեք օր ճահիճներու մէջ քալելէն ետև՝ ուր աչքին մէկն ալ կորսընցուց, Տրասիմէն լճին քով Փլամինիոսի զօրացը մեծ ջարդ տուաւ։

3 Քիչ մը ատեն Փաբիոս Մաքսիմոս իշխանապետին խորագիտութեամբը Աննիբաղին յաջո-

---

1 Աստրուբաղին տեղը ո՞վ անցաւ։
2 Աննիբաղ ի՞նչ մտքով և ի՞նչպէս անցաւ Իտալիա։
3 Կաննէ գեղին քովը ի՞նչ յաղթութիւն ըրաւ Աննիբաղ։

ղութիւնները դադրեցան (217). վասն զի Փաբիոս Նեղ կիրճի մը մէջ ձգեց Կարքեդոնացւոց զօրքը. Աննիբաղ անոր ալ ճարը գտաւ, ու զօրքը անվտանգ անցուց կիրճէն. Ապուլիոյ մէջ Կաննէ գեղին քով մեծ յաղթութիւն մը ըրաւ ու անոնցմէ քառասուն հազար մարդ ջարդեց, թո՛ղ բռնած գերիները:

Աննիբաղ Հռովմայեցւոց սարսափած ատենը կրնար չիտակ Հռովմին վրայ երթալ ու իր յաղթութիւնը կատարեալ փառքով պսակել, բայց չըրաւ, թողուց որ զօրքը Կապուա քաղքին զեղխութեանցը մէջ փափկանան: Անկէց ետքը ալ բախտը փոխուեցաւ, Աննիբաղին բաները սկսան ձախորդ երթալ: Որովհետեւ Կարքեդոնէն իրեն նոր օգնութիւն չէր գար, ինքն ալ բաւական զօրք չունէր որ թէ պատերազմի և թէ առած երկիրները պահէ, ուստի քանի մը անգամ ալ զարնուելով բանակը շատ տկարացաւ:

1 Երբոր երկու Սկիպիոնները, որ շատ անգամ Սպանիոյ մէջ Կարքեդոնացւոց յաղթեր էին՝ իրենք ալ յաղթուեցան ու սպաննուեցան, Պոբլիոս Սկիպիոն անոնց տեղը անցնելով (211) ամէն պատերազմներուն մէջ յաղթեց Կարքեդոնացւոց, ու չորս տարուան մէջ բոլոր Սպա-

---

1 Ի՞նչպէս սկսաւ տկարանալ Աննիբաղ: -- Ի՞նչպէս լմնցաւ երկրորդ Պունիկեան պատերազմը:

նիոյ տիրեց։ Անկէ գնաց Ափրիկէ (204), ու քիչ ատենի մէջ շատ տեղեր առաւ։ Կարքեդոնացիք շփոթեցան, ու շուտ մը ետ կանչեցին Աննիբաղը (203)։ Պատերազմը չսկսած՝ ան երկու հռչակաւոր զօրավարներն իրարու հետ տեսնուեցան, բայց չկարենալով հաշտութեան պայմաններուն վրայ միաբանիլ՝ Զամա քաղաքին քով պատերազմիլ սկսան։ Վերջապէս Հռովմայեցիք յաղթող եղան (201), և Կարքեդոնացիք իրենց յաղթականին դրած պայմաններն յանձն առին։ Ասանկով լմնցաւ երկրորդ Պունիկեան պատերազմն ալ, որ տասնըվեց տարի քշեց։

1 Աննիբաղ վախնալով որ Հռովմայեցւոց ձեռքը չիյնայ, գիշերանց փախաւ գնաց Ասորւոց Անտիոքոս թագաւորին քով. երբոր անիկայ Հռովմայեցւոցմէ յաղթուեցաւ, գնաց Աննիբաղ մեր Արտաշիաս կուսակալին ապաւինեցաւ. հոն ալ քիչ մը ատեն կենալէն ետքը՝ Պրուսիաս Բիւթանիոյ թագաւորին քովը գնաց։ Ո՛ւր որ երթար՝ Հռովմայեցիք ետևէն կը հանէին, և զինքը ձեռք ձգելու ամէն ջանք կ'ընէին։ Իմացաւ Աննիբաղ որ Պրուսիաս զինքը պիտի մատնէ Հռովմայեցւոց, թոյն առաւ ու մեռաւ եօթանասուն տարեկան, և Հռովմայեցւոց սիրտը հանգչեցաւ։

2 Ան ատենները Մասինիսսա՝ Նումիդիոյ մէկ

---

1 Աննիբաղայ վերջն ի՞նչպէս եղաւ։

2 Աննիբաղայ յաղթուելէն ետքը Կարքեդոնացւոց վիճակն ի՞նչպէս եղաւ։

մասին Թագաւորը. Հռովմայեցւոց նիզակակից, Սիփաքսին ձեռքէն՝ որ Նումիդիոյ մէկալ մասին Թագաւորն էր և Կարքեդոնացւոց դաշնակից. մէկ գաւառը առեր էր։ Կարքեդոնացիք աս յափշտակութեան համար Հռովմ բողոքեցին, բայց երբոր տեսան որ Հռովմայեցւոց փոյթը չէ, սկսան զէնքով Սիփաքսին օգնել. բայց Մասինիսսա անոնց յաղթեց ու առած երկիրն ետ չտուաւ։

1 Կարքեդոնացիք վախնալով որ յանկարծ Հռովմայեցիք իրենց դաշնակցին համար նորէն վրանին պատերազմի կուգան, Հռովմ դեսպան խրկեցին՝ որ ծերակուտին սիրտը առնեն։ Կատոն անդադար կը պնդէր թէ քանի որ Կարքեդոն կեցած է՝ Հռովմ ապահովութիւն չկրնար ունենալ. ուստի դեսպաններուն հասնելէն առաջ. ծերակոյտը որոշեր էր որ պատերազմ բանայ Կարքեդոնացւոց դէմ. սակայն խօսք տուին դեսպաններուն որ Կարքեդոնացւոց ազատութեանը, ստացուածքին, երկիրներուն չեն դպչիր թէ որ երեսուն օրուան մէջ իրեք հարիւր ազնուազգի երիտասարդներ պատանդ խաւրեն Լիլիբէոն, ու հիւպատոսաց հրամանին հնազանդին։

2 Կարքեդոնացիք դէմ դնելու համար ոչ զօրք

---

1 Հռովմայեցիք ինչ պայմաններով յանձն առին հաշտուիլ Կարքեդոնացւոց հետ։

2 Կարքեդոնը կործանելու մտքերնին ինչպէս հրատարակեցին Հռովմայեցիք։

և ոչ նաւ ունէին. ուստի հնազանդեցան. ու պատանդները խրկեցին: Հիւպատոսները որ զօրքով ձմրայ ելեր էին՝ հասան Կարքեդոն. մէկէն հրամայեցին Կարքեդոնացւոց որ շուտով որչափ որ զէնք կունին իրենց բերեն. անոր ալ հնազանդեցան Կարքեդոնացիք: Ան ատենը Կենսուրինոս հիւպատոսը իմացուց անոնց թէ Հռովմայեցւոց կամքն աս է որ Կարքեդոնը կործանուի, և մէջի բնակիչքը ելլեն՝ ծովէն քսան մղոնի չափ հեռու ուր որ կ՚ուզեն բնակին:

[1] Աս անգութ հրամանին վրայ վերջին յուսահատութեան մէջ ընկան Կարքեդոնացիք (149): Հիւպատոսները անանկ անզէն քաղքին առնուիլը դիւրին կարծելով կամաց շարժեցան. Կարքեդոնացիք անով ատեն գտան, Ասդրուբաղը զօրավար դրին ու սկսան պատերազմի պատրաստութիւն տեսնել. մեհեանները, պալատները ու հրապարակները մէյմէկ գարբնոց դարձուցին, ու անոնց մէջը գիշեր ցորեկ արք և կանայք զէնք կը շինէին. ինչուան կնիկ մարդիկ երկայն մազերնին կտրեցին աղեղի լար շինեցին:

Երբոր Հռովմայեցիք Կարքեդոնի մօտեցան, տեսան որ անոնք պատերազմի պատրաստուեր են, զարմացան՝ ու քաղաքը պաշարեցին: Երկու տարի բան մը չկրցան ընել: Պուբլիոս Սկիպիոնը սպարապետ զօրաց դրին Հռովմայեցիք. Սկիպիոն Ափրիկէ հանելուն պէս՝ ծովէն ցամաքէն

---

1 Ան որ լսեցին Կարքեդոնացիք ինչ ըրին:

Կարքեդոնացւոց պաշար առնելու. Ճամբաները գոցեց, ու նաւահանգստին գիմացը ամբարտակ մը կանգնեց (147)։ Նոր նաւահանգիստ մը փորեցին Կարքեդոնացիք, և հին նաւերու կտորներով նոր նաւատորմիղ մը կազմեցին։ Եւ թէ որ Հռովմայեցւոց ան բաներուն վրայ զարմացած ատենը Կարքեդոնացիք վրանին յարձըկէին, տարակոյս չկայ թէ կը յաղթէին. բայց անոնք իրեք օր ուշացան ու յաղթութիւնը կորսնցուցին։

1 Բոլոր Աֆրիկէի քաղաքները հնազանդեցան Հռովմայեցւոց. Սկիպիոն առաւ պարիսպը, մտաւ քաղաքը, միջնաբերդը առնելու համար վեց օր գիշեր ցորեկ պատերազմեցաւ. երկու կողմէն ալ մեռնողներու թիւը չկար. ինչուան որ եօթներորդ օրը անձնատուր եղան՝ աղաչելով որ իրենց կեանքին խնայեն։ Յիսուն հազար հոգի ելան միջնաբերդէն էրիկ մարդ, կնիկ մարդ ու տղաք. փախստականները ուրիշ տեղ չգտնելով՝ Ասկղեպեայ մեհեանը փախան. անոնց մէջ էր նաև Ասդրուբաղ և իր կինն ու որդիքը։ Երբոր ասոնց պաշարը հատաւ, կրակ տուին մեհենին որ մէջը այրին. Ասդրուբաղ իր կեանքը ազատելու համար փախաւ գնաց Սկիպիոնին գթութեանը ապաւինեցաւ. ան ատեն կինը բարձր տեղ մը ելած անոր վատութիւնը յանդիմանելէն ետև, զաւկու ձեռքովը սպան-



1 Ի՞նչ կերպով առնուեցաւ Կարքեդոն։

նեց որդիքն, ու անոնց հետ մէկտեղ ինքզինքը կրակին մէջ ձգեց:

1 Հրաման տուաւ Սկիպիոն զօրացը որ քաղաքը կողոպտեն, մեհեաններուն ազնիւ բաները ժողվեց Հռովմ խրկեց, քաղաքը կործանեց, ու վճիռ հանեց որ մէյմըն ալ Կարքեդոն չշինուի:

2 Սակայն Սկիպիոնին կենդանութեան ատենը Գրակքոս տրիբունը նորէն շինեց Կարքեդոնն ու վեց հազար հոգի հոն գաղթական տարաւ. միայն թէ փառաւոր մեծ շէնքեր չշինեցին, անանկ որ անկէց ալ քառասուն տարի ետքը երբոր Մարիոս Ափրիկէ փախաւ, Կարքեդոն աւերակ էր: Անկէ ետքը Կեսար նորէն առջինին պէս փառաւոր շինեց Կարքեդոնը, որ նորէն Ափրիկէի մայրաքաղաքն եղաւ. ինչուան որ եօթներորդ դարուն սկիզբը Սարակինոսք կործանեցին:

---

1 Ի՞նչպէս կործանեցաւ Կարքեդոն:
2 Ետքը նորէն շինուեցա՞ւ:



# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

# Յ Ո Ւ Ն Ա Ց



## ԳԼՈՒԽ Ա.

Յունաց ծագումը. — Առջի կրօնքը. — Արամազդ. — Եգիպտացիք. — Ինաքոս. — Փորոնէոս. — Պելազգոս. — Ոգիգէս. — Կեկրոպս. — Դեւկալիոն. — Ամփիկտիոն. — Հելլէն. — Եոլոս. — Դորոս. — Յոն. — Աքէոս. — Կադմոս. — Դանաոս. — Պերսէոս. — Պելոպս. — Արգոնաւորդք. — Հերակլեայք. — Թեսէոս:

1 Աստուածաշնչէն գիտենք որ Յունաց ազգին նախահայրն է Յաբեթի Յաւան կամ Յոնը *



1 Յունաց ազգին նախահայրը ո՞վ է:

* Եբրայական բառին նոյն տառերը տարբեր կէտադրութեամբ թէ Յաւան կը կարդացուին և թէ Յոն:

որդին, ուսկից բոլոր ազգը Յոյն ըսուած է, բընակած երկիրնին ալ Յունաստան։

1 Բայց առջի բնակիչները վայրենութեան մէջ մնացած, իրենց ծագման յիշատակն ալ կորսընցընելով՝ իրենք զիրենք Երկրածին կ՚անուանէին, այսինքն երկրէ ծնած։ Բնակարաննին, հագուստնին, կերակուրնին և ուրիշ ամէն բաներնին անասնոց նման էր. անտառներու մէջ ցրուած կը բնակէին, խոտ, տերև, արմատ, կաղին և ուրիշ վայրի պտուղներ կ՚ուտէին։– Մէջերնէն ուժովը իր կամքը օրէնքի տեղ առաջ կը տանէր. զուրիշը կողոպտելը իրաւունք կը սեպէին։ Եւ սակայն օր մը ասանկ բարբարոս ու վայրենամիտ ազգը բոլոր աշխարհիս գիտութեան և արուեստից մայր ու դայեակ պիտի ըլլար։

2 Ինչ կրօնք որ առաջ Աստուած մարդկանց յայտներ էր, այսինքն բնական օրէնքը, առջի բերան առանց այլայլութեան մնացեր էր մէջերնին։ Տիեզերաց կարգը պահող աստուածներ կան կ՚ըսէին, անոնց աղօթք կ՚ընէին ու զոհ կը մատուցանէին. բայց մասնաւոր անունով զանոնք չէին բաժներ։

3 Օտարազգի գաղթականները քաղաքակա-

---

1 Յունաստանի առջի բնակիչները ի՞նչ վիճակի մէջ էին։
2 Հի՞ն Յունաց առջի կրօնքը ի՞նչ էր։
3 Բազմաստուածութիւնը ի՞նչպէս մտաւ Յունաց մէջ։

նութեան սկզբունքներուն հետ խոթեցին Յունաստանի նաև բազմաստուածութիւնը, և քիչ ատենի մէջ առջի կրօնքին պարզութիւնը գնաց, ու անթիւ հեթանոսական մոլորութիւններով լեցուեցաւ:

1 Ամենէն առաջ Արամազդայ կամ Դիոսի պաշտօնը հաստատուեցաւ Յունաստանի մէջ. վասն զի Փիւնիկեցի նաւավարներ Եգիպտոսի Թեբէ քաղաքէն Արամազդայ տաճարին երկու քրմուհիները յափշտակելով մէկը Լիբիա բերին ծախեցին, մէկալն ալ Յունաստան Դոդոնէի մօտ Թեսպրոտեանց ծախեցին: Ան քրմուհին հոն կաղնի ծառի մը տակ պզտիկ կառատուն մը շինեց, ու սկսաւ Արամազդը պաշտել, ու անոր անունովը պատգամներ խօսիլ:

2 Նոյն ատենները Պեղոպոնէսի մէջ Աքայիոյ հիւսիսակողմը՝ Եգիաղէս առաջինն եղաւ որ քաղաք մը շինեց, ու անունը դրաւ իր անունովը Եգիաղէ, որ ետքը Սիկիոն կոչուեցաւ:

3 Քիչ մը ետքը Կադմոս Փիւնիկեցին, որ շատ ատեն Եգիպտոս կեցեր էր, շատ մը Եգիպտացիք, Փիւնիկեցիք և Արաբացի հովիւներ ժողված՝ եկաւ Պեղոպոնէսի մէջ բնակեցաւ (1856): Ասոնք սորվեցուցին վայրենի Յունաց կրակ վա-

---

1 Յունաց պաշտած առջի կուռքը ո՞րն եղաւ:
2 Պեղոպոնէսի մէջ առջի քաղաքը ո՞վ շինեց:
3 Յունաստան եկող առջի գաղթականները ո՛րո՞նք եղան:

ռել, ու մարդուս կենաց քանի մը հարկաւոր արուեստներ։

1 Փորոնէոս՝ Ինաքոսի որդին, Փորոնիոն աւանը շինեց. որ ետքը Արգոս ըսուեցաւ, և գաւառը Արգողիս։

2 Պեղասգոսի անուանովը, որ Ինաքոսի յաջորդներէն մէկն էր, իր կառավարած ժողովուրդն ալ Պեղասգեանք ըսուեցան։ Ասոնք քիչ ատենի մէջ այնչափ շատցան որ Արգողիան ու Արկադիան իրենց չբաւելով, Պեղոպոնեսէն դուրս ելան որ նոր տեղ մը հաստատեն իրենց բնակութիւնը։ Ատտիկէն անցնելու ատեն մէջերնէն ոմանք հոն մնացին, բայց մեծ մասերնին Ճամբանին շարունակելով գնացին Թեսաղիա բնակեցան։

3 Նոյն ատենները Ովգիգէս Եգիպտոսէն հետը շատ մարդ առած՝ եկաւ Բէովտիա ու Ատտիկէ բնակեցաւ, տեղացի վայրենիները մէկտեղ ժողվեց. Բէովտիոյ մէջ Թեբէ քաղաքը շինեց. Ատտիկէի մէջ ալ Եղեւսինը։

4 Ովգիգէսի թագաւորութեան ատենը (1796), գետնաշարժով մը Կոպայիս լճին ծովուն հետ հաղորդուած Ճամբան գոցուելով, լճին ջուրը դուրս վազեց, բոլոր Բէովտիան ու-

---

1 Արգոս քաղաքը ո՞վ շինեց։
2 Յոյնք ինչո՞ւ երբեմն Պեղասգեանք ալ կ'ըսուին։
3 Ովգիգեսին վրայ ի՞նչ գիտելիք կայ։
4 Ովգիգեսի ատեն ի՞նչ դիպուած եղաւ։

Ատտիկէի մէկ մասը ծածկեց, և մէջի բնակչաց մեծ մասը խղդուեցան. անիկայ ըսուեցաւ Ովգիգեան ջրհեղեղ։ Իսկ լեռներու ծայրը փախչելով ազատողները՝ նորէն վայրենութեան մէջ ինկան։

1 Երկու հարիւր տարի ետքը (1582) Կեկրոպս Եգիպտացին ուրիշ գաղթական մը բերաւ Եգիպտոսէն, նորէն Ատտիկէն շէնցուց, ու մէջը քաղաքականութիւն խոթեց։ Կեկրոպս սորվեցուց Ատտիկեցւոց վարուցան ընել ու ձիթենի անկել՝ որ հետը Եգիպտոսէն բերեր էր։ Ամուսնութեան կարգը հաստատեց, օրէնք դրաւ որ մեռելները թաղեն, Արիսպագոսի ատեանն ու Աթենաս աստուածուհւոյն պաշտօնը հաստատեց։ Շինել տուած տասուերկու գիւղաքաղաքները վայրենի ժողովրդոց յարձակմունքներէն պահպանելու համար՝ բերդ մըն ալ շինել տուաւ որ Կեկրոպիա ըսուեցաւ, և ետքը Աթենքի միջնաբերդն եղաւ։

2 Կեկրոպսի յաջորդին Կրանաւոսի ատենը (1529), մեծ ջրհեղեղ մը եղաւ, որով բոլոր Յունաստանի բնակչաց մեծ մասը խղդուեցան. և անիկայ Դեւկալիոնեան ջրհեղեղ * կ'ըսուի, ո-

---

1 Կեկրոպսայ վրայ ի՞նչ կը պատմուի։
2 Դեւկալիոնեան ջրհեղեղը ե՞րբ եղաւ։

* Ոմանք Ովգիգեան և Դեւկալիոնեան ջրհեղեղներուն համար կ'ըսեն թէ Նոյայ ատենը եղած համաշխարհական ջրհեղեղն է՝ աւանդ աղաւաղելով խառնած։

րովհետև ազատողները Թեսսալիոյ Դեւկալիոն Թագաւորին գնացին ապաւինեցան:

1 Ամփիկտիոն՝ Դեւկալիոնի որդին, Թրակիոյ վայրենի ժողովրդոց արշաւանքէն վախնալով Յունաստանի այլ և այլ բնակչաց դեսպանները Թերմոպիլէ ժողվեց, ու յորդորեց զանոնք որ միանան հայրենիքը պաշտպանելու: Անկէ ետքը սովորութիւն եղաւ որ տարին երկու անգամ Յունաստանի ամէն գաւառներէն երեսփոխաններ կուգային. գարնան ատեն Դեղփիս կը ժողվուէին, աշնան ալ Թերմոպիլէ, և Յունաստանի հարկաւոր եղած բաներուն վրայ խորհուրդ կ'ընէին. աս ժողովը Ամփիկտիոնի անունովը Ամփիկտիոնեան ատեան ըսուեցաւ: Իսկ ինքը Ամփիկտիոն թէ Թերմոպիլէի քովերը բնակող ազգերուն վրայ թագաւորեց և թէ Աթենացւոց:

2 Հելլէն՝ Դեւկալիոնի որդւոց մէկը, Թեսսալիոյ մէջ թագաւորեց, և իրեն ձեռքը եղած ժողովուրդները իր անունովը Հելլէնք ըսուեցան: Հելլէն իրեք որդի ունէր, Եւոլոս, Դովրոս և Քսութոս. Քսութոսն ալ երկու որդի ունեցաւ, Յոն և Աքէոս: Ան չորսին անուններովը Հելլէնաց ցեղը մասնաւոր անուններով կոչուեցան Եւոլացիք, Դովրացիք, Յոնիացիք և Աքայեցիք:

3 Ան ատենները երկու ուրիշ նոր գաղթական-

---

1 Ամփիկտիոնի վրայ ի՞նչ գիտելիք կայ:
2 Ի՞նչ պատճառաւ Յոյնք Հելլենացի ալ կ'ըսուին:
3 Կադմոսի վրայ ի՞նչ կը պատմուի:

ներ ալ Յունաստան եկան (1519)։ Մէկուն գլուխն էր Կադմոս Փիւնիկեցին, որ Բէովտիոյ մէջ բնակեցաւ. շինեց Կադմէան՝ որ ետքը Թեբէի միջնաբերդն եղաւ։ Հետը Փիւնիկէէն այբուբեն * բերած ըլլալով Կադմոս, ինքը առաջինն եղաւ որ Յունաց գրել՝ կարդալ սորվեցուց։

1 Երկրորդ գաղթականին գլխաւորն էր Դանաւոս Եգիպտացին, որ Արգոլիս եկաւ տիրեց, և աթոռէն ձգեց Գեղանորը որ Արգոսի մետասաներորդ թագաւորն էր։

2 Դանաւոսի գալէն քիչ մը առաջ՝ Լելէքս Լակոնիոյ թափառական պտըտող Պեղասգեանքը ժողվեց, ու Սպարտա քաղաքին հիմը ձգեց (1516)։ Միւղէս. Լելեքսի յաջորդը՝ երկանաքարը հնարեց. Եւրոտաս թագաւորը անուանի է անով որ Եւրոտաս գետն որ առաջ ընդարձակ ճահիճ մըն էր՝ գետ ձևացուց, և իր անունովը

---

1 Երկրորդ գաղթականին գլխաւորն ո՞վ էր։
2 Սպարտան ո՞վ շինեց։ — Սպարտան ինչո՞ւ Լակեդեմոն ալ կ՚ըսուի։

* Կադմոսին Յունաստան բերած փիւնիկեան գրերն ասոնք էն α, β, γ, δ, ε, ι, κ, λ, μ, ν, ο, π, ρ, σ, τ, υ, Կադմոսէն երկու հարիւր յիսուն տարի ետքը՝ Պաղամեդէս Տրոյական պատերազմին ատենը անոնց վրայ աւելցուց աս չորսը ξ, θ, φ, χ. ետքերն ալ Քրիստոսէ 500 տարի առաջ Սիմոնիդէս քերթողը ուրիշ չորս գիր աւելցուց η, ω, ζ, ψ. որով ամբողջացաւ Յունաց այբուբենը։

Եւրոտաս կոչեց։ Լակեդեմոն թագաւորն ալ Սպարտայի մօտ քաղաք մը շինեց, և վրան իր անունը դրաւ. անկէ Սպարտան Լակեդեմոն ալ ըսուեցաւ։

[1] Բայց Ատտիկէի մէջ շուտով առաջ կ'երթար քաղաքականութիւնը։ Ամփիկտիոնի յաջորդին Երիքթոնիոսի թագաւորութեան ատենը՝ Ատտիկեցիք ձիերը կը սանձէին, սայլ քաշելու զանոնք կը վարժեցընէին, և Հիմետտոս լեռան վրայ մեղուներէ ազնիւ մեղր կը հանէին, որ ամէն ժամանակ անուանի եղաւ։ Երիքթոնիոսի յաջորդին Պանդիոնի ատենը սկսան նաև վաճառականութիւն ընել, երկաթը բանի բերել՝ որ Յունաստանի մէջ դեռ նոր գտնուեր էր Կրետէ կղզւոյն Իդա լեռան վրայ։ Երեքթէոսի թագաւորութեան ատենն ալ Տրիպտողեմոսէն սորվելով երկրագործութիւնը կատարելագործեցին, և Եղեւսեան խորհրդատօնքը հաստատեցին, և անոնց մէջ Խորհրդազգած ըսուածներուն՝ Դեմետրէ աստուածուհւոյն պաշտօնը կը սորվեցընէին, որ Եգիպտացւոց պաշտած Իզիսն էր։

[2] Ան ատենները (1348) Յունաստանի հռչակաւոր դիւցազանց մէկը երեւցաւ Պերսէոս Դանայեայ որդին ու Արգոսի Ակրիսիոս Թագաւո-

---

1 Ատտիկեցիք ի՞նչ կերպով սկսան քաղաքականութեան մէջ առաջ երթալ։

2 Ո՞վ շինեց Միկէնք քաղաքը։

րին Թոռը, որ ետքը բանաստեղծները կիսաստուածոց կարգը դրին. ասիկայ Միկենք քաղաքը շինեց։

1 Քանի մը տարի ետքը Պեղոպս՝ Տանտաղոսի որդին, որ Փոքր Ասիոյ Սիպիլէ քաղաքը կը թագաւորէր. Լիւդիա և Փռիւգիա մտաւ. բայց Փռիւգացւոց Իլոս թագաւորէն յաղթուած՝ իր հպատակացը մէկ մասին հետ Թեսաղիա անցաւ։ Հոն քիչ ատենի մէջ զօրանալով՝ գնաց Պեղոպոնեսին արեւմտեան մասը առաւ, իր Ենոմաւոս աները որ Պիսայի թագաւորն էր՝ աթոռէն ձգելով՝ Եղիս գաւառին տիրեց և Լակոնիոյ և Մեսսենայի մէջ շատ քաղաքներ շինեց։ Իր յաջորդները Պեղոպոնեսի մեծ մասին տիրեցին, և Դանաւոսի յաջորդացը ձեռքէն բոլոր տիրած երկիրնին առին։

2 Առջի գործողութիւնն որ Յոյնք մէկտեղ միաբանած ըրին (1292), Արգոնաւորդաց արշաւանքն է, որուն բուն պատճառն էր վերցընել ան չարագործները՝ որ Յունաստանի ծովերուն մէջ անդադար աւազակութիւններ ընելով, Եւքսինեան Պոնտոսի՝ այսինքն Սև ծովուն եզերքը կը քաշուէին։ Իսկ բանաստեղծները կ՚ըսեն Թէ անոնց նպատակն էր ոսկեգեղմը յափշտակել. և ասանկ կը պատմեն։

---

1 Պեղոպսի վրայ ի՞նչ կը պատմուի։

2 Յունաց առջի արշաւանքը ո՞րն է։ — Արգոնաւորդաց արշաւանքին պատճառն ի՞նչ էր։

1 Աթամաս՝ Թեբացւոց թագաւորը, երկու որդի ունէր Փրիքսոս և Ելլէ։ Ասոնք իրենց խորթ մօրը Ինովայի ձեռքէն ազատելու համար՝ ոսկեգեղմ խոյի մը վրայ հեծած (որ խոյի նշանով նաւ մըն էր կ'ըսեն), Սև ծովուն նեղուցէն փախչելու ատեննին՝ Ելլէ ծովը ընկաւ խեղդուեցաւ. իր անունովը ծովն ալ Ելլեսպոնտոս ըսուեցաւ. իսկ Փրիքսոս անվտանգ հասաւ Կողքիս, խոյը Արեսի զոհ ըրաւ, անոր ոսկեթել բուրդը կամ ոսկեգեղմն ալ յիշատակի համար նոյն կռոց մեհենին նուիրեց։ Պատգամ ելաւ Արեսէն Կողքիսի Այետաս թագաւորին որ եթէ մէկը այն ոսկեգեղմը գողնայ, ինքը պիտի մեռնի. Թագաւորն ալ շատ մը զօրք դրաւ պահապան որ չըլլայ թէ մէկը գայ գողնայ. և որովհետև այն զօրքը Տաւրոսք կ'ըսուէին որ Ցուլք ըսել է, և իրենց գլխաւորն ալ Դրակոն որ է Վիշապ, ասկէց առասպել մըն ալ հնարեցին թէ այն ոսկեգեղմին պահապանները էին ցուլեր ու վիշապ մը։

Ան ատենները Թեսաղիոյ Պեղիաս թագաւորը՝ Յասոն անունով կորիւն եղբօրորդի մը ունէր, և կը վախնար որ չըլլայ թէ օր մը թագաւորութիւնը ձեռքէն առնու. և որովհետև ոսկեգեղման համբաւը հռչակուած էր թէ ով որ անիկայ ձեռք ձգէ՝ թագաւոր պիտի ըլլայ, յոր-

---

1 Արգոնաւորդաց պատմութիւնը ինչպէս է ըստ առասպելաց։

դորեց Պեղիաս Յասոնը որ երթայ առնու ոս-կեգեղմը, յուսալով որ հարկաւ Այետաս թագաւորը զինքը կը մեռցընէ։

Յանձն առաւ Յասոն, ու Արգոն անունով ճարտարապետին նաւ մը շինել տուաւ, որ անոր անունովը Արգոնաւ ըսուեցաւ. և որովհետև աս նաւը շատ մեծ ու փառաւոր էր, ու նմանը ինչուան ան ատենը չէր տեսնուած, անունը լսելով ամէն կողմէն կարիճ երիտասարդներ ինքնակամ ուղեցին Յասոնին հետ մէկտեղ երթալ։ Յիսունըչորս հոգի ընտրեց առաւ մէջերնէն Յասոն, ու անոնց գլուխ դրաւ Հերքիւլլէսն կամ Հերակլէսը ու ճամբայ ելան։ Երբոր Տրոյիա հասան՝ տեսան որ ծովեզերքը աղջիկ մը կապեր ձգեր են. հարցուցին իմացան պատճառը որ Ապողոն որմնադրի կերպարանքով եկեր Տրոյիոյ պարիսպները շինելու համար Լաւոմեդոնին օգներ է, ու երբոր անիկայ չէ ուզած անոր վարձքը տալ, բարկացեր է վրան Ապողոն, ու հրէշ մը խրկեր է որ ծովը բերնէն դուրս տալով բոլոր երկիրը ջուր կը կոխէ եղեր։ Պատգամ կը հարցընէ Լաւոմեդոն թագաւորը որ ասոր ինչ ճար ընէ. պատասխան կուտայ պատգամախօսը թէ Ամէն տարի պէտք է ան հրէշին աղջիկ մը կերցընես։ Ան տարին վիճակը Լաւոմեդոնի Եսիոնէ աղջկանը վրայ կ'ելլէ. անիկայ է եղեր հոն կապած ձգածնին որ հրէշը դայ ուտէ։ Աս լսելուն պէս Հերակլէս՝ Եսիոնէն արձըկեց, ու եկաւ Լաւոմեդոնին ըսաւ թէ Ես ան հրէշ վիշապը սպաննել կ'ուզեմ. Թագաւորին ալ շատ պարգևներէն զատ Եսիոնէ աղջիկն

ալ խոստացաւ իրեն տալու։ Սպաննեց Հերակղէս հրէշը, և Թագաւորը խոստմունքը կատարեց. բայց որովհետև կը փութար Յասոնին, Հերակղէսն ալ բոլոր առած պարգևները Լաւոմեդոնին քովը պատանդ թողուց որ 'ի դարձին առնէ, ու ճամբայ ելաւ։

Հասան Կողքիս, ու Այետաս Թագաւորին աղջիկը Մեդէա՝ Յասոնին սորվեցուց թէ ինչպէս պիտի սանձէ ցուլերը, ու վիշապը թմրեցընէ. առին ոսկեգեղմը ու Մեդէային հետ մէկտեղ Տրոյիա փախան։ Իսկ Այետաս Թագաւորը ասոնց ետևէն ընկած ատենը՝ իրենները զինքը սպաննեցին։ Երբոր Տրոյիոյ նաւահանգիստը հասան, մարդ խրկեց Հերակղէս Լաւոմեդոն Թագաւորին որ քովը թողած պատանդները դարձընէ։ Անիկայ դեսպանները բռնեց բանտ դրաւ, ու պատրաստուեցաւ որ Արգոնաւորդաց վրայ վազէ։ Անոնք աս լսելնուն պէս մէկէն օգնութիւն առած՝ Լաւոմեդոնին վրայ կը յարձըկին, զինքը կը սպաննեն, կը մտնեն Տրոյիա կը կողոպտեն, Եսիոնէն կ'առնուն, ու կ'ելլեն Յունաստան կ'երթան։ Կորնթոսի կիրճն որ կը հասնին՝ Պոսիդոնի շնորհակալութեան զոհ կը մատուցանեն ու Արգոնաւն անոր կը նուիրեն, որ ետքը խոյի ու ոսկեգեղմին հետ համաստեղութեանց կարգը անցաւ։ Ետքը Պեղոպոնեսի մէջ Եղիս գաւառը Ալփէոս գետին եզերքը Ողիմպեան Արամազդայ մեհենին քով խաղ մը հնարեցին, որուն մէջ առջի խաղցողը Հերակղէս եղաւ, և խաղն ըսուեցաւ Ողիմպիական խաղ։

1 Երբոր Արգոնաւորդացմէ զատուեցաւ Հերակղէս, հետը շատ կտրիճ ընկերներ առած Պեղոպոնեսս գնաց, ու հոն տեղի տէրութեանց վրայ յարձըկեցաւ, անոնց թագաւորները սպաննեց, և ուզած մարդիկը անոնց թագաւոր դրաւ։ Անկէ անցաւ Եռողիա ու հոն Կալիդոնի Ենէաս թագաւորին աղջիկը իրեն կին առաւ, և Աքեղոոս գետին ընթացքը դարձուց՝ որ սաստիկ լեցուելով երկիրը կը կոխէր կ'աւրըշտըկէր։ Ասանկ ուրիշ շատ արշաւանքներ ալ ըրաւ Հերակղէս, և Յունաստանի մեծ մասին տիրեց։ Բանաստեղծները շատ զարմանալի քաջութեան գործքեր կը պատմեն Հերակղեսին վրայ, որոնց գլխաւորները տասներկու հատ են։ Իսկ Հերակղեան արձանք ըսուածը ան արձաններն են, որ ըրած քաջութիւններովը յոգնած Սեպտէի կամ Ճիպիլթէրրայի նեղուցը հասնելով իր յաղթութեանցը նշան հոն երկու սիւն կանգնեց՝ իբրև աշխարհակալութեանը սահման։

2 Ան միջոցին որ Հերակղէս հեռաւոր տեղերու կը տիրէր՝ Թեսէոս, Աթենացւոց Եգէոս թագաւորին ու Տրեզենի Պիտթէոս թագաւորին Եթրա աղջկանը որդին, Յունաստան աւրըշտըկող աւազակներն ու գազանները ջարդելով անուանի դիւցազուններէն մէկը եղաւ։ Պալլան-

---

1 Հերակղէսայ վրայ ուրիշ ի՞նչ քաջութիւններ կը պատմուին։

2 Ո՞վ էր Թեսէոս և ի՞նչ կը պատմուի վրան։

տեանց ապստամբութիւնը նուաճեց, և իր հայրը Եգէոսը Աթենքի թագաւորութեան մէջ հաստատեց: Կրետացւոց Մինովս թագաւորը Աթենացւոց յաղթելով՝ վրանին տուրք դրեր էր որ ինը տարի եօթնական աղջիկ ու եօթնական մանչ տղայ Կրետէ խրկեն, և զանոնք կ'առնէր Կրետէի բաւիղը կը նետէր որ Մինոտաւրոս ըսուած մարդացուլ հրէշին կերակուր ըլլան: Թեսէոս իր հայրենիքը այնպիսի անողորմ տուրքէն ազատելու համար մահը աչքը առած՝ գնաց տղոցը հետ մէկտեղ, մարդացուլը սպաննեց, ու իր ընկերներովը ետ դարձաւ:

[1] Երբոր Եգէոս մեռաւ (1269), Թեսէոս անոր տեղը Աթենացւոց թագաւոր եղաւ, Կեկրոպսի շինել տուած տասուերկու գիւղաքաղաքները միացուց մէկ քաղաք ըրաւ, որ Աթենաս աստուածուհւոյն նուիրելով Աթէնք ըսուեցաւ: Եօթը Ատտիկէի մէջ ցրուած ժողովուրդները մէկտեղ ժողվեց, ու մէկ ժողովուրդ մը ընելու համար Ռամկապետութիւն մէջերնին հաստատեց, ու հասարակաց զոհ մը սահմանեց որ ամէնքը մէկտեղ ժողվուած ընեն, անոր համար զոհն ալ Համաթենական ըսուեցաւ:

Թեսէոս փոխանակ Աթէնք հանգիստ նստելով՝ ըրած բարեկարգութեանցը ու քաջութեանցը պտուղը վայելելու՝ ելաւ շատ արշա-

---

1 Թեսէոս իր թագաւորութեան ատենին ինչ ըրաւ:

ւանքներ ալ ըրաւ, որոնցմով փառքը կորսընցուց ու իր կործանմանը պատճառ եղաւ։

1 Թեսէոս և իր բարեկամը Պիրիթոոս, որ Թեսսալիոյ Իքսիոն Թագաւորին որդին էր, մտքերնին դրին որ Սպարտայի Տինդարոս Թագաւորին աղջիկը Հեղինէն յափշտակեն։ Օր մը երբոր անիկայ Անահտայ տաճարը կը պարէր, ասոնք յանկարծ վրան հասան, առին փախան։ Բայց երբոր Եպիրոս գնացին, Մողոսաց Այիդոնէոս Թագաւորին Պերսեփոնէ աղջիկը յափշտակելու, Թագաւորը իմանալով անոնց միտքը՝ Պրիթոոսը բռնեց իր գամփռ շներուն առջևը նետեց որ պատռտեցին, Թեսէոսն ալ բանտ դրաւ, ուսկից Հերակղէս ազատեց զինքը։

2 Երբոր Ատտիկէ դարձաւ Թեսէոս, ժողովուրդը զինքը արհամարհեց ու Աթենքէն քշեց. ինքն ալ գնաց Սկիրոս կղզին Լիկոմեդէս Թագաւորին քով, ու հոն մեռաւ։

3 Ատեն անցնելէն ետքը Կիմոն Միլտիատեսի որդին, պատգամ մը ընդունելով՝ Թեսէոսի ոսկորները տարաւ Աթէնք բերաւ, ու գերեզմանին վրայ փառաւոր մեհեան մը շինեցին՝ որ թշուառ մարդկանց ապաստանարան եղաւ։

---

1 Ի՞նչ յափշտակութիւններ ըրաւ Թեսէոս։
2 Ի՞նչպէս մեռաւ։
3 Ո՞ւր թաղուեցաւ։

# ԳԼՈՒԽ Բ.

Հերակլեանք. — Թէբէի պաշարումը. — Տրոյիոյ պաշարումը. — Հերակլեանք Պելոպոնէս կը դառնան. — Կոդրոս. — Արխոնք. — Գաղթականք Յունաց յԱսիա. — Հոմերոս. — Եզոպոս. — Լիկուրգոս։

1 Թեսէոսի թագաւորութեան ատենը Հերակլեանք՝ այսինքն Հերակլէսի որդիքը, Եւրիսթէոսի ձեռքովը (որ Պելոպսի թոռն էր) Պելոպոննեսէն քշուելով՝ գնացին Ատտիկէ բնակեցան։ Քիչ ատենէն ետքը նորէն ուզեցին Պելոպոննեսին տիրել. պատերազմի ելան, առջի բերան յաղթելով Եւրիսթէոսն ու որդիքը մեռուցին. բայց ետքը երբոր իրենց Հիլլոս զօրավարն ինկաւ, Պելոպեանք նորէն զօրանալով՝ զանոնք Պելոպոննեսէն դուրս քշեցին. անոնք ալ երդում ըրին որ մինչուան հարիւր տարի Պելոպեանց վրայ պատերազմի չելլեն։

2 Այն ատենները Թեբացւոց Լայոս թագաւորը իբրև պատգամէ մը իմանալով թէ իր որ-

---

1 Հերակլեանք ինչպէս քշուեցան Պելոպոննեսէն։

2 Ո՞վ էր Եդիպոս։

դին զինքը պիտի սպաննէ ու մօրը հետ պիտի կարգուի, կը հրամայէ Յոկաստէ կնոջը որ իր տղան ծնանելուն պէս մեռցընէ. բայց մօրը սիրտը չդիմացաւ, առաւ զինուորի մը տուաւ որ տանի հեռու տեղ մը ձգէ: Զինուորը գթացաւ տղուն վրայ, ու որպէս զի գազաններէ զինքը չպատռեն՝ անտառի մը մէջ ոտուըներէն ծառէ մը կախեց: Տղուն ան կերպով կախուած լացած ատենը՝ Կորնթացւոց թագաւորին Պոլիւբիոս հովիւը հոն կուգայ, ու վրան գթալով կ՚առնէ Մերովպէ թագուհւոյն կը տանի. ան ալ տղայ չունենալով՝ սիրով կ՚առնէ զինքը. իրեն որդեգիր կ՚ընէ, և ոտուըներուն ուռեցքը բժշկել կուտայ, անունն ալ կը դնէ Եդիպոս, որ յունարէն Ոտնուռոյց ըսել է: Եդիպոս երբոր մեծցաւ, իմացաւ որ ինքը Պոլիւբիոսի որդին չէ. Ապողոնէն պատգամ հարցուց ու իմացաւ որ իր հայրը Փոկիս է եղեր: Հոն երթալու ատեն նեղ ճամբու մը մէջ իր հօրը Լայոսի հանդիպեցաւ, և երբոր անիկայ դոռոզութեամբ ճամբայ կ՚ուզէր՝ բարկացաւ Եդիպոս, թուրը քաշեց, ու առանց գիտնալու կատարեց պատգամախօսին գուշակութիւնը, Յոկաստէ մայրն ալ իրեն կին առաւ: Բայց ետքը երբոր իմացաւ ըրած ապօրինաւոր գործքերը, ինքզինքը կամաւ կուրցուց:

[1] Իր երկու որդիքը Ետէոկղէս և Պոլինիկէ զինքը տէրութենէն քշեցին, որ Անտիգոնէ աղ-

---

1 Եդիպոսի որդիքը ինչ ըրին իրենց հօրը դէմ:

ջկանը ձեռքէն բռնած՝ աղքատի մը պէս տեղէ տեղ կը պտըտէր․ իսկ իրենք Թագաւորութիւնը իրարու ձեռքէն յափշտակելով՝ Թեբէի կամ Եօթն իշխանաց ըսուած պատերազմին պատճառ եղան, որ Յունաստանի հռչակաւոր պատերազմներէն մէկն է։

1 Ետէոկղեսի ու Պողինիկէի ատելութիւնը շատ անուանի է պատմութեանց մէջ․ կ՚ըսեն թէ (որովհետև ասոնք երկուորեակ էին) դեռ չըծնած՝ իրենց մօրը արգանդին մէջ իրարու հետ կը կռուըտին եղեր․ աս ատելութիւնը աւելի շատցաւ երբոր հարկ եղաւ որոշել թէ ով թագաւորէ․ վերջապէս որոշեցին որ մէյմէկ տարի թագաւորեն մէյմը մէկը, մէյմը մէկալը։ Ետէոկղէս որ առաջ նստաւ աթոռը՝ ալ չուզեց վար իջնալ․ ան ատենը Պողինիկէն գնաց իր աներոջը Արգոսի Ադրաստ թագաւորին, և ուրիշ հինգ թագաւորներ հետը առած՝ եկաւ Թեբէն պաշարեց․ բայց պատերազմի մէջ ան հինգն ալ զարնուեցան մեռան․ իսկ երկու եղբարք մենամարտութեան ելան, ու մէկզմէկ զարկին սպաննեցին։ Կ՚ըսեն թէ մեռնելէն ետքն ալ ասոնց իրարու դէմ ունեցած ատելութիւնը չդադրեցաւ․ ինչուան փայտակոյտին վրայ մարմիննին այրելէն ետքը՝ մոխիրնին իրարմէ հեռացեր բաժնուեր են։

2 Մեռած հինգ թագաւորաց որդիքը շատ

---

1 Իրարու հետ ի՞նչպէս վարուեցան։

2 Թեբէի պատերազմը ի՞նչ վերջ ունեցաւ։

զօրք ժողված նորէն սկսան պատերազմը. Հարգուեցաւ Թեբացւոց զօրքը որոնց կը զօրավարէր Լաւոդամաս, Թեբէի տիրեցին, ու Պոլինիկէի որդին Թերսանդրը Թագաւորեցուցին։

1 Ան պատերազմը նոր լմընցեր էր երբոր Յոյնք իրարու վրայ ունեցած նախանձաւորութիւնը մոռնալով միաբանեցան որ երթան Տրոյիան պաշարեն առնեն. և պատճառն աս էր։ Տրոյիոյ Լաւոմեդոն Թագաւորին որդին Պրիամոս իր հօրը տեղը անցնելով դեսպան խրկեց բոլոր Յունաց որ քոյրը Եսիոնէն իրեն դարձընեն. անոնք երբոր յանձն չառին, շատ զօրքով ու նաւով Պարիս որդին խրկեց որ պատերազմով առնէ Եսիոնէն բերէ։ Հասաւ Պարիս, Մենեղաւոս Թագաւորին պալատը իջաւ, և անոր կինը Հեղինէն առաւ Տրոյիա փախաւ։ Մենեղաւոս և Իթակէ կղզւոյն Թագաւորը Ոդիսեւս՝ ելան Տրոյիա գընացին որ Հեղինէն առնեն. բայց ոչ միայն չկըրցան առնել, հապա նաև քիչ մնաց որ ձեռք պիտի իյնային՝ Թէ որ Պրիամոսի ազգականը Անտենոր զիրենք չազատէր։

2 Մենեղաւոս ետ դառնալուն պէս՝ բոլոր Յունաց իշխանաց ու Թագաւորներուն բողոքեց. և քառասունըվեց մեծամեծ իշխաններ ու Թա-

---

1 Թեբէի պատերազմէն ետքը ի՞նչ հանդիպեցաւ։
— Տրոյիոյ պատերազմին պատճառն ի՞նչ էր։
2 Տրոյիոյ վրայ գնացող Յունաց մէջ անուանիները որո՞նք էին։

դաւորներ եկան Միկէնք քաղաքը ժողվուեցան, երդում ըրին որ Հեղինէն ազատեն ու Տրոյիան մոխիր դարձընեն: Ասոնց մէջ երեւելիներն էին Պիղոսի Թագաւորը Նեստոր՝ ճարտասանութեանը համար անուանի. Լոկրիսի Թագաւորը Այաս, Ոյիլէոսի որդին. Թետիսի և Պեղէոսի որդին Աքիլլէս, որ Յունաց դիւցազն ու ամենէն քաջն էր. Ոդիսեւս, Իթակայ Լայերտոս Թագաւորին որդին՝ իմաստութեամբը անուանի. Այաս, Սաղամինոյ Տեղամոն Թագաւորին որդին, Ետոլիոյ Թագաւորը Դիոմեդէս, Կրետացւոց Թագաւորը Իդոմենէս, Ասկղեպիոսի որդիքը Պոդալիր և Մաքաւոն, որ ամէն հիւանդութիւն բժշկելու ճարանիքը գիտէին: Ասոնք երկու տարի պատրաստութիւն տեսան, գրեթէ հարիւր հազար զօրքով բանակ մը կազմեցին Բէովտիոյ մէջ, հազար երկու հարիւրէն ալ աւելի նաւ, և տասնըմով ելան Տրովադային ծովեզերքը հասան: Բոլոր զօրաց սպարապետ դրուեցաւ Մենելաւոսի եղբայրը Ագամեմնոն, որ Միկէնքի ու Արգոսի Թագաւոր՝ և Յունաստանի զօրաւոր Թագաւորաց մէկն էր:

1 Տրոյիա քաղաքը ամուր պարսպով պատած ու աշտարակներով ամրացած էր, մէջն ալ շատ զօրք կար, որոնց զօրավարն էր Պրիամոսի որդին Եկտոր:

---

1 Տրոյիա ի՞նչ վիճակի մէջ էր:

1 Ելան Յոյնք Տրոյիոյ դիմացը ու նաւերնին ցամաք քաշեցին, և անոնցմով իրենց պատնէշներ շինեցին։ Եւ որովհետև ան ատենները պարըսպապատ քաղաքներ պաշարելու և առնելու գործիքներ չէին հնարուած, Յոյնք կը սպասէին որ Տրովացիք ուզած ատեննին պարիսպներէն դուրս ելլեն որ հետերնին պատերազմին։

2 Եկտոր քանի մը անգամ յանկարծակի յարձըկեցաւ Յունաց վրայ, ու մեծ ջարդ տուաւ անոնց։ Յոյնք մտածեցին որ Տրոյիան դիւրաւ առնելու համար նախ պէտք է քովի երկիրները նուաճել որ իրենց թշնամութիւն չընեն, ու անոնց չօգնեն. և սկսան անոնց հետ պատերազմիլ, ու զամէնքը իրենց հնազանդեցուցին։ Պըրիամու Պոլիդորոս որդին ալ գտնելով՝ առին բանակը բերին։

3 Ան միջոցին Պրիամոս Թագաւորը Ասորեստանեայց Տեւտամոս թագաւորին, Ամազոնաց՝ ու մեր Զարմայր նահապետին մարդ խրկեց օգնութիւն ուզելու անոնցմէ. և Զարմայր Հայոց ու Ասորեստանեայց զօրքը հետը առած՝ Տրոյիոյ օգնութիւն հասաւ։ Յոյնք երբոր դարձան բանակնին, դեսպան խրկեցին Պրիամու, ըսին որ եթէ Հեղինէն կուտաս, մենք ալ քեզի որդիդ կը դարձընենք, ու խաղաղութեամբ կ'ելլենք տե-

---

1 Յոյնք մէկէն յարձըկեցա՞ն Տրովացւոց վրայ։
2 Տրովացիք Յունաց վրայ յարձըկեցա՞ն։
3 Դրսէն օգնութիւն ուզեցի՞ն Տրովացիք։

զէրենիս կ'երթանք։ Դեսպաններուն առջևը կան-
չեց Պրիամոս Հեղինէն ու հարցուց թէ կ'ուզե՞ս
երթալ. ան ալ վախնալով որ երթալուն պէս է-
րիկը Մենելաոս զինքը կը մեռցընէ՝ Չեմ ուզեր
ըսաւ։ Բարկացան Յոյնք, Պրիամու որդին Պո-
ղիդորոսը Տրոյիոյ առջևը քարկոծեցին, և սկը-
սան սաստկութեամբ պատերազմիլ։ Երկու կող-
մէն ալ մեծ ջարդ եղաւ. վասն զի Յունաց կող-
մէն Աքիլլէս, Տրովացւոց կողմէն ալ Եկտոր
ու Զարմայր աննման մէկզմէկ կը ջարդէին։ Ա-
սանկ մէյմը մէկը մէյմը մէկալը յաղթելով ինը
տարի անցաւ։

1 Վերջապէս երկու կողմէն ալ քիչ մը զինա-
դադարում ուզեցին։ Ան միջոցին Պրիամու աղ-
ջիկը Պողիքսենէն պարիսպներու վրայ ելած պը-
տըտելու ատենը՝ Աքիլլէս զինքը տեսաւ, ու
ծածուկ մարդ խրկեց մօրը և ուզեց որ իրեն կին
տայ. ան ալ խոստացաւ։ Երբոր նորէն պատե-
րազմը սկսան, Աքիլլէս սկսաւ թուլութեամբ
պատերազմիլ, և շատերուն սիրան ալ թուլցը-
նել, մանաւանդ իրեն նախատինք մը ընելուն
համար Ագամեմնոնին հետ ալ աւրուելով գնաց
Աքիլլէս իր վրանը քաշուեցաւ։ Ան ատենը
Տրովացիք սկսան մեծամեծ յաղթութիւններ
ընել Յունաց վրայ. և Եկտոր իր ձեռքովը զար-
կաւ Աքիլլէսին սիրելի բարեկամ Պատրոկլը
սպաննեց։ Աքիլլէս լսելուն պէս թէ Պատրոկլ

---

1 Զինադադարման ատեն ինչ հանդիպեցաւ։

մեռեր է, այնպէս բարկացաւ որ ոխը ատելութիւնը մէկդի դրած՝ մէկէն զէնքերը առաւ, սկսաւ նորէն կատաղաբար պատերազմիլ. ու շատ քաջութիւններ ըրաւ: Ամազոնաց թագուհին վրան հասաւ որ զարնէ սպաննէ զինքը, բընաց մազերէն Աքիլլէս ու ձիէն վար նետեց սպաննեց: Սաստկացաւ պատերազմը. արծուօրէն հասաւ Եկտոր, ու զարկաւ Աքիլլէսը շարաչար վիրաւորեց. բայց Աքիլլէս առած վէրքը բանի տեղ չդնելով՝ առիւծի պէս վազեց ետեւէն, զարկաւ սպաննեց. հոն մեր Զարմայրն ալ Աքիլլէսի թրոյն բերանը ինկաւ: Եկտորին մարմինը ոտքերէն կառքին ետեւը կապել տուաւ Աքիլլէս, ու յաղթանակաւ Տրոյիոյ չորս բոլորը պտըտցուց:

1 Սարսափեցաւ Պրիամոս, խօսք տուաւ որ աղջիկը Պօղիքսենան տայ Աքիլլէսին: Եւ երբոր գնաց Աքիլլէս Ապողոնի տաճարը որ Պօղիքսենէին հետ պսակուի, Պարիս իր եղբօրը Եկտորին մահուան վրէժը հանելու համար՝ գընաց Աքիլլէսին քով որ պագտուի հետը ու շնորհաւորէ իրեն, և թուրը զարկաւ, կիսամեռ գետինը ձգեց զանիկայ: Յոյնք մէկէն առին զինքը նաւը տարին, ուր քիչ մը ետքը մեռաւ:

2 Թէպէտ Յունաց անպարտելի ախոյեանը Աքիլլէս ասանկով մեռաւ, բայց Տրովացւոց ալ

---

1 Աքիլլէս ինչպէս մեռաւ:
2 Աքիլլէսի մեռնելէն ետքը ինչ հանդիպեցաւ:

սիրտը կոտրեցաւ. վասն զի կը վախնային թէ Ապողոն վրանին բարկանալով՝ որ իր մեհենին մէջ սպանութիւն ըրին, իրենց քաղաքը թշնամեաց ձեռքը պիտի մատնէ. ուստի նորէն Յոյնք սկսան Տրովացւոց յաղթել: Ան տեսնելով Տրովացւոց երևելի իշխանները, Ենէաս՝ Պրիամու փեսան, և Անտենոր, յորդորեցին Պրիամոսն որ հաշտութիւն ընէ. վերջապէս յանձն առաւ թագաւորը, Յոյնք ալ անոնց ակամայ նուաձուիլը տեսնելով կեղծաւորութիւն ըրին, ու իրարու ընծաներ խրկեցին: Բայց ետքը ուզելով Յոյնք հնարքով մը Տրոյիոյ տիրել, մեծ ձի մը շինեցին փայտէ, ու մէջը շատ մը զինուած մարդիկ պահուըտեցան. ոտքերն ալ անիւներու վրայ առած՝ մեծ հանդիսով Տրոյիոյ դիմացը տարին իբր թէ կ՚ուզեն Աթենաս աստուածուհւոյն ընծայել ան ձին՝ իրենց հաշտութեանը նշան: Տրովացիք մէկէն ասոնց հաւատացին, և ուրախութեամբ քաղաքին դռները բացին որ ներս առնեն: Ան ատենը մէկէն ձիուն փորը կը բացուի, մէջը պահուըտած մարդիկը դուրս կ՚ելլեն. ու անոնց ժողովրդեան վրայ վազելու ատենը՝ մէկալ Յոյնք ալ ետևէ կը հասնին, առջևնին եկողը կը զարնեն կը սպաննեն, քաղաքը կը կողոպտեն. պարիսպները, տներն ու մեհեանները կը կործանեն, ու կրակ կուտան կ՚այրեն:

Աքիլլեսի որդին Պիւռոս՝ կը բռնէ Պրիամոսը որդւոցը հետ բագինին առջևը կը սպաննէ. անոր Եկուբէ կինը, Կասանդրա աղջիկն ու Եկտորին այրին Անդրոմաք՝ շղթայակապ գերի կը բռնուին: Մենեղաւոս ալ մէկէն կը բռնէ Հե-

ղինէն կը սպաննէ, որ այնչափ համազգեաց արիւնը թափելու պատճառ եղեր էր։

1 Ասանկով լմընցաւ Տրոյիոյ բազմաղէտ պատերազմը։ Յոյնք իրենց կատաղութիւնը կշտացուցին, բայց ըրած յաղթութիւններնուն պըտուղը չկրցան վայելել. որչափ յաջողութեամբ որ պատերազմի եկան, այնչափ ալ ձախորդութեամբ ետ դարձան։ Մնեսթէոս՝ Աթենացւոց թագաւորը՝ չկրցաւ մէյմըն ալ իր հայրենիքը տեսնել, և Մեղոս կղզւոյն մէջ մեռաւ։ Լոկրացւոց թագաւորը Այաս՝ իր նաւատորմիղին հետ կորսուեցաւ. Ոդիսեւս՝ տասը տարի թափառական ծովու վրայ պտըտելով հազիւ կրցաւ Իթակէ իր երկիրը երթալ, բայց հոն ալ գնաց աւելի գէշ մահուան հանդիպեցաւ, իր որդւոյն ձեռքովը սպաննուելով։ Ագամեմնոն՝ իր Կլիտեմնեստրա կնոջը ձեռքովը սպաննուեցաւ։ Իսկ մէկալները, ինչպէս Իդոմենէ, Փիլոկտետ, Դիոմեդէսք և Տեւկեր՝ իրենց հայրենիքէն քշուելով, գնացին հեռաւոր երկիրներ իրենց նոր հայրենիք փնտռելու։

Ենէաս, Պրիամու փեսան, հինգ հազարի չափ Տրովացի հետը առած քսանըմէկ նաւով Իտալիա գնաց, ու Հռովմայեցւոց նախահայրն եղաւ. Անտենորն ալ Վենետկոյ կողմերը Պատաւիոն քաղաքը շինեց։

---

1 Տրոյիոյ կործանելէն ետև Յոյնք ինչ ըրին։

1 Գիտնալու է որ Յունաց ազգին պատմութիւնը ինչուան նաև Տրովիոյ կործանմանէն շատ տարի ետքը շատ առասպելախառն է, և աւելի բանաստեղծից գիւտերովը զարդարուած է քան թէ իրական դիպուածներով ու հաւատարիմ պատմիչներու վկայութեամբ հաստատուած։

2 Տրովիոյ կործանմանէն ութսուն տարի ետքը, Հերակլեանք Աթենացւոց Կոդրոս թագաւորին վրայ պատերազմի ելան, որովհետև անիկայ իրենց թշնամիքը ընդունէր էր, և ինչուան Աթէնքին դուռը հասան։ Կոդրոս յուսահատած՝ պատգամ հարցուց. պատգամախօսը պատասխան տուաւ թէ երկու ժողովրդոց՝ այսինքն Աթենացւոց ու Հերակլեանց, որուն որ թագաւորը մեռնի՝ ան ժողովուրդը պիտի յաղթէ։ Հերակլեանք ալ պատգամ հարցուցին, նոյն պատասխանն առին։ Մտածեց արիասիրտն Կոդրոս որ լաւ է ժողովրդեանը սիրոյն համար մեռնի՝ քան թէ կենդանի մնալով կերպով մը անոր յաղթութեան պատճառ սեպուի։ Առանց իր միտքը մարդու յայտնելու՝ բանակին դլուխն անցաւ, ելաւ Հերակլեանց դիմացը, երբոր տեսաւ որ անոնց նետերը ամենևին դէպ 'ի իր կողմը չեն նետուիր (որովհետև Հերակլեանք զինքը

---

1 Տրովիոյ պատերազմին և անկէ առաջ եղած պատմութիւնները ինչ աստիճանի ստուգութիւն ունին։

2 Կոդրոս թագաւորին վրայ ինչ կայ գիտնալու։

Ճանչնալով ամէն զգուշութիւն կ'ընէին որ պատգամը անոր վրայ չկատարուի), մէկդի ձգեց իր Թագաւորական ծիրանին. գեղացի մուրացկանի հագուստ մը հագաւ, նետուեցաւ Թշնամեաց մէջ ու Քո է յաղթութիւն, ո՛վ Աթէնք, կանչելով, զարնուեցաւ մեռաւ (1095)։ Իսկ զօրքը իրենց Թագաւորին անձնանուէր զոհն որ տեսան, անանկ քաջութեամբ սրտերնին վառուեցաւ, որ մէկէն քշեցին հալածեցին Հերակղեանքը։

1 Աթենացիք երախտագիտութեամբ՝ Կոդրոսին տեղը Թագաւոր անունով յաջորդ չգրին. Թագաւորութիւնը վերուցին, ու տեղը Արխոն անունով իշխան մը գրին, որ երկիրը կը կառավարէր ու ժողովրդեան հաշիւ կուտար (1092)։ Առջի Արխոնն եղաւ Կոդրոսի որդին Մեդոն։ Ինչուան իրեք հարիւր քառասուն տարիի չափ՝ արխոնութիւնը որդւոց որդի մշանջենաւոր էր (852)։ Ետքը տասը տարուան իջեցուցին. վաթսունըութը տարի ետև մէկ Արխոնի տեղ ինը հատ գրին, իշխանութեան ժամանակն ալ մէկ տարուան կապեցին։

2 Յոնիացիք երբոր բնակութիւն հաստատելու համար Ատտիկէ եկան, երկիրը արդէն բազմամարդ ըլլալով սկսան նեղութիւն քաշել. ան ատենը Նեղէոս՝ Կոդրոսի երկրորդ որդին, զա-

---

1 Կոդրոսին տեղը ո՞վ իշխեց Աթենացւոց վրայ։
2 Փոքր Ասիոյ Յունաց սկիզբն ի՞նչպէս եղաւ։

նոնք ժողվեց, ու գնաց Փոքր Ասիոյ ծովեզերքը բնակեցաւ, որուն մէկ կողմը արդէն Եւողացիք Հերակղեանցմէ Պեղոպոննեսէն քշուելով եկեր բնակեր էին։ Նոյն ատենները քանի մը Դորացիք Արգոսէն, Եպիդաւրոսէն, Տրեզենէէն ելան նոյն քաղաքներուն բնակչացը հետ եկան Կարիա ըսուած ցամաքակղզին բնակեցան։ Անանկով Փոքր Ասիոյ արեւմտեան կողմը Եւողացիք բնակեցան, մէջ տեղուանքը Յոնիացիք, հարաւակողմն ալ Դորացիք։

1 Տրոյիոյ պատերազմէն երկու հարիւր երեսուն տարիի չափ ետքը (978), ծնաւ Հոմերոս, Յունաստանի առաջին ու ամենէն հռչակաւոր բանաստեղծը, որ և արժանի եղաւ Քերթողահայր կամ Հայր բանաստեղծութեան ըսուելու։ Յայտնի չէ թէ ո՛ր քաղաքը ծնած է Հոմերոս, և թէ ինչ կեանք անցուցած է. եօթը քաղաք՝ այսինքն Զմիւռնա, Քիոս, Կողոփոն, Սաղամիս, Հռոդոս, Արգոս, Աթէնք՝ կարծես թէ իրարմէ կ'ուզեն յափշտակել Հոմերոսին խանձարուրք ըլլալու փառքը, և իրարու հակառակ անոր մեռնելէն ետքը՝ տաճարներ, արձաններ կը կանգնէին, ու աստուածական պատիւ կ'ընծայէին իրեն. բայց ընդհանուր կարծիքն աս է թէ Զմիւռնա կամ Քիոս կղզւոյն մէջ ծնած ըլլայ։ Իր հրաշալի բանաստեղծութիւնները գրելէն առաջ շատ ճամ-

---

1 Ո՞վ էր Հոմերոս։ — Ո՞ւր ծնած էր։ — Ի՞նչ գրուածք ունի։

բորդութիւններ ըրեր է կ'ըսեն Հոմերոս Սպանիա, Իտալիա և Իթակէ կղզին. Ծերութեանը տանն աչքը կուրցեր է, և շատ աղքատութեան մէջ խյնտորով տախպուեր է որ գրած ոտանաւորները երգելով քաղքէ քաղաք պտըտի, ու ոգեպահիկ հացը մուրայ: Մեռնելէն ետքը Հոմերոս անունը անմահացընող երկու բանաստեղծութիւն Թողուց՝ որոնց վրայ ամէն տանն ամէնքը խրատամբ զարմացեր են: Առջինին մէջ որ Իլիական կ'ըսուի, կ'երգէ Հոմերոս Աքիլլեսի քաջութիւնը, և Տրոյիոյ պաշարման տանը Յունացըրած պատերազմները: Երկրորդին մէջ, որ Ոդիսական կ'ըսուի, Ոդիսեւսի ճամբորդութիւններն ու Իթակէ դառնալը կը պատմէ:

Հոմերոս իր երկու բանաստեղծութիւնն ալ ամբողջ ու կարգաւ գրած գիրք մը չէր ձեւացուցած. հապա, ինչպէս որ ըսինք, հատուած հատուած կը գրէր ու կ'երգէր, և ժողովուրդը զմայլած մտիկ ընելով բերնուց կը սորվէր, և անանկով ան սքանչելի բանաստեղծութիւնները անկորուստ մեզի հասան:

1 Լիկուրգոս, Յոնիոյ մէջ Հոմերոսի բանաստեղծութեանց հատուածները գտնելով ժողվեց Պեղոպոնես տարաւ. և Պիսիստրատ առաջինն եղաւ որ աս ցրուած կտորները ժողվեց գիրք մը ձեւացուց, ու Աթենացւոց ընծայեց: Անկէ ետքը Արիստոտէլ ալ մաքուր մէկ ձեռք

---

1 Ո՞վ կարգի դրաւ Հոմերոսի գրուածքները:

մը Մեծին Աղեքսանդրի համար օրինակեց, որ ազնուին գոհարներով զարդարած սնտուկի մը մէջ կը պահէր: Ամենէն ետքը Արիստարքոս Աղեքսանդրացի* անուանի քերականը՝ աւելի աղէկ կարգի վրայ առաւ զանոնք, անհարազատ տողերը մէջէն թօթափեց. և Իլիականը քսանըչորս երգ բաժնեց, որ ինչուան հիմայ նոյն բաժանմունքն ունի:

1 Հոմերոսի ժամանակակից կը սեպուի նաև Եսիոդոս բանաստեղծը (944): Ծնաւ Եւոլիոյ Կումա քաղաքը, և Բէովտիոյ Ասկրա քաղաքին մէջ մեծցաւ: Իր գլխաւոր բանաստեղծութիւնները են Գործք և Տիւք ըսուածը, որուն մէջ մըշակութեան վրայ կը խօսի. ասոր հետևելով գըրած է նաև Վիրգիլիոս իր Մշակականը. Ծննդաբանութիւն աստուածոց, ուր դից ազգաբանութիւնը կ'երգէ. և Վահան Հերակլէի ըսուածը, որուն

---

1 Եսիոդոս ո՞վ էր: — Ի՞նչ գրուածք ունի:

* Արիստարքոսի անունը առակ եղած է՝ այնպէս որ անաչառ, խորախորհուրդ և քննիչքան քննադատներուն Արիստարքոս կ'ըսեն. իսկ Զոյիլոս իմաստակին ու քերականին անունը կուտան կողմնակէր ու նախանձոտ քննադատներու. Վասն զի շատ անուանի բան է ասոր Հոմերոսի դէմ ունեցած ատելութիւնը, որով Հոմերաձաղկ ըսուած է՝ այսինքն ձաղկիչ Հոմերոսի:

մէջ հին ատենի կործանութեան կողմանէ անուանի կնիկ մարդիկը կը գովէ, ու Հերակլի վահանը մանրամասն կը նկարագրէ։

1 Աս երկու բանաստեղծներէն ետքը Լիկուրգոս անունով հռչակաւոր օրէնսդիրն ելաւ, ու Լակեդեմոնացւոց օրէնքներ տուաւ, որ հինգ հարիւր տարիի չափ պահուեցան։ Սպարտայի Եւնոմիոս թագաւորին պզտիկ որդին էր Լիկուրգոս։ Երբոր իր մեծ եղբայրը Պողիդեկտոս, որ ան ատենը կը թագաւորէր՝ անորդի մեռաւ, Լիկուրգոսի ընկաւ թագաւորութիւնը. բայց քիչ մը ատեն թագաւորելէն ետքը երբոր իմացաւ թէ եղբօրը կինը յղի է, միտքը դրաւ որ մանչ տղայ ծնանելուն պէս՝ թագաւորութիւնը անոր տայ. եղբօրը կինը իրեն մարդ խրկեց ծածուկ որ եթէ զինքը իրեն կին առնէ՝ իր զաւակը աներևոյթ կ'ընէ։ Բայց Լիկուրգոս յանձն չառաւ ինչուան որ կինը մանչ մը ծնաւ. մէկէն առաւ անիկայ Լիկուրգոս, Ահա աս է ձեր թագաւորը ըսելով, ժողովրդեան ցըցուց։ Շատ ուրախացաւ ժողովուրդը, և անոր համար անունը Քարիլաւոս դրին, որ ուրախութեա՛ն ընդունուած ըսել է։ Առջի բերան ինքը անոր խնամակալ եղաւ, բայց երբոր քիչ մը մեծցաւ տղան՝ բոլոր իշխանութիւնը անոր ձեռքը տուաւ։

2 Տրոյիոյ պատերազմէն ետքը երբոր եկան

---

1 Ո՞վ էր Լիկուրգոս։
2 Ինչուան Լիկուրգոսի ատեն Սպարտայի կառավարութիւնն ի՞նչպէս էր։

Հերակլեանք նորէն Պելոպոնեսի տիրեցին Սպարտայի մէջ ինը հարիւր տարիի չափ երկերկու թագաւոր մէկտեղ թագաւորեցին, ուստի խռովութիւնը մէջերնին պակաս չէր. Ժողովուրդը զանոնք կ'արհամարհէր, ու օրէ օր անսանձելի կ'ըլլար։ Աս բաները տեսնելով Լիկուրգոս՝ միտքը դրաւ որ իր հայրենիքը բարեկարգէ։ Եւ որպէս զի խելացի օրէնքներ դնէ՝ մտածեց որ ճամբորդութիւն մը ընէ, ուրիշ ազգաց սովորութիւններն անձամբ քննէ նայի, և իմաստնոց խորհուրդ հարցընէ. ուստի ելաւ տասը տարի պտըտեցաւ Կրետէ, Յոնիա և Եգիպտոս։

1 Ան երկայն ճամբորդութեամբը շատ փափաքելի եղաւ Լիկուրգոս իր քաղաքակցացը. շուտով զինքը ետ կանչեցին որ գայ իրենց կարգ կանոն դնէ։ Դարձաւ Լիկուրգոս Սպարտա, և դեռ մեծ գործողութեանը ձեռք չզարկած՝ Դելփիս գնաց զոհ ըրաւ, Ապողոնէն պատգամ խնդրեց. ան ալ իրեն պատասխան տուաւ թէ Սպարտացիք Լիկուրգոսի օրէնքներովը բոլոր աշխարհիս մէջ անուանի պիտի ըլլան։ Դարձաւ Լիկուրգոս Սպարտա, և մեծերուն հաւանութեամբը սկսաւ իր օրէնքները դնել։

2 Որոշեց որ անկեց ետքն ալ երկու թագա-

---

1 Ի՞նչպէս սկսաւ Լիկուրգոս իր օրէնսդրութիւնը։

2 Սպարտացւոց կառավարութեանը ի՞նչ կարգ դրաւ։

ւոր մէկտեղ Թագաւորեն, բայց անոնց իշխա-
նութիւնը շատ ամփոփեց: Քաանըութը հոգւով
ծերակոյտ մը դրաւ որ Թագաւորաց վրայ աչք
ունենան. կերպով մը ծերակոյտը Թագաւորաց
ու ժողովրդեան մէջ տեղը ամուր Թումբ մըն
էր, որ երկու կողմն ալ իրարու հետ համաձայն
պահելու կը ջանար: Ամէն դատաստան կամ ո-
րոշմունք իրենք կ'ընէին Թագաւորաց հետ ու
ժողովրդեան կ'առաջարկէին. եթէ հաւանէր
ժողովուրդը՝ ծափահարութեամբ կ'ընդունէր,
թէ չէ՝ կը լռէր, որ չընդունելուն նշան էր:

1 Երբոր ծերակուտէն մէկը մեռնէր, ծերա-
կոյտը անոր տեղը քանի մը հոգի կ'առաջարկէր,
որ միշտ վաթսուն տարեկան պիտի ըլլային: Բո-
լոր ժողովուրդը մեծ հրապարակը կը ժողվէր,
և առաջարկուած անձինքը մէկիկ մէկիկ լռու-
թեամբ կ'անցնէին անոնց առջևէն, ժողովուրդն
ալ ուրախական ձայներով անոնց ծափ կը զար-
նէր. հոն հրապարակին մօտ տան մը մէջ՝ կեցած
ծերակուտէն ոմանք ժողովրդեան ծափահարու-
թեան աստիճանին ուշ կը դնէին, և որուն անց-
նելու ատենը որ աւելի սաստիկ ըլլար ձայնը՝
անիկայ կ'ընտրէին: Ան ատենը նորընտիր ծե-
րունին գլուխը ծաղկապսակ՝ բոլոր աստուածոց
մեհեաններուն այցելութեան կը պտըտէր, և ե-
րիտասարդները բազմութեամբ ետևէն առջևէն

---

1 Ծերակուտին անդամները ինչպէս կ'ընտրու-
էին:

վազելով անոր առաքինութիւնները կը պատմէին կը գովէին, և իրիկունը հասարակաց փառաւոր հացկերոյթ կ՚ընէին, և ամէն բանէ իրեն երկերկու բաժին կը հանէին։

1 Բայց հարիւր երեսուն տարիէն երբոր ասոնք թագաւորաց հետ միանալով սկսան բռնութիւններ ընել, Եփորոս կամ Պարետ անունով մէյմէկ տարուան համար իշխան դրին, որ ինչուան թագաւորները բանտ դնելու իշխանութիւն ունէին։ Պարետա՛ց իշխանութիւնը գրուեցաւ Թէոպոմպ թագաւորին ատենը. երբոր ասոր ընկերը զինքը կը յանդիմանէր որ հօրմէն զօրաւոր իշխանութիւն ժառանգելով՝ իր որդւոց տկար իշխանութիւն մը պիտի թողու, պատասխան տուաւ. Մանաւանդ թէ աւելի զօրաւոր իշխանութիւն պիտի թողում, ըսաւ, որովհետև թողածս աւելի երկարատև պիտի ըլլայ։

2 Բոլոր երկրին վրայ քանի մը հոգի միայն տիրած էին, ու մէկալնոնք թիզ մը գետին չունէին. Լիկուրգոս երեսուն հազար հաւասար կտոր բաժնեց բոլոր Լակոնիան, Սպարտան ալ ինը հազար, ու ամէն մասը մէյմէկ քաղաքացւոյ տուաւ։ Ամեննևին մէկը չէր կրնար իր մասը մեծցընել կամ պզտիկցընել։

3 Ագահութեան ախտն ալ Սպարտացւոց

---

1 Ե՞րբ սկսան պարետաց իշխանութիւնը.
2 Երկիրները ի՞նչպէս բաժնեց Լիկուրգոս։
3 Սպարտացիք ի՞նչ ստակ կը բանեցընէին։

սրտէն հանելու համար՝ ամենուն քովէն ոսկին ու արծըթէ ստակները ժողվեց, և գործածողին պատիժ մահ դրաւ, անոնց տեղը ծանր ու կոշտ երկըթէ ստակներ կտրել տուաւ. չորս հարիւր ֆռանքը այնչափ ծանր կ'ըլլար որ երկու եզ հազիւ կրնային տանիլ, ու սենեակ մը ինչուան ձեղունը կը լեցուէր այնչափ ստըկով։

1 Տները, կամ կարասիքը, ամենուն հագուստը պարզ ու միակերպ էր։ Օրէնք դրաւ որ թագաւորները, մեծատունք ու աղքատք մէկտեղ հասարակաց սեղանը նստին, և ուրախութեամբ որոշուած կերակուրը ուտեն ամէնքը անխտիր։ Աս բանիս վրայ հարուստները շատ նեղացան, և ժողովրդեան խռոված ատենը՝ Աղկանդրոս երիտասարդը գաւազանով մը զարկաւ Լիկուրգոսին մէկ աչքը կուրցուց։ Ժողովուրդը բարկացած՝ մէկէն զէնքը բռնեցին Լիկուրգոսին բերին որ ուզածին պէս պատժէ. ան ալ փոխանակ վրէժխնդրութեամբ անոր մէկ աչքը հանելու՝ քաղցրութեամբ քովն առաւ, ու դրած օրէնքին օգուտներն անոր հասկըցընելով՝ սիրտը վաստըկեցաւ։

2 Տարին հինգ հոգի մէկ սեղան կը նստէին, և հասարակաց սեղանը կուշտ երթալ չէր ըլլար. թէ որ մէկը բան մը չուտէր կամ չխմէր՝ ամենէն

---

1 Մասնաւոր ինչ հասարակաց օրէնքներ դրաւ Լիկուրգոս։

2 Սպարտացւոց կերակուրներն ինչպէս էին։

կը նախատուէր իբրև անժուժկալ և փափկատէր որ հասարակաց կերակուրը անպիտան կը սեպէ։ Ամէն մարդ ամսէ ամիս գրիւ մը ալիւր կը բերէր, ութը չափ գինի, հինգ լիտր պանիր, երկուք ու կէս լիտր թուզ, քանի մը հատ ալ ան երկաթ ստակներէն՝ եփելու ծախքին համար։ Սպարտացւոց կերակուրներուն համեմներն էին աշխատանքը, անօթութիւնն ու ծարաւը։ Ամենէն ազնիւ կերակուրնին էր սև համէճ ըսածնին, որ ծերերը շատ կը սիրէին։

1 Հասարակաց սեղանները տղաք ալ կ՚երթային, ու հոն օգտակար բաներու վրայ խրատներ կը լսէին. կը սորվէին թէ ինչպէս կրնայ մարդ առանց գինմացնելու սիրտը ծակելու կատակ ընել, խօսք մը ըսել, զուարճանալ և ուրիշները զուարճացընել։ Պատասխանները պէտք ըլլային պատրաստ, կարճ ու խելացի. ուստի այնպիսի խօսակցութեան կերպը ըսուեցաւ Լակոնաբանութիւն կամ Լակոնական ոճ։

2 Լիկուրգոսի օրէնքները տղոց դաստիարակութեան մէջ շատ պակասաւոր էին։ Տղայ մը ծնանելուն պէս՝ ցեղին գլխաւորները նայելու կուգային. թէ որ տղան կայտառ ըլլար՝ անոր մէկէն դայեակներ կը բռնէին, և ժառանգութիւն կուտային. իսկ եթէ տկար երևնար՝ ան-

---

1 Տղաք ալ կը նստէի՞ն հասարակաց սեղանը։
2 Տղոց դաստիարակութեանը համար ինչ օրէնքներ դրաւ Լիկուրգոս։

*գթաբար դուրս կը նետէին։ Պզտիկուց տղոց չարքաշութիւն կը սորվեցընէին. կը վարժեցընէին որ մութ տեղ՝ կամ մինակ կենալէն չվախնան, ամէն բանի չլան, բոպիկ ոտքով պտըտին, գետնի վրայ պառկին, ամառ ձմեռ նոյն հագուստը հագնին։*

1 *Եօթը տարեկան երբոր կ՚ըլլային տղաք, հասարակաց վարպետներու կուտային որ զանոնք դաստիարակեն, և ամէն բանէ աւելի կը ջանային որ անոնց հնազանդութիւն սորվեցընեն, գիտէր Լիկուրգոս որ տղաք պզտիկուց իրենց վարժապետացը հնազանդիլ չսորվին նէ, վերջը օրինաց և իշխանաց ալ չեն հնազանդիր։ Երաժշտութենէ զատ ամենևին ուրիշ գիտութիւն չէին սորվեր։*

2 *Պատերազմի մէջ հնարքներ բանեցընելու, վտանգներու և արթնութեան վարժելու համար հրաման ունէին տղաք գողութիւն ընելու. բայց թէ որ գողութիւննին իմացուէր՝ սաստիկ կը պատժուէին որ ինչո՞ւ համար ձեռք ընկաւ։*

3 *Լակեդեմոնացի տղոց չարքաշութիւնը աւելի յայտնի կ՚իմացուէր Արտեմեայ տօնին օրը,*

---

1 *Սպարտացիք աւելի ի՞նչ բանի կը ջանային վարժեցընել տղաքը։*

2 *Գողութիւնը ի՞նչպէս կը պատժէին Սպարտացիք։*

3 *Տղոց չարքաշութիւնը ի՞նչ բանի մէջ աւելի կ՚իմացուէր։*

*ուր իրենց ծնողացը ու բոլոր քաղաքացւոց աչքին առջևը անգութ աստուածուհւոյն բագնին վրայ պարկած՝ իրենք զիրենք ծեծել կուտային. Վրաներնէն արիւնը կը վազէր, և շատ անգամ ալ ինչուան կը մեռնէին առանց ձայն մը հանելու, և ծնողքնին կեցած սիրտ կուտային անոնց որ քաջութեամբ դիմանան ինչուան վերջը։*

*1 Պատերազմի ատեն թէ որ թշնամին Լակոնիա մտնէր՝ ինչուան վաթսուն տարեկանէ վեր եղողներն ալ զէնք կ՚առնէին իրենց հայրենիքը պաշտպանելու։*

*2 Սպարտացւոց գլխաւոր կրթութիւնը պատերազմն էր. ուրիշ արուեստներն ու երկրագործութիւնն ալ իրենց Եղոտացի ըսուած գերիներուն ընել կուտային *։ Պատերազմին առաջին օրէնքն էր թշնամեացմէ չփախչիլ, հապա յաղթել կամ մեռնիլ։ Սպարտացի մայր մը իր որդին պատերազմի խրկելով վահանը ձեռքը*

---

*1 Որո՞նք կ՚երթային պատերազմի։*
*2 Սպարտացւոց գլխաւոր արուեստն ինչ էր։*

* Եղոտացիք Լակոնիոյ հին բնակչաց մէկ մասն էին. ասոնց Սպարտացիք Լիկուրգոսէն քիչ մը առաջ յաղթեր ու զանոնք գերի ըրեր էին. և շարաչար աշխատցնելէն զատ, անգթաբար կը տանջէին խեղճերը. օրինակի համար ուզելով իրենց տղաքը ցուցնել որ գինովութիւնը գէշ բան է, կ՚առնէին Եղոտացի մը կը գինովցնէին։

տուեր ու ըսեր է. Կամ վահանովդ դառնաս, կամ վահանիդ վրայ: Ուրիշ մը լսելով թէ որդին քաջութեամբ հայրենեաց համար պատերազմելով մեռեր է, անխռով կ'ըսէ. Ես ալ անոր համար ծնայ զինքը: Դասալիք զինուորը ամէն փառքէ ու իշխանութենէ կը զրկուէր, և հետը ոչ ոք խնամութիւն կ'ընէր:

1 Աղջիկ տղաք ալ Սպարտա մանչ տղոց պէս չարքաշ կը մեծնային, և իրենք ալ զէնք բանեցընել կը սորվէին. հարկ եղած ատենը կ'երթային երիկ մարդկանց պէս թշնամւոյն հետ կը կռուէին, և կամ իրենց երկանը ու զաւակացը քով կեցած անոնց սիրտ կուտային:

2 Ծերերուն շատ պատիւ կ'ընէին Սպարտացիք, մտածելով որ անոնք կեանքերնին հայրենեաց օգտակար գործքերով անցուցած են: Տըղաք ծեր մը տեսնելնուն պէս՝ յարգութեամբ զինքը կը բարևէին, ժողովքներու մէջ ծերոց առջև չէին նստէր, և հլութեամբ անոնց տուած խրատներուն մտիկ կ'ընէին: Աս բաներովս մէկուն Սպարտացի ըլլալը մէկէն կ'իմացուէր. վասն զի ասոր հակառակ ընելը՝ ամէն մարդ իրեն անպատուութիւն, և հայրենեաց նախատինք կը սեպէր:

3 Սպարտայի մէջ ամէն գործք, խօսակցու-

---

1 Աղջիկ տղոց ի՞նչ կրթութիւն կուտային:
2 Ծերոց հետ ի՞նչպէս կը վարուէին:
3 Մեռելոց համար ի՞նչ հանդէս կ'ընէին Սպարտացիք:

թիւն, հրապարակական արձաններն ու արձանագրութիւններն ալ անանկ էին՝ որ առաքինութիւնն ու քաջութիւնը սիրելի, մոլութիւններն ատելի կ'ընէին քաղաքացւոց։ Ամենեւին մեռելոց համար փառաւոր շիրիմներ, յիշատակարաններ չէին կանգներ։ Պատերազմի մէջ հայրենեաց համար մեռած կորիճին գերեզմանին վրայ պարզ տապանագիր մը կը դնէին։ Մեռելի վրայ ամենեւին չէին լար, տասնըմէկ օր միայն սուգ կը բռնէին։

1 Լիկուրգոս այս օրէնքները դնելէն ետքը Սպարտացիքը ժողվեց, ըսաւ որ հարկաւոր ճամբորդութիւն մը պիտի ընեմ, զամէնքը երդուընցուց որ մինչուան դառնայ՝ դրած օրէնքները հաստատուն պահեն. Ելաւ ինքը Դեղփիս գնաց և Ապողոնին պատգամ հարցուց։ Քրմուհին պատասխան տուաւ թէ Բոլոր դրած օրէնքներդ կատարեալ են. և թէ որ Սպարտացիք զանոնք պահեն, աշխարհիս ամենէն երևելի քաղաքը պիտի ըլլայ Սպարտա։ Ան ատեն Լիկուրգոս կամօք անօթի մնալով մեռաւ հոն տեղը, որպէս զի Սպարտացիք իրենց երդմանը կապուած մնան։ Ոսկորներն ալ պատուիրեց որ ծովը նետեն, որպէս զի չըլլայ թէ Լակեդեմոնացիք Սպարտա տանելով իրենց երդմունքէն արձակուած սեպուին։

---

1 Լիկուրգոսի վերջն ի՞նչպէս եղաւ։

# ԳԼՈՒԽ Գ.

Ողիմպիական խաղեր. — Առաջին Ողիմպիադ. — Առաջին պատերազմ Մեսսենիոյ. — Արիստոդեմ. — Երկրորդ պատերազմ Մեսսենիոյ. — Արիստոմենէս. — Տիրտէոս բանաստեղծը. — Առումն Իրայ. — Մեսսենիացւոց ցրուիլը:

1 Այն ատեններն որ Լիկուրգոս Սպարտացւոց օրէնք կը դնէր՝ Պեղոպոննեսի մէջ Ողիմպիական խաղերը նորէն հաստատուեցան: Վասն զի Դորացւոց աշխարհակալութենէն առաջ Եղիս գաւառին մէջ Ալփէոս գետին բարեբեր ափունքը Ողիմպեան Արամազդայ նուիրած էին և հոն կրօնական հանդէսներ ու խաղեր կ'ըլլային. այն խաղերը, որոնց մէջ՝ ինչպէս որ տեսանք, առջի խաղցողն Հերքիւլէսն եղաւ, Դորացւոց պատերազմներուն ատենը բոլորովին դադրեր էին: Երբոր Եղիս գաւառը Իփիտոսի ժառանգութիւն ընկաւ (884), Դեղփիսի պատգամախօսին խորհրդովը Իփիտոս Ողիմպիական հանդէսները նորէն հաստատեց:

---

1 Ողիմպիական խաղերը ե՞րբ ու ի՞նչպէս հաստատուեցան:

1 Աս հանդէսը կը կատարուէր ամառնային արևադարձին ատենը, հինգ օր կը տևէր, և միշտ Ողիմպեան Արամազդայ զոհ մը ընելով կը սկսէր ու կը վերջանար։ Ան հինգ օրուան մէջ ալ ատեն ատեն այլ և այլ խաղեր կը խաղային, ինչպէս էր գօտեկռիւ*, ըմբշամարտութիւն, կռափամարտ**, հատեւառիկ խաղը, սկտեղը խաղը***, ընթացից խաղը****, որուն մէջ կ'երթար հետիարշաւ, ձիընթաց, ու կառարշաւ։ Ան խաղերուն մէջ Յոյնք միայն կրնային մտնել, անոնց մէջէն ալ ազատ մարդիկը։ Յաղթողներուն կուտային ձիթենիէ, լախուրէ, ու դափնիէ պսակ մը, և իրենց հայրենիքը դառնալու ատեննին քաղաքին պատը քիչ մը տեղ կը փլցընէին ու անկէ յաղթանակաւ զինքը կառքով ներս կը մտցընէին։

---

1 Ո՞ր ատեն և ինչպէս կը կատարուէին Ողիմպիական խաղերը։

* Գօտեկռիւներն ու ըմբշամարտները մէկզմէկ կռնըկի վրայ պառկեցնել կը ջանային։

** Կռփամարտները ձեռքերնուն վրայ կաշի պատած ու վրան պղնձէ կամ երկաթէ թիթեղ անցուցած՝ իրարու կը զարնէին կը վիրաւորէին։

*** Սկտեղք խաղ ըսուածը ան էր որ փայտէ, քարէ կամ երկաթէ ծանր բոլորակ մը ուժով կը նետէին և հեռու նետողը կը յաղթէր։

**** Ասոր մէջ ըմբշամարտութեան ու կռփամարտութեան գործերը խառն մէկտեղ կ'ընէին։

1 Ողիմպիական խաղերուն մէջ առջի յաղթողն եղաւ Կորեբոս՝ Քրիստոսէ եօթը հարիւր եօթանասունըվեց տարի առաջ, և ան տարին եղաւ առաջին ողիմպիադը։ Ողիմպիադ կ'ըսուի չորս տարուան շրջանը, այսինքն մէկ հանդէսէն ինչուան մէկալը եղած չորս տարուան միջոցը։

Անկէ ետքը սկսան Յոյնք Թուականի տեղ ողիմպիադը գործածել, որով իրենց պատմութեան ժամանակներուն մէջ սկսաւ քիչ մը ստուգութիւն մտնել։

2 Իններորդ ողիմպիադին երկրորդ տարին (743), արիւնահեղ պատերազմ մը բացուեցաւ Սպարտացւոց ու Մեսսենիացւոց մէջ։ Սպարտացիք փառասիրութեամբ կ'ուզէին իրենց սահմանը մեծցընել ու Մեսսենիոյ բարեբեր դաշտերուն տիրել, վասն զի այլ և այլ պատճառներով ալ աս երկու ազգերը իրարու թշնամացեր էին. և գլխաւորը աս էր. Եւենոս Սպարտացին, Մեսսենիայի Պոլիքարէս իշխանին ոչխարները գողցեր ու անոր որդին սպաններ էր։ Իր ծառաներն ու քովի մարդիկը հետն առած Պոլիքարէս՝ Սպարտա կը վազէ վրէժխնդրութիւն ուզելու. բայց ոչ ծերակոյտը իրեն բողոքանքը մը-

---

1 Ողիմպիական խաղերուն մէջ առջի յաղթողը ո՞վ եղած է։ — Առաջին ողիմպիադը Քրիստոսէ քանի՞ հարիւր տարի առաջ կը սկսի։
2 Ան տենները ի՞նչ պատերազմ բացուեցաւ Յունաստանի մէջ։

տիկ կ՚ըսէ, ոչ ժողովուրդը, և ոչ Թագաւորները. Գողկեարէս ալ մրտին ցաւէն աչքը դարձած՝ հայրենիքը դառնալու տենը՝ Ճամբան դիմացը հանդիպած Սպարտացիները կը զարնէ կը սպաննէ: Աս որ լսեցին Սպարտացիք, ուզեցին որ Մեսսենիացիք Գողկեարէսը իրենց ձեռքը մատնեն. Մեսսենիացիք յանձն չառին իրենց հայրենակիցը անանց ձեռքը տալ, բայց ըսին որ վէճին վրայ Ամփիկտիոնի ատենին մէջ իրարու հետ խօսինք: Սպարտացիք ամենեւին պատասխան չտուին, ու պատերազմի պատրաստուեցան. երդում ըրին թէ ինչուան որ Մեսսենիան չկործանենք՝ Սպարտա չդառնանք, և կամ ամէնքնիս մեռնինք:

1 Աս միքով Սպարտացիք առանց առաջուց պատերազմ հրատարակելու, Մեսսենիա մտան, յանկարծակի Ամփիս քաղաքն առին, ու բնակիչքը թրէ անցուցին. Մեսսենիացիք ալ իրենց Եւփայէս Թագաւորին առաջնորդութեամբը պատերազմի ելան: Ճակատեցան Սպարտացիք ու Մեսսենիացիք, և սկսան անխնայ մէկզմէկ ջարդել. ամենեւին մէկ կողմը չէր ուզեր խոնարհիլ՝ հաշտութիւն խօսիլ. մէկ կողմին կատաղութիւնը միւսալ կողմին հաստատութեանը հաւասար ըլլալով, վերջապէս յաղթութիւնը անորոշ մնաց. գիշերը միայն վրայ հասնելով հարկ եղաւ որ երկու բանակները իրարմէ զատուին: Եր-

---

1 Ի՞նչպէս սկսաւ Սպարտացւոց ու Մեսսենիացւոց պատերազմը:

կռուոյ օրը երկու կողմն ալ ոչ նորէն պատերազմ ուզեցին ընել, և ոչ յաղթութեան նշաններ կանգնել, իրարու մարդ խրկեցին, մեռելնին առին, ու սկսան զանոնք թաղել:

1 Այն պատերազմէն ետքը Մեսսենիացւոց մէջ ժանտախտ իյնալով շատ մարդ մեռաւ, մնացածներն ալ Լակոնիոյ մէջ Իթոմոս լեռան ամուր բերդը փախան: Ետքը մարդ խրկեցին Դեղփիս պատգամ հարցընելու թէ ինչ դարման ընեն իրենց թշուառութեանը. պատասխան եկաւ թէ Աստուածոց բարկութիւնը իջեցընելու համար պէտք է թագաւորազն աղջիկ մը վիճակով ընտրել ու գիշերը անոնց զոհ ընել: Վիճակ ձգեցին, և վիճակը Լիկիսկոս անունով մէկուն աղջկանը վրայ ելաւ. բայց Լիկիսկոս աղջիկն առաւ Սպարտա փախաւ: Երբոր Մեսսենիացիք շփոթած կեցեր էին, մէկէն Արիստոդեմ անուանի զօրավարը հանեց իր աղջիկը տուաւ, իր ձեռքովը զարկաւ մեռուց զաղջիկը, և պատգամը կատարեց: Աս բանս լսելով Լակեդեմոնացիք շատ վախցան. կարծէին որ ալ աստուածներն իրենց դէմ զանոնք պիտի պաշտպանեն. ասանկով եօթը տարի անցաւ և Սպարտացիք ոչ կը համարձակէին պատերազմելու, և ոչ պատերազմէն ետ կենալու, որովհետև երդում ըրեր էին:

---

1 Առջի պատերազմէն ետքը ինչ պատահեցաւ:

ուր իրենց ծնողացը ու բոլոր քաղաքացւոց աչքին առջևը անգութ աստուածուհւոյն բագնին վրայ պարկած՝ իրենք զիրենք ծեծել կուտային. վրաներնէն արիւնը կը վազէր, և շատ անգամ ալ ինչուան կը մեռնէին առանց ձայն մը հանելու, և ծնողքնին կեցած սիրտ կուտային անոնց որ քաջութեամբ դիմանան ինչուան վերջը։

1 Պատերազմի ատեն թէ որ թշնամին Լակոնիա մտնէր՝ ինչուան վաթսուն տարեկանէ վեր եղողներն ալ զէնք կ'առնէին իրենց հայրենիքը պաշտպանելու։

2 Սպարտացւոց գլխաւոր կրթութիւնը պատերազմն էր. ուրիշ արուեստներն ու երկրագործութիւնն ալ իրենց Ելոտացի ըսուած գերիներուն ընել կուտային *։ Պատերազմին առաջին օրէնքն էր թշնամեացմէ չփախչիլ, հապա յաղթել կամ մեռնիլ։ Սպարտացի մայր մը իր որդին պատերազմի խրկելով վահանը ձեռքը

---

1 Որո՞նք կ'երթային պատերազմի։
2 Սպարտացւոց գլխաւոր արուեստն ի՞նչ էր։

* Ելոտացիք Լակոնիոյ հին բնակչաց մէկ մասն էին. անոնց Սպարտացիք Լիկուրգոսէն քիչ մը առաջ յաղթեր ու ամէնքը գերի ըրեր էին. և շարաշար աշխատցնելնուն զատ. անգթաբար ալ կը տանջէին խեղճերը. օրինակի համար ատենով իրենց տղոցը ցուցնելու որ գինովութիւնը գէշ բան է, կ'առնէին Ելոտացի մը կը գինովցընէին։

տուեր ու ըսեր է, Կամ վահանովդ դառնաս, կամ վահանիդ վրայ։ Ուրիշ մը լսելով թէ որդին քաջութեամբ հայրենեաց համար պատերազմելով մեռեր է, անխռով կ'ըսէ. Ես ալ անոր համար ծնայ զինքը։ Դասալիք զինուորը ամէն փառքէ ու իշխանութենէ կը զրկուէր, և հետը ոչ ոք խնամութիւն կ'ընէր։

1 Աղջիկ տղաք ալ Սպարտա մանչ տղոց պէս չարքաշ կը մեծնային, և իրենք ալ զէնք բանեցնել կը սորվէին. հարկ եղած ատենը կ'երթային երիկ մարդկանց պէս թշնամւոյն հետ կը կռուէին, և կամ իրենց երկանը ու զաւակացը քով կեցած անոնց սիրտ կուտային։

2 Ծերերուն շատ պատիւ կ'ընէին Սպարտացիք, մտածելով որ անոնք կեանքերնին հայրենեաց օգտակար գործքերով անցուցած են։ Տըղաք ծեր մը տեսնելնուն պէս՝ յարգութեամբ զինքը կը բարևէին, ժողովքներու մէջ ծերոց առջև չէին նստեր, և հլութեամբ անոնց տուած խրատներուն մտիկ կ'ընէին։ Այս բաներովս մէկուն Սպարտացի ըլլալը մէկէն կ'իմացուէր. վասն զի ասոր հակառակ ընելը՝ ամէն մարդ իրեն անպատուութիւն, և հայրենեաց նախատինք կը սեպէր։

3 Սպարտայի մէջ ամէն գործք, խօսակցու-

---

1 Աղջիկ տղոց ի՞նչ կրթութիւն կուտային։
2 Ծերոց հետ ի՞նչպէս կը վարուէին։
3 Մեռելոց համար ի՞նչ հանդէս կ'ընէին Սպարտացիք։

թիւն, հրապարակական արձաններն ու արձանագրութիւններն ալ անանկ էին՝ որ առաքինութիւնն ու քաջութիւնը սիրելի, մոլութիւններն ատելի կ՚ընէին քաղաքացւոց։ Ամենէն մեռելոց համար փառաւոր շիրիմներ, յիշատակարաններ չէին կանգներ։ Պատերազմի մէջ հայրենեաց համար մեռած կտրիճին գերեզմանին վրայ պարզ տապանագիր մը կը դնէին։ Մեռելի վրայ ամենեւին չէին լար, տանը մէկ օր միայն սուգ կը բռնէին։

1 Լիկուրգոս աս օրէնքները դնելէն ետքը Սպարտացիքը ժողվեց, ըսաւ որ հարկաւոր ճամբորդութիւն մը պիտի ընեմ, զամէնքը երդուընցուց որ ինչուան դառնայ՝ դրած օրէնքները հաստատուն պահեն. ելաւ ինքը Դեղփիս գնաց և Ապողոնին պատգամ հարցուց։ Քրմուհին պատասխան տուաւ թէ Բոլոր դրած օրէնքները կատարեալ են. և թէ որ Սպարտացիք զանոնք պահեն, աշխարհիս ամենէն երեւելի քաղաքը պիտի ըլլայ Սպարտա։ Ան ատեն Լիկուրգոս կամօք անօթի մնալով մեռաւ հոն տեղը, որպէս զի Սպարտացիք իրենց երդմանը կապուած մնան։ Ոսկորներն ալ պատուիրեց որ ծովը նետեն, որպէս զի չըլլայ թէ Լակեդեմոնացիք Սպարտա տանելով իրենց երդմունքէն արձակուած սեպուին։

---

1 Լիկուրգոսի վերջն ինչպէս եղաւ։

# ԳԼՈՒԽ Գ.

Ողիմպիական խաղեր. — Առաջին Ողիմպիադ. — Առաջին պատերազմ Մեսսենիոյ. — Արիստոդեմ. — Երկրորդ պատերազմ Մեսսենիոյ. — Արիստոմենէս. — Տիրտէոս բանաստեղծը. — Առումն Իրայ. — Մեսսենիացւոց ցրուիլը:

1 *Այն ատեններն որ Լիկուրգոս Սպարտացւոց օրէնք կը դնէր՝ Պեղոպոնեսի մէջ Ողիմպիական խաղերը նորէն հաստատուեցան: Վասն զի Դորացւոց աշխարհակալութեններն առաջ Եղիս գաւառին մէջ Ալփէոս գետին բարեբեր ափունքը Ողիմպեան Արամազդայ նուիրած էին և հոն կրօնական հանդէսներ ու խաղեր կ'ըլլային. այն խաղերը, որոնց մէջ ինչպէս որ տեսանք, առջի խաղցողն Հերքիւլէսն եղաւ, Դորացւոց պատերազմներուն ատենը բոլորովին դադրեր էին: Երբոր Եղիս գաւառը Իփիտոսի ժառանգութիւն ընկաւ (884), Դեղփիսի պատգամախօսին խորհրդովը Իփիտոս Ողիմպիական հանդէսները նորէն հաստատեց:*

---

1 *Ողիմպիական խաղերը ե՞րբ ու ի՞նչպէս հաստատուեցան:*

1 Աս հանդէսը կը կատարուէր ամառնային արեւադարձին ատենը, հինգ օր կը տեւէր, և միշտ Ողիմպեան Արամազդայ զոհ մը ընելով կը սկսէր ու կը վերջանար։ Ան հինգ օրուան մէջ ամմէն ատեն այլ և այլ խաղեր կը խաղային, ինչպէս էր գօտեկռիւ *, ըմբշամարտութիւն, կռփամարտ **, հասեւառիկ խաղը, սկտեղը խաղը ***, ընթացից խաղը ****, որուն մէջ կ'երթար հետիարշաւ, ձիընթաց, ու կառարշաւ։ Ան խաղերուն մէջ Յոյնք միայն կրնային մտնել, անոնց մէջէն ալ ազատ մարդիկը։ Յաղթողներուն կուտային ձիթենիէ, լախուրէ, ու դափնիէ պսակ մը, և իրենց հայրենիքը դառնալու ատեննին քաղաքին պատը քիչ մը տեղ կը փլցընէին ու անկէ յաղթանակաւ զինքը կառքով ներս կը մտցընէին։

---

1 Ո՞ր ատեն և ինչպէս կը կատարուէին Ողիմպիական խաղերը։

* Գօտեկռուողներն ու ըմբշամարտները մէկզմէկ կռնըկի վրայ պառկեցնել կը ջանային։

** Կռփամարտները ձեռքերնուն վրայ կաշի պատած ու վրան պղնձէ կամ երկաթէ թիթեղ անցուցած՝ իրարու կը զարնէին կը վիրաւորէին։

*** Սկտեղի խաղ ըսուածը ան էր որ փայտէ, քարէ կամ երկաթէ ծանր բոլորակ մը ուժով կը նետէին և հեռու նետողը կը յաղթէր։

**** Ասոր մէջ ըմբշամարտութեան ու կռփամարտութեան գործքերը խառն մէկտեղ կ'ընէին։

1 Ողիմպիական խաղերուն մէջ առջի յաղթողն եղաւ Կորեբոս՝ Քրիստոսէ եօթը հարիւր եօթանասունըվեց տարի առաջ, և ան տարին եղաւ առաջին ողիմպիադը։ Ողիմպիադ կ'ըսուի չորս տարուան շրջանը, այսինքն մէկ հանդեսէն ինչուան մէկալը եղած չորս տարուան միջոցը։

Անկէ ետքը սկսան Յոյնք թուականի տեղ ողիմպիադը գործածել, որով իրենց պատմութեան ժամանակներուն մէջ սկսաւ քիչ մը ստուգութիւն մտնել։

2 Իններորդ ողիմպիադին երկրորդ տարին (743), արիւնահեղ պատերազմ մը բացուեցաւ Սպարտացւոց ու Մեսսենիացւոց մէջ։ Սպարտացիք փառասիրութեամբ կ'ուզէին իրենց սահմանը մեծցընել ու Մեսսենիոյ բարեբեր դաշտերուն տիրել, վասն զի այլ և այլ պատճառներով ալ աս երկու ազգերը իրարու թշնամացեր էին. և գլխաւորը աս էր. Եւեննոս Սպարտացին, Մեսսենիայի Պողիքարէս իշխանին ոչխարները գողցեր ու անոր որդին սպաններ էր։ Իր ծառաները ու քովի մարդիկը հետն առած Պողիքարէս՝ Սպարտա կը վազէ վրէժխնդրութիւն ուզելու. բայց ոչ ծերակոյտը իրեն բողոքանայը մը-

1 Ողիմպիական խաղերուն մէջ առջի յաղթողը ո՞վ եղած է։ — Առաջին ողիմպիադը Քրիստոսէ քանի՞ հարիւր տարի առաջ կը սկսի։

2 Ան ատենները ի՞նչ պատերազմ բացուեցաւ Յունաստանի մէջ։

տէկ կ'ընէ, ոչ ժողովուրդը, և ոչ Թագաւորները. Պոլիքարէս ալ սրտին ցաւէն աչքը դարձած՝ հայրենիքը դառնալու ատենը՝ ճամբուն դիմացը հանդիպած Սպարտացիները կը զարնէ կը սպաննէ: Աս որ լսեցին Սպարտացիք, ուզեցին որ Մեսսենիացիք Պոլիքարէսը իրենց ձեռքը մատնեն. Մեսսենիացիք յանձն չառին իրենց հայրենակիցը անոնց ձեռքը տալ, բայց ըսին որ վէճին վրայ Ամփիկտիոնի ատենին մէջ իրարու հետ խօսինք: Սպարտացիք ամենևին պատասխան չտուին, ու պատերազմի պատրաստուեցան. երդում ըրին Թէ ինչուան որ Մեսսենիան չկործանենք՝ Սպարտա չդառնանք, և կամ ամէնքնիս մեռնինք:

1 Աս մէջով Սպարտացիք առանց առաջուց պատերազմ հրատարակելու, Մեսսենիա մտան, յանկարծակի Ամփիա քաղաքն առին, ու բնակիչքը Թրէ անցուցին. Մեսսենիացիք ալ իրենց Եւփայէս Թագաւորին առաջնորդութեամբը պատերազմի ելան: Ճակատեցան Սպարտացիք ու Մեսսենիացիք, և սկսան անխնայ մէկզմէկ ջարդել. ամենևին մէկ կողմը չէր ուզեր խոնարհիլ՝ հաշտութիւն խօսիլ. մէկ կողմին կատաղութիւնը մէկալ կողմին հաստատութեանը հաւասար ըլլալով, վերջապէս յաղթութիւնը անորոշ մնաց. գիշերը միայն վրայ հասնելով հարկ եղաւ որ երկու բանակները իրարմէ զատուին: Եր-

1 Ի՞նչպէս սկսաւ Սպարտացւոց ու Մեսսենիացւոց պատերազմը:

կրորդ օրը երկու կողմն ալ ոչ՝ նորէն պատերազմ ուզեցին ընել, և ոչ յաղթութեան նշաններ կանգնել, երբոր մարդ խրկեցին, մեռելնին առին, ու սկսան զանոնք թաղել։

[1] Ան պատերազմէն ետքը Մեսսենիացւոց մէջ ժանտախտ ըլլալով շատ մարդ մեռաւ, մնացածները ալ Լակոնիոյ մէջ Իթոմէս լեռան ամուր բերդը փախան։ Ետքը մարդ խրկեցին Դելփիս պատգամ հարցընելու թէ ինչ դարման ընեն իրենց թշուառութեանը. պատասխան եկաւ թէ Աստուածոց բարկութիւնը իջեցընելու համար պէտք է թագաւորազն աղջիկ մը վիճակով ընտրել ու գիշերը անոնց զոհ ընել։ Վիճակ ձգեցին, և վիճակը Լիկիսկոս անունով մէկուն աղջկանը վրայ ելաւ. բայց Լիկիսկոս աղջիկն առաւ Սպարտա փախաւ։ Երբոր Մեսսենիացիք շփոթած կեցեր էին, մէկէն Արիստոդեմ անուանի զօրավարը հանեց իր աղջիկը տուաւ, իր ձեռքովը զարկաւ մեռուց զաղջիկը, և պատգամը կատարեց։ Աս բանս լսելով Լակեդեմոնացիք շատ վախցան. կարծէին որ ալ աստուածներն իրենց դէմ զանոնք պիտի պաշտպանեն. ասանկով եօթը տարի անցաւ և Սպարտացիք ոչ կը համարձակէին պատերազմելու, և ոչ պատերազմէն ետ կենալու, որովհետև երդում ըրեր էին։

---

1 Առջի պատերազմէն ետքը ինչ պատահեցաւ։

1 Ութերորդ տարին Արգիացիք և Արկադացիք Մեսսինիացւոց օգնութիւն եկան, և Իթոմաս լեռան մօտ սաստիկ պատերազմ եղաւ։ Եւփայէս Թագաւորը վազեց Սպարտացւոց Թէոպոմպոս Թագաւորին բանակը, սաստիկ վէրք մը առաւ ու կիսամահ ընկաւ։ Սաստկացաւ պատերազմը. երկու կողմը իրարու ձեռքէ կը ջանային յափշտակել կիսամեռ Թագաւորը, ոմանք բռնելու՝ ոմանք ազատելու։ Ան Սպարտացիներէն ութը հոգի մէկէն գետինը փռեց Կղէոննիս, զէնքերնին կողոպտեց ու իր զօրացը բաժնեց. բայց ինքն ալ դիմացէն շատ տեղէն վիրաւորուեցաւ։ Արիստոդեմ ալ հինգ հոգի նոյն պատճառաւ Սպարտացիներէն սպաննեց, և ինքն անխոց ելաւ պատերազմէն։ Երկու կողմէն ալ միաբան դադրեցուցին պատերազմը։ Վերուցին Մեսսենիացիք իրենց Եւփայէս Թագաւորը որ արիւնլուայ ու վիրաւոր էր, բայց իր ժողովրդեանը յաղթութեանը վրայ ուրախ։ Արիստոդեմ տեսաւ որ Կղէոննիս առած վէրքերուն պատճառաւ չկրնար քալել, դրկեց ուսը առաւ զինքն ու բանակը տարաւ։

2 Ան միջոցին որ Մեսսենիացիք իրենց Թագաւորին ու զօրավարաց վէրքերը պատելու հետ

---

1 Եւփայէս ինչ քաջութիւն ըրաւ։
2 Ի՞նչ վէճ ելաւ Արիստոդեմի ու Կղէոննիսի մէջ։

էին՝ ուրիշ նոր կռիւ մը բացուեցաւ մէջերնին։ Ամէնքը ժողված քաջագոյնը կը փնտռէին որ մրցանակը անոր տան. և որովհետև երկու էին քաջայաղթ ախոյեանները, Կղէոննիս և Արիստոդեմ, Թագաւորը վերջինից եկաւ բազմեցաւ ատեանը որ վճիռ տայ։ Կղէոննիս կ՚ըսէր թէ Ես աւելի մարդ սպաննեցի, և այնչափ դիմացէս վէրք առեր եմ (որ քաջութեամբ առաջ նետուելուն նշան էր). իսկ Արիստոդեմ անխոց ելաւ պատերազմէն, որ ըսել է թէ կամ վախկոտ է, և կամ բարեբաղդ՝ բայց ոչ քաջայաղթ, իսկ զիս ուսին վրայ առնելն ու բանակը բերելը՝ ուժի նշան է և ոչ քաջութեան։

1 Արիստոդեմ պատասխան տուաւ թէ Բարեբաղդ կ՚երևնամ՝ պատերազմէն անխոց ելլելուս համար. բայց իմ վէրք չառնելս վատութենէս չէ, հապա քաջութենէս. վասն զի կամ ան է որ թշնամիք ինծմէ վախնալով չզարնուեցան հետս, և կամ հետս պատերազմեցան, ու ես զգուշութեամբ դիմամարտելով զանոնք զարկի, սպաննեցի։

2 Երբոր խօսքը լմնցուց Արիստոդեմ, սկսան քուէ ձգել, ամենուն սիրտը անհանգիստ էր թէ ինչ վճիռ պիտի ելլէ։ Ամէնքը միաբանեցան Արիստոդեմին տալին մրցանակը։

---

1 Արիստոդեմ ինչ պատասխան տուաւ Կղէոննեսի։

2 Վճիռը որո՞ւն կողմը ելաւ։

1 Վրան շատ չանցաւ, մեռաւ Եւփայէս թագաւորը, և տեղը Արիստոդեմն ընտրեցին, որ հինգ տարի քաջութեամբ աշխատելով Սպարտացւոց ամէն ջանքը փճացուց: Խարդախութիւն մը ուզեր էին ընել, ան ալ իմացաւ Արիստոդեմ. վասն զի Մեծամեծներէն հարիւր հոգի Սպարտայէն քշեցին, որ փախստականի պէս Մեսսենիա եկան. կանչեց զանոնք Արիստոդեմ, Սպարտացւոց աս յանցանքը նոր է, բայց հնարքնին շատ հինցած է, ըսաւ ու զանոնք դուրս քշեց: Ետքը Իթոմոսի քով ալ Սպարտացւոց հետ զարնուելով մեծ ջարդ տուաւ անոնց:

2 Երբոր երկու կողմն ալ երկար պատերազմներէն յոգնած՝ իրարու հաւանութեամբը զինադադարում ըրեր կը հանգչէին, Արիստոդեմ տեսիլքներով երազներով խռոված՝ ինքզինքը իր աղջկանը գերեզմանին վրայ սպաննեց: Կ'ըսեն թէ տեսիլքի մէջ աղջիկը իրեն երևցեր է սևեր հագած, կուրծքն ալ վէրքերով արիւնլուայ. անանկով հօրը մօտեցեր է ձեռքէն զէնքերն առեր, ճերմակ հագուստ մը անոր հագցուցեր ու գլուխը ոսկի պսակ մը դրեր է:

3 Մեսսենիացիք իրենց սիրելի թագաւորն ու զօրաւոր պաշտպանը կորսնցընելով յուսահա-

---

1 Եւփայեսի տեղը ո՞վ թագաւորեց:
2 Ի՞նչպէս մեռաւ Արիստոդեմ:
3 Ի՞նչ կերպով լմնցաւ Մեսսենիացւոց առաջին պատերազմը:

տուԹեան մէջ ընկան. անոր ներհակ՝ Սպարտացիք սիրտ առին, և վերջապէս տիրեցին Իթոմոսին, որ հինգ ամիս պաշարուած՝ սաստիկ սով քաշելէն ետքը անձնատուր եղաւ։

1 Մեսսենիացւոց շատը փախան գնացին Արկադիա, Արգոս և Սիկիոն. մնացածներուն հետ ալ շատ խստութեամբ վարուեցան Սպարտացիք։ Երդում առին անոնցմէ որ մէյմըն ալ չապստամբին, և իրենց երկրին տարեկան բերքին կէսը Սպարտա խրկեն. անկէց 'ի զատ՝ երբոր Սպարտացւոց Թագաւորներէն կամ իշխաններէն մէկը մեռնէր՝ բոլոր Մեսսենիացիք այր և կին սուգ մտնեն։ Ասանկով լմնցաւ Մեսսենիոյ առաջին պատերազմը, որ քսան տարի քշեց։

2 Քառասուն տարի խաղաղութեամբ անցնելէն ետքը մտքերնին դրին Մեսսենիացիք որ ազատութիւննին նորէն ձեռք ձգեն. ուստի Եղիս, Արգոս, Սիկիոն և Արկադիա գաւառներուն բընակիչները իրենց հետ միացուցին. և իրենց կտրիճ երիտասարդներուն մէջ անուանի էր հին Թագաւորաց ցեղէն Արիստոմեն պատանին։ Երկու կողմէն պատերազմը սկսաւ, և յաղԹուԹիւնը անորոշ մնաց. բայց Արիստոմեն անանկ

---

1 Սպարտացիք ի՞նչ նեղութիւններ տուին Մեսսենիացւոց։

2 Մեսսենիացւոց երկրորդ պատերազմը ի՞նչպէս սկսաւ։

կարգէ դուրս քաջութիւններ ըրաւ որ քաղաքակիցքը մէկէն հոն պատերազմի տեղն ուզեցին զինքը իրենց վրայ թագաւոր դնել. յանձն չառաւ Արիստոմենէս, ու միայն զօրաց սպարապետ գրուելովը գոհ եղաւ։

1 Կը պատմեն թէ Արիստոմենէս ուզելով յանդուգն գործողութեամբ մը Սպարտացիները վախցընել. գիշերանց Սպարտա կ'երթայ, ծածուկ կը մտնէ Աթենասայ տաճարը, ու դրանը վրայ վահան մը կը կախէ՝ վրան գրուած. Արիստոմենէս կը նուիրէ ասիկայ դիցուհւոյն՝ Սպարտացւոց աւարէն։ Աս ալ կը պատմեն թէ Արիստոմենէսին քաջասրտութեանը նմանիլ ուզելով ուրիշ երկու Մեսսենիացի կտրիճներ ալ, երբոր Սպարտացիք Կաստորի և Պողիդեւկեսի տօնը կը կատարէին, օդապարիկ նժոյգներու վրայ հեծած, ծիրանիներ հագած, ձեռքերնին նիզակ՝ յանկարծակի վազեցին անոնց բանակը մտան, անոնցմէ շատ մարդ ջարդեցին, որ յաղթանակով Անդանիա դարձան՝ ուր ժողվուած էին Մեսսենիացւոց կտրիճները։

2 Արիստոմենէս Ստենիկղարի դաշտին մէջ փառաւոր յաղթութիւն մը ըրաւ Լակեդեմոնացւոց և անոնց դաշնակցացը վրայ։ Ետքը մտաւ Լակոնիան կողոպտեց, շատ քաղաքներ կործա-

---

1 Արիստոմենէսի վրայ ի՞նչ մասնաւոր քաջութիւն կը պատմուի։

2 Ի՞նչ քաջութիւններ ըրաւ Արիստոմենէս։

նեց, ու բնակիչքը գերի տարաւ։ Սպարտացիք սարսափած Դեղփիս պատգամ հարցուցին. պատգամախօսը հրամայեց իրենց որ Աթենքէն իրենց զօրավար մը բերել տան։ Սպարտացւոց ասանկ խոնարհելուն վրայ շատ ուրախացան Աթենացիք. բայց աստուածոց կամքը կատարած սեպուելու համար՝ Տիրտէոս անունով կաղ ու աննշան բանաստեղծը անոնց իբրև զօրավար խրկեցին։ Ընդունեցան Սպարտացիք, և երբոր իրեք անգամ ալ յաղթուեցան՝ ու յուսահատած կ'ուզէին ամէն բան թողուլ Սպարտա փախչիլ, Տիրտէոս կրակոտ ու սրտաշարժ երգերով անոնց միտքը փոխեց, սրտերնին վառեց, ու նորէն քաջութեամբ պատերազմելու յորդորեց. անանկ որ Սպարտացիք իրենց առջի քաջութիւնը նորէն ձեռք առին, ու միայն ուզելով որ իրենց գլուխը անթաղ չմնայ, մէյմէկ գրապանի վրայ ամէն մարդ իրեն ու իր հօրը անունը գրեց, ու ալ թևին կապեց. որպէս զի եթէ պատերազմի՝ մէջ իյնան մեռնին ու երեսներնուն դծայլութիւնը աւրուի, կարենան աննշաններով ճանչցուիլ, ու օր մը իրենց ետևէն եկողները կարենան ըսել. Ասոնք հայրենեաց համար մեռած են։

[1] Յարձըկեցան Սպարտացիք Մեսսենիացւոց վրայ, և պատերազմը սկսաւ. Արիստոկրատ Ար-

---

1 Տիրտէոսին խրախուսելովը ի՞նչ յաղթութիւն ըրին Սպարտացիք։

14*

կադացւոց թագաւորը շուտ մը թողուց փա-խաւ, անով Մեսսենիացիք ալ յաղթուեցան։ Իսկ Արիստոմենէս նեղը մնալով մնացած զօրքովը Իրա լեռը քաշուեցաւ, որ լեռներով պատած ամուր տեղ մըն էր։ Անկէց օր մը յարձակմունք մը ընելու առենը բռնեցին Սպարտա տարին, ու ընկերներովը մէկտեղ գարշահոտ վիրապի մը մէջ ձգեցին ուր չարագործները կը նետէին։ Սպարտացիք իրեն քաջութեանը վրայ համար-մունք ունենալով թող տուին որ վահանը հետը մնայ, ինքն ալ վահանին վրայ իյնալով չվնասուե-ցաւ, ու մահուընէ ազատեցաւ։ Հոն երկու օր իր ընկերացը դիակներուն վրայ կեցած մնալե-լու առենը մէյմըն ալ տեսնէ որ մեծկակ ծակէ մը աղուէս մը կը մտնէ վիրապը, մէկէն անոր պոչէն կը բռնէ Արիստոմենէս ու անոր ետևէն նոյն ծակէն կ՚երթայ նեղ ճամբով մը՝ որ Իրա լեռը կը հանէ եղեր։ Յանկարծակի Արիստո-մենէս հոն կը հասնի, ընկերները կը գտնէ, և ա-մէնքը վրան կը զարմանան։

1 Անկէց ետքը Արիստոմենէս լսելով թէ Կորըն-թացիք Սպարտացւոց օգնելու կ՚երթան, յան-կարծակի վրանին վազեց ու մեծ ջարդ տուաւ անոնց. բայց ան յաղթութեանը վրայ շատ չկըր-ցան Մեսսենիացիք ուրախանալ։ Վասն զի Սպար-

---

1 Մեսսենիացւոց երկրորդ պատերազմը ինչպէս լմընցաւ։ — Արիստոմենէսին վերջն ինչպէս եղաւ։

տացին սաստիկ ուժով յարձակեցան Իրա բերդին վրայ. շարունակելի քաջութեամբ պատերազմեցան Մեսսենիացիք, երկու օր երկու գիշեր անեց պատերազմը, և ինչուան կանայք ալ մըտան պատերազմին մէջ։ Սակայն Արիստոմէն տեսնելով որ անկարելի է ինչուան վերջը դիմանալ, բերդին մէջ մնացած մարդիկը դուրս հանեց, իր չորս դին ժողվեց զանոնք գունդ մը ձեւացուց, մէջ տեղը տղաքն ու կնիկ մարդիկը դրաւ, և թշնամեաց բանակին մէջէն անցուց՝ առաւ տարաւ զանոնք. Սպարտացիք ալ զարմացած ձայն չհանեցին. իսկ ինքը չյուսալով որ կարենայ նորէն իր հայրենիքն ազատել՝ գնաց Հռոդոս կղզին քաշուեցաւ. անկէ Յոնիա անցաւ, ու Սարդիկէի մէջ մեռաւ։

1 Ան Մեսսենիացիքն որ Սպարտացւոց ձեռքէն ազատեր էին՝ Սիկիլիա գնացին Հռեգիոնի թագաւորին քովը՝ որ ինքն ալ Մեսսենիացի էր, և անոր հետ մէկտեղ պատերազմելով Զանկղէաս քաղաքն առին. և որովհետև բնակչացը վրայ գութ ցըցուցեր էին՝ անոնք ալ երախտագիտութեամբ իրենց քաղաքին անունը փոխեցին՝ Մեսսանա դրին, որ հիմա Մեսսինա ըսուածն է։ Մեսսենիոյ երկրորդ պատերազմը տասնըութը տարի քշեց։

---

1 Մեսսենիացի գաղթականները ո՞ւր գնացին։ — Քանի՞ տարի քշեց Մեսսենիացւոց երկրորդ պատերազմը։

1 Սպարտացիք արդէն Արգիացւոց վրայ ոխ ունէին թէ ինչո՞ւ իրենց դէմ Մեսսենիացւոց օգնեցին։ Ետքն ալ Թիրէա ըսուած գաւառին համար մէջերնին պատերազմ բացուեցաւ. վասն զի աս գաւառը Արգողիսին մէկ մասն էր, ու Սպարտացիք առեր իրենց սեպհականներ էին։ Երկու կողմէն ալ չուզելով որ անօգուտ տեղը արիւնհեղութիւն ըլլայ, որոշեցին որ երկու դիէն իրեք հարիւր կտրիճներ ելլեն պատերազմին, և ո՛ր կողմն որ յաղթէ՝ անոր ըլլայ ան գաւառը։

2 Երբոր երկու կողմէն ալ զօրքերը քաշուեցան ու ընտրուած կտրիճները միայն մնացին, ասոնք անանկ հաւասար քաջութեամբ պատերազմեցան՝ որ վեց հարիւր կտրիճէն իրեք հոգի միայն մնաց, Ալկենոր ու Քրոմիոս՝ Արգիացւոց կողմէն, Օթրիադէս ալ Սպարտացւոց կողմէն։ Գիշերը կոխեց, հարկ եղաւ որ պատերազմը դադրեցընեն։ Երկու Արգիացիքը վազեցին Արգոս որ իրենց յաղթութիւնը աւետեն. իսկ Օթրիադէս Սպարտացին մեռած Արգիացւոց զէնքերը կողոպտեց՝ իր բանակը տարաւ, ու նորէն դարձաւ իր տեղը կեցաւ։ Երկրորդ օրը երկու բանակներն եկան ու սկսան հակառակիլ

---

1 Սպարտացիք Արգիացւոց դէմ ինչո՞ւ պատերազմ բացին։

2 Ի՞նչպէս լմընցաւ Սպարտացւոց ու Արգիացւոց պատերազմը։

յաղթութեան վրայ. Արգիւացիք կը պարծենային թէ Մեզմէ երկու հոգի կենդանի մնացին. Սպարտացիք ալ կ՚ըսէին թէ Արգիւացիք փախան, իսկ մերինը իր տեղը կենալով ձեր մեռելներուն զէնքերը կողոպտեց։ Վէճը ան աստիճանի տաքցաւ, որ հարկ եղաւ պատերազմով որոշել. զարնուեցան, երկու կողմէն ալ շատ մարդ ջարդուեցաւ, և վերջապէս Սպարտացիք յաղթող ելան։ Իսկ Ոթրիադէս որ այնչափ ընկերներով Սպարտայէն ելած էր՝ առանց անոնց Սպարտա դառնալ չուզելով՝ հոն անոնց ինկած տեղը զարկաւ ինքզինքը սպաննեց։

1 Անկէց ետքը Արգիւացիք գլուխնին գերծեցին, և օրէնք դրին որ ինչուան Թիրէա գաւառը նորէն ձեռք չձգեն՝ էրիկ մարդիկ երկայն մազ չթողուն, կնիկ մարդիկ ալ վրանին ոսկի զարդ չունենան, և աս օրինաց դէմ ընողը նզովեալ ըլլայ։

---

1 Արգիւացիք Սպարտացւոցմէ յաղթուելնուն համար ի՞նչ ըրին։

# ԳԼՈՒԽ Դ.

Աթէնք. — Դրակոն. — Եպիմենիդէս. — Սողոն. — Պիսիստրատ. — Իպպարքոս և Իպպիաս. — Արմոդիոս և Արիստոգիտոն. — Կղիսթենէս. — Խեցեկոյթ վճիռ։

1 Այն տարիներն որ Սպարտացիք իրենց տէրութեան սահմաններն ընդարձակելու հետ էին, Աթենացիք անիշխանութեան մէջ կ՚ալեկոծէին։ Ժողովուրդը իրեք բաժնուած, և իրենց գլուխ մէյմէկ հին ու զօրաւոր ազգատոհմեր առած՝ իրարու ձեռքէ կը յափշտակէին իշխանութիւնը։ Քաղաքացւոց կեանքն ու ստացուածքը այնպիսի դատաւորաց ձեռքը մատնուեր էր՝ որոնց օրէնքը իրենց շահն ու կամքն էր։

2 Աս անկարգութեանց դարման մը ընելու համար՝ ժողովուրդը Դրակոն անունով արխոնին աղաչեցին որ օրէնքներ դնէ իրենց (624)։ Դրակոն անանկ խիստ օրէնքներ գրաւ, որ կ՚ըսէին թէ Ասոնք թանաքով գրած չեն, արիւնով գրուած են. վասն զի ամէն պզտիկ յանցանքներուն ալ պատիժ՝ մահ դրեր էր. մեծ յանցանքներուն պատիժ չկայ աշխարհիս մէջ կ՚ըսէր։

---

1 Այն տարիները Աթենացիք ի՞նչ վիճակի մէջ էին։
2 Դրակոն ի՞նչպէս ու ի՞նչ օրէնքներ գրաւ Աթենացւոց։

Երբոր Աթենացիք սկսան գանգատը շատցընել, հարկ եղաւ որ հայրենիքը թողու Դրակոն, երթայ Եգինա կղզին քաշուի, և հոն մեռաւ։

1 Աթենքի մեծամեծներէն մէկը Կղէոն՝ կարծելով թէ Աթենացիք անիշխանութենէ ձանձրացած՝ դիւրաւ կուգան իր հետը կը միանան, ու զինքը իրենց վրայ թագաւոր կը դնեն, հետը շատ մարդ առած յանկարծ եկաւ միջնաբերդին տիրեց (600)։ Վտանգը տեսնելով միացաւ ժողովուրդը. եկաւ զինքը պաշարեց. առջի բերան քիչ մը դէմ դրաւ Կղէոն, բայց ետքը տեսնելով որ ճար չկայ՝ թողուց փախաւ։ Անոր կուսակիցներուն խոստացաւ ժողովուրդը որ եթէ անձնատուր ըլլան՝ իրենց կեանքը կը խնայեն. բայց խօսքերնին չպահեցին, նոյն իսկ Եւմենեայց մեհեանը փախչողներն ալ բռնեցին բագնին առջևը սպաննեցին։ Վրան շատ չանցաւ, սաստիկ ժանտախտ մը ընկաւ Աթէնք, ու սկսան ամէնքը ըսել թէ Մեր երդմնազանցութեան պատիժն է ասիկայ, որ աստուածները բարկացած՝ վրանիս խրկեցին։ Լսեցին որ Կրետէ Եպիմենիդէս անունով արդար ու իմաստուն մարդ մը կայ. աղաչեցին որ գայ զիրենք աստուածոց հետ հաշտեցընէ։ Եկաւ Եպիմենիդէս, նոր նոր մեհեաններ, բագիններ կանգնել տուաւ, նոր կրօնա-

---

1 Դրակոնէն ետքը ո՞վ իշխեց Աթենացւոց։ — Ի՞նչ պատճառաւ Աթենացիք Եպիմենիդէս Կրետացին կանչեցին։ — Ի՞նչ ըրաւ Եպիմենիդէս։

կան արարողութիւններ դրաւ, բոլորովին քաղաքը մաքրեց խաղաղեց, անիրաւութիւնն ու ամբարշտութիւնը մէջէն հալածեց։ Երբոր դադրեցաւ ժանտախտը, Աթենացիք Եպիմենիդեսին վրայ զարմացած, ու երախտագիտութեամբ լեցուած՝ ուզեցին անոր շատ պատիւներ ու ընծաներ տալ. ինքը շնորհակալ եղաւ, ու միայն Աթենասայ նուիրուած ձիթենիէն ճիւղ մը ուզեց, առաւ ու Կրետէ դարձաւ։

1 Եպիմենիդէս երթալուն պէս երկպառակութիւնները առջինէն աւելի սկսան, ու քաղաքին մէջ անիշխանութիւնը տիրեց։ Այն խռովութեան ատենը ամենուն աչքը Սողոնին վրայ դարձաւ, և միաբանութեամբ առին զինքը առաջին դատաւոր և օրէնսդիր անուանեցին, որ իրենց անկարգութիւններուն դարման մը ընէ (594)։

2 Սողոն, Յունաստանի եօթը իմաստնոց մէկը, ծնած էր Սաղամինա ու Աթենքի մէջ մեծցած. հօր կողմանէ Կոդրոս թագաւորին ազգական էր, մօր կողմանէ ալ Պիսիստրատին. առջի բերան վաճառականութիւն ըրաւ, բայց շուտով անիկայ թողուց ու ինքզինքը ուսման տուաւ։ Ամենէն աւելի իմաստասիրութիւն ու քաղաքականութիւն սորվելու ետեւէ եղաւ, և աղէկ սորվելու համար ալ երկար ատեն շատ տեղեր

---

1 Եպիմենիդեսի երթալէն ետքը ինչ վիճակ ունեցան Աթենացիք։

2 Ո՞վ էր Սողոն։

ճամբորդութեամբ պտըտեցաւ, քննելով ամէն ազգաց բնաւորութիւնները, սովորութիւններն ու օրէնքները։ Բանաստեղծութեան մէջ ալ Սողոն անուանի էր կ'ըսեն։

1 Հարուստները սիրով ընտրեցին Սողոնը՝ վասն զի հարուստ էր. աղքատներն ալ՝ վասն զի անուշ ու ազնիւ բնութիւն ունէր, և ամենուն բարիքը կ'ուզէր։ Ամէնէն իր շահն ու փառքը չէր փնտռէր, անոր համար ալ արխոնութեան պատիւը յանձն չառաւ։

2 Սողոն մէկէն պարտքերու թողութիւն ըրաւ. Դրակոնին գրած բոլոր օրէնքները վերցուց, միայն մարդասպանաց դէմ գրածը պահեց. կառավարութեան կերպը կարգաւորեց։ Գերագոյն իշխանութիւնը ժողովրդեան ատենին տուաւ, որուն մէջ ամէն քաղաքացի իրաւունք ունէր մտնելու։ Պատերազմ, հաշտութիւն, դաշնակցութիւն, տուրք, դատաւորներ ընտրել, տէրութեան հարկաւոր եղած ամէն մեծ բաները համաշխարհական ատեանը կ'որոշէր։ Եւ թէպէտ ամէն բան առաջ ծերակոյտը կը քննէր, որ չորս հարիւր հոգի էին, բայց ժողովուրդը ազատ էր հաւնելու կամ մերժելու. անոր համար աղէկ ըսեր էր Սողոնին Անաքարսիս Սկիւթացի իմաստասէրը թէ Կը զարմանամ որ մտածելու իրաւունքը խելացիներուն տուեր ես, իսկ որոշելը խենթերուն. վասն զի

---

1 Ի՞նչ բնաւորութեան տէր էր։

2 Ի՞նչ օրէնքներ գրաւ։

կրնար խենթ ճարտասան մը ծերակուտին դէմ ժողովուրդը համոզելով ուզածը առաջ տանիլ։ Ուրիշ անգամ մըն ալ զարմանալով Անաքարսիս որ Սողոն կ'ուզէր գրաւոր օրէնքներով Աթենացւոց ագահութիւնն ու անիրաւութիւնը սանձել, Գիտցիր, ըսեր է, որ աս գրած օրէնքները սարդիոստայնի կը նմանին. ասոնց մէջ ակարները միայն կը բռնուին կը մնան, իսկ զօրաւորները կը պատռեն կ'անցնին։

1 Ժողովրդեան ատեանը ութը օր մէյմը կը ժողվուէր, և յիսուն տարեկան եղողը կրնար մէջը խօսիլ։

2 Արիսպագոսի* ատեանն ալ հաստատեց Սողոն ու իշխանութիւնը մեծցուց։ Ինչուան ան ատենը աս ատեանը դատաստանական բաներու միայն կը խառնուէր, ինքը յանձնեց անոր նաև կրօնքի պահպանութիւնը, տղոց դաստիարակութիւնը, ժողովրդեան բարքը, տէրութեան գանձը ու հասարակաց շէնքերը։ Թէ որ արխոն մը իր պաշտօնը աղէկ կատարէր ու ամէնքը վրան

---

1 Ժողովրդեան ատեանը ե՞րբ կը ժողվուէր։
2 Արիսպագոսի ատեանին իշխանութիւնը ի՞նչ ըրաւ Սողոն։

* Աթէնքի մօտ բլուր մը կար որ Արիսպագոս այսինքն Բլուր Արէոսի կ'ըսուէր, վասն զի ըստ առասպելաց՝ Արէս Պոսիդոնի որդին սպաննած ըլլալուն դատաստանը հոն եղեր է վրան։

գոհ ըլլային. Արիսպագոսի անգամ կ'ըլլար։ Ատեանին արդարութեանն ու իմաստութեան համբաւը բոլոր աշխարհք տարածուած էր, ինչուան Հռովմայեցիք ալ դատաստանական գըժուար խնդիրներու վրայ կուգային անկէց խորհուրդ կը հարցնէին։ Հոն որպէս զի կարենան դատաւորները աղէկ ուշադրութիւն ընել, և ամէնևին խարդախութիւն չըլլայ, դատաստանները մութ տեղ գիշերով կ'ընէին։ Փաստաբաններն ամէնևին չէին կրնար դատասացութեան մէջ յառաջաբան, վերջաբան, սիրտ շարժող խօսքեր և կամ ճարտասանական զարդեր բանեցընել, այլ պարզ իրը պիտի պատմէին. երբոր խնդիրը բաւական կը յայտնուէր. դատաւորները լռութեամբ կ'երթային բագնին վրայէն մէյմէկ խեցի կ'առնէին ու հոն գրուած երկու սափորներուն մէկուն մէջ կը ձգէին. անոնց մէկը կ'ըսուէր սափոր Գթութեան և պղնձէ էր, մէկալը սափոր Մահուան որ փայտէ էր։ Երբոր ամէնքը կը ձգէին, մէկ պատգամաւոր մը կ'երթար Գըթութեան սափորին մէջ խեցի մը աւելի կը ձգէր, որ կ'ըսուէր քուէ Աթենասայ *։

1 Մարդասպանաց դատաստանը շատ խստութեամբ կը կտրէին, և ամենայն կերպով կը ջա-

---

1 Մարդասպաններուն դէմ ինչ խստութիւն կար։

* Ըստ աւանդելոյ՝ Որէստէս իր Կլիտեմնեստրա մայրը սպաննած ըլլալուն համար՝ Արիսպագոսին ատեանը դատա-

նային որ մարդ սպաննելէն ժողովրդեան աչքը վախցընեն: Տղայ մը բռնած լորամարգիներուն աչքերը հանելու սովորութիւն ունի եղեր. անոր համար զինքը ՚ի մահ դատապարտեր են. վասն զի պզտիկուց երբոր վարժեր է սանկ կենդանեաց արիւնը մանելու, մեծնալով կրնայ շատ մարդկանց կեանքը վերցընել կ՚ըսէին:

1 Սողոն բոլոր Աթենացիքը՝ իրենց եկամտին նայելով չորս կարգ բաժնեց: Զորրորդը աղքատաց կարգն էր որ ամենևին պաշտօնի չէին կըրնար հասնիլ: Դատաւորաց իշխանութիւնը տարեկան էր. գլխաւոր դատաւորներուն ընտրութիւնը ժողովրդեան ձեռքն էր, իսկ երկրորդականները վիճակով կ՚ընտրէին: Քաղաքացւոց մէջ եղած կռիւներն ինը արխոնները կ՚որոշէին: Անոնց վճռոյն չհաւնողը կրնար աւելի գերագոյն ատեանի մը բողոքել, որուն մէջի անձինքն էին չորս կարգէն ալ վիճակով ընտրուած անուանի մարդիկ:

2 Սողոն տղոց դաստիարակութեան համար

---

1 Քանի՞ կարգ բաժնեց Սողոն ժողովուրդը:
2 Տղոց դաստիարակութեան ինչ օրէնք դրաւ:

փանի կանչուեր էր. և որովհետև փոխարկութեան մէջ այսն և ուրը հատուածը էլեր էին՝ Աթէնաս տարածութեան այսին մէջ թողէ մը աւելցնելով Ողբերգութիւն արդարացուցեր է: Ան բանին յիշատակն է եղեր ան թողէն:

ալ շատ փոյթ ունեցաւ։ Տղան երբոր քիչ մը տարիքը կ'առնէր՝ երկու վարժապետի ձեռք կը յանձնուէր, որոնց մէկը անոր մարմինը կը կըրթէր, մէկալն ալ միտքը. մէկը լողալ, ու այլ և այլ մարմնոյ կրթութիւններ կը սորվեցնէր, մէկալն ալ քանաստեղծութիւն, ճարտասանութիւն և փիլիսոփայութիւն։

[1] Երբոր տղան քսան տարեկան կ'ըլլար, հայրը պարտական էր զէնքը իր ցեղապետին տանելու և անոր անունը հասարակաց արձանագրին մէջ անցընելու։ Երդում պիտի ընէր թէ իր հարազատ զաւակն է, և մայրը Աթենացի. վասն զի որոնց որ հայրը կամ մայրը Ատտիկեցի չըլլար՝ չէր կրնար քաղաքացւոց կարգն անցնիլ։ Ան օրը տղուն մազերը կը կտրէին ու քաղքին պաշտպան աստուածոյն զոհ կը մատուցանէին։ Հոն պատանին ամենուն առջևը երդում կ'ընէր որ հայրենեաց օրինացը հնազանդի, անոր երջանկութեանը համար ձեռքէն եկած ջանքը ընէ, պատերազմի ատեն իր զօրավարին հնազանդի, և իր հայրենեաց սիրոյն համար մինչև 'ի մահ պատերազմի։ Աս խոստմունքներն ընելէն ետքը՝ գինիով լեցուն մեծ գաւաթ մը կ'առնէր Հերակղեսին կը նուիրէր, ու ետքը հանդիսականաց ալ անով գինի կը բաժնէր. անկէ ետքը կ'առնէին զէնքը հանդիսով հասարակաց կոչունքի մը կը տանէին, ուր չափահաս մարդկանց կարգը կը նստէր։

---

[1] Տղան ինչպէս չափահասից կարգը կ'անցնէր։

1 Մսխող կամ իր ծնողքը չհոգացող տղան, և ծոյլ ու դատարկապորտ մարդը՝ վատանուն կը սեպուէր։ Բայց թէ որ հայրը որդւոյն արուեստ մը սորվեցընելու հոգ տարած չըլլար, ազատ էր որդին զանիկայ կերակրելու պարտքէն։

2 Հայրասպաններու վրայ օրէնք մը չդրաւ Սողոն. հարցուցին իրեն թէ Մոռցա՞ր արդեօք թէ լռեցիր. պատասխան տուաւ թէ Վասն զի չկրցայ գտնել այնպիսի մարդ մը որ կարենայ իր հայրը սպաննել։

3 Երբոր մէկը քաղաքական երկպառակութեանց ատեն ոչ մէկ կողմը ըլլար և ոչ մէկալը, վատանուն կը սեպուէր, ու մշտնջենաւոր աքսոր կ'երթար. աս օրէնքով կ'ուզէր Սողոն բռնադատել հարուստներն ու բարեբարոյ մարդիկը, որ սովորաբար վախկոտ կ'ըլլան, որպէս զի ստացուածքնին ձեռքէ չհանելու համար խաղաղութեան ու բարեկարգութեան կողմը անցնին, և անով աղքատաց յանդգնութեանն ու խռովութեան ուժը կոտրի։

4 Մէկ հայր մը որ հայրենեաց համար կը մեռ-

---

1 Տղուն պարտքը ի՞նչ էր առ ծնողս։
2 Հայրասպան տղոց համար ի՞նչ օրէնք դրաւ Սողոն։
3 Խռովութեան ատենը քաղաքացւոց պարտքն ի՞նչ էր։
4 Մեռելոց համար ի՞նչ օրէնք կար։

ներ, անոր զաւկըները տէրութիւնը պիտի հոգար: Արգիլեց Սողոն որ մեռելի վրայ չարախօսութիւն չըլլայ: Վասն զի արդարութիւնը կը պահանջէ որ մեռած մարդկանց յիշատակը պատուենք. հասարակաց օգուտն ալ կը պահանջէ որ ատելութիւնը մշտնջենաւոր չըլլայ:

1 Սողոն աս օրէնքները տալէն ետքը՝ գիտնալով Աթենացւոց փոփոխամտութիւնը, երդուընցուց զիրենք որ հարիւր տարի անփոփոխ պահեն, և ինքն ալ Լիկուրգոսի պէս հայրենիքէն հեռացաւ, նախ Եգիպտոս գնաց պտըտեցաւ, ետքը Լիւդացւոց Կրեսոս թագաւորին քով գնաց: Կրեսոս իր հարստութեանը վրայ հպարտացած՝ հրամայեց որ անբաւ գանձերն ու փառաւոր կահ կարասիքը Սողոնին ցուցընեն: Երբոր Սողոն ամէն բան տեսաւ, թագաւորը հարցուց անոր թէ Ինծմէ աւելի երջանիկ մարդ տեսե՞ր ես: — Հրամեր ես, ըսաւ Սողոն, Տելլոս Աթենացին տեսայ, որ լաւ մարդու պէս ապրելով, աղնիւ զաւակներ թողուց, ու հայրենեաց համար պատերազմելով փառաւորապէս մեռաւ:

2 Տասը տարի ճամբորդութիւն ընելէն ետքը երբոր Յունաստան դարձաւ Սողոն, Աթենացիքը անիշխանութեան մէջ գտաւ: Պիսիստրատ հարուստ, առատաձեռն, ժողովրդասէր ու խօ-

---

1 Սողոն Աթենացւոց օրէնքներ տալէն ետքը ինչ ըրաւ:

2 Երբոր նորէն Յունաստան դարձաւ՝ Աթենացիք ինչ վիճակի մէջ էին:

րագէտ իշխանը ամենուն սիրտը կը վաստըկէր, որպէս զի ամենուն վրայ իշխէ: Սողոն անոր հայրենասիրութեան տակէն յայտնի կը տեսնէր իշխանասիրութիւնը, ուստի ամէն ջանք ըրաւ որ ժողովրդեան ու անոր միտքը դարձընէ, բայց անօգուտ:

1 Օր մը Պիսիստրատ ինքզինքը վիրաւորեց ու արիւնլուայ՝ կառքով հրապարակը եկաւ, և ժողովրդեան առջևը խեղճ թափիել սկսաւ որ հասարակապետութեան թշնամիները վրան նախանձելով ասանկ զինքը վիրաւորեցին. ասով ամենուն գութը վրան շարժեց, հաւատացին ըսածին, մէկէն իրեն յիսուն թիկնապահ տուին որ շուտ մը վեց հարիւր հոգի եղան. անոնցմով գնաց Պիսիստրատ միջնաբերդին տիրեց ու զամէնքը սարսափեցուց (566):

2 Միայն Սողոն աներկիւղ անոր բռնակալութեանը դէմ կը կենար, ու ժողովուրդը կը յորդորէր որ ոտք ելլեն. բայց երբոր տեսաւ որ վախը ամենուն սիրտը տիրեր է, ու մէկն ալ իրեն մտիկ չըներ, սրդողած յուսահատած տուն գնաց, զէնքերը առաւ դրան առջևը փողոցին մէջ դրաւ, յուսալով որ թերևս անով ոտք ել-

---

1 Պիսիստրատ ինչ հնարքով տիրապետեց Աթենացւոց վրայ:

2 Սողոն ինչ կրցաւ ընել Պիսիստրատայ բռնակալութեանը դէմ:

*լէն Աթենացիք ազատութիւններն ձեռք ձգելու։ Անով ալ դարձեալ մարդ տեղէն չշարժեցաւ։*

*1 Երբոր Պիսիստրատ բոլորովին Աթենքի տիրեց, վերջապէս Սողոնին աչքը մտաւ, ու շատ բան անոր խորհրդովը կ'ընէր։ Անոր վրայ շատ չապրեցաւ Սողոն, ութսուն տարեկան մեռաւ (559)։ Աթենացիք վրան ցաւեցան ու անուանը յիշատակը ամէն ատեն մեծարեցին։ Միշտ նոր բան սորվելու ետեւէ եղած էր Սողոն. Ծերացայ, կ'ըսէր, ամէն օր նոր բան մը սորվելով։ Սովորական մէկ առածն ալ աս էր. Ամէն բանին վերջը մտածէ։*

*2 Շատ չանցաւ՝ Պիսիստրատին թշնամիները զօրացան, զինքը Աթենքէն քշեցին։ Մեգակլէս, թշնամեացը գլխաւորներէն մէկը. զինքը ետ կանչեց, ու իր աղջիկը անոր կին տուաւ. բայց քիչ ատենէն նորէն մէջերնին գժտութիւն մը-նելով, թողուց Եւբէա կղզին փախաւ Պիսիստրատ (556)։ Տասնըմէկ տարի դուրսը կենալէն ետքը յաղթանակով Աթէնք մտաւ, ու բոլոր իր թշնամիքը մոռցընել տուաւ։ Բայց երբոր բռնական հաստատուեցաւ իշխանութեանը մէջ, ըրած անգթութիւնները մոռցընել տուաւ արդարութեամբն, առատաձեռնութեամբը ու չափաւորութեամբը։ Գիտութեանց ու բանաս-*

---

1 *Ի՞նչպէս մեռաւ։*

2 *Պիսիստրատ ինչուան ետքը իշխանութեանը մէջ հաստատ մնա՞ց։*

տեղծութեան վրայ մեծ ակր ունէր, Հոմերոսի ոտանաւորները ժողվեց ու Աթենացւոց տուաւ որ կարդան. հասարակաց գրատուն մըն ալ շինեց. Աթէնք քաղաքը մեհեաններով ու աղբիւրներով զարդարեց: Դրած օրէնքներովը դատարկակեցութիւնը վերցուց, երկրագործութիւնն ու ճարտարութիւնը ծաղկեցուց: Անկարող զինուորաց ալ ինչուան 'ի մահ թոշակ կապելով զօրաց քաջութիւնը վառեց: Բանակին մէջ, հրապարակներու և իր պարտէզներուն մէջ (ուր ամէն մարդ կրնար համարձակ մտնել), հօր մը կը նմանէր Պիսիստրատոս որ զաւկըներուն մէջը կեցած կը սիրէ զանոնք ու կը մխիթարէ: Երբոր մեռաւ (528), իշխանութիւնը Իպպարքոս և Իպպիաս որդւոցը թողուց:

1 Իպպարքոս և Իպպիաս տասնուերկու տարի իրենց հօրը ճամբուն հետեւելով Աթէնքը զարդարեցին, արծըլթէ սուսակ կոխել տուին, իմաստուն մարդիկն ու բանաստեղծները առատ ընծաներով մեծարեցին, մանաւանդ Անակրէոնն ու Սիմոնիդէսը. երկրագործութիւնը, վաճառականութիւնը, ճարտարութիւնն ու գիտութիւնները ծաղկեցուցին, և Հերմէսի արձաններով կրթութիւնը ամէն տեղ տարածեցին. վասն զի ամէն ճամբու գլուխ Եգիպտոսի պէս Հերմէսի արձաններ դնել տուին վրանին տող տող

---

1. Իպպարքոս և Իպպիաս ինչպէս ըրին իրենց իշխանութիւնը:

խելացի խօսքեր գրած. անցաւորներն ալ զանոնք կարդալով՝ անզգալի կերպով իրենց վարքն ու բնաւորութիւնը կը շտկէին։

1 Արմոդիոս ու Արիստոգիտոն երկու կտրիճ բարեկամներ կային։ Իպպարքոս հանդիսի մը մէջ Արմոդիոսին քրոջը նախատինք մը կ'ընէ. ատոր վրայ երկու բարեկամները խօսք կը դնեն որ անկէ վրէժը հանեն, և Համաթենական տօնին մէջ զինքը կը սպաննեն (515)։ Իպպարքոսին թիկնապահները Արմոդիոսը մէկէն կը բռնեն կը մեռցընեն, Արիստոգիտոնն ալ տանջանքներով կը սպաննեն։

2 Իպպիաս եղբօրը սպանութեանը վրայ բարկացած՝ սկսաւ Աթենացիքը չարչարել. որուն վրայ որ կասկածի կ'երթար կը մեռցընէր, շատերն ալ խոստովանցընելու կը ջանար, որոնց մէջ Լեէնա անունով կին մը երբոր տանջել սկըսան, վախնալով որ չըլլայ թէ խօսք մը բերնէն հանէ՝ լեզուն խածաւ փրցուց, ու Իպպիասայ աչքին նետեց. անոր համար ետքը Աթենացիք արձան մը կանգնեցին իրեն՝ լեզուն կտրած։

3 Հինգ տարի ետքը Կղիսթենէս Ալկմէոնեան ցեղին գլխաւորը շատ զօրացաւ, և Իպպիաս ստիպուեցաւ որ բռնաւորութենէն հրաժարի

---

1 Իպպարքոսի մահն ինչպէս եղաւ։
2 Իպպարքոսի մահուընէն վերջը Իպպիաս ինչ ըրաւ։
3 Ի՞նչպէս մեռաւ Իպպիաս։

(510)։ Քիչ մը ժամանակ իր ընտանիքովը ասդին անդին պտըտելէն ետև, Պարսից Դարեհ թագաւորին քովը գնաց, ու ետքը Մարաթոնեան պատերազմին մէջ մեռաւ։

1 Աթենացիք ազատութիւննին ձեռք ձգելով Արմոդիոսի և Արիստոգիտոնի շատ պատիւ ըրին։ Երկուքին ալ մէյմէկ արձան կանգնեցին, ու վրանին երգ մը շինեցին որ հասարակաց հանդէսներու և Համաթենական տօնին մէջ կ'երգէին աս իմաստով.

« Թուրս առնեմ, մրտենիի ոստերներով զարդարեմ. այսպէս ըրին Արմոդիոս և Արիստոգիտոն՝ երբոր բռնաւորը վերուցին, ու Աթենացւոց արդար օրէնքներ դրին։

Սիրո՛ւն Արմոդիոս, մեռած չես դուն ինչուան հիմայ։ Երանելեաց կղզիներն ես, քաջընթաց Աքիլլեսին քով, արիասիրտ Դիոմեդեսին քով։

Թուրս առնեմ, մրտենիի ոստերներով զարդարեմ, ինչպէս ըրին Արմոդիոս և Արիստոգիտոն, երբոր Իպպարքոս բռնաւորը մեռուցին Համաթենական տօնին օրը։

Անմահ ըլլայ ձեր փառքը, սիրո՛ւն Արմոդիոս, սիրելի՛ Արիստոգիտոն. վասն զի դուք բռնաւորը վերուցիք և Աթենքի մէջ արդար օրէնքներ դրիք »։

---

1 Աթենացիք ինչ պատիւներ ըրին Արմոդիոսի և Արիստոգիտոնի յիշատակ։

1 Կլիսթենէս՝ Սոլոնին գրած օրէնքները հաստատեց. Ժողովրդեան ուժը մտնելու համար տասը ցեղ բաժնեց զիրենք (որ Կեկրոպսէն ինչուան ան ատենը բոլոր Ատտիկէի բնակիչքը չորս ցեղ կը բաժնուէին), և ամէն տարի ամէն մէկ ցեղէն յիսուն հատ ծերակուտի անդամ կ'ընտրէր որով ամէնքը կ'ըլլային հինգ հարիւր հոգի։

2 Ուզեց Կլիսթենէս որ նաև իշխանաւորութեան վտանգներուն առջևն առնէ, այնպէս որ նորէն չըլլայ մէկը Ժողովրդեան ազատութիւնը վերցընէ, անոր համար Խեցեկոյտ վճիռը հաստատեց (512)։ Խեցեկոյտ վճիռ ըսուելուն պատճառն ան է որ քաղաքացիք ամբաստանեալ մարդուն վրայ քուէ ձգելու տեղ, անոր անունը խեցիի մը վրայ կը գրէին։ Մէկը դատապարտելու համար վեց հազար քուէ պէտք էր, և դատապարտուող քաղաքացին վեց տարուան համար կ'աքսորուէր։ Կլիսթենէս ինքն ալ աս գրած օրէնքին տակն ինկաւ, և Իսագորասի հնարքովը որ իր թշնամիներուն գլուխն էր, աքսորուեցաւ (508). բայց շուտով ետ կանչուեցաւ, և Ալկմէոնեանք յաղթանակով առին զինքը Աթէնք բերին։

---

1 Կլիսթենէս ի՛նչ կարգաւորութիւն ըրաւ։

2 Խեցեկոյտ վճիռը ի՛նչ էր, և ի՛նչպէս հաստատուեցաւ։

# ԳԼՈՒԽ Ե.

Ապստամբութիւն Յոնիացւոց ընդդէմ Պարսից. — Սարդիկէի հրկիզութիւնը. — Նաւամարտ Յոնիոյ. — Արշաւանք Մարդոնիոսի. — Դարեհի դեսպանները. — Դատիս և Արտափեռնէս, — Պատերազմ Մարաթոնի. — Միլտիադէս։

1 Հին ատենի պատմութեանց մէջ եղած զարմանալի անցքերէն մէկն է Մարաթոն ըսուած պատերազմը։ Կը տեսնենք ասոր մէջ որ Պարսիկք բոլոր արեւելքի ուժովը կուգան կը վազեն պզտիկ երկրի մը վրայ, որ իրենց հարիւր նահանգներէն հազիւ թէ մէկը կրնար սեպուիլ։ Աթէնքն ու Սպարտան բոլոր դաշնակիցներուն օգնութենէն յոյսերնին կը կտրեն, բայց մէկըզմէկ չեն թողուր. իրենց քաջութեամբը միայն բովանդակ Ասիոյ դէմ կը դնեն, անհամար զօրքեր կը ջարդեն կը փախցընեն, նաւատորմիղներ կը կոտրատեն կ'ընկղմեն, և հզօր պետութեան մը կը յաղթեն։

2 Կիւրոս (ինչպէս որ գիտենք) Լիւդիոյ ան-

---

1 Մարական պատերազմը ո՞րն է։

2 Ի՞նչ պատճառաւ Յոնիացիք գլուխ քաշեցին Պարսից դէմ։

րելէն ետքը, Փոքր Ասիոյ մէջ եղած Յունաց գաղթականներն ալ նուաճեր էր։ Արիստագորաս անունով մէկը Պարսից Դարեհ թագաւորին կողմանէ Միլետոնի կուսակալ դրուած էր. ասիկայ Դարեհի Արտափեռնէս եղբօրը հետ աւրուելով՝ հասկըցաւ որ իր բանը գէշ է. անոր թշնամութեանը անշէն ազատելու մտքով ուզեց Յոնիան ոտք հանել։ Արիստագորասայ հօրեղբայրը Իստիէոս որ ան ատեն Շօշ կը կենայ՝ ձեռքի տակէն իր եղբօրորդւոյն կ'օգնէր, ու երբոր տեսաւ թէ ոտք ելլելու յարմար ժամանակ է, Շօշէն սուրհանդակ մը խրկեց Արիստագորասին ըսելով որ շուտ ընէ ոտք հանէ Յոնիացիքը։ Եւ որովհետեւ ճամբաները բռնուած էին, ու ամէն անցուորաց վրան գլուխը սատիկ կը քննէին, Իստիէոս Արիստագորասին իր միտքը իմացընելու համար այսպիսի հնարք մը մտածեց կ'ըսեն։ Իր հաւատարիմ ծառաներէն մէկուն գլուխը գերծեց, ու վրան ուզած խօսքերը տպեց. երբոր մազերը բուսան ու գրերը գոցուեցան, առաւ զինքը Միլետոն խրկեց, պատուիրելով որ Արիստագորասին ըսէ որ մազերը գերծել տայ ու գլխուն վրայ եղածը կարդայ։ Անկէց հասկըցաւ Արիստագորաս հօրեղբօրը միտքը, ու սկսաւ ապստամբութեան պատրաստութիւն տեսնել։

1 Իստիէոսին հրամանը իր կուսակցացը իմա-

---

1 Արիստագորաս ինչ կերպով ջանաց Յոյները ոտք հանել։

ցուց, և անոնց հետ մէկտեղ Պարսից իշխանութեննէն դլուխ քաշեցին (505)։ Եւրոպա բընակող Յունացմէ ալ օգնութիւն գտնելու համար Արիստագորաս գնաց Սպարտա, ու խոստմունքներով և ընծաներով շատ ջանաց որ Սպարտացւոց Կղէոմէն թագաւորը իրեն հետ միաբանէ, բոլոր տիրելու երկիրները պղնձէ տախտակի մը վրայ գծեց ու անոր ցուցուց։ Կղէոմէն իրեք օր ուզեց որ վրան մտածէ. չորրորդ օրը հարցուց Արիստագորասին թէ Սպարտայէն ինչուան Շօշ քանի՞ օրուան ճամբայ է. Արիստագորաս ալ ելաւ ըսաւ թէ Օրը երեսուն մղոն ճամբայ ընելով՝ իրեք ամսուան մէջ կրնանք հասնիլ։ Կղէոմէն բարկացաւ ու խօսքը կտրելով՝ Բարեկամ, ըսաւ, քու աս առաջարկութիւնդ շատ վտանգաւոր բան է. կ՚ուզես որ Սպարտացիք իրեք ամսուան ճամբորդութիւն ընեն Յունաստանի ծովեզերքէն անդին. արեւը չմտած երթաս Սպարտայէն։ Արիստագորաս աղաչաւորի կերպարանք մտած, ու ձեռքը ձիթենիի ճիւղ մը բռնած՝ նորէն գնաց Կղէոմէնին աղաչեց՝ շատ ստակ ալ խոստանալով. բայց երբոր անիկայ յանձն չառաւ, Արիստագորաս Աթէնք անցաւ, և հոն բանը յաջողեցաւ։

1 Աթենացիք Դարեհի դէմ արդէն սրդողած ըլլալով որ Իպպիասը քովը ընդուներ էր սիրով յանձն առին Արիստագորասին խնդիրքը։ Մէ-

---

1 Աթենացիք ինչ օգնութիւն ըրին Յոնիացւոց։

կէն քսան նաւ պատրաստեցին, ու Եւբիոյ Եռետրիա քաղաքէն եկած հինգ նաւով զօրք խրկեցին Եփեսոս (504)։ Աս օգնութեամբ զօրացան Յոնիացիք, ու երեք օրուան մէջ Լիւդիոյ մայրաքաղաքը Սարդիկէն առին, և որովհետև տները եղեգէ շինուած էին, զինուորին մէկը տան մը կրակ տալուն պէս՝ մէկալներն ալ բռընկեցան, ու բոլոր քաղաքը այրեցաւ։ Սակայն Պարսիկք խիստ շատուոր ըլլալով՝ քշեցին դաշնակիցները. Աթենացիք ալ թողուցին Աթէնք դարձան։

1 Բայց Ասիացի Յոյները անկէց ետքն ալ քիչ մը ժամանակ քաջութեամբ առաջ տարին պատերազմը. միայն երբոր Պարսիկք անթիւ նաւերով անոնց սակաւաթիւ նաւատորմղին վրայ յարձըկեցան, շատ քաջութեամբ դէմ դնելէն ետքը յաղթուեցան (498)։ Պարսիկք ծովէն ցամաքէն Միլետոսը պաշարեցին. պարիսպը բաբաններով ծեծեցին, և տակէն ականներ բանալով առին՝ Արիստագորասի ապստամբութեան եօթներորդ տարին, և բնակիչքը գերի տարին։ Յաջորդ գարնան Պարսից նաւատորմիղը առեց Քիոս, Լեսբոս և Տենեդոս կղզիները։

2 Երբոր Յոնիացիք բոլորովին նուաճեցան, Դարեհ ուզեց որ Աթենացուոց ու Երետրիացուոց ալ վրէժ առնու, որ անոնց ձեռնտու ե-

1 Յոնիացիք մինակ ու մնացին ինչ ըրին։
2 Դարեհի նաւատորմիղը ինչպէս ջարդուեցաւ։

ղեր էին. ուստի անթիւ ծովային ու ցամաքային զօրքով իր Մարդոնիոս փեսան վրանին խրկեց (496)։ Նաւատորմիղը Թասոս կղզին նուաճելէն ետքը, Աթոս լեռան քով յանկարծ սաստիկ հիւսիսային քամի մը ելաւ, ու իրեք հարիւր նաւու հետ քսան հազար մարդէն աւելի կորսուեցաւ։ Ուրիշ մեծ հարուած մըն ալ ցամաքային զօրացը պատահուած էր. ասոնք երբոր Մակեդոնիոյ մէկ մասը հնազանդեցուցած առաջ կուգային, Թրակացիք գիշերանց վրանին վազեցին ու ահագին ջարդ տուին, Մարդոնիոսն ալ վիրաւորեցին։ Տեսաւ Մարդոնիոս որ մնացած զօրքովը Յունաստանի տիրել չկրնար, ամօթով դարձաւ գնաց Պարսկաստան։

1 Դարեհ ասով ալ միտքը փոխելու տեղ աւելի կատղեցաւ. բայց նոր արշաւանք մը ընելէն առաջ դեսպան խրկեց Յունաստան, ու երկրին հող ու ջուրը ուզեց (495)։ Շատերը սարսափած մէկէն հնազանդեցան, կամքը կատարեցին։ Միայն Աթէնք ու Սպարտա յանձն չառին. իրաւանց ազգաց ալ դէմ՝ դեսպաններուն մէկը առին ծաղրելով ջրհոր մը նետեցին, մէկալն ալ խորունկ փոսի մը մէջ, ըսելով որ երթան առնուն ուզածնին։

2 Ասոր նախատանաց ալ վրէժն առնելու

---

1 Դարեհի դեսպաններուն հետ ինչպէս վարուեցան Յոյնք։

2 Իր դեսպաններուն եղած նախատանացը վրէժն ինչպէս ուզեց առնել Դարեհ։

համար։ Դարեհ մէկէն հինգ հարիւր հազար հոգւոյ բանակ մը կազմեց, և վեց հարիւր նաւուվ տորմիղ մը, անոնց զօրավար դրաւ Դատն ու Արտափեռնէսը, և պատուիրեց որ Յունաստանի հասարակապետութիւնները նուաճեն, Աթենացւոց ու Երետրիացւոց յանդգնութիւնը պատժեն որ իրեն դէմ օգներ էին Յոնիացւոց, քաղաքնին այրեն. բնակիչներնին ալ շղթայակապ իրեն բերեն. ասոր համար զօրացը հետ անթիւ շղթաներ ալ խաւրեց։ Ճամբուն վրայ եղած կղզիները նուաճելէն ու կողոպտելէն ետքը, Պարսից նաւատորմիղը Եւբիոյ ծովեզերեայ Կարիստոս քաղաքը հասաւ. Պարսիկք թէպէտ բազմութեամբ զօրաց Երետրիացւոց վրայ յարձըկեցան, սակայն անոնք քիչ զօրքով երկար ատեն դիմացան. բայց մէջերնէն քանի մը հոգի Պարսիցմէ կաշառուելով մատնութիւն ըրին. որով քաղաքնին առին Պարսիկք կործանեցին, զերենք ալ շղթայակապ Ասիա խրկեցին։

1 Ան յաղթութենէն ետքը Դատ և Արտափեռնէս հարիւր հազար հետևակ և տասը հազար ձիաւոր զօրքով Պիսիստրատայ Իպպիաս որդւոյն առաջնորդութեամբ Եւբիայէն ելան, Ատտիկէ եկան Մարաթոնի ծովափունքը։

2 Աթենացիք նեղը մնած իրենց դաշնակցացը

---

1 Դատ և Արտափեռնէս ո՞րչափ զօրքով անցան Ատտիկէ։

2 Աթենացւոց զօրքը ո՞րչափ էր։

գիմեցին. անոնք ամէնքն ալ հրաժարեցան։ Սպարտացիք խոստացան օգնելու, բայց անոնք ալ աւելորդապաշտական սովորութիւն մը ունենալով որ լուսինը լրանալէ առաջ պատերազմի չէին երթար՝ շատ ուշացան։ Միայն Պղատէացիք հազար հոգի օգնութիւն խրկեցին։ Իսկ իրենցմէ հազիւ տասը հազար մարդ ժողվեցին Աթենացիք, ամէն մէկ ցեղէն հազարական հոգի։

1 Աթենացիք բարեբաղդ գտնուեցան որ մէջերնին իրեք մեծամեծ մարդիկ կային ան ատենը, Միլտիադէս, Արիստիդէս ու Թեմիստոկլէս. Միլտիադէս հնարիմաց ու փորձ զօրավար, Արիստիդէս՝ արդարութեամբը բոլոր Յունաց մէջ անուանի, և Թեմիստոկլ՝ փառասիրութեանը համար ամէն բանի ձեռք զարնող։ Իրեքն ալ ազատութեան սիրովը վառուած՝ իրենց քաղաքակցացը սիրտ տուին, եռանդնին բորբոքեցին, ու հայրենեաց ազատութեանը համար կեանքերնին տալու պատրաստեցին։ Տասը հազար զօրաց վրայ տասը զօրավար դրին, և որոշեցին որ կարգաւ ամէնքը մէյմէկ օր ընեն զօրավարութիւնը։ Վեհանձնութեամբ մը հրաժարեցաւ Արիստիդէս ու իր կարգը Միլտիադեսին տուաւ, մէկալ զօրավարներն ալ հասարակաց օգուտը իրենց առանձնական փառասիրութենէն վեր դնելով՝ անոր օրինակին հետեւեցան։

---

1 Ի՞նչ զօրավարներ ունէին Աթենացիք։

1 Միլտիադէս տեսնելով որ հայրենեաց ազատութիւնը իր վրայ միայն մնաց, ջանաց որ թըշնամւոյն բազմութեանը՝ տեղւոյն յարմարութեամբը յաղթէ։ Գնաց լեռան մը տակ կեցաւ, ու կարած ծառերէ իրեն պատնէշ շինեց։

2 Դատ տեսաւ որ ան գիրքն իրեն յաջող չէ, բայց իր զօրաց բազմութեանը ապաւինած՝ պատերազմի նշան տուաւ։ Յոյնք կատաղաբար վրանին վազեցին. պատերազմը սաստկացաւ, Պարսիկք մէջտեղէն սկսան զօրանալ. հարկ եղաւ որ բազմութիւնը քանի մը ժամ կռուելէն ետքը քաջութենէն յաղթուի. Յունաց աջ թեւը դաշտին մէջ զարկաւ ցրուեց Պարսից զօրքը, ձախ թեւն ալ տարաւ ճահիճի մը մէջ ձգեց զանոնք։ Ետքը երկու թեւն ալ մէկտեղ վազեցին, Արիստիդեսի ու Թեմիստոկլեսի օգնութեան հասան, որ Դատին ընտիր զօրացը մէջ պաշարուած՝ յաղթուելու վրայ էին։ Ան ատեն տեսնելու բան էր Պարսից կերած ջարդն ու փախուստը։ Չորս կողմէն պաշարուած՝ յուսահատած չէին գիտեր ո՛ւր փախչին. նաւերն ապաւինեցան. ետեւնէն հասան Յոյնք, հոն ալ իրենց սաստիկ ջարդ մը տուին։ Կինեգիրոս կարիճը լողալով աջ ձեռքովը փախչող նաւ մը բռնեց, ու կ'ուզէր վեր ելլել. կտրեցին ձեռքը. ձախովը բռնեց,

---

1 Միլտիադէս ի՞նչպէս պատրաստուեցաւ պատերազմի։

2 Մարաթոնեան պատերազմը ի՞նչպէս եղաւ։

ան ալ կտրեցին․ ան ատենը ակռաներովը նաւը խածաւ․ գլուխը կտրեցին ու ձեռքէն ազատեցան։ Եօթը նաւ առին Աթենացիք․ մնացած նաւերն ալ ընդունայն տեղը Աթենքի նաւահանգստին տիրելու ջանալէն ետքը Ասիա դարձան։

1 Այս հռչակաւոր պատերազմը եղաւ Քրիստոսէ 490 տարի առաջ, սեպտեմբերի 29ին։ Պարսիկք կորսնցուցին վեց հազար չորս հարիւր հոգի, իսկ Աթենացիք հարիւր իննսունեւերկու կտրիճներ, որ ամէնքն ալ դիւցազն ըսուելու արժանի էին։ Միլտիադէս վիրաւորեցաւ, Իպպիաս մեռաւ, նմանապէս Աթենացւոց զօրապետներէն երկուքը Ստեսիղէոս և Կալլիմաքոս։ Այս Մարաթոնեան պատերազմին մէջ երևելի եղած Աթենացւոց մէկն է նաև Եսքիղէս բանաստեղծը, որ ետքը Պարսիկք անունով ողբերգութեամբ մը Յունաց ըրած յաղթութիւնը հանդիսացուց։

2 Երկրորդ օրը հասան երկու հազար Սպարտացիք, որ երեք օր՝ երեք գիշերուան մէջ հազար երկու հարիւր ասպարէզ ճամբայ կտրեր էին։ Տեսան որ դեռ Պարսից վրանները կեցած էին, Մարաթոնեան ընդարձակ դաշտը մեռելներով ու կողոպուտներով ծածկուած էր. Ա-

---

1 Այն պատերազմին մէջ երկու կողմէն ո՞րչափ մարդ ընկաւ։

2 Սպարտացիք ե՞րբ հասան։

րիստոնգէս ալ զօրքով հոն կեցած գերիներուն ու աւարներուն պահպանութիւն կ'ընէր. շատ ուրախացան Սպարտացիք, ու շատ գովեցին յաղթողաց քաջութիւնը. բայց իրենք ալ շատ ամօթով մնացին։

1 Ան միջոցին կարիճ զինուորին մէկը, որուն ձեռքին մէջ դեռ մեռուցած թշնամեաց արիւնը կը մնար, կը վազէ որ ամենէն առաջ ինքն աս փառաւոր յաղթութեան աւետիսը քաղաքակցացը տայ։ Մէկ շնչով գրեթէ յիսուն մղոն տեղ կը վազէ, շնչասպառ կը հասնի Աթէնք, ու հազիւ բերնէն աս խօսքը կը հանէ՝ Աւետիս, մենք յաղթեցինք, մէկէն կ'իյնայ կը մեռնի։ Պարսից աւարին մէկ մասը աստուածոց նուիրեցին, մէկալ մասն ալ զօրաց բաժնեցին։ Մեռելներուն փառաւոր յուղարկաւորութեան հանդէս ըրին, և սահմանեցին որ ամէն տարի ան օրը անոնց յիշատակը կատարեն։

2 Մարաթոնի յաղթութիւնը բոլոր մէկալ յաղթութեանց սկիզբն եղաւ։ Աս յաղթութեամբ ճանչցան Յոյնք իրենց զօրութիւնը, Պարսից զօրութենէն վախերնին գնաց, և իմացան որ ժողովրդեան ձեռքն է անյաղթելի ըլլալը։ Այսպիսի փառաւոր յաղթութեան վարձքն ալ

---

1 Աթենացիք ի՞նչ կերպով իմացան Մարաթոնի յաղթութիւնը։
2 Ի՞նչ փոխարէն ըրին ան պատերազմին մէջ յաղթողներուն։

ցուց, և անոնց հետ մէկտեղ Պարսից իշխանութենէն գլուխ քաշեցին (505)։ Եւրոպա բընակող Յունացմէ ալ օգնութիւն գտնելու համար Արիստագորաս գնաց Սպարտա, ու խոստմունքներով և ընծաներով շատ ջանաց որ Սպարտացւոց Կղէոմէն թագաւորը իրեն հետ միաբանի, բոլոր տիրելու երկիրները պղնձէ տախտակի մը վրայ գծեց ու անոր ցուցուց։ Կղէոմէն իրեք օր ուզեց որ վրան մտածէ. չորրորդ օրը հարցուց Արիստագորասին թէ Սպարտայէն մինչուան Շօշ քանի՞ օրուան ճամբայ է. Արիստագորաս ալ ելաւ ըսաւ թէ Օրը երեսուն մղոն ճամբայ ընելով՝ իրեք ամսուան մէջ կրնանք հասնիլ։ Կղէոմէն բարկացաւ ու խօսքը կտրելով՝ Բարեկամ, ըսաւ, քու աս առաջարկութիւնդ շատ վտանգաւոր բան է. կ'ուզես որ Սպարտացիք իրեք ամսուան ճամբորդութիւն ընեն Յունաստանի ծովեզերքէն անդին. արեւը չմտած երթաս Սպարտայէն։ Արիստագորաս աղաչաւորի կերպարանք մտած, ու ձեռքը ձիթենիի ճիւղ մը բռնած՝ նորէն գնաց Կղէոմէնին աղաչեց՝ շատ ստակ ալ խոստանալով. բայց երբոր անիկայ յանձն չառաւ, Արիստագորաս Աթէնք անցաւ, և հոն բանը յաջողեցաւ։

1 Աթենացիք Դարեհի դէմ արդէն սրդողած ըլլալով որ Իպպիասը քովը ընդունէր էր սիրով յանձն առին Արիստագորասին խնդիրքը։ Մէ-

---

1 Աթենացիք ինչ օգնութիւն ըրին Յոնիացւոց։

կէն քանի նաւ պատրաստեցին, ու Եւբիոյ Երետրիա քաղաքէն եկած հինգ նաւով զօրք խրկեցին Եփեսոս (504)։ Աս օգնութեամբ զօրացան Յոնիացիք, ու իրեք օրուան մէջ Լիւդիոյ մայրաքաղաքը Սարդիկէն առին, և որովհետև տները եղեգէ շինուած էին, զինուորին մէկը տան մը կրակ տալուն պէս՝ մէկալներն ալ բռընկեցան, ու բոլոր քաղաքը այրեցաւ։ Սակայն Պարսիկք խիստ շուտով ըլլալով՝ քշեցին դաշնակիցները. Աթենացիք ալ Թողուցին Աթէնք դարձան։

1 Բայց Ասիացի Յոնները անկեց ետքն ալ քիչ մը ժամանակ քաջութեամբ առաջ տարին պատերազմը. միայն երբոր Պարսիկք անթիւ նաւերով անոնց սակաւաթիւ նաւատորմղին վրայ յարձըկեցան, շատ քաջութեամբ դէմ դնելէն ետքը յաղթուեցան (498)։ Պարսիկք ծովէն ցամաքէն Միլետոնը պաշարեցին. պարիսպը բաբաններով ծեծեցին, և տակէն ականներ բանալով առին՝ Արիստագորասի ապստամբութեան եօթներորդ տարին, և բնակիչքը գերի տարին։ Յաջորդ գարնան Պարսից նաւատորմիղը առին Քիոս, Լեսբոս և Տենեդոս կղզիներուն։

2 Երբոր Յոնիացիք բոլորովին նուաճեցան, Դարեհ ուզեց որ Աթենացւոցմէ ու Երետրիացւոցմէ ալ վրէժ առնու, որ անոնց ձեռնտու ե-

———

1 Յոնիացիք մինակ որ մնացին ինչ ըրին։
2 Դարեհի նաւատորմիղը ինչպէս ջարդուեցաւ։

ղեր էին. ուստի անթիւ ծովային ու ցամաքային զօրքով իր Մարգոնիոս փեսան վրանին խրկեց (496)։ Նաւատորմիղը Թասոս կղզին նուաճելէն ետքը, Աթոս լեռան քով յանկարծ սաստիկ հիւսիսային քամի մը ելաւ, ու իրեք հարիւր նաւու հետ քսան հազար մարդէն աւելի կորսուեցաւ։ Ուրիշ մեծ հարուած մըն ալ ցամաքային զօրացը պահուած էր. ասոնք երբոր Մակեդոնիոյ մէկ մասը հնազանդեցուցած առաջ կուգային, Թրակեցիք գիշերանց վրանին վազեցին ու ահագին ջարդ տուին, Մարգոնիոսն ալ վիրաւորեցին։ Տեսաւ Մարգոնիոս որ մնացած զօրքովը Յունաստանի տիրել չկրնար, ամօթով դարձաւ գնաց Պարսկաստան։

1 Դարեհ ասով ալ միտքը փոխելու տեղ աւելի կատղեցաւ. բայց նոր արշաւանք մը ընելէն առաջ դեսպան խրկեց Յունաստան, ու երկրին հողն ու ջուրը ուզեց (495)։ Շատերը սարսափած մէկէն հնազանդեցան, կամքը կատարեցին։ Միայն Աթէնք ու Սպարտա յանձն չառին. իրաւանց ազգաց ալ դէմ՝ դեսպաններուն մէկը առին ծաղրելով ջրհոր մը նետեցին, մէկալն ալ խորունկ փոսի մը մէջ, ըսելով որ երթան առնուն ուզածնին։

2 Աս նոր նախատանաց ալ վրէժն առնելու

---

1 Դարեհի դեսպաններուն հետ ինչպէս վարուեցան Յոյնք։

2 Իր դեսպաններուն եղած նախատանացը վրէժն ինչպէս ուզեց առնուլ Դարեհ։

համար: Դարեհ մեկէն հինգ հարիւր հազար հոգւով բանակ մը կազմեց, և վեց հարիւր նաւով տորմիղ մը, անոնց զօրավար դրաւ Դատն ու Արտափեռնէսը, և պատուիրեց որ Յունաստանի հասարակապետութիւնները նուաճեն, Աթենացւոց ու Երետրիացւոց յանդգնութիւնը պատժեն որ իրեն դէմ օգներ էին Յոնիացւոց, քաղաքնին այրեն. բնակիչներն ալ շղթայակապ իրեն ղրկեն. ասոր համար զօրացը հետ անթիւ շղթաներ ալ խաւրեց: Ծովուն վրայ եղած կղզիները նուաճելէն ու կողոպտելէն ետքը, Պարսից նաւատորմիղը Եւբիոյ ծովեզերեայ Կարիստոս քաղաքը հասաւ. Պարսիկք թէպէտ բազմութեամբ զօրաց Երետրիացւոց վրայ յարձըկեցան, սակայն անոնք քիչ զօրքով երկար ատեն դիմացան. բայց մէջերնէն քանի մը հոգի Պարսիցմէ կաշառուելով մատնութիւն ըրին. որով քաղաքնին առին Պարսիկք կործանեցին, գերենք ալ շղթայակապ Ասիա ղրկեցին:

1 Ան յաղթութենէն ետքը Դատ և Արտափեռնէս հարիւր հազար հետևակ և տասը հազար ձիաւոր զօրքով Պիսիստրատայ Իպպիաս որդւոյն առաջնորդութեամբ Եւբիայէն ելան, Ատտիկէ եկան Մարաթոնի ծովափունքը:

2 Աթենացիք նեղը մնած իրենց դաշնակցացը

---

1 Դատ և Արտափեռն ո՞րչափ զօրքով անցան Ատտիկէ:

2 Աթենացւոց զօրքը ո՞րչափ էր:

դիմեցին. անոնք ամէնքն ալ հրաժարեցան։ Սպարտացիք խոստացան օգնելու, բայց անոնք ալ աւելորդապաշտական սովորութիւն մը ունենալով որ լուսինը լմնալէ առաջ պատերազմի չէին երթար՝ շատ ուշացան։ Միայն Պղատէացիք հազար հոգի օգնութիւն խրկեցին։ Իսկ իրենցմէ հազիւ տասը հազար մարդ ժողվեցին Աթենացիք. ամէն մէկ ցեղէն հազարական հոգի։

1 Աթենացիք բարեբաղդ գտնուեցան որ մէջերնին իրեք մեծամեծ մարդիկ կային ան ատենը, Միլտիադէս, Արիստիդէս ու Թեմիստոկլէս. Միլտիադէս հնարիմաց ու փորձ զօրավար, Արիստիդէս՝ արդարութեամբը բոլոր Յունաց մէջ անուանի, և Թեմիստոկլ՝ փառասիրութեանը համար ամէն բանի ձեռք զարնող։ Իրեքն ալ ազատութեան սիրովը վառուած՝ իրենց քաղաքակցացը սիրտ տուին, եռանդնին բորբոքեցին, ու հայրենեաց ազատութեանը համար կեանքերնին տալու պատրաստեցին։ Տասը հազար զօրաց վրայ տասը զօրավար դրին, և որոշեցին որ կարգաւ ամէնքը մէյմէկ օր ընեն զօրավարութիւնը։ Վեհանձնութեամբ մը հրաժարեցաւ Արիստիդէս ու իր կարգը Միլտիադեսին տուաւ, մէկալ զօրավարներն ալ համարակաց օգուտը իրենց առանձնական փառասիրութենէն վեր դնելով՝ անոր օրինակին հետևեցան։

---

1 Ի՞նչ զօրավարներ ունէին Աթենացիք։

[1] Միլտիադէս տեսնելով որ հայրենեաց ազատութիւնը իր վրայ միայն մնաց, ջանաց որ թըշնամւոյն բազմութեանը՝ տեղւոյն յարմարութեամբը յաղթէ։ Գնաց լեռան մը տակ կեցաւ, ու կտրած ծառերէ իրեն պատնէշ շինեց։

[2] Դատ տեսաւ որ ան դիրքն իրեն յաջող չէ, բայց իր զօրաց բազմութեանը ապաւինած՝ պատերազմի նշան տուաւ։ Յոյնք կատաղաբար վրանին վազեցին. պատերազմը սաստկացաւ, Պարսիկք մէջտեղէն սկսան զօրանալ. հարկ եղաւ որ բազմութիւնը քանի մը ժամ կռուելէն ետքը քաջութենէն յաղթուի. Յունաց ալ թեւը դաշտին մէջ զարկաւ ցրուեց Պարսից զօրքը. ձախ թեւն ալ տարաւ ճահիճի մը մէջ ձգեց զանոնք։ Ետքը երկու թեւն ալ մէկտեղ վազեցին, Արիստիդեսի ու Թեմիստոկլեսի օգնութեամբ հասան, որ Դատին ընտիր զօրացը մէջ պաշարուած՝ յաղթուելու վրայ էին։ Ան ատեն տեսնելու բան էր Պարսից կերած ջարդն ու փախուստը։ Չորս կողմէն պաշարուած՝ յուսահատած չէին գիտեր ուր փախչին. նաւերն ապաւինեցան. ետեւնէն հասան Յոյնք, հոն ալ իրենց սաստիկ ջարդ մը տուին։ Կիւնեգիրոս կտրիճը լողալով ալ ձեռքովը փախչող նաւ մը բռնեց, ու կ'ուզէր վեր ելլել. կտրեցին ձեռքը. ձախովը բռնեց,

---

1 Միլտիադէս ի՞նչպէս պատրաստուեցաւ պատերազմի։

2 Մարաթոնեան պատերազմը ի՞նչպէս եղաւ։

ան ալ կտրեցին. ան ատենը ակռաներովը նաւը խածաւ. գլուխը կտրեցին ու ձեռքէն ազատե-ցան: Եօթը նաւ առին Աթենացիք. Մնացած նաւերն ալ ընդունայն տեղը Աթենքի նաւա-հանգստին տիրելու ջանալէն ետքը Ասիա դար-ձան:

1 Աս հռչակաւոր պատերազմը եղաւ Քրիս-տոսէ 490 տարի առաջ, սեպտեմբերի 29ին: Պարսիկք կորսնցուցին վեց հազար չորս հա-րիւր հոգի, իսկ Աթենացիք հարիւր իննսունու-երկու կտրիճներ, որ ամէնքն ալ դիւցազն ը-սուելու արժանի էին: Միլտիադէս վիրաւորե-ցաւ, Իպպիաս մեռաւ, նմանապէս Աթենա-ցւոց զօրապետներէն երկուքը Ստեսիղէոս և Կալլիմաքոս: Աս Մարաթոնեան պատերազմին մէջ երեւելի եղած Աթենացւոց մէկն է նաև Ես-քիղէս բանաստեղծը, որ ետքը Պարսիկք անունով ողբերգութեամբ մը Յունաց ըրած յաղթու-թիւնը հանդիսացուց:

2 Երկրորդ օրը հասան երկու հազար Սպար-տացիք, որ երեք օր՝ երեք գիշերուան մէջ հա-զար երկու հարիւր ասպարէզ ճամբայ կտրեր էին: Տեսան որ դեռ Պարսից վրանները կեցած էին, Մարաթոնեան ընդարձակ դաշտը մեռել-ներով ու կողոպուտներով ծածկուած էր. Ա-

---

1 Սա պատերազմին մէջ երկու կողմէն ո՞րչափ մարդ ընկաւ:

2 Սպարտացիք ե՞րբ հասան:

ընտանիքէս ալ զօրքով հոն կեցած գերիներուն ու աւարներուն պահպանութիւն կ՚ընէր. շատ ուրախացան Սպարտացիք, ու շատ գովեցին յաղթողաց քաջութիւնը. բայց իրենք ալ շատ ամօթով մնացին։

1 Ան միջոցին կարիճ զինուորին մէկը, որուն ձեռքին մէջ դեռ մեռուցած թշնամեաց արիւնը կը մնար, կը վազէ որ ամենէն առաջ ինքն աս փառաւոր յաղթութեան աւետիսը քաղաքակցացը տայ։ Մէկ շնչով դրեթէ յիսուն մղոն տեղ կը վազէ, շնչասպառ կը հասնի Աթէնք, ու հազիւ բերնէն աս խօսքը կը հանէ՝ Աւետիս, մենք յաղթեցինք, մէկէն կ՚իյնայ կը մեռնի։ Պարսից աւարին մէկ մասը աստուածոց նուիրեցին, մէկալ մասն ալ զօրաց բաժնեցին։ Մեռեալներուն փառաւոր յուղարկաւորութեան հանդէս ըրին, և սահմանեցին որ ամէն տարի ան օրը անոնց յիշատակը կատարեն։

2 Մարաթոնի յաղթութիւնը բոլոր մէկալ յաղթութեանց սկիզբն եղաւ։ Աս յաղթութեամբ Ճանչցան Յոյնք իրենց զօրութիւնը, Պարսից զօրութենէն վախերնին գնաց, և իմացան որ ժողովրդեան ձեռքն է անյաղթելի ըլլալը։ Այսպիսի փառաւոր յաղթութեան վարձքն ալ

---

1 Աթենացիք ի՞նչ կերպով իմացան Մարաթոնի յաղթութիւնը։
2 Ի՞նչ փոխարէն ըրին ան պատերազմին մէջ յաղթողներուն։

պէտք էր որ փառաւոր ըլլար։ Աթենացիք Պիկեղէի * մէջ տասը զօրավարաց կենդանագիրը նկարել տուին, անոնց գլուխն ալ դրին Միլտիադէսը, որ իր օրինակովը զօրքը կը խրախուսէր։ Ասիկայ ան ատենի Յունաց համար մեծ պատիւ էր. բայց ետքերը երբոր շռայլութիւն մտաւ մէջերնին, իրեք հարիւր արձան մէկէն կանգնեցին Դեմետրի Փալերացւոյն։

4 Վրան շատ չանցաւ, մոռցան Աթենացիք Միլտիադեսին այնպիսի երախտիքը։ Զինքը նաւատորմիղի մը գլուխ դրած խրկեցին որ երթայ կղզեցւոց անհաւատարմութիւնը պատժէ՝ որ Պարսից հնազանդեր էին. դնաց շատերը նուաճեց. բայց երբոր Պարոս կղզին քով զարնուած ետ դարձաւ, Թշնամիները զրպարտեցին զինքը թէ Պարսից թագաւորէն կաշառուելով կամաւ յաղթուեցաւ, ու դատապարտեցին որ չարագործաց վիհը ձգուի։ Դատաւորները չուզելով աս անիրաւ վճիռը հաստատել, որոշեցին որ նաւատորմիղին համար ծախք եղած յիսուն տաղանդը (270,000 ֆռանք) վճարէ ու ազատի։ Միլտիադէս չկարենալով այնչափ ստակը վճարել՝ բանտ դրուեցաւ, և հոն հայրենեաց համար պատերազմելու ատենը առած վէրքերէն մեռաւ։

---

4 Միլտիադեսին ի՞նչ հատուցում ըրին Աթենացիք։

* Պիկեղէն՝ Աթէնքի պատկերաց Թանգարանն էր։

# ԳԼՈՒԽ Զ.

Արիստիդէս և Թեմիստոկլէս. — Արիստիդեսի աքսորը. — Քսերքսեսի արշաւանքը Յունաստան. — Լեոնիդաս. — Արտեմիսիոնի պատերազմը. — Թեմիստոկլի խորհուրդը. — Սալամինայի պատերազմը. — Պղատէայի պատերազմը. — Միկաղէայ պատերազմը։

[1] Միլտիադեսի մահուընէն ետքը, Արիստիդէս և Թեմիստոկլէս, երկուքն ալ թէ ազնուականութեամբ և թէ իրենց անձնական կատարելութիւններովը իրարմէ երևելի էին Աթենացւոց առջևը. Արիստիդէս հաստատուն բնաւորութեամբ, և անյողդողդ արդարութեամբը ոչ սուտ խօսիլ գիտէր, ոչ շողոքորթել և ոչ կեղծաւորիլ։ Իր գանձապետութեան ատենը միայն ան կը նայէր որ հասարակաց բարին ընէ. անոր համար շատ անգամ կը հարկադրուէր Թեմիստոկլեսին հետ վիճելու, և անոր հասարակապետութեան մէջ ընել ուզած փոփոխութեանցը դէմ կենալու։ Թեմիստոկլեսի գլխաւոր կիրքերն էին փառասիրութիւն և իշխանասիրու-

---

[1] Միլտիադեսէն ետքը ո՞վ եղաւ Աթենացւոց մէջ անուանի։

թիւն։ Քանի որ Միլտիադեսին յաղթութեան գովասանքը կը լսէր՝ գիշերները քունը չէր տանէր։ Կը զարմանային բարեկամները ու պատճառը կը հարցընէին իրեն. Միլտիադեսի յաղթանակները չեն թողուր որ հանգչիմ կ'ըսէր։

1 Տեսնելով Թեմիստոկլէս որ Արիստիդէս բոլոր իր առաջարկութիւններուն դէմ կը դնէ, ջանաց որ զինքը ժողովրդեան աչքէն հանէ, ու խեցեկոյս վճռով աքսորել տայ, և իր ճարտասանութեամբը վերջապէս անոր արդարութեանը յաղթեց։ Կ'ըսեն թէ Արիստիդեսի աքսորուելու օրը, ամէնքը խեցիներու վրայ անոր անունը գրելու ատեն, գեղացիին մէկը խեցի մը ձեռքը Արիստիդեսի քովը կուգայ ու կ'աղաչէ որ վրան Արիստիդէսի անունը գրէ։ Արիստիդէս զարմացած՝ կը հարցընէ. Արիստիդէս քեզի ինչ ըրած է։ — Բան մը չէ ըրած, կ'ըսէ գեղացին, և ոչ ալ զինքը տեսած եմ. բայց ձանձրացեր եմ իրեն Արդար անունը լսելէն։ Առանց բան մը ըսելու կը գրէ Արիստիդէս անունը ու խեցին անոր կը դարձընէ։ Աքսորուելով քաղաքէն դուրս ելլելու ատենը անյիշաչարութեամբ ձեռուըները երկինք վերցուց Արիստիդէս ու խնդրեց աստուածներէն՝ որ Աթենացիք անանկ նեղութեան մէջ չիյնան որ ետքը իրեն կարօտ ըլլան։

2 Թեմիստոկլէս իր ոսոխին ձեռքէն ազատե-

---

1 Արիստիդէս ինչպէս աքսորուեցաւ։

2 Թեմիստոկլէս ինչ կերպով Աթենացւոց ծովային զօրութիւնը աւելցուց։

ըլլէն ետքը՝ ձեռքն անցած իշխանութիւնը տղէկ որ հայրենիքը դրսուանց մեծցընելու գործածեց։ Իր խորհրդովը Աթենացիք Լաւրիոն լեռան արծաթահանքէն ելած ստըկովը նոր նաւատորմիղ մը շինեցին։ Անով քիչ ատենի մէջ հարիւր ցռկանաւ պատրաստեցին, ու անոնցմով ծովուն տիրեցին։

[1] Քսերքսէս իր հօրը Դարեհին տեղը նստելով, անոր վրէժը ինքն ուզեց հանել Յունացմէ, և այնպիսի ահագին բանակով մը եկաւ Ելլեսպոնտոս որ անոր նմանը ինչուան ան ատեն չէր տեսնուած։ Նաւատորմիղն էր հազար երկու հարիւր երեքկարգեան թիով ցռկանաւ, և երեք հազար բեռնաբարձ նաւեր, որոնց մէջ հինգ հարիւր հազար մարդ կար։ Ցամաքային զօրաց բանակն էր մէկ միլիոն եօթը հարիւր հազար հետևակ, չորս հարիւր հազար հեծեալ, թող գերիներուն, ներքինեաց և կանանց բազմութիւնը որ զօրքէն աւելի էին կ'ըսեն։ Հոն ժողվուեր էին բաց 'ի Պարսից և Մարաց, նաև Ասորեստանեայք, Բակտրիացիք, Սկիւթացիք, Հնդկաստանցիք, Պարթեւք, Արաբացիք, Փռիւգացիք, Հայք, Լիւդացիք, Թրակացիք և ուրիշ զանազան ազգեր։ Եօթն օրուան ու եօթը գիշերուան մէջ Ելլեսպոնտոսի վրայ շինել տուած նաւա-

---

[1] Քսերքսէս ինչ պատրաստութեամբ Յունաց վրայ ելաւ։

կամուրջէն անցուց Քսերքսէս զօրքը Ասիոյ ծովեզերքէն Եւրոպայի եզերքը։

1 Ինքը Քսերքսէս ալ անցաւ Հելլեսպոնտոսէն, և մէկէն Թրակիա, Մակեդոնիա, Թեսսալիա, Դորիս, Բէովտիա (բաց ՚ի Թեբէէն) սարսափած հնազանդեցան իրեն, և ուզածին չափ ալ զօրք տուին։ Բայց Աթենացիք և Սպարտացիք թէպէտ և ամենևին տեղէ մը օգնութիւն չէին կրնար առնել, ոչ կղզիներէն և ոչ Սիկիլիա և Իտալիա բնակող Յունաց գաղթականներէն, ամէն բան աչքերնին առած որոշեցին որ իրենք զիրենք պաշտպանեն։ Լոկրացիք, Փոկէացիք, Թեսպացիք, Կորնթացիք, Տեգէացիք, Մանտէացիք, Որքոմենեանք, և ուրիշ քանի մը պզտիկ տէրութիւններ հետերնին միացան Պարսիկները վանելու։

2 Լեւոնիդաս՝ Սպարտացւոց թագաւորը, եօթը հարիւր հոգւով խրկեցին որ Թեսսաղիոյ ու Լոկրիսի մէջ եղած Թերմոպիլէ կիրճը պաշտպանէ, վասն զի անկից միայն կրնային Պարսիկք Յունաստան մտնել։ Իրեք հարիւր նաւ ալ Լակեդեմոնացւոց Եւրիբիադէս զօրավարին առաջնորդութեամբը գնացին Արտեմիսիոն բռնած նեղուցը պահելու։

---

1 Յունաստանի ո՞ր ազգերը դէմ կենալ ուզեցին Քսերքսեսի։

2 Ի՞նչ պատրաստութիւն ըրին Յոյնք Պարսից արշաւանքին դէմ։

1 Քսերքսէս միտքը դրած էր թէ Յունաստան իր աշխարհակալութեանը անունը լսելուն պէս՝ մէկէն պիտի խոնարհի ու հնազանդի իրեն, ուստի շատ զարմացաւ՝ երբոր տեսաւ որ Յոյնք իր անցնելու ճամբան ալ արգիլելու կը պատրաստուին։ Դեմարատ որ ատենով Սպարտացւոց թագաւոր եղած էր, ըսաւ իրեն թէ Լակեդեմոնացիք աւելի կ'ուզեն մեռնիլ քան թէ անձնատուր ըլլալ։ Սակայն քանի մը օր ալ սպասեց Քսերքսէս, յուսալով որ թերեւս Յոյնք ետ քաշուին։ Հինգերորդ օրը Լեւոնիդասին գրեց. Ընդունայն տեղը աստուածոց դէմ մի պատերազմիր. անցիր իմ կողմս. ըզքեզ բոլոր Յունաստանի թագաւոր կը դնեմ։ Լեւոնիդաս պատասխան տուաւ. Աւելի կ'ուզեմ հայրենեաց համար մեռնիլ քան թէ անոր վրայ իշխել։ Քսերքսէս ուրիշ թուղթ մըն ալ գրեց, որուն մէջ աս խօսքս միայն կար. Զէնքերդ տուր. Լեւոնիդաս ալ անոր տակը գրեց. Եկուր առ։

2 Քսերքսէս աս պատասխանիս վրայ սաստիկ բարկացած՝ հրամայեց Մարաց ու Կիսսացւոց որ երթան Սպարտացիները ողջ ողջ բռնեն իրեն բերեն։ Ան միջոցին որ Լեւոնիդաս քաջութեամբ դէմ դնելու կը պատրաստուէր, իրեն-

---

1 Քսերքսէս Յունաց միտքն որ իմացաւ ի՞նչ ըրաւ։

2 Ի՞նչպէս եղաւ Թերմոպիլէի պատերազմը։

գիմեցին. անոնք ամէնքն ալ հրաժարեցան։ Սպարտացիք խոստացան օգնելու, բայց անոնք ալ աւելորդապաշտական սովորութիւն մը ունէին որ լուսինը լեցուելէ առաջ պատերազմի չէին երթար՝ շատ ուշացան։ Միայն Պղատէացիք հազար հոգի օգնութիւն խրկեցին։ Իսկ իրենցմէ հազիւ տասը հազար մարդ ժողվեցին Աթենացիք, ամէն մէկ ցեղէն հազարական հոգի։

1 Աթենացիք բարեբաղդ գտնուեցան որ մէջերնին իրեք մեծամեծ մարդիկ կային ան ատենը, Միլտիադէս, Արիստիդէս ու Թեմիստոկլէս. Միլտիադէս հնարիմաց ու փորձ զօրավար, Արիստիդէս՝ արդարութեամբը բոլոր Յունաց մէջ անուանի, և Թեմիստոկլ՝ փառասիրութեանը համար ամէն բանի ձեռք զարնող։ Իրեքն ալ ազատութեան սիրովը վառուած՝ իրենց քաղաքակցացը սիրտ տուին, եռանդնին բորբոքեցին, ու հայրենեաց ազատութեանը համար կեանքերնին տալու պատրաստեցին։ Տասը հազար զօրաց վրայ տասը զօրավար դրին, և որոշեցին որ կարգաւ ամէնքը մէյմէկ օր ընեն զօրավարութիւնը։ Վեհանձնութեամբ մը հրաժարեցաւ Արիստիդէս ու իր կարգը Միլտիադեսին տուաւ, մէկալ զօրավարներն ալ հասարակաց օգուտը իրենց առանձնական փառասիրութենէն վեր դնելով՝ անոր օրինակին հետևեցան։

---

1 Ինչ զօրավարներ ունէին Աթենացիք։

1 Միլտիադէս տեսնելով որ հայրենեաց ազատութիւնը իր վրայ միայն մնաց, ջանաց որ թըշնամւոյն բազմութեանը՝ տեղւոյն յարմարութեամբը յաղթէ։ Գնաց լեռան մը տակ կեցաւ, ու կտրած ծառերէ իրեն պատնէշ շինեց։

2 Դատ տեսաւ որ ան դիրքն իրեն յաջող չէ, բայց իր զօրաց բազմութեանը ապաւինած՝ պատերազմի նշան տուաւ։ Յոյնք կատաղաբար վրանին վազեցին. պատերազմը սաստկացաւ, Պարսիկք մէջտեղէն սկսան զօրանալ. հարկ եղաւ որ բազմութիւնը քանի մը ժամ կռուելէն ետքը քաջութենէն յաղթուի. Յունաց աջ թեւը դաշտին մէջ զարկաւ ցրուեց Պարսից զօրքը, ձախ թեւն ալ տարաւ ճահիճի մը մէջ ձգեց զանոնք։ Ետքը երկու թեւն ալ մէկտեղ վազեցին, Արիստիդեսի ու Թեմիստոկլեսի օգնութեան հասան, որ Դատին ընտիր զօրացը մէջ պաշարուած՝ յաղթուելու վրայ էին։ Ան ատեն տեսնելու բան էր Պարսից կերած ջարդն ու փախուստը։ Չորս կողմէն պաշարուած՝ յուսահատած չէին գիտեր ուր փախչին. նաւերն ապաւինեցան. ետեւնէն հասան Յոյնք, հոն ալ իրենց սաստիկ ջարդ մը տուին։ Կինեգիրոս կարիճը լողալով աջ ձեռքովը փախչող նաւ մը բռնեց, ու կ'ուզէր վեր ելլել. կտրեցին ձեռքը. ձախովը բռնեց,

---

1 Միլտիադէս ի՞նչպէս պատրաստուեցաւ պատերազմի։

2 Մարաթոնեան պատերազմը ի՞նչպէս եղաւ։

ան ալ կոտրեցին. ան ատենը ակռաններովը նաւը խածաւ. գլուխը կոտրեցին ու ձեռքէն ազատեցան: Եօթը նաւ առին Աթենացիք. մնացած նաւերն ալ ընդունայն տեղը Աթենքի նաւահանգստին տիրելու ջանալէն ետքը Ասիա դարձան:

1 Աս հռչակաւոր պատերազմը եղաւ Քրիստոսէ 490 տարի առաջ, սեպտեմբերի 29ին: Պարսիկք կորսնցուցին վեց հազար չորս հարիւր հոգի, իսկ Աթենացիք հարիւր իննսունուերկու կտրիճներ, որ ամէնքն ալ դիւցազն ըսուելու արժանի էին: Միլտիադէս վիրաւորեցաւ, Իպպիաս մեռաւ, նմանապէս Աթենացւոց զօրապետներէն երկուքը Ստեսիղէոս և Կալլիմաքոս: Աս Մարաթոնեան պատերազմին մէջ երևելի եղած Աթենացւոց մէկն է նաև Եսքիղէս բանաստեղծը, որ ետքը Պարսիկք անունով ողբերգութեամբ մը Յունաց ըրած յաղթութիւնը հանդիսացուց:

2 Երկրորդ օրը հասան երկու հազար Սպարտացիք, որ իրեք օր՝ իրեք գիշերուան մէջ հազար երկու հարիւր ասպարէզ ճամբայ կտրեր էին: Տեսան որ դեռ Պարսից վրանները կեցած էին, Մարաթոնեան ընդարձակ դաշտը մեռելներով ու կողոպուտներով ծածկուած էր. Ա-

---

1 Ան պատերազմին մէջ երկու կողմէն ո՞րչափ մարդ ընկաւ:

2 Սպարտացիք ե՞րբ հասան.

լտիադէս ալ զօրքով հոն կեցած գերիներուն ու աւարներուն պահպանութիւն կ'ընէր. Շատ ուրախացան Սպարտացիք, ու շատ գովեցին յաղթողաց քաջութիւնը. բայց իրենք ալ շատ ամօթով մնացին։

1 Ան միջոցին կտրիճ զինուորին մէկը, որուն ձեռքին մէջ դեռ մնացած թշնամեաց արիւնը կը մնար, կը վազէ որ ամենէն առաջ ինքն աս փառաւոր յաղթութեան աւետիսը քաղաքակ-ցացը տայ։ Մէկ շնչով գրեթէ յիսուն մղոն տեղ կը վազէ, շնչասպառ կը հասնի Աթէնք, ու հա-զիւ բերնէն աս խօսքը կը հանէ՝ Աւետիս, մենք յաղթեցինք, մէկէն կ'իյնայ կը մեռնի։ Պարսից աւարին մէկ մասը աստուածոց նուիրեցին, մէ-կալ մասն ալ զօրաց բաժնեցին։ Մեռելներուն փառաւոր յուղարկաւորութեան հանդէս ը-րին, և սահմանեցին որ ամէն տարի ան օրը ա-նոնց յիշատակը կատարեն։

2 Մարաթոնի յաղթութիւնը բոլոր մէկալ յաղթութեանց սկիզբն եղաւ։ Աս յաղթու-թեամբ ճանչցան Յոյնք իրենց զօրութիւնը, Պարսից զօրութենէն վախերնին գնաց, և իմա-ցան որ ժողովրդեան ձեռքն է անյաղթելի ըլլալը։ Այսպիսի փառաւոր յաղթութեան վարձքն ալ

---

1 Աթենացիք ի՞նչ կերպով իմացան Մարաթոնի յաղթութիւնը։

2 Ի՞նչ փոխարէն ըրին ան պատերազմին մէջ յաղթողներուն։

պէտք էր որ փառաւոր ըլլար։ Աթենացիք Պէկեղէի * մէջ տասը զօրավարաց կենդանագիրը նկարել տուին, անոնց գլուխն ալ դրին Միլտիադէսը, որ իր օրինակովը զօրքը կը խրախուսէր։ Ասիկայ ան ատենի Յունաց համար մեծ պատիւ էր. բայց ետքերը երբոր շռայլութիւն մտաւ մէջերնին, իրեք հարիւր արձան մէկէն կանգնեցին Դեմետրի Փաղերացւոյն։

1 Վրան շատ չանցաւ, մոռցան Աթենացիք Միլտիադեսին այնպիսի երախտիքը։ Զինքը նաւատորմղի մը գլուխ դրած խրկեցին որ երթայ կղզեցւոց անհաւատարմութիւնը պատժէ՝ որ Պարսից հնազանդեր էին. գնաց շատերը նուաճեց. բայց երբոր Պարոս կղզին քով զարնուած ետ դարձաւ, թշնամիները զրպարտեցին զինքը թէ Պարսից թագաւորէն կաշառուելով կամաւ յաղթուեցաւ, ու դատապարտեցին որ չարագործաց վիհը ձգուի։ Դատաւորները չուզելով աս անիրաւ վճիռը հաստատել, որոշեցին որ նաւատորմղին համար ծախք եղած յիսուն տաղանդը (270,000 ֆռանք) վճարէ ու ազատի։ Միլտիադէս չկարենալով այսչափ ստակը վճարել՝ բանտ դրուեցաւ, և հոն հայրենեաց համար պատերազմելու ատենը առած վէրքերէն մեռաւ։

---

1 Միլտիադեսին ի՞նչ հատուցումն ըրին Աթենացիք։

* Պէկեղէն՝ Աթէնքի պատկերաց թանգարանն էր։

# ԳԼՈՒԽ Չ.

Արիստիդէս և Թեմիստոկլէս. — Արիստիդեսի աքսորը. — Քսերքսեսի արշաւանքը Յունաստան. — Լէոնիդաս. — Արտեմիսիոնի պատերազմը. — Թեմիստոկլի խորհուրդը. — Սալամինայի պատերազմը. — Պղատէայի պատերազմը. — Միկալէի պատերազմը:

1 Միլտիադեսի մահուընէն ետքը, Արիստիդէս և Թեմիստոկլէս, երկուքն ալ թէ ազնուականութեամբ և թէ իրենց անձնական կատարելութիւններովը իրարմէ երևելի էին Աթենացւոց առջևը. Արիստիդէս հաստատուն բնաւորութեամբ, և անյողդողդ արդարութեամբը ոչ սուտ խօսիլ գիտէր, ոչ շողոքորթել և ոչ կեղծաւորել: Իր գանձապետութեան ատենը միայն աս կը նայէր որ հասարակաց բարիքն ընէ. անոր համար շատ անգամ կը հարկադրուէր Թեմիստոկլեսին հետ վիճելու, և անոր հասարակապետութեան մէջ ընել ուզած փոփոխութեանցը դէմ կենալու: Թեմիստոկլեսի գլխաւոր կիրքերն էին փառասիրութիւն և իշխանասիրու-

---

1 Միլտիադեսէն ետքը ո՞վ եղաւ Աթենացւոց մէջ անուանի:

թիւն։ Քանի որ Միլտիադեսին յաղթութեան գովասանքը կը լսէր՝ գիշերները քունը չէր տաներ։ Կը զարմանային բարեկամները ու պատճառը կը հարցընէին իրեն. Միլտիադեսի յաղթանակները չեն թողուր որ հանգչիմ կ'ըսէր։

1 Տեսնելով Թեմիստոկլէս որ Արիստիդէս բոլոր իր առաջարկութիւններուն դէմ կը գնէ, ջանաց որ զինքը ժողովրդեան աչքէն հանէ, ու խեցեկոյտ վճռով աքսորել տայ, և իր ճարտարանութեամբը վերջապէս անոր արդարութեանը յաղթեց։ Կ'ըսեն թէ Արիստիդեսի աքսորուելու օրը, ամէնքը խեցիներու վրայ անոր անունը գրելու ատեն, գեղացիին մէկը խեցի մը ձեռքը Արիստիդեսի քովը կուգայ ու կ'աղաչէ որ վրան Արիստիդեսի անունը գրէ։ Արիստիդէս զարմացած՝ կը հարցընէ. Արիստիդէս քեզի ինչ ըրած է։ — Բան մը չէ ըրած, կ'ըսէ գեղացին, և ոչ ալ զինքը տեսած եմ. բայց ձանձրացեր եմ իրեն Արդար անունը լսելէն։ Առանց բան մը ըսելու կը գրէ Արիստիդէս անունը ու խեցին անոր կը դարձընէ։ Աքսորուելով քաղաքէն դուրս ելլելու ատենը անյիշաչարութեամբ ձեռուըները երկինք վերցուց Արիստիդէս ու խնդրեց աստուածներէն՝ որ Աթենացիք անանկ նեղութեան մէջ չիյնան որ ետքը իրեն կարօտ ըլլան։

2 Թեմիստոկլէս իր ոսոխին ձեռքէն ազատե-

---

1 Արիստիդէս ինչպէս աքսորուեցաւ։

2 Թեմիստոկլէս ինչ կերպով Աթենացւոց ծովային զօրութիւնը աւելցուց։

լէն ետքը՝ ձեռքն անցած իշխանութիւնը աղէկ որ հայրենիքը դրսուանց մեծցընելու գործածեց։ Իր խորհրդովը Աթենացիք Լաւրիոն լեռան արծաթահանքէն ելած արդիւնքովը նոր նաւատորմիղ մը շինեցին։ Անով քիչ ատենի մէջ հարիւր ցռկանաւ պատրաստեցին, ու անոնցմով ծովուն տիրեցին։

1 Քսերքսէս իր հօրը Դարեհին տեղը նստելով, անոր վրէժը ինքն ուզեց հանել Յունացմէ, և այնպիսի ահագին բանակով մը եկաւ Եղլեսպոնտոս որ անոր նմանը մինչուան ան ատեն չէր տեսնուած։ Նաւատորմիղն էր հազար երկու հարիւր երեքկարգեան թիով ցռկանաւ, և երեք հազար բեռնաբարձ նաւեր, որոնց մէջ հինգ հարիւր հազար մարդ կար։ Ցամաքային զօրաց բանակն էր մէկ միլիոն եօթը հարիւր հազար հետեւակ, չորս հարիւր հազար հեծեալ, թող գերիներուն, ներքինեաց և կանանց բազմութիւնը որ զօրքէն աւելի էին կ'ըսեն։ Հոն ժողվուեր էին բաց 'ի Պարսից և Մարաց, նաև Ասորեստանեայք, Բակտրիացիք, Սկիւթացիք, Հնդկաստանցիք, Պարթեւք, Արաբացիք, Փռիւգացիք, Հայք, Լիւդացիք, Թրակացիք և ուրիշ զանազան ազգեր։ Եօթն օրուան ու եօթը գիշերուան մէջ Եղլեսպոնտոսի վրայ շինել տուած նաւա-

---

1 Քսերքսէս ինչ պատրաստութեամբ Յունաց վրայ ելաւ։

կամուրջէն անցուց Քսերքսէս զօրքը Ասիոյ ծովեզերքէն Եւրոպայի եզերքը։

1 Ինքը Քսերքսէս ալ անցաւ Էլլեսպոնտոսէն, և մէկէն Թրակիա, Մակեդոնիա, Թեսսալիա, Դորիս, Բէովտիա (բաց 'ի Թեբէէն) սարսափած հնազանդեցան իրեն. և ուզածին չափ ալ զօրք տուին։ Բայց Աթենացիք և Սպարտացիք թէպէտ և ամենևին տեղէ մը օգնութիւն չէին կըրնար առնել, ոչ կղզիներէն և ոչ Սիկիլիա և Իտալիա բնակող Յունաց գաղթականներէն, ամէն բան աչքերնին առած որոշեցին որ իրենք զիրենք պաշտպանեն։ Լոկրացիք, Փոկէացիք, Թեսպացիք, Կորնթացիք, Տեգէացիք, Մանտէացիք, Որքոմենեանք, և ուրիշ քանի մը պըզտիկ տէրութիւններ հետերնին միացան Պարսիկները վանելու։

2 Լեւոնիդաս՝ Սպարտացւոց թագաւորը, եօթը հարիւր հոգւով խրկեցին որ Թեսսաղեոյ ու Լոկրիսի մէջ եղած Թերմոպիլէ կիրճը պաշտպանէ, վասն զի անկից միայն կրնային Պարսիկք Յունաստան մտնել։ Իրեք հարիւր նաւ ալ Լակեդեմոնացւոց Եւրիբիադէս զօրավարին առաջնորդութեամբը գնացին Արտեմիսիոն ըսուած նեղուցը պահելու։

---

1 Յունաստանի ո՞ր ազգերը դէմ կենալ ուզեցին Քսերքսեսի։

2 Ի՞նչ պատրաստութիւն ըրին Յոյնք Պարսից արշաւանքին դէմ։

1 Քսերքսէս միտքը դրած էր թէ Յունաստան իր աշխարհակալութեանն անունը լսելուն պէս՝ մէկէն պիտի խոնարհի ու հնազանդի իրեն, սակայն շատ զարմացաւ՝ երբոր տեսաւ որ Յոյնք իր անցնելու ճամբան ալ արգիլելու կը պատրաստուին։ Դեմարատ որ ատենով Սպարտացւոց թագաւոր եղած էր, ըսաւ իրեն թէ Լակեդեմոնացիք աւելի կ'ուզեն մեռնիլ քան թէ անձնատուր ըլլալ։ Սակայն քանի մը օր ալ սպասեց Քսերքսէս, յուսալով որ թերեւս Յոյնք ետ քաշուին։ Հինգերորդ օրը Լեւոնիդասին գրեց. Ընդունայն տեղը աստուածոց դէմ մի պատերազմիր. անցիր իմ կողմս. զքեզ բոլոր Յունաստանի թագաւոր կը դնեմ։ Լեւոնիդաս պատասխան տուաւ. Աւելի կ'ուզեմ հայրենեաց համար մեռնիլ քան թէ անոր վրայ իշխել։ Քսերքսէս ուրիշ թուղթ մըն ալ գրեց, որուն մէջ սա խօսքս միայն կար. Զէնքերդ տուր. Լեւոնիդասն ալ անոր տակը գրեց. Եկուր առ։

2 Քսերքսէս սա պատասխանիս վրայ սաստիկ բարկացած՝ հրամայեց Մարաց ու Կիսսացւոց որ երթան Սպարտացիները ողջ ողջ բռնեն իրեն բերեն։ Այն միջոցին որ Լեւոնիդաս քաջութեամբ դէմ դնելու կը պատրաստուէր, իրեն-

---

1 Քսերքսէս Յունաց միտքն որ իմացաւ ինչ ըրաւ։

2 Ինչպէս եղաւ Թերմոպիլէի պատերազմը։

ներէն մէկը կ՚ըսէ. Ի՞նչպէս պիտի կարենանք պզտիկ գնդով մը աս անթիւ բանակին դէմ դընել։ — Թէ որ յաղթութիւնը համրանքի վրայ է, ըսաւ Լեւոնիդաս, բոլոր Յունաստան բաւական չէ. վասն զի հազիւ թէ Պարսից բանակին մէկ կտորին կը հասնի. բայց թէ որ քաջութեան վրայ է յաղթութիւնը՝ իմ գունդս բաւականէն ալ աւելի է։ Ուրիշ զինուոր մըն ալ կը վազէ Լեւոնիդասին կ՚ըսէ թէ Պարսիկք այնչափ շատ են՝ որ մէկտեղ նետ նետելու որ ըլլան՝ կրնան արեւը խաւարեցընել։ Անոր ալ պաղ արիւնով մը պատասխան կու տայ Լեւոնիդաս. Աւելի՛ աղէկ, շուքի մէջ կը պատերազմինք։

Երբոր Լեւոնիդաս զօրքովը դուրս ելաւ պատնիշէն, ու պատերազմի նշան տուաւ, Մարք կատաղութեամբ սկսան առաջ գալ. առաջին կարգիններէ զարնուեցան մեռան, ետեւիններն ալ վիրաւորուած ինկան։ Յոյնք անշարժ քովէ քով կեցած՝ խոշոր վահաններով վրանին գոցած, ձեռքերնին ալ երկայն նիզակներ՝ կեցեր էին։ Ասոնք տեղերնէն խախտելու համար Պարսիկք ուրիշ նոր զօրք հասուցին. ան ալ բան մը չկըրցաւ ընել, հարկ եղաւ որ Մատեան գունդը առաջ անցնի։ Ան ատեն պատերազմը տաքնացաւ. Յունաց դիրքն ու զէնքերը շատ աղէկ էին. ուստի ամբողջ օր մը քշեց պատերազմը։ Ուրիշ շատ Պարսիկք ալ ինկան մեռան, շատերն ալ սկսան փախչիլ. աս տեսնելով Քսերքսէս՝ իրեք անգամ դողալով աթոռէն ցատքեց կ՚ըսեն և ան ատեն իմացաւ որ հետը մարդ շատ ունի եղեր, բայց խիստ քիչ պատերազմող զինուոր։

Երբոր շփոթած կը մտածէր Քսերքսէս թէ ինչ ընէ, Եփիալտէս մատնիչը անոր ծածուկ ճամբայ մը ցուցուց, ուսկից դիւրաւ Պարսիկք կրճին վրայ ելան: Տեսաւ Լեւոնիդաս որ ալ անկարելի է Պարսից առջեւն առնել, ժողվեց Յոյներն եւ աղաչեց որ ետ դառնան ու յաջող առթի սպասեն. իսկ ինքը հետը առաւ միայն երեք հարիւր Սպարտացիքն ու եօթը հարիւր Թեսպացիքը, ու պատերազմի չսկսած՝ հրաման տուաւ որ քիչ մը բան ուտեն զօրանան. Քաջ զինուորակիցք իմ, ուրախութեամբ կերէք, կ'ըսէր, վասն զի իրիկուան կերակուրնիս սպանդարապետին Պղուտոնի քով պիտի ուտենք:

Կէս գիշերուան մօտ կ'առնէ Լեւոնիդաս իր փոքրիկ գունդը, յանկարծ Պարսից բանակին վրայ կը յարձակի, առջեւն եկածը կը կոտրէ կ'անցնի, ինչուան Քսերքսեսին վրանը կը հասնի: Քսերքսէս հազիւ փախչելով մահուընէ կ'ազատի. իսկ Պարսիկք՝ մէկ կողմանէ վախցած սարսափած, մէկալ կողմանէ ալ գիշերուան մթութեամբ շփոթած չէին գիտեր որո՛ւն հետ պատերազմին, եւ մէկզմէկ կը ջարդէին: Յոյնք ան գիշերը քսան հազարէն աւելի մարդ ջարդեցին կ'ըսեն: Բայց առաւօտանց տեսան Պարսիկք որ զիրենք այնչափ սարսափեցընող թշնամիքը քանի մը հարիւր հոգի են եղեր, չորս կողմէն զանոնք պաշարեցին ու կարկտի պէս իրենց նետերը սկսան անոնց վրայ թափել: Հոն ընկաւ քաջն Լեւոնիդաս, ետեւէն ալ շատ երեւելի Սպարտացիք իրենց գիտակներով անոր մարմինը գոցեցին: Երկու կողմէն Սպարտացիք եւ Պարսիկք

իրարու ձեռքէ կը յափշտակէին մեռած Լեւոնիդասը: Քսերքսեսի երկու եղբայրքը հոն ընկան մեռան: Յոյնք առին իրենց զօրավարին մարմինը, և չորս անգամ դարձան նորէն վանեցին Պարսիկները որ անդադար եռանէն ընկած զիրենք կը հալածէին. բայց վերջապէս չորս կողմէն պաշարուած՝ ամէնքն ալ ընկան մեռան զարմանալի քաջութեամբ:

[1] Թերմոպիլէի պատերազմին մէջ մեռած Յունաց քաջերը ամէնն ալ պատուով թաղուեցան: Լեւոնիդասէն առաջ մեռնողներուն վրայ աստնկ տապանագիր մը գրին.

Ընդ երեքհարեւր բիւրուն պատերազմեցան աստ չորեք
հազար այր 'ի Պեղոպոնեսոյ:

Իսկ Սպարտացւոց քաջերուն վրայ ասիկայ.

Զբրոյջ ըզմէնջ 'ի Լակեդմոն փութջիր, ո՜ հիւր
Թէ անկաք աստ 'ի հնազանդել օրինացն իւր:

Ետքը աս տապանագիրները Ամփիկտիոնի ատեանը սիւներու վրայ փորագրել տուաւ, որպէս զի ան կտրիճներուն յիշատակը անմոռանալի մնայ:

[2] Քսերքսեսին Թերմոպիլէ եղած ատենը՝ իր նաւատորմիղը Մագնեսիոյ կողմերը փոթորիկի մը բռնուելով, չորս հարիւր ցռկանաւ և շատ

---

1 Թերմոպիլէի պատերազմին մէջ մեռնողներուն ի՞նչ յիշատակ կանգնուեցաւ:

2 Ան պատերազմին օրը ուրիշ ի՞նչ յաղթութիւն ըրին Յոյնք:

մըն ալ թեւնաբարձ նաւեր կորսնցընելէն ետքը, Յունաց նաւատորմղին առջեւն եկաւ, որ Արտեմիսիոնի նեղուցն էր։ Երկու հարիւր Պարսից նաւերը երբոր Եւբէա կղզին դարձան Յոյները պաշարելու կ'երթային, նորէն փոթորիկ մը ելաւ, ու ժայռի զարնուելով ամէնքն ալ խորտակեցան։ Իրեք օր անդադար նաւական պատերազմ ըրին, և գրեթէ միշտ Յոյները յաղթող եղան։ Բայց երբոր լսեցին թէ Լեւոնիդաս մեռեր է և Թերմոպիլէին տէրեր են Պարսիկք, թողուցին Յոյնք Սաղամինա կղզին քաշուեցան։

1 Թեմիստոկլէս ուզելով որ Աթենացիքն ստիպէ Քսերքսեսի դէմ ծովու վրայ պատերազմելու, այսպիսի պատգամ մը հանել տուաւ թէ Փայտէ պարիսպներու մէջ ամրացած կրնան յաղթել Աթենացիք. և զիրենք համոզեց թէ Ազատութիւնն ուր է նէ՝ հայրենիքն ալ հոն է։ Ասոնք լսելով Աթենացիք նոր տեսակ արիութեամբ մը բարբարոսաց կատաղութեանը մատնեցին իրենց երկիրը, քաղաքնին, մեհեաններին, իրենց հարցը գերեզմանները. և կանայքը, տղղաքն ու ծերերնին փոխադրեցին Սաղամինա և Եգինէ կղզին, և Արգողիսի ծովեզերքը Տրեզենէ քաղաքը։ Կիրսիլոս անունով իշխանը յորդորեր էր զիրենք որ Պարսից անձնատուր ըլլան. բռնեցին զինքը քարկոծեցին. անոր կինն ալ կանայք առին պատառ պատառ ըրին։ Ան ատեն

1 Ի՞նչպէս տիրեց Քսերքսէս Աթենքի։

բոլոր պատերազմի ելքով մարդիկը մտան նաւե_րը որ Սալամինա կերթային կղզին։ Քսերքսէս թրով կրակով բոլոր Ատտիկէն անապատ դարձընելէն ետքը մտաւ Աթէնք ու տեսաւ որ քաղաքը պա_րապ, ու միջնաբերդին մէջ միայն քիչ մը մարդ_կայ (որ միջնաբերդը փայտէ է ըսելով հոն ա_[illegible] քաղցութեան դէմ դնելէն ետքը՝ առին յանձն [illegible] կոտոր ըլլալ քան թէ ինքնակամ անձնատուր ըլ_լալ։ Վերջապէս անկից Քսերքսէս բոլոր քաղա_քին, աւելի քան կողոպտեց ու շէնքերուն կրակ տուաւ այրեց։

1 Պարսից նոր նաւատորմիղ մը օգնութիւն եկաւ, որով նորէն հազար նաւ ունեցան. իսկ Յոյնք երեք հարիւր ութսուն նաւ ունէին։ Դաշ_նակից զօրաց գլխաւորները Պարսից զօրաց բազ_մութիւնը տեսնելով կ'ուզէին անձնատուր ըլ_լալ։ Միայն Թեմիստոկլէս ոտք կը կոխէր թէ պէտք է դէմ կենալ ու պատերազմիլ։ Հազիւ թէ սրտաշարժ ճարտասանութեամբը շատերը համոզեր էր Թեմիստոկլ, Սպարտացի Եւրի_բիադէս ծովակալը բարկութիւնը չկարենալով բռնել՝ վերցուց գաւազանը որ անոր գլխուն զար_նէ. Զարկ, ըսաւ Թեմիստոկլ, բայց մտիկ ըրէ։ Մէկէն վրայ հասաւ Արիստիդէս, որ աքսորան_քէն նոր դարձեր էր, և օգնաւ խելքով ու ճար_

---

1 Սաղամինայի քով ինչպէս պատրաստուեցան Յոյնք պատերազմի։

տատանութեամբ իր ոսոխին այսինքն Թեմիստոկղեսի օգնելու, և մէկէն ալ գեղեցիկ խօսքը ըսաւ անոր. Ուրիշ ատենի թողունք մեր անձնական կռիւները, հիմայ նայինք թէ ինչպէս կրնանք իրարմէ աւելի հայրենեաց օգնել: Վերջապէս յաղթեց Թեմիստոկղեսին խորհուրդը, և ամէնքը որոշեցին որ Սաղամինայի նեղուցին մէջ ընեն պատերազմը:

1 Թեմիստոկղէս ծածուկ իմացուց Քսերքսեսին իբրև բարեկամութեամբ թէ Յոյնք սարսափած կ՚ուզեն փախչել Սաղամինայէն. ուստի խորհուրդ կուտար որ շուտով վրանին վազէ: Մէկէն հաւատաց Քսերքսէս. հրամայեց որ շուտ մը իրենները երթան գիշերանց Սաղամինան պաշարեն, ու առաւօտը կանուխ պատերազմի սկըսին: Յոյնք պատրաստ կը սպասէին թէ երբ առաւօտ պիտի ըլլայ: Արշալոյսը ծագեց ու պատերազմը սկսաւ. Քսերքսէս զօրացը սիրտ տալու համար բարձր տեղ մը ելաւ կայնեցաւ: Քանի գնաց տաքցաւ պատերազմը. երկար ատեն քաջութեամբ դիմացին Պարսիկք. բայց երբոր սկսան խառնափնդոր, և առանց կարգի պատերազմիլ կիրթ ու պատերազմափորձ զօրաց հետ, կոտորածը մէջերնին սկսաւ. հովը, նաւերուն դանդաղաշարժ ծանրութիւնը, տեղերնուն նեղ ըլլալը որով չէին կրնար ուզածնուն պէս նաւերը շարժել, ամէն բան իրենց

---

1 Ի՞նչպէս եղաւ Սաղամինայի պատերազմը:

հակառակ եղաւ։ Յաղթեցին Յոյնք, Պարսից նաւերէն երկու հարիւրը ջարդեցին, շատն ալ թռնեցին, իսկ իրենք քառասուն ցուկանաւ միայն կորսնցուցին։ Ան միջոցին Քսերքսեսի նիզակակիցը Ալիկառնասի Թագուհին Արտեմիսիա՝ որ մեծամեծ քաջութիւններ ըրած ըլլալուն համար ետեւէ էին Յոյնք զինքը բռնելու, տեսնելով որ Աթենացւոց մէկ նաւը արագութեամբ ետեւէն կը հասնի, մէկէն Հելլենացւոց դրօշակ մը կը բանայ, Պարսից նաւերէն մէկուն վրայ կը յարձըկի ու ծովուն տակը կ'ընկղմէ։ Յոյնք կը խաբուին ասկէ, ու կարծելով թէ սխալ տեսեր են՝ ետ կը դառնան, և Քսերքսես զարմացմամբ կը կանչէ. Այսօր էրիկ մարդիկ կին դարձեր են, և կանայք էրիկ մարդ։

1 Սաղամինայի սա հռչակաւոր պատերազմը հանդիպեցաւ Քրիստոսէ 830 տարի առաջ՝ հոկտեմբերի 2ին. և փառաւոր յաղթութեան պատճառ եղաւ ոչ միայն զինուորաց քաջութիւնը, հապա նաև Թեմիստոկլեսի խոհեմութիւնն ու ճարտարամտութիւնը։ Աս երևելի զօրավարին վարձ տուին Յոյնք բաց 'ի մեծամեծ գովեստներէն՝ ձիթենի պսակ մը. և փառաւոր կառք մը, երթալու ատենը իրեք հարիւր Սպարտացի երիտասարդներ պատուոյ համար ինչուան Լակոնիոյ սահմանագլուխը հետը գնացին։ Աս

---

1 Ե՞րբ հանդիպեցաւ Սաղամինայի պատերազմը և անոր պտուղը ի՞նչ եղաւ։

պատերազմէն ետքը անմիջապէս եղած Ողիմպիական խաղին ատենը երբոր ինքը հոն եկաւ՝ ամէնքը ոտք ելան, և բոլոր հանդիսականք խաղերը թողած՝ անոր կը նայէին, օտարականներուն ու տղոց զինքը մատով կը ցուցընէին. ծափ կը զարնէին, կը գովէին զինքն ու կ'օրհնէին։ Թեմիստոկղեսին ալ ուրախութեանը չափ չկար. սիրտը լեցուեցաւ, ու դարձաւ իր բարեկամներուն ըսաւ. Ասանկ ուրախութիւն դեռ կեանքիս մէջ չէի ունեցած. այսօր կը քաղեմ ահա Յունաստանի վրայ ըրած աշխատանքիս պտուղը։

1 Ասանկով Արքայից արքային անթիւ նաւատորմիղն որ քիչ մը առաջ բոլոր ծովը անոր չէր բաւեր, ազատասէր ժողովրդեան մը առջևը ջարդուբուրդ եղաւ ու ցրուեցաւ։ Վախցաւ Քսերքսէս որ չըլլայ թէ Յունաց նաւատորմիղը երթայ Ելլեսպոնտոսը բռնէ. գիշերանց ձկնորսի մը նաւակով գրեթէ մինակ անցաւ Ասիա, ուսկից առաջ բիւրաւոր զօրքով ու ծառաներով ասդին անցեր էր. և երեք հարիւր հազար զօրքով թողուց Մարդոնիոսը Յունաստան որ պատերազմը առաջ տանի։

2 Մարդոնիոս անօգուտ տեղ Աթենացիքը մէկալ Յունաց նիզակակցութենէն քակելու աշխատելէն ետքը դնաց Ատտիկէ մտաւ, որուն

---

1 Սաղամինայի պատերազմէն ետքը Քսերքսէս ինչ ըրաւ։

2 Մարդոնիոս ինչպէս մտաւ Ատտիկէ։

ներէն մէկը կ'ըսէ. Ինչպէս՝ պիտի կարենանք ապրիլ գնդով մը առ անթիւ բանակին դէմ դընելու։ — Թէ որ յաղթութիւնը համրանքի վրայ է, ըսաւ Լեւոնիդաս, բոլոր Յունաստան բաւական չէ. վասն զի հազիւ թէ Պարսից բանակին մէկ կտորին կը հասնի. բայց թէ որ քաջութեան վրայ է յաղթութիւնը՝ իմ գունդս բաւականէն ալ աւելի է։ Ուրիշ զինուոր մըն ալ կը վազէ Լեւոնիդասին կ'ըսէ թէ Պարսիկք այնչափ շատ են՝ որ մէկտեղ նետ նետելու որ ըլլան՝ կրնան արեւը խաւարեցընել։ Անոր ալ պաղ արիւնով մը պատասխան կուտայ Լեւոնիդաս. Աւելի՛ աղէկ, շուքի մէջ կը պատերազմինք։

Երբոր Լեւոնիդաս զօրքովը դուրս ելաւ պատնիշէն, ու պատերազմի նշան տուաւ, Մարք կատաղութեամբ սկսան առաջ գալ. առաջին կարգինները զարնուեցան մեռան, ետեւինները ալ վիրաւորուած ինկան։ Յոյնք անշարժ քովէ քով կեցած՝ խոշոր վահաններով վրանին գոցած, ձեռքերնին ալ երկայն նիզակներ՝ կեցեր էին։ Ասոնք տեղերնէն խախտելու համար Պարսիկք ուրիշ նոր զօրք հասուցին. ան ալ բան մը չկըրցաւ ընել, հարկ եղաւ որ Մատեան գունդը առաջ անցնի։ Ան տեղն պատերազմը սաստկացաւ. Յունաց դիրքն ու զէնքերը շատ աղէկ էին. ուստի ամբողջ օր մը քշեց պատերազմը։ Ուրիշ շատ Պարսիկք ալ ինկան մեռան, շատերն ալ սկսան փախչիլ. աս տեսնելով՝ Քսերքսէս՝ երեք անգամ դողալով աթոռէն ցատքեց կ'ըսեն և ան տեղն իմացաւ որ հետը մարդ շատ ունի եղեր, բայց խիստ քիչ պատերազմող զինուոր։

Երբոր չփոթած կը մտածէր Քսերքսէս թէ ինչ ընէ, Եփիալտէս մատնիչը անոր ծածուկ ճամբայ մը ցուցուց, ուսկից դիւրաւ Պարսիկք կրցին վրայ ելլալ։ Տեսաւ Լեւոնիդաս որ ալ անկարելի է Պարսից առջին առնել, ժողվեց Յոյներն և աղաչեց որ ետ դառնան ու յաջող առթի սպասեն. իսկ ինքը հետը առաւ միայն իրեք հարիւր Սպարտացիքն ու եօթը հարիւր Թեսպացիքը, ու պատերազմի չսկսած՝ հրաման տուաւ որ քիչ մը բան ուտեն զօրականք. Քանզի զինուորակիցք իմ, ուրախութեամբ կերէք, կ'ըսէր, վասն զի իրիկուան կերակուրնիս սպանդարապետին Պղուտոնի քով պիտի ուտենք։

Կէս գիշերուան մօտ կ'առնէ Լեւոնիդաս իր փոքրիկ գունդը, յանկարծ Պարսից բանակին վրայ կը յարձակի, առջեւն եկածը կը կոտրէ կ'անցնի, ինչուան Քսերքսեսին վրանը կը հասնի։ Քսերքսէս հազիւ փախչելով մահուընէ կ'ազատի. իսկ Պարսիկք՝ մէկ կողմանէ վախցած սարսափած, մէկալ կողմանէ ալ գիշերուան մթութեամբ չփոթած չէին գիտեր ուրուն հետ պատերազմին, և մէկզմէկ կը ջարդէին։ Յոյնք ան գիշերը քանի հազարէն աւելի մարդ ջարդեցին կ'ըսեն։ Բայց առաւօտանց տեսան Պարսիկք որ զիրենք այնչափ սարսափեցընող թշնամիքը քանի մը հարիւր հոգի են եղեր, չորս կողմէն զանոնք պաշարեցին ու կարկտի պէս իրենց նետերը սկսան անոնց վրայ թափել։ Հոն ընկաւ քաջն Լեւոնիդաս, եռեւէն ալ շատ երեւելի Սպարտացիք իրենց դիակներով անոր մարմինը գոցեցին։ Երկու կողմէն Սպարտացիք և Պարսիկք

իրարու ձեռքէ կը յափշտակէին մեռած Լեւոնիդասը։ Քսերքսեսի երկու եղբայրքը հոն ընկան մեռան։ Յոյնք առին իրենց զօրավարին մարմինը, և չորս անգամ դարձան նորէն վանեցին Պարսիկները որ անդադար ետեւնէն ընկած զիրենք կը հալածէին. բայց վերջապէս չորս կողմէն պաշարուած՝ ամէնքն ալ ընկան մեռան զարմանալի քաջութեամբ։

1 Թերմոպիլէի պատերազմին մէջ մեռած Յունաց քաջերը ամէնն ալ պատուով թաղուեցան։ Լեւոնիդասէն առաջ մեռնողներուն վրայ տասանկ տապանագիր մը գրին.

Ընդ երեքհարիւր բիւրուն պատերազմեցան աստ չորեք
հազար այր 'ի Պեղոպոնէսոյ։

Իսկ Սպարտացւոց քաջերուն վրայ ասիկայ.

Զբերոյ ըղձինջ 'ի Լակեդմոն փութջէր, ո՛ հիւր
Թէ անկաք աստ 'ի հնազանդել օրինացն իւր։

Ետքը սա տապանագիրները Ամփիկտիոնի ատեանը սիւներու վրայ փորագրել տուաւ, որպէս զի ան կտրիճներուն յիշատակը անմոռանալի մնայ։

2 Քսերքսեսին Թերմոպիլէ եղած ատենը՝ իր նաւատորմիղը Մագնեսիոյ կողմերը փոթորիկի մը բռնուելով, չորս հարիւր ցռկանաւ և շատ

---

1 Թերմոպիլէի պատերազմին մէջ մեռնողներուն ի՞նչ յիշատակ կանգնուեցաւ։
2 Ան պատերազմին օրը ուրիշ ի՞նչ յաղթութիւն ըրին Յոյնք։

մըն ալ թեռնաբարձ նաւեր կորսնցընելէն ետքը, Յունաց նաւատորմիղին առջևն եկաւ, որ Արտեմիսիոնի նեղուցն էր: Երկու հարիւր Պարսից նաւերը երբոր Եւբէա կղզին դարձած Յոյները պաշարելու կ'երթային, նորէն փոթորիկ մը ելաւ, ու ժայռի զարնուելով ամէնքն ալ խորտակեցան: Իրեք օր անդադար նաւական պատերազմ ըրին, և գրեթէ միշտ Յոյները յաղթող եղան: Բայց երբոր լսեցին թէ Լեւոնիդաս մեռեր է և Թերմոպիլէին տէրեր են Պարսիկք, թողուցին Յոյնք Սաղամինա կղզին քաշուեցան:

1 Թեմիստոկլէս ուզելով որ Աթենացիքն ստիպէ Քսերքսեսի դէմ ծովու վրայ պատերազմելու, այսպիսի պատգամ մը հանել տուաւ թէ Փայտէ պարիսպներու մէջ ամրացած կրնան յաղթել Աթենացիք. և զիրենք համոզեց թէ Ազատութիւնն ուր է նէ՝ հայրենիքն ալ հոն է: Ասոնք լսելով Աթենացիք նոր տեսակ արիութեամբ մը բարբարոսաց կատաղութեանը մատնեցին իրենց երկիրը, քաղաքնին, մեհեաննին, իրենց հարցը գերեզմանները. և կանայքը, տղաքն ու ծերերնին փոխադրեցին Սաղամինա և Եգինէ կղզին, և Արգողիսի ծովեզերքը Տրեզենէ քաղաքը: Կիրսիղոս անունով իշխանը յորդորեր էր զիրենք որ Պարսից անձնատուր ըլլան. բռնեցին զինքը քարկոծեցին. անոր կինն ալ կանայք առին պատառ պատառ ըրին: Ան ատեն

---

1 Ի՞նչպէս տիրեց Քսերքսէս Աթէնքի:

տասանութեամբ իր ոսոխին այսինքն Թեմիստոկլեսի օգնելու, և մէկէն աս գեղեցիկ խօսքը ըսաւ անոր. Ուրիշ ատենի թողունք մեր անձնական կռիւները, հիմայ նայինք թէ ինչպէս կրնանք իրարմէ աւելի հայրենեաց օգնել: Վերջապէս յաղթեց Թեմիստոկլեսին խորհուրդը, և ամէնքը որոշեցին որ Սալամինայի նեղուցին մէջ ընեն պատերազմը:

1 Թեմիստոկլէս ծածուկ իմացուց Քսերքսեսին իբրև բարեկամութեամբ թէ Յոյնք սարսափած կ'ուզեն փախչել Սալամինայէն. ուստի խորհուրդ կուտար որ շուտով վրանին վազէ: Մէկէն հաւատաց Քսերքսէս. հրամայեց որ շուտ մը իրենները երթան գիշերանց Սալամինան պաշարեն, ու առաւօտը կանուխ պատերազմի սկըսին: Յոյնք պատրաստ կը սպասէին թէ երբ առաւօտ պիտի ըլլայ: Արշալոյսը ծագեց ու պատերազմը սկսաւ. Քսերքսէս զօրացը սիրտ տալու համար բարձր տեղ մը ելաւ կայնեցաւ: Քանի գնաց տաքցաւ պատերազմը. երկար ատեն քաջութեամբ դիմացան Պարսիկք. բայց երբոր սկսան խառնափնդոր, և առանց կարգի պատերազմիլ կիրթ ու պատերազմափորձ զօրաց հետ, կոտորածը մէջերնին սկսաւ. հովը, նաւերուն դանդաղաշարժ ծանրութիւնը, տեղերնուն նեղ ըլլալը որով չէին կրնար ուզածնուն պէս նաւերը շարժել, ամէն բան իրենց

1 Ինչպէս եղաւ Սալամինայի պատերազմը:

հակառակ եղաւ։ Յաղթեցին Յոյնք, Պարսից նաւերէն երկու հարիւրը ջարդեցին, շատն ալ բռնեցին, իսկ իրենք քառասուն ցռկանաւ միայն կորսնցուցին։ Ան միջոցին Քսերքսեսի նիզակակիցը Աղիկառնասի Թագուհին Արտեմիսիա՝ որ մեծամեծ քաջութիւններ ըրած ըլլալուն համար ետեւէ էին Յոյնք զինքը բռնելու, տեսնելով որ Աթենացւոց մէկ նաւը արագութեամբ ետեւէն կը հասնի, մէկէն Հելլենացւոց դրօշակ մը կը բանայ, Պարսից նաւերէն մէկուն վրայ կը յարձըկի ու ծովուն տակը կ'ընկղմէ։ Յոյնք կը խաբուին ասկէ, ու կարծելով թէ սխալ տեսեր են՝ ետ կը դառնան, և Քսերքսէս զարմացմամբ կը կանչէ. Այսօր էրիկ մարդիկ կին դարձեր են, և կանայք էրիկ մարդ։

1 Սաղամինայի աս հռչակաւոր պատերազմը հանդիպեցաւ Քրիստոսէ 830 տարի առաջ՝ հոկտեմբերի 2ին. և փառաւոր յաղթութեան պատճառ եղաւ ոչ միայն զինուորաց քաջութիւնը, հապա նաև Թեմիստոկլեսի խոհեմութիւնն ու ճարտարամտութիւնը։ Աս երևելի զօրավարին վարձ տուին Յոյնք բաց 'ի մեծամեծ գովեստներէն՝ ձիթենի պսակ մը. և փառաւոր կառք մը, երթալու տեղը իրեք հարիւր Սպարտացի երիտասարդներ պատուոյ համար մինչուան Լակոնիոյ սահմանագլուխը հետը գնացին։ Աս

---

1 Ե՞րբ հանդիպեցաւ Սաղամինայի պատերազմը և անոր պտուղը ինչ եղաւ։

պատերազմէն ետքը անմիջապէս եղած Ողիմպիական խաղին ատենը երբոր ինքը հոն եկաւ՝ ամէնքը ոտք ելան, և բոլոր հանդիսականք խաղերը թողած՝ անոր կը նայէին, օտարականներուն ու տղոց զինքը մատով կը ցուցընէին, ծափ կը զարնէին, կը գովէին զինքը ու կ՚օրհնէին։ Թեմիստոկլեսին ալ ուրախութեանը չափ չկար. սիրտը լեցուեցաւ, ու դարձաւ իր բարեկամներուն ըսաւ. Ասանկ ուրախութիւն դեռ կեանքիս մէջ չէի ունեցած. այսօր կը քաղեմ ահա Յունաստանի վրայ ըրած աշխատանքիս պտուղը։

1 Ասանկով Արքայից արքային անթիւ նաւատորմիղը որ քիչ մը առաջ բոլոր ծովը անոր չէր բաւեր, ազատասէր ժողովրդեան մը առջևը ջարդուբուրդ եղաւ ու ցրուեցաւ։ Վախցաւ Քսերքսէս որ չըլլայ թէ Յունաց նաւատորմիղը երթայ Հելլեսպոնտոսը բռնէ. գիշերանց ձկնորսի մը նաւակով դրեթէ մինակ անցաւ Ասիա, ուսկից առաջ բիւրաւոր զօրքով ու ծառաներով ասդին անցեր էր. և երեք հարիւր հազար զօրքով թողուց Մարդոնիոսը Յունաստանի որ պատերազմը առաջ տանի։

2 Մարդոնիոս անօգուտ տեղ Աթենացիքը մէկալ Յունաց նիզակակցութենէն քակելու աշխատելէն ետքը դնաց Ատտիկէ մտաւ, որուն

---

1 Սաղամինայի պատերազմէն ետքը Քսերքսէս ի՞նչ ըրաւ։

2 Մարդոնիոս ի՞նչպէս մտաւ Ատտիկէ։

բնակիչքը արդէն թողեր փախեր էին. կողոպտեց, աւրըշտըկեց ու Բէովտիա քաշուեցաւ, ուր ընդարձակ դաշտերու մէջ կրնար իր զօրքն ուղածին պէս շարժել, մանաւանդ բազմաթիւ հեծելագունդը։ Քսերքսեսի թողած երեք հարիւր հազարէն զատ՝ ունէր իր հրամանին տակ նաև յիսուն հազար Բէովտացի, Թեսալացի և ուրիշ օգնական Յոյներ։ Իսկ Յունաց զօրքն էր դրեթէ հարիւր տասը հազար, և զօրավարն էր Պաւսանիաս Լակեդեմոնացին։

1 Երկու բանակը քանի մը օր դիմացէ դիմաց կենալէն ետքը, Պղատէայի քովերը զարնուեցան։ Մարդոնիոս զարմանալի քաջութիւններ ընելով բոլոր Յոյները վրան զարմացընելէն ետև՝ ինկաւ մեռաւ. Պարսիկներն ալ սկսան խառնափնդոր փախչիլ, ու Ասոպոս գետին եզերքը շինուած պատնէշին ետևը ամրանալ. քիչ ատենէն պաշարեցին առին Յոյնք ան պատնէշը, մէջինները ալ թրէ անցուցին։ Ան բազմութիւն բանակէն հազիւ քառասուն հազար հոգի ազատեցան, որ Արտաւազ նախարարին հետ Փոկիս փախան, անկէ ալ Բիւզանդիոնի ծովէն անցան գնացին Ասիա։

2 Յաղթութենէն ետքը Պարսից բանակին մէջ սփռեցան Յոյնք։ Գետինը ծածկած էր հարուստ աւարներով. արծաթն ու ոսկին վրաններուն

---

1 Պղատէայի պատերազմը ի՞նչպէս եղաւ։
2 Պատերազմէն ետքը Յոյնք ի՞նչ ըրին։

մէջ կը փայլէր ։ Աւարին տասներորդ մասը Դեղփիսի տաճարը խրկեցին, մէկ մասը պահեցին աստուածոց շնորհակալութեան տաճարներ կանգնելու, Մնացածն ալ զօրաց բաժնեցին ։ Ան ատենէն սկսան Յոյնք աւրուիլ ու կամաց կամաց արծաթսիրութիւնն ու իշխանասիրութիւնը հայրենասիրութեան մարելուն պատճառ եղան ։

Նոյն օրը մեծ պատուով իրենց մեռելներուն թաղումը ըրին Յոյնք (և մեռելները հազար իրեք հարիւր վաթսունի չափ էին), և օրէնք դրին որ ամէն տարի երթան Պղատէա հանդիսով անոնց տարեդարձը կատարեն ։

1 Պղատէայի պատերազմին օրը, Յունաց նաւատորմիղն ալ (որուն ծովակալներն էին Քսանթիպպոս Աթենացին և Լեւոտիքիդաս Լակեդեմոնացւոց թագաւորը) փառաւոր յաղթութիւն մը ըրաւ Պարսից վրայ Միկաղէ հրուանդանին քով ։ Չորս հազարէն աւելի Պարսիկք պատերազմի մէջ մեռան, շատը փախչելու ատեննին սպաննուեցան, Մնացածներն ալ Սարդիկէ քաղաքը մտան ազատեցան ։ Աս յաղթութեամբ բոլոր Յոնիա Պարսից ձեռքէն ազատեցաւ, և Քսերքսէս որ ան արշաւանքովը կ'ուզէր բոլոր Եւրոպան նուաճել, Ասիոյ ծովեզերքին ազատութեանը պատճառ եղաւ ։ Աս Մարական ըսուած պատերազմը երկու տարի միայն քշեց ։

---

1 Պղատէայի պատերազմին օրը Յունաց նաւատորմիղը ինչ յաղթութիւն ըրաւ ։

# ԳԼՈՒԽ Է.

Աթէնքի նորէն շինուիլը. — Պաւսանիասի մահը. — Աքսոր Թեմիստոկլի. — Առաքինութիւն Արիստիդեայ. — Կիմոն. — Պերիկլէս. — Փիդիաս. — Անաքսագոր. — Ասպասիա. — Պելոպոնեսեան պատերազմը. — Աթէնքի ժանտախտը. — Իպպոկրատ. — Մահ Պերիկլեայ:

1 Պարսից երթալէն ետքը Աթենացիք նորէն Ատտիկէ դարձուցին իրենց կանայքն ու որդիքը, և սկսան նորէն Աթէնքը շինել: Անկէց ետքը թշնամեաց յարձակմունքներէն չվախնալու համար՝ խրատ տուաւ Թեմիստոկլէս որ Աթենքին չորս կողմը բարձր պարիսպ քաշեն: Աս Երբոր լսեցին Լակեդեմոնացիք, մէկէն դեսպան խրկեցին Աթենացւոց ըսելով թէ Վտանգաւոր բան է Պելոպոնեսէն դուրս ամուր պարսպապատ քաղաք ունենալը, վասն զի եթէ յանկարծ նորէն բարբարոսները դիմելու ըլլան Յունաստան, անիկայ իրենց ամուր պատսպարան կ՚ըլլայ: Թեմիստոկլէս իմանալով որ միայն նախանձէ չոր-

---

1 Պարսից ետ քաշուելէն ետքը Աթենացիք ինչ ըրին:

ժամ առ ազդարարութիւնը կ'ընեն իրենց, դեսպաններուն ըսաւ որ Աթենացիք ալ մասնաւոր դեսպան կ'ուզեն խրկել Լակեդեմոն աս բանիս վրայ խօսելու. զանոնք ճամբեց, և ինքը դեսպաններուն մէկը եղած՝ մինակ առաջուց գնաց, ապսպրելով որ մէկալնոնք ուշանան, և ան միջոցին պարսպին շէնքը շուտ շուտ առաջ երթայ։ Ան ատենը բոլոր քաղաքացիք հարուստ, աղքատ, դատաւոր, արուեստաւոր, կին, տղայ, ծեր, ամէնքը մէկ հոգւով սկսան պարիսպը առաջ տանիլ. Նիւթի ալ չպակսելու համար՝ հասարակաց շէնքերը, առանձնական տները, գերեզմաններու և մեհեաններու աւերակներն առին պարսպին գործածեցին։ Անդին Թեմիստոկղէս Սպարտացիները կը զբաղեցընէր, և չէր ուզեր մինակ ատեան ելլել, Ընկերներս պիտի գան ըսելով. երբոր իմացաւ թէ պարիսպներուն շէնքը լմընալու մօտեցեր է, համարձակ ատեանը ելաւ և ըսաւ թէ Աթենացիք իմ խորհըրդովս ամրացուցին քաղաքը, և աս բանս իրենց իրաւունքն էր։ Շատ նեղացան Սպարտացիք, բայց ձայն չկըրցան հանել. միայն Թեմիստոկղին վրայ սաստիկ ոխ պահեցին, ու ատենի սպասեցին որ վրէժնին հանեն։

1 Աթենքի առջի նաւահանգիստը շատ պըզ-

---

1 Թեմիստոկղէս Աթենացւոց ծովային զօրութիւնն աւելցընելու համար ինչ խորհուրդ տուաւ։

տիկ ու անյարմար էր ։ Թեմիստոկլէս որ կ՚ուզէր իր հայրենիքը ծովու տէր ընել, համոզեց Աթենացիքը Պիրէոնին շէնքը առաջ տանելու՝ որ քաղաքէն չորս հազար քայլ հեռու, ու արդէն բնական կերպով ալ փորուած իրեք մեծամեծ աւազաններ ունէր, և անով կրնային Աթենացիք ընդարձակ ու ապահով նաւահանգիստ մը ունենալ ։ Զորս կողմը քաշած պարիսպներն այնչափ լայնութիւն ունէր՝ որուն վրայէն քովէ քով երկու կառք կրնար անցնիլ, և տանիք չինելը հազիւ թէ տարի մը քշեց ։ Քիչ ատենէն Պիրէոնը քաղաք մը դարձաւ, և երկը պարիսպով մը Աթենքին հետ միացաւ. ան պարիսպը Կիմոնին ատենը սկսաւ ու Պերիկլէսին ժամանակը լմնցաւ ։

1 Յոյնք իրենց յաղթութիւններովը սիրտ առած՝ բաւական չսեպելով Պարսիկները քշելը, անոնց վրայ ալ կը յարձակէին (477) ։ Բազմաթիւ նաւատորմիղով մը Պաւսանիա և Արիստիդէս գնացին անոնց ձեռքէն Կիպրոս կղզին ու Բիւզանդիոնին առին ։ Ան յաղթութիւններով հպարտացած Պաւսանիաս, և ձեռք ձգած հարստութիւններովը մեղկացած՝ միտքը դրաւ որ հայրենեացը գերութեամբը ինքը փառքի հանի ։ Թուղթ գրեց Քսերքսէսին որ եթէ իր աղջիկը իրեն կին տայ, բոլոր Յունաստանը անոր ձեռքը կը մատնէ ։

---

1 Պաւսանիաս և Արիստիդէս ի՞նչ նոր քաջութիւններ ըրին Պարսից դէմ ։

1 Սպարտացիք թղթատար գերիի մը ձեռքով աս մտադրութիւնը իմանալով, մէկէն Պաւսանիասին ձեռքէն նաւատորմղին իշխանութիւնը առին, ու զինքը Սպարտա դատաստանի կանչեցին։ Երբ որ չկրցաւ արդարանալ ու պարէտները զինքը դատապարտեցին, Աթենասայ տաճարը փախաւ։ Ան ատեն դուռը վրայէն մեծամեծ քարերով գոցեցին որ մէջը անօթութենէ մեռնի. կ'ըսեն թէ դրան դիմացը առջի քարը դնողը իր մայրն եղեր է։

2 Անդին Թեմիստոկղէս ալ, որ Աթէնքը փառաւորելու և զօրացընելու ջանքովը բոլոր դաշնակցաց աւելի, իշխանասիրութեամբն ալ Աթենացւոց կասկածելի եղեր էր, հայրենիքէն աքսորուած՝ գնաց Պեղոպոնէս քաշուեցաւ։ Սպարտացիք որ վրան ոխ ունէին՝ ամբաստանեցին թէ ինքն ալ Պաւսանիասին ընելու մտադրութեան մէջ ձեռք ունէր, և ուզեցին որ Յունաստանի աշխարհախումբ ժողովին առջևը ինքզինքը արդարացընէ։ Իմացաւ Թեմիստոկղէս որ Աթենացիք ետևէն մարդ խրկեր են զինքը բռնելու, և յիշեց պզտիկուց հօրը իրեն տուած խրատը թէ պէտք չէ ժողովրդեան ցըցուցած սիրոյն ու պատուոյն վրայ վստահիլ։ Վասն զի օր մը հօրը հետ նաւահանգստին քով պտըտելու ատեն, հայրը իրեն հին պատերազմական նաւերը ցը-

---

1 Ի՞նչպէս դատապարտուեցաւ Պաւսանիաս։
2 Թեմիստոկղէս ինչո՞ւ և ի՞նչպէս փախաւ։

ցուցեր էր որ ծովեզերք ձգուած էին, ու ըսեր էր. Ահա իր զօրավարներն ալ ասանկ կը ձգէ ժողովուրդը որդեակ, երբոր ալ անոնցմէ չահու մը յոյս չունենայ: Եւ սոյգ գիտնալով որ Թշնամիները զինքը պիտի դատապարտեն՝ Կորկիւրա փախաւ, անկէ Եպիրոս՝ Մողոսացւոց Ադմետ Թագաւորին քովը գնաց. անկէց ալ Պարսից Արտաշէս Թագաւորին պալատը:

1 Արտաշեսին առջեն որ ելաւ Թեմիստոկղէս, Ես եմ տէր արքայ, ըսաւ, Թեմիստոկղէս Աթենացին որ այնչափ չարիք հասուցի Պարսից, և հիմայ Յունացմէ հալածուած՝ եկայ քեզի ապաւինեցայ. քու ձեռքդ է Թեմիստոկղեսին բաղդը: Զարմացաւ Թագաւորը արիասիրտ համարձակութեանը վրայ, ներեց անոր. մէկէն ան երկու հարիւր քանքարը որ անոր գլուխը բերողին խոստացեր էր, հանեց իրեն տուաւ. ուրիշ շատ պարգևներէն ալ զատ՝ իրեք քաղաք տուաւ որ անոնց եկամտովը հանգիստ ապրի: Բայց անքը երբոր Արտաշէս Յունաստանի վրայ պատերազմ բացաւ, զինքը սպարապետ զօրաց անուանեց: Երկու Թրի մէջ ընկաւ Թեմիստոկղ. վասն զի կամ պէտք էր հայրենեացը վրայ զէնք վերցընելով առջի ըրած քաջութեանցը փառքը կորսնցընել, և կամ Թագաւորին դէմ ապերախտ երևնալ. ուրիշ ճար չգտաւ, միտքը դրաւ

---

1 Արտաշէս ինչ կերպով ընդունեցաւ Թեմիստոկղը:

որ կամաւ մեռնի։ Մեծ խնճոյք մը ըրաւ, բոլոր բարեկամները հրաւիրեց, և ամենուն հետ պագտուելէն վերջը Թոյն առաւ մեռաւ վաթսունըհինգ տարեկան։

1 Թեմիստոկլեսի դատապարտութենէն քիչ մը ետքը Արիստիդէս Աթէնքի մէջ ծերացած մեռաւ, ամէնքը վրան ցաւեցան. այնչափ ատեն գանձապետութիւն ըրեր էր, և քովէն Թաղման հանդէսը կատարելու ալ բաւական ստակ չելաւ։ Հասարակապետութիւնը յանձն առաւ դաստիարակել անոր որդիքը, աղջիկ տղոցն ալ օժիտ տուաւ կարգեց։ Արիստիդեսի վրայ աս ալ մեծ գովեստ է որ անգամ մը դերասանին մէկը Եսքիլոսի ողբերգութեանց մէկը ձևացընելու ատենը երբոր կ'ըսէ թէ Ամփիարաւոս ոչ այնչափ կ'ուզէր երևնալ բարի մարդ որչափ իրօք ըլլալ, ամէնքը սկսան Արիստիդեսի վրայ նայիլ։

2 Թեմիստոկլեսի յաջորդեց Աթենքի մէջ Կիմոն, Միլտիադեսի որդին, որ Արիստիդեսի խըրատներովը մեծցած, ու շատ կատարելութիւններով զարդարուած էր։ Պարսից հետ եղած պատերազմը քաջութեամբ առաջ տարաւ, ամէն տեղ յաղթութիւններ ընելով շատ կղզիներու ու Թրակիոյ ծովեզերքին տիրեց, Կարիոյ քաղաքներէն ալ Պարսից պահապան զօրքերը

1 Արիստիդէս ինչպէս մեռաւ։
2 Թեմիստոկլեսի տեղը ո՞վ անցաւ։

փախուց։ Արտաշէս, Կիմոնին առջեւն առնելու համար՝ անթիւ զօրք ժողվեց Եւրիմեդոն գետին եզերքը, չորս հարիւր նաւով տորմիղ մըն ալ գետին բերանը կեցընել տուաւ։ Կիմոն երկու հարիւր յիսուն ցռկանաւ միայն ունէր. բայց ամենեւին պատերազմելու չտարակուսեցաւ, և փառաւոր յաղթութիւն մը ըրաւ. Պարսից նաւերէն շատը ընկղմեց, հարիւր հատը բռնեց, և քսան հազար հոգի գերի ըրաւ։

1 Կիմոն ուզելով որ ըրած յաղթութենէն աւելին կարելի եղած պտուղը քաղէ, նոյն իրիկունը իր զօրացը Պարսից գերիներուն հագուստը հագցուց և անոնց հետ ինքն ալ Պարսիցմէ առած նաւերուն մէջ մտաւ, ու յաջող քամիով մը Պարսից բանակը հասաւ։ Ասոնք ամենեւին կասկածի չերթալով՝ Յոյները սիրով ընդունեցան. բայց անոնք բանակին մէջ տեղն որ հասան՝ նշան մը տրուելուն պէս վազեցին Պարսից վրայ ու սոսկալի ջարդ մը տուին. անբաւ աւար ալ ձեռք ձգեցին, որոնց մեծ մասը Աթէնքը զարդարելու գործածեց Կիմոն։

2 Երբոր Կիմոն Ասիա Պարսից վրայ յաղթութիւններ կ'ընէր՝ ուրիշ Աթենացի զօրավարներ ալ Փովկիսի ու Բէովտիոյ կը տիրէին, և Պեղոպոնեսի ծովեզերքը կ'աւերշարկէին։ Ուզելով

1 Կիմոն ի՞նչ հնարքով նոր յաղթութիւն ըրաւ Պարսից դէմ։

2 Աթենացիք ի՞նչպէս օգնեցին Եգիպտացւոց։

Կիմոն Աթենացւոց արգիլել որ իրենց համազգի եղբարցը հետ պատերազմ չընեն, զանոնք հեռաւոր արշաւանքներու ջանաց զբաղեցընել: Եգիպտացիք Պարսից դէմ գլուխ քաշած ըլլալով Աթենացւոցմէ օգնութիւն խնդրեցին (460): Աթենացիք զօրքով լեցուն երկու հարիւր նաւ խրկեցին անոնց, որ Նեղոս գետին մէջէն ինչուան Մեմփիս հասան: Առջի բերան իրենց նիզակակցացը հետ յաղթող եղան Եգիպտացիք, բայց ետքը Պարսիկները զօրացան, և Յոյները որ իրենց նաւերնին այրեր էին՝ Պրոսոպիտիս կղզին փախան, ու տասնըութը ամիս իրենք զիրենք պաշտպանեցին: Ետքը հաշտութիւն ըրին Պարսից հետ ու ետ դարձան. բայց ուզելով Կիպրայէն անցնիլ ու Կիւրենական գաւառը երթալ. Աթենացւոց շատը հիւանդութենէ և անապատին աշխատութենէն մեռան:

1 Կիմոն Աթենքի մէջ զօրաւոր թշնամիներ ունէր, որ վերջապէս ժողովրդեան աչքը մտան ու զինքը հայրենիքէն աքսորել տուին: Բայց երբոր Աթենացիք Լակեդեմոնացւոցմէ չարաչար յաղթուեցան, շուտ մը ան մեծ մարդը կանչեցին (450): Կիմոն երկու նախանձորդ ազգերուն մէջ հինգ տարուան զինադադարում ըրաւ, և տեսնելով որ Աթենացիք հանդարտ կենալիք չունին, ժողվեց զանոնք՝ Կիպրոս կղզւոյն վրայ տարաւ որ թշնամեաց ձեռքէն ազատեն: Ու անանկ մե-

1 Կիմոնի վերջին ի՞նչպէս եղաւ:

ծանօթ յաղթութիւններ ըրաւ Պարսից վրայ որ Արտաշէս առիթ ունեցաւ Յունաց քաղաքներուն ազատութիւն տալ ու հետը հաշտութիւն ընել (449)։ Վիրաւորուած մեռաւ Կիմոն Կիպրոս կղզին իր փառաւոր յաղթանակներուն մէջ. և Մարական պատերազմը վերջացաւ։ Կիմոնի մահուանը վրայ ամենքը լացին։ Որչափ հայրենասէր էր Կիմոն, վասն զի իր հօրը Միլտիադեսին յիշատակն ալ ազատելու համար տուգանքը վճարեց, բարեկամ հաւատարիմ, քաղաքացի հայրենասէր, զօրավար ամենահմուտ, և գերագոյն իշխանութեան ու պատուոյ մէջ խոնարհամիտ։ Յիշատակութիւն մը չկայ որ իրեն փառաւոր յուղարկաւորութիւն ըրած կամ շիրիմ մը կանգնած ըլլան Աթենացիք. բայց անոր անեղծ արձան յիշատակի՝ ժողովրդեան ցաւն ու արտասուքն եղաւ։

1 Կիմոնի մեռնելէն ետքը Պերիկլէս տիրեց Աթենացւոց, որ խորագնին իմաստասէր, ներհուն քաղաքագէտ ու մեծ ճարտասան էր (443)։ Անանկ զօրաւոր էր ճարտասանութիւնը, որ ան ատենի բանաստեղծները երբեմն կ'ըսէին թէ Արամազդ անոր բերնովը կ'որոտայ ու Ելլադան տակնուվրայ կ'ընէ. երբեմն ալ թէ Համոզիչ շնորհքները անոր շրթունքներուն վրայ հանգչած են։ Օր մը հարցուցին Թուկիդիդեսին, որ

---

1 Կիմոնի մեռնելէն ետքը ո՞վ իշխեց Աթենացւոց։ — Ի՞նչ բնաւորութեան տէր մարդ էր Պերիկլէս։

անոր սաստն էր, թէ Ոքերնեֆգ ասեղէ ոտքէ կը կարուիք. — Զինքը գետինը ձգած առենա, ըսաւ, անանկ կ'ելլէ դէմ կը խօսի որ աչքով տեսնողներն ալ մտքերնին կը դնեն թէ ինքը չէ իյնողը: Բայց ասանկով ալ ամէնն իր վրայ չէր վստահեր Պերիկղէս, բազմութեան առջեւը բան մը խօսելէն առաջ՝ աստուածոց օգնութիւնը կը խնդրէր որ բերնէն անպատշաճ խօսք մը չելլէ, և ժողովի երթալու ատենը՝ տնէն դուրս չելած կ'ըսէր ինքիրեն. Նայէ Պերիկղէս, ազատ մարդկանց հետ խօսելու կ'երթաս, Յունաց և Աթենացւոց հետ:

1 Պերիկղէս իրեն մի միայն նպատակ դրեր էր հայրենեացը մէջ ամենէն սիրելի, ու ամենէն անուանի ըլլալ: Ժողովրդեան աչքը մտնելու և ետքը ուզածին պէս անիկայ կառավարելու համար կը նայէր որ անոր կիրքերը սնուցանէ. անոր փառասիրութիւնն ու իշխանասիրութիւնը հանելու համար՝ իշխանութիւնը կ'ընդարձակէր, ու նոր նոր տեղերու կը տիրէր, արուեստից յառաջադիմութեանը վրայ ունեցած փափաքն ալ կը ցուցընէր՝ հանդէսներն ու թէատրոնները շատցընելով, և Աթէնքը փառաւոր շէնքերով զարդարելով: Ան ատենը շինուեցաւ հռչակաւոր Պարթենոնը կամ երաժշտութեան թէատրոնը: Ամէն ուզածը կ'ընէր Պերիկղէս Աթենքի մէջ. Թագաւորի անունը միայն պակաս

1 Աթէնքը ճոխապէս զարդարեց:

էր վրայէն։ Դաշնակիցները տեսնելով որ հասարակաց նաւատորմղին համար պահուած ստակը անիկայ Աթէնքը զարդարելու կը գործածէ, ոտք ելան, Աթենացւոց գանգատ ըրին։ Մեկէն Պերիկլէս զանոնք նուաճեց, ու առաջարկեց Աթենացւոց որ եթէ կ'ուզեն բոլոր անշէնքերուն ծախքը ինքը վճարէ, միայն թէ իր անունը գնէ անոնց վրայ. Աթենացիք յանձն չառին։

¹ Սակայն Պերիկլէսի համարումն ալ սկսաւ իյնալ։ Թշնամիները դեռ յայտնի իրեն դէմ կռուիլ չհամարձակելով՝ սկսան անոր բարեկամներուն թշնամութիւն ընել։ Անոնցմէ մէկն էր Փիդիաս, որ Պերիկլէսի շինել տուած շէնքերուն վերակացու դրուեր էր, և Աթէնքը իր հրաշակերտ արձաններովը զարդարեր էր. ասոր վրայ ամբաստանութիւն ըրին թէ Աթենասայ արձանը զարդարելու համար իրեն տրուած ոսկիէն գողցեր է. Փիդիաս թէպէտ ինքզինքը արդարացուց, բայց մտիկ չըրին, ու խեղճը բանտին մէջ մեռաւ։ Մէկն ալ Անաքսագորաս փիլիսոփան էր, Պերիկլէսի վարժապետն ու բարեկամը. ասիկայ ալ զրպարտեցին թէ աստուածոց դէմ խօսեր է. ուստի հարկ եղաւ որ փախչելով ազատի ձեռքերնէն։ Պերիկլէսի Ասպասիա կնկանը վրայ ալ՝ որ ոչ միայն գեղեցկութեանը

---

¹ Պերիկլէսի դէմ ինչ թշնամութիւններ ըրին Աթենացիք։

համար անուանի էր, հապա նաև հանճարոյն, իմաստութեանն ու ճարտասանութեանը՝ որով ամէնքը զարմացած կ'երթային անոր դատախօսութիւնը մտիկ կ'ընէին, մինչուան նաև Սոկրատ, ամբաստանութիւն ըրին թէ կրօնքի անպատուութիւն կ'ընէ, և կ'ուզէին զինքը դատապարտել: Պերիկլէս հազիւ կրցաւ թափած արցունքներովն ու ճարտասանութեամբը դատաւորաց ձեռքէն զանիկայ ազատել:

1 Այն միջոցին (436) Կորկիւրացիք Աթենացւոցմէ օգնութիւն առած՝ Կորնթացւոց վրայ պատերազմ բացին: Կորնթացիք ալ բանիս վըրայ Սպարտացւոց գանգատ ըրին. անոնք ալ որ արդէն բարկացեր էին Աթենացւոց՝ որ մինակ տիրապետեր էին Յունաստանի, մէկէն անոնց բողոքեցին և զանազան պայմաններ առաջարկեցին. երբոր յանձն չառին Աթենացիք, իրենք ալ Պելոպոնեսական ըսուած դաշնակցութիւնը հաստատեցին ու վրանին պատերազմ հրատարակեցին:

2 Այս դաշնակցութեան մէջ էին Բէովտացիք (բաց 'ի Պղատէա քաղաքէն), Փոկէացիք, Մեգարացիք, Ամբրակիացիք, Լեւկադացիք, Անակտորիոնացիք, և Աքայեցւոցմէ և Արգիացւոցմէ

---

1 Պելոպոնեսական պատերազմին պատճառը ինչ էր:

2 Ո՞ր քաղաքները կային Պելոպոնեսական դաշնակցութեան մէջ:

ղան՝ բոլոր Պելոպոնեսի բնակիչները։ Աթենացւոց կողմն եղողներն էին Ասիոյ ծովեզերեայք Թըրակիա և Եղէսպոնտոս եղած Յունաց քաղաքները, Ակառնանիա, ուրիշ քանի մը ազգեր և բոլոր կղզեցիք՝ բաց 'ի Մելոս և Թերա կղզիներէն։ Ասոնց ծովային զօրքը աւելի շատ էր, Պելոպոնեսացւոց ալ ցամաքայինը։

¹ Պատերազմը սկսաւ (431), Սպարտացւոց Արքիդամոս թագաւորը վաթսուն հազար զօրքով Ատտիկէ մտաւ, կողոպտեց, և զօրքը աւարով լեցուցած՝ Պելոպոնես դարձաւ։ Աթենացւոց նաւատորմիղը սպառազինուած ճամբայ ելլելու օրը՝ արևը խաւարեցաւ։ Աւելորդապաշտ Աթենացիք պատճառը չգիտնալով սարսափեցան, չէին ուզեր պատերազմի երթալ։ Տեսաւ Պերիկլէս որ իր նաւապետն ալ սարսափած կեցեր է, վերարկուն առաւ անոր երեսը ծածկեց ու հարցուց թէ Բան մը կը տեսնե՞ս։ Երբոր անիկայ ըսաւ թէ Բան մը չեմ տեսներ, վասն զի վերարկուդ արգելք է. — Ասանկ է, ըսաւ Պերիկլէս, արևուն խաւարիլն ալ, վերարկուին պէս լուսինը երկրիս ու արևուն մէջ տեղը գալով՝ չթողուր որ արևուն ճառագայթները մեզի հասնին։ Ամէնքը համոզուեցան. գնացին ծովու վրայ վրէժխնդիր հանեցին, բոլոր Պելոպոնեսի ծովեզերեայ քաղաքներն ասպատակեցին, դառնալու ատեն ալ Եգինա կղզւոյն աւրե-

---

¹ Առաջին պատերազմը ինչպէս եղաւ։

ցին: Փառաւոր թաղում ընել տուաւ Պերիկղէս աս առջի պատերազմին մէջ մեռնող քաղաքակցաց, ու վրանին գեղեցիկ դամբանական ճառ մը խօսեցաւ: Անանկ սրտաշարժ էր սա ճառը, որ վար իջնալու ատենը բոլոր կանայք վազեցին Պերիկղեսի գլուխը ծաղկըներով պսակեցին:

1 Երկրորդ տարին նորէն Ատտիկէի վրայ վազեց Արքիդամոս, ու նորէն սկսաւ աւրըշտըկել: Ան միջոցին ժանտամահը Եթովպիա, Եգիպտոս, Լիբիա, Պարսկաստան ու Լեմնոս կղզին շատ կոտորած ընելէն ետքը Աթէնք հասաւ, ուր գրեթէ բոլոր Ատտիկէի բնակիչքը փախեր ժողվուեր էին: Փողոցները դիակներով լեցուեցան. մեռնողներուն թիւ չկար, ժողովրդեան յուսահատութեանն ալ չափ չկար. քաղաք կ'իջնար՝ մեռել կը տեսնէր, պարիսպները կ'ելլէր՝ արտերուն, գեղերուն մուխն ու բոցը կը տեսնէր կ'ողբար:

2 Երկու տարի քշեց աս ժանտախտին կոտորածը: Ան ատենը Իպպոկրատ անունով Կովացի հռչակաւոր բժիշկ մը կար որ Պարսից Արտաշէս թագաւորին ընծաներն ու խոստմունքներն արհամարհելով, աւելի յանձն առաւ Յունաստան կենալ ու իր հայրենակցացը օգնել. ասիկայ ամէն հնարք կ'ընէր ժանտախտին դէմ, բայց ճար

---

1 Պատերազմին երկրորդ տարին ի՞նչ պատահեցաւ:

2 Աթէնքի ժանտախտը ո՞րչափ ատեն քշեց:

չէր ըլլար։ Երկու տարիէն ետքը քիչ մը մեղմացաւ. բայց տաժանութիւնը ամիսէն ետքը նորէն բորբոքեցաւ, ու նորէն սկսաւ ահաւոր կոտորածներ ընել։

1 Ժողովուրդը աս Թշուառութիւնէն դառնացած, մէկ կողմէն ալ Պերիկլեսի Թշնամիներէն գրգռուած, իբրեւ Թէ անիկայ եղեր էր ժանտախտին պատճառը, որ այնչափ բազմութիւն Աթենքի մէջ խռնելովը քաղաքին օդը ապականեր էր, վրան տուգանք դրին ու իշխանութենէ ձգեցին, Պերիկլեսի ազգականացն ու բարեկամներուն շատն ալ ժանտախտէ բռնուեցան մեռան. Թէպէտ այնչափ դժբաղդութեանց մէջ ալ իր բնական համբերութիւնն ու վեհանձնութիւնը չկորսնցուց, բայց երբոր իր մէկ հատիկ որդին Պարալոս ալ մեռաւ, ու Պերիկլես ձեռքը ծաղկէ պսակ բռնած եկաւ որ որդւոյն գլուխը պսակէ, չդիմացաւ, լալով ինկաւ զաւկին վրայ, եւ սկսաւ գետի պէս արցունք Թափել։

2 Պերիկլեսի տեղ պատերազմը առաջ տանելու համար ուրիշ շատ զօրավարներ ու ճարտասաններ դրին Աթենացիք, զամէնքն ալ փորձեցին ու մէկուն քովն ալ Պերիկլեսի խելքն ու կառավարութեան հոգին չգտան։ Կարօտ եղան Պերիկլեսի, Թողութիւն խնդրեցին իրմէ,

---

1 Պերիկլես ինչո՞ւ ձգուեցաւ իշխանութենէն։
2 Նորէն ինչպէս ընտրուեցաւ։ -- Ի՞նչպէս մեռաւ Պերիկլես։

ու աւելի մեծցուցին անոր իշխանութիւնը։ Բայց քիչ ատենէն, այսինքն պատերազմին երրորդ տարին՝ Պերիկղէս ալ ժանտախտէն բռնուեցաւ (429)։ Մեռնելու ատենը քաղաքին գլխաւորները անկողնին չորս կողմը նստած անոր կատարելութիւնները կը յիշէին, իրարու կը պատմէին թէ որչափ գեղեցիկ շէնքերով հայրենիքը զարդարեց, ու որչափ փառաւոր յաղթութիւններ ըրաւ։ Պերիկղէս ան խօսքերը լսելով դարձաւ անոնց ըսաւ. Կը զարմանամ որ կենացս մէջ ամենէն աւելի գովեստի արժանի ու ինծի փառք եղած բանը մոռցաք, այսինքն ան որ ամենուն քաղաքակցացս մէկուն չարիք մը չեմ հասուցած։ Ասանկ Պերիկղէս կենացը վերջին վայրկեանը հասած՝ աւելի կ'ուրախանար անցուցած վարուցը ողէկութեանը քան թէ երկար ու բարեբախտ իշխանութեանը, փառաւոր յաղթանակներուն և պերճախօսութեանը վրայ։

# ԳԼՈՒԽ Ը.

Պոտիդէայի առումը. — Կղէոն. — Նիկիաս. — Յիսուն տարուան զինադադարումը. — Ալկիբիադ. — Արշաւանք Սիկիլիոյ. — Եգոս գետին պարտութիւնը. — Աթէնքի առումը. — Վախճան Պելոպոննեսեան մարտին:

1 Պերիկղէս երբոր մեռաւ՝ իմացան Աթենացիք թէ ինչ մեծ կորուստ ըրին: Իրմէ ետքը իշխանութիւնը փառասէր ու անկարող մարդկանց ձեռքն անցաւ, որ իրենց գէշ կառավարութեամբը թէ տէրութեան և թէ դաշնակցաց մեծ վնաս հասուցին: Ասոնք Պերիկղեսի ոչ իշխանութիւնն ունէին և ոչ անոր խելքը. և միայն ուզելով անոր պէս ժողովրդեան սիրելի ըլլալ, ամէն բանի մէջ նայեցան որ անոր կամքը կատարեն, մէկ խօսքով ժողովրդեան ձեռքը թողուցին բոլոր տէրութեան կառավարութիւնը:

2 Պերիկղեսի մեռնելէն քիչ մը առաջ Աթենացիք սկսեր էին Պոտիդէա քաղաքը պաշարել: Պոտիդէացիք ամենայն կերպով դէմ կը դնէին. բայց երբոր մէջերնին սովը սաստկացաւ ու սկըսան ինչուան մէկզմէկ ուտել, հարկեցան անձնա-

---

1 Պերիկղեսի մեռնելէն ետքը Աթէնքը ո՞վ կառավարեց:

2 Պոտիդէա քաղաքը ի՞նչպէս առնուեցաւ:

տուր ըլլալու. յանձն առին Աթենացիք, աս պայմանով որ Պոտիդէացիք քաղաքնին թողուն, էրիկ մարդիկ հետերնին մէկ հագուստ մը միայն առած, իսկ կնիկ մարդիկ երկերկու, ճամբու համար ալ քիչ մը ստակ: Թողուցին խեղճ Պոտիդէացիք իրենց ծնած քաղաքնին, ու կէս մը Քաղկեդոն գնացին, կէս մըն ալ ասդին անդին ցրուեցան: Իրենցմէ գաղթական մը խրկեցին Աթենացիք, ու նորէն Պոտիդէան ծաղկեցուցին:

1 Պելոպոնեսացիք նորէն Ատտիկէի վրայ երթալու տեղը՝ գնացին Աթենացւոց դաշնակից Պղատէա քաղաքը պաշարեցին, ու չորս կողմը պատ քաշեցին որ սովի բռնեն: Առաջուց Պղատէացիք բոլոր իրենց տղաքը, կանայքը ու ծերերն առեր Աթէնք խրկեր էին. չորս հարիւր հոգի միայն մնացեր էին քաղաքը պաշտպանելու. մէջերնին ութսուն Աթենացի կար, հաց շինելու համար ալ հարիւր տասը կին: Երկար ատեն քաջութեամբ դէմ կեցան. բայց երբոր սովը մէջերնին սաստկացաւ, մութ ու անձրեւոտ գիշեր մը երկու հարիւր Պղատէացիք կամացուկ մը պարսպէն վար իջան, ու առանց պահապանաց իմանալուն փախան Աթէնք գնացին: Մնացածներն ալ բոլորովին յուսահատած՝ անձնատուր եղան, յուսալով թէ վրանին կը գթան Պելոպոնեսացիք, բայց անոնք անգթութեամբ զամէնքն ալ ետևէ ետև սպաննեցին, և կնիկ

---

1 Պղատէա քաղաքը ի՞նչպէս առնուեցաւ:

ծանօթ յաղթութիւններ ըրաւ Պարսից վրայ որ Արտաշէս ստիպուեցաւ Յոնիոյ քաղաքներուն ազատութիւն տալ ու հետը հաշտութիւն ընել (449)։ Վերջաւորած մեռաւ Կիմոն Կիպրոս կղզին իր փառաւոր յաղթանակներուն մէջ, և Մարական պատերազմը վերջացաւ։ Կիմոնի մահուանը վրայ ամենքը լացին։ Որչափ հարուստ էր Կիմոն, վասն զի իր հօրը Միլտիադեսին յիշատակին ալ ազատելու համար պարտքը վճարեց, բարեկամ հաւատարիմ, քաղաքացի հայրենասէր, զօրավար ամենահմուտ, և գերագոյն իշխանութեան ու պատուոյ մէջ խոնարհամիտ։ Յիշատակութիւն մը չկայ որ իրեն փառաւոր յուղարկաւորութիւն ըրած կամ շիրիմ մը կանգնած ըլլան Աթենացիք. բայց անոր անեղծ արձան յիշատակն ժողովրդեան ցաւն ու արտասուքն եղաւ։

1 Կիմոնի մեռնելէն ետքը Պերիկլէս տիրեց Աթենացւոց, որ խորագին իմաստասէր, ներհուն քաղաքագէտ ու մեծ ճարտասան էր (443)։ Անանկ զօրաւոր էր ճարտասանութիւնը, որ ատենի բանաստեղծները երբեմն կ'ըսէին թէ Արամազդ անոր բերնովը կ'որոտայ ու Ելլադան տակնուվրայ կ'ընէ. երբեմն ալ թէ Համոզիչ շնորհքները անոր շրթունքներուն վրայ հանգչած են։ Օր մը հարցուցին Թուկիդիդեսին, որ

---

1 Կիմոնի մեռնելէն ետքը ո՞վ իշխեց Աթենացւոց։ — Ի՞նչ բնաւորութեան տէր մարդ էր Պերիկլէս։

անոր ոսոխն էր, թէ Որերնիդ աւելի աղէկ կը կռուիք. — Զինքը գետինը ձգած ատենս, ըսաւ, անանկ կ՚ըլլէ դէմ կը խօսի որ աչքով տեսնողներն ալ մտքերնին կը դնեն թէ ինքը չէ ինկողը։ Բայց սահմանով ալ ամենևին իր վրայ չէր վստահեր Պերիկլէս, բազմութեան առջևը բան մը խօսելէն առաջ՝ աստուածոց օգնութիւնը կը խնդրէր որ բերնէն անպատշաճ խօսք մը չելլէ, և ժողովի երթալու ատենը՝ տնէն դուրս չելած կ՚ըսէր ինքիրեն. Նայէ Պերիկլէս, ազատ մարդկանց հետ խօսելու կ՚երթաս, Յունաց և Աթենացւոց հետ։

1 Պերիկլէս իրեն մի միայն նպատակ դրեր էր հայրենեացը մէջ ամենէն սիրելի, ու ամենէն անուանի ըլլալ։ Ժողովրդեան աչքը մտնելու և ետքը ուզածին պէս անիկայ կառավարելու համար կը նայէր որ անոր կիրքերը սնուցանէ. անոր փառասիրութիւնն ու իշխանասիրութիւնը հաճելու համար՝ իշխանութիւնը կ՚ընդարձակէր, ու նոր նոր տեղերու կը տիրէր, արուեստից յառաջադիմութեանը վրայ ունեցած փափաքն ալ կը ցուցընէր՝ հանդէսներն ու թէատրոնները շատցընելով, և Աթէնքը փառաւոր շէնքերով զարդարելով։ Ան ատենը շինուեցաւ հռչակաւոր Պարթենոնը կամ երաժշտութեան թէատրոնը։ Ամէն ուզածը կ՚ընէր Պերիկլէս Աթէնքի մէջ. Թագաւորի անունը միայն պակաս

---

1 Աթէնքը ինչպէս զարդարեց։

էր վրայէն: Դաշնակիցները տեսնելով որ հասարակացնաւատորմղին համար պահուած ստակը անիկայ Աթէնքը զարդարելու կը գործածէ, ոտք ելան. Աթենացւոց գանգատ ըրին: Մեկէն Պերիկլէս զանոնք նուաճեց, ու առաջարկեց Աթենացւոց որ եթէ կ՚ուզեն բոլոր ան շէնքերուն ծախքը ինքը վճարէ, միայն թէ իր անունը դնէ անոնց վրայ. Աթենացիք յանձն չառին:

1 Սակայն Պերիկլէսի համարումն ալ սկսաւ իյնալ: Թշնամիները դեռ յայտնի իրեն դէմ կըռուիլ չհամարձակելով՝ սկսան անոր բարեկամներուն թշնամութիւն ընել: Անոնցմէ մէկն էր Փիդիաս, որ Պերիկլէսի շինել տուած շէնքերուն վերակացու դրուեր էր, և Աթէնքը իր հըրաշակերտ արձաններովը զարդարեր էր. ասոր վրայ ամբաստանութիւն ըրին թէ Աթենասայ արձանը զարդարելու համար իրեն տրուած ոսկիէն գողցեր է. Փիդիաս թէպէտ ինքզինքը արդարացուց, բայց մտիկ չըրին, ու խեղճը բանտի մէջ մեռաւ: Մէկն ալ Անաքսագորաս փիլիսոփան էր, Պերիկլէսի վարպետն ու բարեկամը. ասիկայ ալ զրպարտեցին թէ աստուածոց դէմ խօսեր է. ուստի հարկ եղաւ որ փախչելով ազատի ձեռքերնէն: Պերիկլէսի Ասպասիա կընկանը վրայ ալ՝ որ ոչ միայն գեղեցկութեանը

1 Պերիկլէսի դէմ ինչ թշնամութիւններ ըրին Աթենացիք:

համար անուանի էր, հապա նաև հանճարոյն, իմաստութեանն ու ճարտասանութեանը՝ որով ամէնքը զարմացած կ'երթային անոր դասախօսութիւնը մտիկ կ'ընէին, ինչուան նաև Սոկրատ, ամբարտաւանութիւն ըրին թէ կրօնքի անպատուութիւն կ'ընէ, և կ'ուզէին զինքը դատապարտել: Պերիկլէս հազիւ կրցաւ թափած արցունքներովը ու ճարտասանութեամբը դատաւորաց ձեռքէն զանիկայ ազատել:

1 Ան միջոցին (436) Կորկիւրացիք Աթենացւոցմէ օգնութիւն առած՝ Կորնթացւոց վրայ պատերազմ բացին: Կորնթացիք ալ բանիս վըրայ Սպարտացւոց գանգատ ըրին. անոնք ալ որ արդէն բարկացեր էին Աթենացւոց՝ որ մինակ տիրապետեր էին Յունաստանի, մէկէն անոնց բողոքեցին և զանազան պայմաններ առաջարկեցին. երբոր յանձն չառին Աթենացիք, իրենք ալ Պեղոպոնեսական ըսուած դաշնակցութիւնը հաստատեցին ու վրանին պատերազմ հրատարակեցին:

2 Աս դաշնակցութեան մէջ էին Բէովտացիք (բաց 'ի Պղատէա քաղաքէն), Փոկէացիք, Մեգարացիք, Ամբրակիացիք, Լեւկադացիք, Անակտորիոնացիք, և Աքայեցւոցմէ և Արգիացւոցմէ

---

1 Պեղոպոնեսական պատերազմին պատճառը ինչ էր:

2 Որ քաղաքները կային Պեղոպոնեսական դաշնակցութեան մէջ:

ղման՝ բոլոր Պեղոպոնեսի բնակիչները։ Աթենացւոց կողմն եղողներն էին Ասիոյ ծովեզերքը Թըրակիա և Ելլեսպոնտոս եղած Յունաց քաղաքները, Ակառնանիա, ուրիշ քանի մը ազգեր և բոլոր կղզեցիք՝ բաց 'ի Մելոս և Թերա կղզիներէն։ Ասոնց ծովային զօրքը աւելի շատ էր, Պեղոպոննեսացւոց ալ ցամաքայինը։

[1] Պատերազմը սկսաւ (431), Սպարտացւոց Արքիդամոս թագաւորը վաթսուն հազար զօրքով Ատտիկէ մտաւ, կողոպտեց, և զօրքը աւարով լեցուցած՝ Պեղոպոնես դարձաւ։ Աթենացւոց նաւատորմիղը պատրաստուած ճամբայ ելլելու օրը՝ արեւը խաւարեցաւ։ Աւելորդապաշտ Աթենացիք պատճառը չգիտնալով սարսափեցան, չէին ուզեր պատերազմի երթալ։ Տեսաւ Պերիկլէս որ իր նաւապետն ալ սարսափած կեցեր է, վերարկուն առաւ անոր երեսը ծածկեց ու հարցուց թէ բան մը կը տեսնե՞ս։ Երբոր անիկայ ըսաւ թէ բան մը չեմ տեսներ, վասն զի վերարկուդ արգելք է. — Ասանկ է, ըսաւ Պերիկլէս, արեւուն խաւարիլն ալ, վերարկուին պէս լուսինը երկրիս ու արեւուն մէջ տեղը գալով՝ չթողուր որ արեւուն ճառագայթները մեզի հասնին։ Ամէնքը համոզուեցան. գնացին ծովու վրայ վրէժնին հանեցին, բոլոր Պեղոպոնեսի ծովեզերեայ քաղաքներն աւրըշարկեցին, դառնալուատեն ալ Եգինա կղզւոյն տիրե-

1 Առաջին պատերազմը Ի՞նչպէս եղաւ։

ցին: Փառաւոր թաղումը ընել տուաւ Պերիկլէս աս առջի պատերազմին մէջ մեռնող քաղաքակցաց, ու վրանին գեղեցիկ դամբանական ճառ մը խօսեցաւ: Անանկ սրտաշարժ էր ան ճառը, որ վար իջնալու ատենը բոլոր կանայք վազեցին Պերիկլէսի գլուխը ծաղկըներով պսակեցին:

1 Երկրորդ տարին նորէն Ատտիկէի վրայ վազեց Արքիդամոս, ու նորէն սկսաւ աւրըշտըկել: Ան միջոցին ժանտամահը Եթովպիա, Եգիպտոս, Լիբիա, Պարսկաստան ու Լեմնոս կղզին շատ կոտորած ընելէն ետքը Աթէնք հասաւ, ուր գրեթէ բոլոր Ատտիկէի բնակիչքը փախեր ժողվուեր էին: Փողոցները դիակներով լեցուեցան. մեռնողներուն թիւ չկար, ժողովրդեան յուսահատութեանն ալ չափ չկար. քաղաք կ'իջնար՝ մեռել կը տեսնէր, պարիսպները կ'ելլէր՝ արտերուն, գեղերուն մուխն ու բոցը կը տեսնէր կ'ողբար:

2 Երկու տարի քշեց աս ժանտախտին կոտորածը: Ան ատենը Իպպոկրատ անունով Կովացի հռչակաւոր բժիշկ մը կար որ Պարսից Արտաշէս Թագաւորին ընծաներն ու խոստմունքներն արհամարհելով, աւելի յանձն առաւ Յունաստան կենալ ու իր հայրենակցացը օգնել. անիկայ ամէն հնարք կ'ընէր ժանտախտին դէմ, բայց ճար

---

1 Պատերազմին երկրորդ տարին ի՞նչ պատահեցաւ:

2 Աթէնքի ժանտախտը ո՞րչափ ատեն քշեց:

չէր ըլլար։ Երկու տարիէն ետքը քիչ մը մեղմացաւ. բայց տասնըռութը ամիսէն ետքը նորէն բորբոքեցաւ, ու նորէն սկսաւ ահաւոր կոտորածներ ընել։

1 Ժողովուրդը սա թշուառութենէն դառնացած, մէկ կողմէն ալ Պերիկղեսի թշնամիներէն գրգռուած, իբրև թէ անիկայ եղեր էր ժանտախտին պատճառը, որ այնչափ բազմութիւն Աթենքի մէջ տանելովը քաղաքին օդը ապականեր էր, վրան տուգանք դրին ու իշխանութենէ ձգեցին։ Պերիկղեսի ազգականացն ու բարեկամներուն շատն ալ ժանտախտէ բռնուեցան մեռան. թէպէտ այնչափ դժբաղդութեանց մէջ ալ իր բնական հանդարտութիւնն ու վեհանձնութիւնը չկորսնցուց, բայց երբոր իր մէկ հատիկ որդին Պարալոս ալ մեռաւ, ու Պերիկղէս ձեռքը ծաղկէ պսակ բռնած եկաւ որ որդւոյն գլուխը պսակէ, չդիմացաւ, լալով ընկաւ դակին վրայ, և սկսաւ գետի պէս արցունք թափել։

2 Պերիկղեսի տեղ պատերազմը առաջ տանելու համար ուրիշ շատ զօրավարներ ու ճարտասաններ դրին Աթենացիք, զամէնքն ալ փորձեցին ու մէկուն քովն ալ Պերիկղեսի խելքն ու կառավարութեան հոգին չգտան։ Կարօտ եղան Պերիկղեսի, թողութիւն խնդրեցին իրմէ,

---

1 Պերիկղէս ինչո՞ւ ձգուեցաւ իշխանութենէն։
2 Նորէն ի՞նչպէս ընտրուեցաւ։ — Ի՞նչպէս մեռաւ Պերիկղէս։

ու աւելի մեծցուցին անոր իշխանութիւնը։ Բայց քիչ ատենէն, այսինքն պատերազմին երրորդ տարին՝ Պերիկլէս ալ ժանտախտէն բռնուեցաւ (429)։ Մեռնելու ատենը քաղաքին գլխաւորները անկողնին չորս կողմը նստած անոր կատարելութիւնները կը յիշէին, իրարու կը պատմէին թէ որչափ գեղեցիկ շէնքերով հայրենիքը զարդարեց, ու որչափ փառաւոր յաղթութիւններ ըրաւ։ Պերիկլէս ան խօսքերը լսելով դարձաւ անոնց ըսաւ. Կը զարմանամ որ կենացս մէջ ամենէն աւելի գովելու արժանի ու ինծի փառք եղած բանը մոռցաք, այսինքն ան որ ամենեւին քաղաքակցացս մէկուն չարիք մը չեմ հասուցած։ Ասանկ Պերիկլէս կենացը վերջին վայրկեանը հասած՝ աւելի կ'ուրախանար անցուցած վարուցը ողէկութեանը քան թէ երկար ու բարեբախտ իշխանութեանը, փառաւոր յաղթանակներուն և պերճախօսութեանը վրայ։

# ԳԼՈՒԽ Ը.

Պոտիդէայի առումը. — Կղէոն. — Նիկիաս. — Ցե-ռոսն փարման ընդհատադադարումը. — Ալկիբիադ. — Արշաւանք Սիկիլիոյ. — Եգոս գետին պատերազմը. — Աթէնքի առումը. — Վախճան Պեղոպոնէսեան մարտին:

1 Պերիկղէս երբոր մեռաւ՝ իմացան Աթենացիք թէ ինչ մեծ կորուստ ըրին: Իրմէ ետքը իշխանութիւնը փառասէր ու անկարող մարդկանց ձեռքն անցաւ, որ իրենց գէշ կառավարութեամբը թէ տէրութեան և թէ դաշնակցաց մեծ վնաս հասուցին: Ասոնք Պերիկղեսի ոչ իշխանութիւնն ունէին և ոչ անոր խելքը. և միայն ուզելով անոր պէս ժողովրդեան սիրելի ըլլալ, ամէն բանի մէջ նայեցան որ անոր կամքը կատարեն, մէկ խօսքով՝ ժողովրդեան ձեռքը թողուցին բոլոր տէրութեան կառավարութիւնը:

2 Պերիկղեսի մեռնելէն քիչ մը առաջ Աթենացիք սկսեր էին Պոտիդէա քաղաքը պաշարել: Պոտիդէացիք ամենայն կերպով դէմ կը դնէին. բայց երբոր մէջերնին սովը սաստկացաւ ու սկըսան ինչուան մէկզմէկ ուտել, հարկեցան անձնա

---

1 Պերիկղեսի մեռնելէն ետքը Աթէնքը ո՞վ կառավարեց:

2 Պոտիդէա քաղաքը ի՞նչպէս առնուեցաւ:

տուր ըլլալու. յանձն առին Աթենացիք, աս պայմանով որ Պոտիդէացիք քաղաքնին թողուն, երիկ մարդիկ հետերնին մէկ հագուստ մը միայն առած, իսկ կնիկ մարդիկ երկերկու, ճամբու համար ալ քիչ մը ստակ։ Թողուցին խեղճ Պոտիդէացիք իրենց ծնած քաղաքնին, ու կէս մը Քաղկեդոն գնացին, կէս մըն ալ ասդիս անդին ցրուեցան։ Իրենցմէ գաղթական մը խրկեցին Աթենացիք, ու նորէն Պոտիդէան ծաղկեցուցին։

1 Պեղոպոնեսացիք նորէն Ատտիկէի վրայ երթալու ատեն՝ գնացին Աթենացւոց դաշնակից Պղատէա քաղաքը պաշարեցին, ու չորս կողմը պատ քաշեցին որ սովի բռնեն։ Առաջուց Պղատէացիք բոլոր իրենց տղաքը, կանայքը ու ծերերն առեր Աթէնք խրկեր էին. չորս հարիւր հոգի միայն մնացեր էին քաղաքը պաշտպանելու. մէջերնին ութսուն Աթենացի կար, հաց շինելու համար ալ հարիւր տասը կին։ Երկար ատեն քաջութեամբ դէմ կեցան. բայց երբոր սովը մէջերնին սաստկացաւ, մութ ու անձրեւոտ գիշեր մը երկու հարիւր Պղատէացիք կամացուկ մը պարսպէն վար իջան, ու առանց պահապանաց իմանալուն փախան Աթէնք գնացին։ Մնացածներն ալ բոլորովին յուսահատած՝ անձնատուր եղան, յուսալով թէ վրանին կը գթան Պեղոպոնեսացիք, բայց անոնք անգթութեամբ զամէնքն ալ ետեւէ ետեւ սպաննեցին, և կնիկ

---

1 Պղատէա քաղաքը Ինչպէս առնուեցաւ։

մարդիկը գերի ըրին (427)․ երկրորդ տարին ալ Թեբացիք իրենց տէրութիւնը կշտացընելու համար Պղատէան հիմնայատակ կործանեցին։

1 Նոյն կերպով վարուեցան նաև Աթենացիք Լեսբոս կղզւոյն բնակչացը հետ, որ զիրենք թողեր Պեղոպոնեսական դաշնակցութեան մէջ մտեր էին։ Շատ զօրքով ծովէն ու ցամաքէն Լեսբացւոց գլխաւոր քաղաքը Միտիլինէն պաշարեցին։ Անօգուտ տեղ ջանացին Սպարտացիք Միտիլինէի օգնել․ բնակիչքը անձնատուր եղան, և գլխաւորները սարսափած՝ մեհեանները փախան ապաւինեցան․ բռնեցին զանոնք Աթենացիք ու Աթէնք խրկեցին մեռուցին։ Միտիլինէի ալ պարիսպները քանդեցին, նաւերն Աթէնք խաւրեցին, երկիրը իրեք հազար հաւասար կըտոր բաժնեցին, իրեք հարիւրն աստուածոց նուիրեցին ու մնացածը մէջերնին բաժնեցին։

2 Պերիկղեսի տեղը անցնողներուն մէկն էր նաև Կղէոն ցածազգի խաղախորդը, բնութեամբ յանդուգն ու փառասէր, որ ժողովրդեան աչքը մտնելու համար անոր ախտերը սնուցանելու կը ջանար։

3 Իրեն նախանձորդն էր Նիկիաս, անուանի, հարուստ, խոհեմ ու ճարտար Աթենացին։ Երբոր Կղէոն Թրակիոյ մէջ Սպարտացւոց դէմ պատերազմելու ատենը զարնուեցաւ մեռաւ, սկը-

---

1 Միտիլինէն ի՞նչ կերպով առին Աթենացիք։
2 Կղէոն ի՞նչ մարդ էր։
3 Նիկիաս ո՞վ էր։

տաւ Նիկիաս հաշտութեան ետեւէ ըլլալ, ու Աթենացւոց և Սպարտացւոց մէջ յիսուն տարուան զինադադարում ըրաւ (422)։

1 Այս յիսուն տարուան հաշտութիւնը հազիւ թէ եօթը տարիի չափ դիմացաւ, անոր մէջ ալ անդադար երկու ազգը իրարու հետ կռիւ ու իրարու դէմ գանգատ կ՚ընէին։ Վերջապէս չկրցան համբերել, նորէն սկսաւ պատերազմը։

2 Աշնուազգի Ալկիբիադ պատանին, մարմնոյ ու մտաց ամէն տեսակ ձիրքերովը զարդարուած ըլլալով, կը փափաքէր որ Պերիկլեսի իշխանութեանը հասնի, որ իրեն ազգականն էր։ Բոլոր իր վրայ խօսող մատենագիրները կ՚ըսեն թէ ուզած ատենը Ալկիբիադին պէս առաքինի մարդ չէր գտնուեր Յունաստանի մէջ, ընդ հակառակն չուզած ատենն ալ անոր պէս ախտամոլ չէր գտնուեր։ Իրաւցընէ իր վարպետին՝ այսինքն Սոկրատայ խրատներուն մտիկ ըրած ատենը առաքինի էր Ալկիբիադ, գործունեայ, համբերող, առատաձեռն, քաղցրաբարոյ ու ճարտարամիտ։ Վրան քիչ մը ատեն որ անցնէր՝ կ՚ըլլար ծոյլ, զեղխ ու անառակ։ Քաջ զօրավար ալ էր ծովու ու ցամաքի վրայ. բայց իր ամենէն զօրաւոր զէնքն էր ճարտասանութիւնը, գեղեցիկ ձեւերն ու անոյշ ձայնը որով բոլոր ժողովրդեան սիրտը կը գրաւէր։

---

1 Նիկիասայ ըրած զինադադարումը քանի՞ տարի քշեց։

2 Ալկիբիադ ո՞վ էր։

1 Գեղեցիկ ու զարմանալի շուն մը ունէր որ շատ սուղ գներ էր, և անոր գլխաւոր զարդն էր բրդոտ պոչը. երբոր տեսաւ որ բոլոր քա-ղաքը իր վրայ կը խօսի, բռնեց Ալկիբիադ շանը պոչը կտրեց։ Բարեկամները երբոր սկսան զին-քը յանդիմանել ըրածին համար, որով բոլոր քաղաքը վրան կը խօսին, Ահա ես ալ ան կ'ու-զէի, ըսաւ Ալկիբիադ ժպտելով, որ Աթենացիք շանս վրայ խօսելով իմ վրաս խօսելու ատեն չու-նենան։ Ալկիբիադ տէրութեան կառավարու-թեանը մէջ մտնելով բոլոր իր նախանձորդնե-րը լռեցուց, և ճարտասանութեամբն ու կա-ռավարութեամբը սկսաւ աւելի ժողովրդեան աչքը մտնել. բայց ինքը պատերազմի մը կը փա-փաքէր՝ որպէս զի աւելի զօրանայ, իշխանու-թեանը մէջ հաստատուի ու փառքի հասնի։

2 Ան միջոցին Սիկիլիոյ Եգեստա քաղաքին բնակիչները, որ Աթենացւոց դաշնակից էին, Սելինացւոց ու Սիրակուսացւոց դէմ Աթենա-ցւոցմէ օգնութիւն խնդրեցին։ Շատ աշխատե-ցաւ Նիկիաս որ համոզէ ժողովուրդը ու անոնց օգնութիւն խրկել չտայ. ճար չեղաւ, ժողո-վուրդը Ալկիբիադին ճարտասանութեամբը խա-բուած՝ վճռեց որ Սիրակուսացւոց դէմ պատե-րազմ բացուի (416). մէկէն իրեք զօրավար ա-նուանեցին՝ Ալկիբիադը, Նիկիասն ու Ղամաքո-սը, և լիակատար իշխանութիւն տուին որ գիտցածնուն պէս առաջ տանին պատերազմը։

---

1 Ի՞նչ կերպով ժողովրդեան աչքը մտաւ։
2 Սիկիլիոյ արշաւանքին պատճառն ի՞նչ էր։

1 Ան գիշերն որ ճամբայ ելլելու պատրաստուած էին՝ տեսան որ բոլոր քաղաքին մէջ գտնուած Հերմէս կուռքին արձանները ջարդուբուրդ եղեր են։ Թշնամիները աս բանս Ալկիբիադին վրայ ձգեցին, անիկայ ալ անվախ բողոքեց որ շուտով վրան դատաստան ըլլուի։ Բայց որովհետեւ զօրքը իրեն կողմն էր՝ Թշնամիները վախցան, և ճամբորդութիւնը չուշանայ ըսելով դատաստանն ուրիշ ատենի թողուցին։

2 Զօրաց ճամբայ ելլելու օրը բոլոր քաղաքը Պիրէոն թափեցաւ՝ իրենց ազգականացն ու բարեկամաց վերջի բարեւը տալու։ Զօրքերը նաւերը մտնելնուն պէս՝ փող զարկին ու լռութիւնը տիրեց։ Պատերազմին յաջողութեանը համար աստուածոց օգնութիւնը խնդրեցին. ու զօրավարք և զինուորք ոսկիէ ու արծըթէ գաւաթներով անոնց նուիրմունքներ ընելէն ետքը նաւերը առագաստնին բացին, ետեւէ ետեւ նաւահանգստէն ելան ու դէպ 'ի Կորկիւրա գնացին, ուր բոլոր դաշնակիցները պիտի ժողվուէին։

3 Երբոր Սիկիլիա հասան, իրեք զօրավարաց մէջ անմիաբանութիւն ընկաւ, իրեքն ալ մէյմէկ կերպով կ'ուզէին սկսիլ պատերազմը։ Ղամաքոս Ալկիբիադին հետ միացաւ, ու յանկարծակի Կատանա քաղաքին վրայ յարձըկեցան ա-

---

1 Ալկիբիադի վրայ ի՞նչ կասկած եղաւ։

2 Ի՞նչպէս ճամբայ ելան Աթենացիք Սիկիլիա երթալու։

3 Ալկիբիադ ինչո՞ւ ետ կանչուեցաւ։

ուին, Նաքսոսը նուաճեցին, և երբոր Մեսսենիան ալ պաշարած՝ առնելու վրայ էին, Աթենքէն հրաման եկաւ Ալկիբիադին որ ամէն բան թողու գայ ինքզինքն արդարացընէ։ Մէկէն ճամբայ ելաւ Ալկիբիադ որ իր թշնամիները խաղք ընէ. բայց ճամբան մտածելով Աթենացւոց փոփոխամտութիւնը, և վախնալով որ զինքը անիրաւ տեղը կը բռնեն կը դատապարտեն, հնարքով մը պահապաններուն ձեռքէն փախաւ, Սպարտա գնաց (415)։

1 Աթենացիք անհնազանդութեանը վրայ բարկացած՝ զինքը 'ի մահ դատապարտեցին և հրամայեցին քուրմերուն և քրմուհեաց որ անիծեն զինքը. միայն Թէանով քրմուհին յանձն չառաւ՝ ըսելով թէ Ես օրհնելու համար քրմուհի եղեր եմ, և ոչ անիծելու։ Երբոր լսեց Ալկիբիադ թէ Աթենացիք զինքը մահապարտ վճռեր են՝ ըսաւ. Ես անոնց ցուցընեմ որ կենդանի եմ։

2 Ալկիբիադին երթալուն վրայ զօրաց սիրտը շատ կոտրեցաւ. Նիկիաս անոր տեղն ալ անցնելով, սկսաւ քաջութեամբ ու ճարտասանութեամբ Սիրակուսայի պաշարումը առաջ տանիլ, և անանկ նեղը ձգեց զանոնք որ Սիկիլիոյ ու Իտալիոյ մեծ մասը անձնատուր ըլլալու վրայ

---

1 Աթենացիք Ալկիբիադի փախուստն որ լսեցին՝ ի՞նչ ըրին։

2 Ի՞նչ պատճառաւ Աթենացիք սկսան յաղթուիլ։

էին՝ երբոր Գիլիպպոս Լակեդեմոնացի զօրավարը զօրքով Սիրակուսա մտաւ, ու ամէն բան կերպարանափոխ ըրաւ. Սիրակուսացիքը խրախուսեց, Աթենացւոց յաղթեց ու իրենց պատնէշներուն մէջ զանոնք պաշարեց։

1 Աթենացիք աս լսելուն պէս՝ Եւրիմեդոն ու Դեմոսթենէս զօրավարները վաթսուն ցռկանաւով Նիկիասայ օգնութիւն խրկեցին։ Դեմոսթենէս ուզելով փառաւոր յաղթութիւն մը ընել, Նիկիասայ խորհրդին դէմ գիշեր ատեն թշնամեաց վրայ յարձըկեցաւ, յաղթուեցաւ ու երկու հազար մարդ կորսընցուց։ Քիչ ատենէն ծովէն ցամաքէն սաստիկ ջարդ մըն ալ կերան Աթենացիք, այնպէս որ ոչ կրնային Սիրակուսան նորէն պաշարել, վասն զի պաշար չունէին, և ոչ նաւահանգստէն դուրս ելլել, որովհետև անոր բերանն ալ Սիրակուսացիք նաւերով գոցեր էին. ասանկով յուսահատած՝ բանակնին, հիւանդնին թողուցին ու քառասուն հազար հոգի սկսան ցամաքէն ետ դառնալ։ Ետևնէն հասան թշնամիք ու նորէն մեծ ջարդ տուին իրենց։ Դեմոսթենէս տասը հազար յառաջապահ զօրքով Ճամբան կորսընցուց ու նեղ տեղ մը ընկաւ. հասան թշնամիք չորս կողմէն պաշարեցին, և թէպէտ շատ քաջութեամբ դէմ կեցաւ, բայց վերջապէս հարկ եղաւ որ անձնատուր ըլլայ։ Երկրորդ օրը երբոր Նիկիաս գետէ մը կ'անցնէր,

---

1 Ի՞նչ կերպով բոլորովին յաղթուեցան Աթենացիք։

ետեւէն հասան Սիրակուսացիք, ութը հազար մարդ կորսընցուց Նիկիաս ու մնացած զօրքովն անձնատուր եղաւ (413)։

1 Իրենց գերիներուն հետ շատ անգթութեամբ վարուեցան Սիրակուսացիք։ Այնչափ աղաչեց Գիլիպպոս, ճար չեղաւ, Նիկիան ու Դեմոսթենէսը բռնեցին սպաննեցին. եօթը հազար զինուոր մետաղը գրին, որ ամէնքն ալ անօթի ծարաւ մեռան։ Ան գերիներէն շատը Եւրիպիդեսի բանաստեղծութեան գեղեցիկ կտորները բերնուց գիտնալով՝ իրենց տէրերնուն առջեւը կը զրուցէին, անոնք ալ զմայլելով՝ կ'ազատէին զիրենք։ Ասանկով անոնցմէ շատը հայրենիքնին դարձան, ու Եւրիպիդեսին շնորհակալ կ'ըլլային՝ Մեր ազատարարը դուն ես ըսելով։ Բայց Եւրիպիդեսի բանաստեղծութեանը աւելի մեծ փառք մըն ալ որ պահուած էր՝ աս էր որ Աթէնքն կործանմանէ պիտի ազատէր։

2 Աթենացիք ան աստիճանի վստահ էին Սիրակուսային տիրելու՝ որ յաղթուելնուն առջի լուրը բերողը բռնեցին իբրեւ ստախօս սպաննեցին։ Վրան շատ չանցաւ ան վստահութիւնը ցաւ ու յուսահատութիւն դարձաւ, վախը վրանին տիրեց, չէին գիտեր ինչ ընեն, բոլոր Ասիա ու Եւրոպա իրենց դէմ ելած, դաշնակիցք

---

1 Սիրակուսացիք իրենց բռնած գերիներուն հետ ի՞նչպէս վարուեցան։

2 Աթենացիք երբոր լսեցին Նիկիասայ բոլորովին յաղթուիլը՝ ի՞նչ ըրին։

գիրենք թողուցած, աքսորած Ալկիբիադէսին՝ Պարսիկներն իրենց վրայ հանելու պատրաստութեան հետ։ Սկսան ամէն ջանքով սատակ ու զօրք ժողվել, մէկէն բանակ մը կազմեցին, ու նոր նաւատորմիղ մը պատրաստեցին։

[1] Աս նոր պատրաստութիւնը Ալկիբիադ. կըրնար փուճ հանել. բայց ան օրերը Սպարտացւոց Ագիս թագաւորին ծանր նախատինք մը ըրած ըլլալուն համար՝ բոլոր Լակեդեմոնացի իշխանները հետն աւրուեցան. ու ան միջոցին որ ինքը Սպարտացւոց օգտին համար կ՚աշխատէր Փոքր Ասիոյ մէջ, Սպարտացիք անիկայ 'ի մահ դատապարտեցին։ Աս որ լսեց Ալկիբիադ., մէկէն Սարդիկէի Արտափեռնէս նախարարին քովը գնաց, անոր աչքը մտաւ, համոզեց որ Պեղոպոննեսացւոց չօգնէ. Վասն զի երկու կողմին ոյժն ալ հաւասար պահելու է կ՚ըսէր, ապա թէ ոչ՝ Սպարտան Աթենքի վրայ կը զօրանայ, Պարսից ինքնակալութիւնը նորէն վտանգի մէջ կ՚իյնայ։ Ձեռքի տակէն ալ ամէն հնարք ըրաւ Ալկիբիադ., ու Աթենացւոց Սամոս կղզին ունեցած զօրաց միտքը վաստըկեցաւ, որ ինչուան զինքը իրենց սպարապետ անուանեցին։ Աթենացիք մէկէն անոր աքսորանաց վճիռը ջնջեցին ու զինքը քաղաքը հրաւիրեցին։ Չուզեց Ալկիբիադ. առանց թշնամեաց վրայ յաղթութիւն մը ընելու՝ հայրենիքը դառնալ, ուստի ամէն տեղ ետեւէ ետեւ յաղթութիւններ ընելով բոլոր ա-

---

1 Ալկիբիադ. ինչպէս նորէն Աթէնք դարձաւ։

պղստամբները նուաճեց։ Սպարտացիք նեղը մնացած՝ ուզեցին հաշտութիւն ընել. բայց Աթենացիք իրենց յաղթութեանցը վրայ հպարտացած՝ յանձն չառին, անով իրենց կործանմանն ալ պատճառ եղան։ Աթենքի ազատարարը Աղկիբիադէս՝ Թշնամեաց վահաններովը ու դրօշներովը զարդարած նաւու մը մէջ նստած՝ ետեւն ալ գերիները ձգած անթիւ աւարով յաղթանակաւ մտաւ Պիրէոն։ Բոլոր քաղաքը ընդառաջ ելեր էր. անպատմելի ուրախութեամբ զինքն ընդունեցան, և իրարու ձեռքէ կը յափշտակէին անոր գլուխը պսակելու փառքը. Ի՞նչ խելք էր որ այսպիսի մարդը աքսորեցինք, կ'ըսէին. թէ որ իրեն մնար՝ հիմա Սիկիլիոյ տիրած էինք։ Մէկէն ծովային ու ցամաքային զօրաց սպարապետ դրին զինքը, բոլոր ստացուածքը ետ դարձուցին, և քրմաց հրամայեցին որ վրան դրած նզովքնին արձակեն (412)։

1 Սպարտացիք Աղկիբիադին յաղթութիւններն ու դարձը լսելով՝ շատ խռովեցան, անանկ զօրավար մը փնտռեցին որ անոր առջեւն ելլելու սիրտ ընէ. ծովապետ դրին Ճարտար ու խորագէտ Լիւսանդրը, որ Կիւրոսի աչքը մտնելով՝ անկէց շատ ստակ առաւ ու իր զօրացը թոշակն աւելցուց։ Ան ատենը հարկ եղաւ որ Աղկիբիադըն ալ նաւատորմիղէն քիչ մը հեռանայ ստակ ժողվելու համար, և իրեն տեղապահ թողուց

---

1 Սպարտացիք երբոր լսեցին Աղկիբիադեսին դարձը ի՞նչ ըրին։

Անտիոքոս զօրավարը՝ ապսպրելով որ չզարնուի։ Անիկայ ինքնիրեն քաջութիւն մը ընել ուզելով զարնուեցաւ, յաղթուեցաւ, ինքն ալ մեռաւ. տասնըհինգ նաւերնուն ալ տիրեց Լիւսանդր։ Պարապ տեղը Աղկիբիադ ուզեց օգնութեան հասնիլ։ Նորէն բարկացան Աթենացիք Աղկիբիադին վրայ, զինքը ձգեցին իշխանութենէն ու տեղը տասը զօրավար դրին, որոնց մէջ անուանի էր Կոնոն։ Սպարտացիք ալ նոյնպիսի սխալմունքի մէջ ընկան. Լիւսանդրին փառասիրութենէն վախնալով զինքը փոխեցին ու տեղը առաքինի ու արիասիրտ Կալլիկրատիդասը դրին։

[1] Կալլիկրատիդաս Աթենացւոց տասը զօրավարացը յաղթեց ու ձեռքերնէն երեսուն նաւ առաւ. բայց Աթենացիք հարիւր վաթսուն ցռուկանաւ օգնութիւն հասուցին Կոնոնի։ Խրատ տուին ուրիշները Կալլիկրատիդասի որ քիչ նաւով թշնամեաց բազմաթիւ նաւատորմիղին հետ չզարնուի ու ինքզինքը վտանգի մէջ չձգէ. ինքը պատասխան տուաւ թէ Սպարտա մէկ հոգւոյ վրայ չէ կեցած։ Լեսբոսի մօտ Արգինուսա կղզւոյն քով պատերազմը սկսաւ սոսկալի աղաղակներով. Կալլիկրատիդաս զարմանալի քաջութիւններ ընելէն ետև, հասաւ վրան Մեծին Պերիկղեսի որդին Պերիկլէս կտրիճը, երկար ձանկ մը անցուց անոր նաւուն՝ բռնեց, վրայ հասան Աթենացւոց մէկալ ցռուկանաւերն ալ, չորս

---

1 Կալլիկրատիդաս ինչպէս զարնուեցաւ Աթենացւոց հետ ու ինչպէս մեռաւ։

կողմէն Կալլիկրատիդասը պաշարեցին ու մեռուցին։ Ասանկով Սպարտացւոց բոլոր նաւատորմիղը ջարդուեցաւ, բռնուեցաւ և կամ ընկղմեցաւ։

1 Հիներն իրենց պարտք կը սեպէին պատերազմի մէջ ընկնողները թաղել. Աթենացւոց զօրավարներն ալ մասնաւոր յիսուն ցռկանաւ որոշեր էին որ մեռելները ժողվեն ու թաղեն. բայց յանկարծական փոթորիկ մը ելլելով անկարելի եղաւ հրամանը 'ի գործ դնել։ Աս որ լըսեց ժողովուրդը, (որ աւելորդապաշտութեամբ միտքը դրեր էր թէ ինչուան որ մարդ աս աշխարհիս վրայ չթաղուի՝ անդին երանութեան չկրնար հասնիլ), վրէժխնդրութիւն ընելով ուզեց մեռնողներուն հոգւին իրեն հետ հաշտեցընել. ու մէկէն իր զօրավարներն 'ի մահ դատապարտեց՝ առանց թողլու որ իրենք զիրենք արդարացընեն։ Ժողովքին մէջ եղած հազարաւոր մարդկանց մէջէն երկու հոգի միայն համարձակեցան խեղճերուն անմեղութիւնը պաշտպանելու. ծերակուտին մէջ ալ Սոկրատ միայն եղաւ համարձակ ըսաւ որ Անմեղաց արեան պարտական պիտի ըլլան. անոնք մտիկ չըրին. բայց անիրաւ վճիռը կատարուելուն պէս՝ աչքը բացուեցաւ, սոսկաց ժողովուրդը, զղջացաւ ըրածին վրայ, բայց անօգուտ։

---

1 Աթենացիք ի՞նչ պատճառաւ մեռուցին իրենց տասը զօրավարները։

1 Դաշնակցաց խնդիրքովը Սպարտացիք նորէն Լիւսանդրը ծովակալ դրին, որ յաղթութիւնը գլուխ տանելու համար ստութիւնն ու խարդախութիւնն ալ անխիղճ կը բանեցընէր. կ'ըսէր ալ թէ Ո՛ւր որ չհասնիր առիւծենին, հոն աղուեսենին կարկըտելու է։ Ասանկ խարդախ կերպերովը Աթենքի կործանմանը պատճառ եղաւ։

2 Գնաց Ելլեսպոնտոսի ծովեզերքը Լամփսակոն քաղաքն առաւ։ Շուտ մը ետեւէն հասան Աթենացիք ու Ելլեսպոնտոսի վրայ Եգոս գետին բերանը ուզեցին հետը զարնուիլ։ Զօրս օր մէյկերպ պատերազմի հրաւիրեցին Սպարտացիները, Լիւսանդր ամենեւին տեղէն չշարժեցաւ. իր վախճանն էր զանոնք մէյմը որոգայթի մէջ ձըգել, ինչպէս որ ալ եղաւ։ Ալկիբիադ որ ան ատենը Թրակիա քաշուեր էր՝ իմացաւ Լիւսանդրի խարդախութիւնը, իմացուց Աթենացւոց որ չխաբուին, անոնք մտիկ չըրին։ Հինգերորդ օրը շատ նախատինքներով զանոնք պատերազմի հրաւիրելէն ետեւ, երբոր Աթենացիք անհոգաբար ցամաքը ելան ցրուեցան, Լիւսանդր որ ան ատենին կը սպասէր՝ մէկէն անոնց նաւերուն վըրայ հասաւ, ո՛րը բռնեց, ո՛րը կոտրեց. անկէց յարձըկեցաւ Աթենացւոց վրայ, զամէնքը ցը-

---

1 Լիւսանդր ի՞նչ կերպով նորէն ծովակալ դըրուեցաւ։

2 Եգոս գետին վրայի պատերազմը ի՞նչպէս եղաւ։

րուեց, Թրէ անցուց, բոլոր զօրավարներն ալ բռնեց, բաց 'ի Կոնոնէն որ ինը ցռկանաւով Կիպրոսի Եւագորաս Թագաւորին քովը փախաւ (405)։ Իրեք հազար գերիները ժողովքով 'ի մահ դատապարտուեցան։ Փիլոկղէս անունով Աթենացի զօրավարը խրատ տուեր էր Աթենացւոց որ իրենց բռնած գերիներուն բութ մատը կտրեն որպէս զի չկարենան աղեղ քաշել. Լիւսանդր հարցուց անոր թէ Ձեզի հետ ինչպէս վարուինք։ Փիլոկղէս աս խրոխտ պատասխանը տուաւ. Յաղթողը դուն ես, իրաւունքդ բանեցուր. անանկ վարուէ հետերնիս ինչպէս որ մենք պիտի վարուէինք ձեզի հետ եթէ յաղթող ըլլայինք։ Սպարտացիք անգթութեամբ զամէնքն ալ սպաննեցին։

[1] Ասով Աթենացիք ծովի վրայ ունեցած ուժերնին ալ կորսնցուցին, դաշնակիցներն ալ հետզհետէ զիրենք թողուցին Լիւսանդրի հնազանդեցան։ Լիւսանդր յաղթական նաւատորմիղովը Պիրէոն մտաւ, Լակեդեմոնացւոց Ագիս և Պաւսանիաս Թագաւորներն ալ գնացին Աթէնքը պաշարեցին։ Քանի մը ամիս դիմացան Աթենացիք, բայց երբոր սովը սաստկացաւ՝ անձնատուր եղան (404)։ Կորնթացիք և Թեբացիք կ'ուզէին որ Աթէնքը հիմնայատակ կործանուի։ Փառաւոր կոչունք մը ըրին, և յաղթուողները գերիի պէս սեղանին վրայ կը ծառայէին։ Ան ա-

---

1 Ի՞նչ կերպով ու ի՞նչ պայմանով Աթենացւոց հետ հաշտութիւն ըրին Սպարտացիք։

տեն Աթենացի երիտասարդին մէկը սկսաւ կարդալ Եւրիպիդեսին մէկ ոտանաւորը որ Ելեկտրիոնի Թշուառութեանը վրայ գրած է, ու Աթենացւոց խեղճութեանը հետ բաղդատել անիկայ: Լիւսանդրին ու Սպարտացւոց սիրտը ելաւ, մտածեցին որ իրենց յաւիտենական նախատինք պիտի ըլլայ թէ որ Աթէնքը կործանեն որ այնչափ օգուտ ըրեր է Յունաստանի, և աս պայմանով հաշտութիւն ըրին որ Պիրէոնի պարիսպն ու նաւահանգիստը քաղաքին հետ միացընող պատը կործանեն. տասուերկու հատէն զատ բոլոր նաւերնին տան, աքսորուածներն ետ դարձընեն, իրենց տիրած քաղաքներէն զորքերնին հանեն, հրաման գալուն պէս՝ ծովէն ցամաքէն Սպարտացւոց օգնեն:

[1] Ասանկով լմնցաւ Պեղոպոնեսական պատերազմը որ քսանըեօթը տարի տևեր էր: Փառասիրութեամբ սկսաւ, ատելութեամբ տաքցաւ. ինչ բան որ Յունաստան միաբանութեամբը վաստըկեր էր՝ կորսընցուց: Հայրենասիրութեան ու ազգասիրութեան տեղ՝ ոխն ու ատելութիւնը ամենուն սրտին մէջ տիրեց:

---

1 Քանի՞ տարի քշեր էր Պեղոպոնեսական պատերազմը:

# ԳԼՈՒԽ Թ.

Երեսուն բռնաւորք. — Մահ Աղկիբիադեայ. — Թրասիբուղ. — Աթէնքի ազատութիւնը. — Սոկրատ. — Նահանջ բիւրուն. — Ագեսիլաւոս Սպարտացւոց թագաւորը. — Կոնոն Աթէնքի պարիսպները կը շինէ. — Դաշնադրութիւն Անտալկիդայ. — Պելոպիդաս:

1 Սպարտացիք Աթէնքի միջնաբերդը իրենց զօրքերովը լեցուցին, և քաղաքին կառավարութիւնը երեսուն իշխանաց ձեռքը յանձնեցին որ մէյմէկ անգութ բռնաւորներ դարձան, և իրենց բռնաւորութեանը հետ՝ անունին ալ անյիշատակ կորաւ: Հասարակապետութեան մէջէն խռովարար մարդիկը վերցընենք ըսելով առաքինի հարուստ ու անուանի մարդ չմնաց որ չպատժեն չսպաննեն:

2 Ութը ամսուան մէջ ան բռնաւորները հազար հինգ հարիւր հոգիէն աւելի մեռուցին. անոր համար շատ մարդիկ իրենց հայրենիքը թողուցին ձեռքերնէն փախան, շատին ալ անոնք

---

1 Սպարտացիք ինչ իշխաններ դրին Աթէնքի մէջ:
2 Երեսուն բռնաւորք ինչ անգթութիւններ ըրին:

ստացուածքները յափշտակեցին ու զիրենք քշեցին, հրովարտակ մըն ալ հանեցին որ Յունաց քաղաքները ամենեւին զանոնք ներս չընդունին։ Բայց Սպարտացւոց սպառնալիքներուն մտիկ չընելով՝ ան խեղճ աքսորեալներուն սիրով ընդունելութիւն ըրին Թեբէ, Արգոս և Մեգարա քաղաքները։

1 Ան ատենն որ աս խեղճութեան մէջ կը հառաչէին Աթենացիք, յոյսերնին միայն Աղկիբիադին վրայ էր։ Իրաւցընէ, թէպէտ և աքսորուած էր Աղկիբիադ իր հայրենիքէն, բայց անոր ազատութեանը համար գնաց Պարսից Դարեհ հարճ որդի Թագաւորին քով որ իմացընէ անոր Կիւրոս որդւոյն ապստամբութիւնը, և աս մատնութեանը փոխարէն՝ իր հայրենեացը համար օգնութիւն ուզէ։ Աս որ իմացան Աթենքի բռնաւորները, Պարսից Փառնաւազ նախարարը համոզեցին որ սպաննէ զինքը. ան ալ մարդ խրկեց որ եկան տունը պաշարեցին, և չհամարձակելով զինքը բռնի դուրս հանել՝ տանը կրակ տուին որ ինքն ալ մէջը այրի։ Թուրը ձեռքը կրակին մէջէն տնէն դուրս ցատքեց Աղկիբիադ, քշեց հալածեց Պարսիկները, բայց անոնց հարիւրաւոր նետերէն զարնուած՝ ընկաւ մեռաւ քառասուն տարեկան։

2 Վերջապէս Աթէնքը երեսուն բռնաւորաց

---

1 Աղկիբիադ ի՞նչպէս մեռաւ։

2 Երեսուն բռնաւորաց ձեռքէն Աթէնքը ո՞վ ազատեց։

ձեռքէն ազատեց Թրասիբուղ անունով Աթէնացի զօրավարը, որ եօթանասուն աքսորուած քաջասիրտ Աթէնացի հետն առած՝ եկաւ Ատտիկէին սահմանագլուխն եղած Փիլէ ամրոցին տիրեց, ու բռնաւորաց խրկած թիկնապահները ջարդեց։ Հոն երբոր բոլոր քշուածներն եկան քովը ժողվուեցան, զօրքը շատցաւ, ու անոնցմով գնաց սաստիկ պատերազմով Պիրէոնի տիրեց, ուր բռնաւորներէն երկուքը մեռան (403)։

1 Երեսուն բռնաւորները յուսահատած՝ իշխանութիւննին տասը դատաւորաց յանձնեցին, որ իրենց բռնաւորութեամբն անոնցմէ վար չմնացին։ Ասոնք ալ Թրասիբուղի յաղթութիւններէն սարսափած որ երթալով կը մօտենար քաղաքին, Սպարտայէն օգնութիւն ուզեցին, և Լիւսանդր վազեց որ անոնց օգնէ։ Բայց Սպարտացւոց թագաւորը Պաւսանիաս սկսաւ Աթէնացւոց պաշտպանութիւն ընել. անոր խորհրդովը Աթէնացիք Սպարտա դեսպան խրկեցին՝ հրաման առին, բռնաւորութիւնը ջնջեցին ու տեղը ռամկապետութիւն հաստատեցին. Թրասիբուղ ալ մէկէն անյիշաչարութեան հրովարտակ մը հանեց։

2 Ազատութիւննին գտնելէն քիչ մը ետքը Աթէնացիք Սոկրատայ դատապարտութեամբը մեծ նախատինք ըրին իրենց (400)։ Սոփրոնիս-

1 Ի՞նչ կերպով վերջացաւ երեսուն իշխանաց բռնութիւնը։

2 Ո՞վ էր Սոկրատ։

կոս անունով արձանագործի մը որդի էր Սոկրատ, որ քիչ մը ատեն հօրը քով արձանագործութիւն ընելէն ետև՝ ինքզինքը բոլորովին փիլիսոփայութեան տուաւ. և հրապարակը կեցած, կամ թէ ընտանեկան խօսակցութեանց մէջ դաս կուտար, ամենուն բարքը կը շտկէր։ Ուրիշի սորվեցուցած բաները կը ջանար որ գործով ալ կատարէ։ Խաղաղութեան ատեն ճիշդ օրինապահ էր ու քաղաքացւոյ պարտքերը անթերի կը կատարէր, պատերազմի մէջ ալ քաջասրտութեամբը անուանի էր։ Պոտիդէայի պաշարման ատենը թշնամեաց ձեռքէն քաշեր ազատեր էր Ալկիբիադը, Դելիոնի պատերազմին մէջ ալ Քսենոփոնը ազատեր էր մահուընէ։ Շատ աշակերտներ ալ ունեցաւ Սոկրատ, որոնց մէջ ամենէն անուանիներն եղան Քսենոփոն, Ալկիբիադ, Անտիսթենէս և Պղատոն։

1 Բայց երթալով Սոկրատին թշնամիները շատցան, Անիտոս և Մելիտոս աշակերտները սկսան զինքը բամբասել իբրև ամբարիշտ և երիտասարդներն աւրող, և ուզեցին որ 'ի մահ դատապարտուի։ Թէպէտ ամենայն կերպով ինքզինքը արդարացուց Սոկրատ ու բոլոր թշնամեաց ըրած զրպարտութիւններուն պատասխան տուաւ, բայց դատաւորները զինքը դարձեալ յանցաւոր դատապարտեցին. և երբոր իրեն թողուցին որ աս իրեքին մէկն ընտրէ՝ այս-

---

1 Ի՞նչ պատճառաւ ու ի՞նչպէս 'ի մահ դատապարտուեցաւ Սոկրատ։

ինքն կամ տուգանք կամ աքսոր և կամ մշտըն-ջենաւոր բանտ, ըսաւ թէ Ես իմ հայրենեացս ըրած ծառայութեանցս համար արժանի եմ որ տէրութիւնը իր ծախքովը զիս կերակրէ։ Աս պատասխանիս վրայ դատաւորները բարկացան ու վճիռ հանեցին որ մոլախինդ խմելով մեռնի։ Եւ որովհետև մէկ պատճառով մը իր վրայ ե-լած վճռոյն կատարումը ամիս մը ուշացաւ, Սո-կրատ բանտին մէջ իր աշակերտացը հետ հոգւոյ անմահութեան, աս կեանքիս կարճութեանն ու թշուառութեանցը և բարեբարոյ քաղաքա-ցւոյ մը պարտքերուն վրայ կը խօսէր. Որչափ ալ ուրիշները մեզի հետ անիրաւութեամբ վարուին՝ մենք պէտք չէ որ անիրաւ ըլլանք, կ'ը-սէր։ — Քաղաքացւոյ մը առաջին առաքինու-թիւնն է հայրենեաց օրինացը հնազանդիլ։ — Ճշմարիտ փառքը՝ առաքինութիւնն է։—Մարդս որչափ քիչ բանի կարօտ ըլլայ, այնչափ աւելի աստուածոց կը մօտենայ։ — Մարդս միշտ իր կիրքերուն հետ պիտի կռուըտի և ուրիշներուն կրիցը հետ խաղաղութեամբ պիտի երթայ։ — Երջանիկ ըլլալու համար պէտք է որ մարդս ըլ-լայ աղէկ ազգական, աղէկ բարեկամ ու աղէկ քաղաքացի։ Ապողոդորոս անունով իր աշա-կերտներէն մէկը երբոր ըսաւ իրեն թէ Անոր կը ցաւիմ որ անիրաւ տեղը պիտի մեռնիս, Սո-կրատ պատասխան տուաւ. Կ'ուզէիր ուրեմն որ յանցաւոր մեռնէի։ Երբոր դահիճը բերաւ մոլախինդը տուաւ, անխռով կերպարանքով ա-ռաւ ձեռքէն Սոկրատ ու խմեց։

1 Այն ատենները Կրօսերն Կիւրոս իր Արտաշէս Ուշեղ ըսուած եղբօրը ձեռքէն թագաւորութիւնը առնելու մտքով՝ Ասիոյ մէջ հարիւր հազարի բանակ մը հանեց, Յունացմէ ալ տասուերեք հազար մարդ օգնութիւն առաւ, որոնց զօրավարն էր Կղէարքոս Լակեդեմոնացին: Երբոր ինքը Կիւրոս պատերազմին մէջ մեռաւ, զօրացն ալ մեծ մասը ջարդուեցաւ. բայց Յոյնք տասը հազար հոգի ետ դարձան իրենց հայրենիքն երթալու: Ասոնք տասնըվեց ամսուան մէջ գրեթէ վեց հարիւր մղոնի չափ տեղ քալեցին, ու անապատներ, գետեր, լեռներ անցան՝ ան տեղերուն բնակչացը հետ պատերազմելով:

2 Երբոր Կղէարքոս Տիսափեռնէն նախարարէն սպաննուեցաւ, տեղը անցաւ Քսենոփոն զօրավարը, որ մնացած վեց հազար հոգին Յունաստան հասուց, ետքը աս հռչակաւոր դարձին պատմութիւնն ալ գրեց, որ ըսուեցաւ Նահանջ բիւրուն:

3 Լակեդեմոնացիք բոլոր Յունաստանի տիրելէն ետքը կ'ուզէին որ Ասիան ալ նուաճեն. իրենց Ագեսիղայոս թագաւորը՝ Փռիւգիան ու Կարիան աւերըշտըկեց, շատ պատերազմներուն մէջ Պարսից յաղթեց, ու սկսաւ անոնց մայրա-

---

1 Յոյնք ի՞նչ պատճառաւ Պարսից Արտաշէս թագաւորին դէմ գնացին:

2 Ո՞վ նորէն Յունաստան դարձուց Կիւրոսի օգնութեան գնացող Յոյները:

3 Ագեսիղայոս ի՞նչ յաղթութիւններ ըրաւ:

քաղաքին վրայ երթալ (397)։ Բայց երբոր լսեց թէ Թեբացիք, Արգիացիք, Թեսաղացիք և Աթենացիք միաբանած՝ Սպարտացւոց վրայ յարձըկելու կը պատրաստուին, փառաւոր յաղթութիւնները կիսկատար թողուց ու դարձաւ որ հայրենիքը պաշտպանէ. Արքայից արքային երեսուն հազար աղեղնաւորները զիս Ասիայէն կը հալածեն ըսաւ. կ՚ուզէր ըսել թէ Պարսիկք իրենց աղեղնաւորի ձևով ստըկէն երեսուն հազար դրամ տուին Թշնամեացս որ ինծի դէմ պատերազմի ելլեն։ Այն միջոցին որ Ագեսիղայոս Ելլեսպոնտոսէն անդին անցաւ ու Թրակիայէն և Մակեդոնիայէն Սպարտա կը դառնար, Պարսից նաւատորմիղը Կոնոն Աթենացւոյն ու Փառնաւազ նախարարին առաջնորդութեամբը Կընիդոս հրուանդանին քով յաղթեց Լակեդեմոնացւոց նաւատորմղին։ Ագեսիղայոս աս լսելով՝ վախցաւ որ զօրքը չիմանայ ու չվհատի, ուստի ծովու կողմէն եկողներուն հրամայեց որ հակառակը պատմեն թէ Սպարտացիք Պարսից վըրայ նաւական յաղթութիւն մը ըրին։ Ինքն ալ ծաղկապսակ եկաւ ամենուն առջևն աստուածոց շնորհակալութեան զոհ մատոյց. անով զօրաց սիրտը աւելի վառուեցաւ, ու չէին ուզեր ծովային զօրքէն վար մնալ։ Շուտ մը երկու բանակները Կորոնէայի քով ճակատեցան, ու կատաղաբար իրարու վրայ յարձըկեցան։ Երկայն քշեց պատերազմը. շատ արիւն թափեցաւ. բայց վերջապէս յաղթող ելան Սպարտացիք ու յաղթութեան նշան կանգնեցին։ Երբոր Ագեսիղայոս պատերազմին տեղը պտըտելու ելաւ,

գետինը փռուած մեռելներուն բազմութիւնը տեսնելով հառաչեց ու ըսաւ. Դժբա՛ղդ Յունաստան, քու ձեռքովդ մեռուցիր կարիճ պատերազմողներդ՝ որ բոլոր բարբարոսաց կրնային յաղթել:

1 Կաղ էր Ագեսիլայոս, փոքրահասակ ու տգեղ. բայց լաւ կրթուած ըլլալովը բոլոր աս պակասութիւնները կը գոցէր: Սրտին քաջութեամբը կարծես թէ մարմինն ալ ուժ առած էր. և իբրև ճշմարիտ Սպարտացի՝ հայրենեաց օրէնքներուն հնազանդիլը իրեն պարտք ու պարծանք կը սեպէր:

2 Կոնոն թէպէտ և յաղթութեամբ ու շատ աւարով Ատտիկէ դարձաւ, բայց ողջ առողջ նորէն Հայրենիքը տեսնելուն վրայ ուրախանալու տեղը՝ անոր աւերակացը ու խեղճութեանը վրայ ողբաց. յիշեց Պարսից թագաւորին իր վրայ ունեցած սէրն ու համարմունքը, գնաց Արտաշէսը համոզեց որ Սպարտացւոց հպարտութիւնը խոնարհեցընելու և ուժը կոտրելու համար շատ հարկաւոր է Աթէնքը առջի պայծառութեանը հասցընել, պարիսպներն ու բերդերը նորէն կանգնել. Արտաշէս ալ հրամայեց որ աս բանիս համար պէտք եղած ստակը տրուի: Զինուորները, գեղացիք, քաղաքացիք, ամէնքը մեծ ջանքով սկսան աշխատիլ, և քիչ ժամանակի մէջ Պիրէոնի ու քաղաքին պարիսպները շինուեցան:

1 Ի՞նչ յատկութիւններ ունէր Ագեսիլայոս:
2 Կոնոն ի՞նչպէս նորոգեց Աթէնքը:

1 Սպարտացիք վախնալով որ չըլլայ թէ Աթենացիք նորէն զօրանան ու առջինին պէս սկըսին Յունաստանի վրայ տիրապետել, ջանացին Արտաշէս թագաւորն որսալ, և հետը Անտալկիդասի դաշնադրութիւնը ըրին, որով իրենք ձեռքը ձգեցին Ասիոյ մէջ եղած Յունաց քաղաքները, և Կղազոմենէ ու Կիպրոս կղզին։ Աս դաշնադրութեամբ որ բոլոր Յունաստանի մեծ նախատինք եղաւ և շատ գէշ հետևանքներ ունեցաւ, առջի դաշնադրութիւնները քակուեցան, Յունաստանի մէջ անմիաբանութիւնը տիրեց, և Սպարտացիք իրենց փառքը մոռնալով՝ բոլոր Յունաստանի օգուտը իրենց անձնասէր ամբարտաւանութեանն ու փառասէր քաղաքականութեանը զոհ ըրին։

2 Վերջի պատերազմին առենը Թշնամեաց կողմն անցած քաղաքներէն վրէժնին առնելու համար Սպարտացիք նախ Մանտինէա քաղաքին վրայ յարձըկեցան, առին ու պարիսպը քանդեցին. ետքը Ողինթոս քաղաքը գնացին պաշարեցին, ու սովի բռնելով առին։ Թեբէի Կադմէա ըսուած միջնաբերդին տիրեցին մատնութեամբ, ու հինգ տարի Թեբացւոց վրայ իշխեցին. և Թեբացիք առթի մը կը սպասէին որ իրենց գերութեան շղթաները խորտակեն։

---

1 Սպարտացիք ան որ տեսան ի՞նչ ըրին։
2 Սպարտացիք ի՞նչպէս առին Մանտինէա, Ողինթոս և Թեբէ քաղաքները։

[1] Ամէնքս փախած Թեբացւոց մէջ ամենէն անուանին էր Պեղոպիդաս թէ խելքովը ու քաջութեամբը և թէ ազնուականութեամբն ու հարստութեամբը։ Իր բարեկամը Եպամինոնդաս Թեբէ կեցած՝ երիտասարդներուն միտքը վառելով հայրենասիրութիւննին կ'արծարծէր. Պեղոպիդաս ալ ասդին անդին փախած հայրենակիցները ժողված՝ հայրենիքը ազատել կը մտածէր։ Թեբէի մէջ եղող բարեկամներուն հետ ամէն բան շտկելէն ետքը, հետը տասուերկու կտրիճ ընկերներ առաւ, ամէնքն ալ միակերպ վերարկու հագած, որսի շներով, ձեռքերնին ցիցեր և ուռկաններ առած՝ որպէս զի տեսնողները ամենևին վրանին կասկածի չերթան, և իրիկուան դէմ քաղաքը մտան։ Նոյն իրիկունը բռնաւորները դաւակցաց մէկուն տունը կոչունքի հրաւիրուած՝ կերուխումի հետ էին. անոնցմէ մէկուն Աթենքէն նամակ կուգայ, որուն մէջ գրած է եղեր Պեղոպիդասի պատրաստութիւնը. դատաւորը չուզեր բանալ նամակը, ըսելով թէ Հարկաւոր գործքերը վաղը կը տեսնենք. ան միջոցին ներս կը մտնէ Պեղոպիդաս իր ընկերներովը, զամէնքը թրէ կ'անցընին, բանտերը կը բանան ու Ազատութիւն Ազատութիւն կանչելով բոլոր քաղաքացիքը կը յորդորեն որ զէնք առնուն, իրենք զիրենք պաշտպանեն։ Ան ատեն Թեբացւոց կտրիճները հետն առած օգնութիւն կը հասնի Եպամինոնդ. մէկէն սուր-

---

1 Թեբէի ազատիչը ո՞վ եղաւ։

հանգակներ կը խրկեն մէկալ փախստականներուն ալ որ շուտով Թեբէ գան ։ Գունդ մը զօրք օգնութիւն կուգայ իրենց Աթենքէն , կ'երթան անոնցմով Սպարտացիները Կադմէա միջնաբերդին մէջ կը պաշարեն. անոնք ալ քիչ մը ատեն դէմ կենալէն ետև՝ դաշնագրութիւն կ'ընեն որ իրենց զէնքերովը ու կարասիքովը ելլեն երթան ։

## ԳԼՈՒԽ Ժ.

Եպամինոնդ և Պեղոպիդաս. — Լեւկտրայի պատերազմը. — Պեղոպիդասի մահը. — Մանտինէայի պատերազմը. — Եպամինոնդայ մահը. — Ընկերական պատերազմը. — Թագաւորութիւն Մակեդոնիոյ. — Փիլիպպոս. — Դեմոսթենէս ։

[1] Թեբէի ազատութիւնը՝ ան բազմամեայ պատերազմին սկզբնաւորութիւն մըն էր՝ որով Թեբէն ալ Աթէնքի ու Սպարտայի պէս մեծնալով բոլոր Յունաստանի վրայ իր իշխանութիւնը պիտի տարածէր ։ Աս գերագոյն իշխանութեան հասուցին Թեբէն իր երկու անուանի որդիքը՝ Պեղոպիդաս , և Եպամինոնդ ։ Հարուստ էր Պեղոպի-

---

1 Պեղոպիդաս և Եպամինոնդ ի՞նչ կատարելութիւններ ունէին ։

դաս, բայց իր հասարակութիւնը աղէկ գործածելու կերպը գիտէր, և առաքինի ու աղքատ մարդկանց օգնութիւն չէր խնայէր։ Իսկ Եպամինոնդ իր հօրմէն ժառանգութիւն՝ աղքատութիւնն առեր էր, պզտիկուց ինքզինքը փիլիսոփայութեան տալով թեթևցուցեր ու քաղցրացուցեր էր իրեն աղքատութիւնը, և պարզ ու համեստ կեանք մը կ'անցընէր։ Բայց իրենց ըրած այնչափ փառաւոր գործոց մէջ ամենէն աւելի զարմանալին է իրենց համամիտ միաբանութիւնն ու սերտ բարեկամութիւնը որ ամէն բանի մէջ ու ամէն ատեն անքակ պահեցին։ Արդ ճշմարիտ սիրոյն հիմն էր առաքինութիւնը, որով իրենց հայրենիքը զօրացուցին, և այնչափ յաղթութիւններ ըրին։

1 Յունաստանը խաղաղելու համար ժողով մը եղաւ Սպարտա։ Թեբացիք Եպամինոնդը հոն իրենց կողմանէ Նուիրակ խրկեցին։ Յանձն չառաւ Եպամինոնդ Սպարտացւոց իրենց վրայ դրած պայմանները, Թեբէ դարձաւ ու սկսաւ պատերազմի պատրաստութիւն տեսնել։ Սպարտացւոց թագաւորը Կղէոմբրոտ քսանըչորս հազար հետևակով ու վեց հարիւր ձիաւորով Բէովտիա մտաւ. ասոնց առջևն ելաւ Եպամինոնդ տասնուերկու հազար հետևակով ու նոյնպէս վեց հարիւր ձիաւորով՝ որ քաջութեամբ և կրթութեամբ անոնցմէ շատ վեր էին։ Պեղոպիդասն ալ Նուիրական ըսուած գնդին զօրավար եղեր էր,

---

1 Լևկտրայի պատերազմէն առաջ ինչ պատրաստութիւն ըրին Յոյնք։

որ իրեք հարիւր կտրիճ Թեբացի իրարու բարեկամ երիտասարդներ էին՝ երդում ըրած որ ամենևին թշնամւոյն առջևէն չփախչին, ու մինչև ՚ի մահ իրենց բարեկամները պաշտպանեն։

1 Բէովտիոյ սահմանագլուխ Լևկտրա քաղաքին քով պատերազմը սկսաւ (371)։ Զարնուելէն առաջ ձախորդ գուշակութիւններով Թեբացւոց սիրտը սկսաւ կոտրիլ. մէկէն Եպամինոնդ անոնց յիշեցուց Հոմերոսի ան տողը որ իր հայրենիքը պաշտպանելէն լաւ գուշակութիւն չկայ կ՚ըսէ, ու զանոնք քաջալերեց։ Բոլորովին յաղթեցին Թեբացիք, և Կղէոմբրոտ թագաւորը չորս հազար զօրքով ընկաւ մեռաւ. ասանկ հարուած դեռ չէին ունեցած Սպարտացիք։ Թեբացիք իրեք հարիւր հոգի միայն կորսնցուցին։

2 Սպարտացւոց կոտորածին ձայնը ելլելուն պէս՝ բոլոր Պեղոպոնեսի ազգերը գլուխ քաշեցին։ Ան միջոցին որ Ագեսիղայոս զանոնք նուաճելու կ՚աշխատէր՝ Եպամինոնդ և Պեղոպիդաս եկան Պեղոպոնեսի տիրեցին ու Լակոնիա մտան աւրըշըկեցին, Եւրոտաս գետէն ալ անցան, և Սպարտայի մօտ բանակ դրին։ Յուսահատութիւնը տիրեց Սպարտացւոց վրայ. ինչու ան ատեն Սպարտացի կանայք քաղաքէն իրենց թշնամւոյն բանակին մուխը չէին տեսած։ Ան նեղութեան ժամանակը ամէն ՚ճարտարութիւն ձեռք առաւ Ագեսիղայոս քաղաքը պաշտպանե-

---

1 Ի՞նչպէս եղաւ Լևկտրայի պատերազմը։
2 Ի՞նչ հետևանք ունեցաւ ան պատերազմը։

լու, և ինչուան գեղացիներն ալ զինեց։ Բայց Եպամինոնդ կրնար Սպարտայի ալ տիրել թէ որ Պեղոպոնեսացիք Թեբացւոց կարգէ դուրս մեծնալէն վախնալով՝ անոնց դաշնակցութենէն չելլէին։ Աթենացիք Իփիկրատը Սպարտացւոց օգնութիւն խրկեցին. չուզեց Եպամինոնդ հետը զարնուիլ, ու Բէովտիա դարձաւ։

1 Եպամինոնդ և Պեղոպիդաս իրենց հայրենիքը դարձածնուն պէս՝ երկուքն ալ դատաստանի կանչուեցան, որովհետև որոշուած ժամանակէն աւելի զօրապետութիւն ըրեր էին։ Պեղոպիդաս որ այնչափ քաջասիրտ էր պատերազմի մէջ՝ չկրցաւ քաջութեամբ պատասխան տալ, և սկսաւ աղաչելով ինքզինքն արդարացընել։ Իսկ Եպամինոնդ հոն ալ արիութիւնը ցըցուց. Ուրախութեամբ կը մեռնիմ, ըսաւ, միայն թէ գրուի դատակնիքային մէջ որ Եպամինոնդ և Պեղոպիդաս Լևկտրայի պատերազմին մէջ Թեբացւոց յաղթութեանը պատճառ եղած ըլլալնուն համար՝ ի մահ դատապարտեցան։ Ամըչցաւ ժողովուրդը իր ապերախտութեանը վրայ, և ան երկու կըտրիճները նոր պատերազմէ մը ելլելու պէս՝ յաղթութեամբ ու ծափահարութեամբ դատաստանարանէն դուրս ելան։ Թշնամիները Եպամինոնդը անարգելու համար՝ աղբևապետ գրին զինքը, բայց անիկայ առանց ամըչնալու ջանալով որ աղէկ ընէ պաշտօնը կ'ընէր. Ոմանք մեծ պաշտօն-

---

1 Եպամինոնդ ու Պեղոպիդաս ինչպէս ամբաստանուեցան ու արդարացան։

ներով կը փառաւորուէին, ոմանք ալ պզտիկ պաշտօնները կը փառաւորէին:

1 Արկադացիք, Արգիւացիք և Եղէացիք Սպարտացւոց վրէժխնդրութեննէն վախնալով Եպամինոնդը օգնութեան կանչեցին. գնաց երկրորդ անգամ Պելոպոնեսս մտաւ Եպամինոնդ (369), շատ քաղաքներ առաւ, Կորնթոսն ալ պաշարեց ու պիտի առնէր, բայց Աթենացւոց Քաբրիաս զօրավարը շատ զօրքով օգնութիւն եկաւ քաղաքին: Չյուսալով Եպամինոնդ Սպարտացւոց յաղթել, որ Աթենքէն ու Դիոնեսիոս Սիրակուսացիէն շատ օգնութիւն առեր էին, դարձաւ Բէովտիա գնաց:

2 Թեբացիք իրենց իշխանութիւնը տարածեցին նաև Թեսսաղիոյ ու Մակեդոնիոյ վրայ, և Պելոպիդասը Արտաշէս Պարսից թագաւորին խրկեցին ու հետը նիզակակցութեան դաշինք գրին: Եպամինոնդ երրորդ անգամ Պելոպոնեսսի տիրելէն ետքը, հարիւր եռաթի ցռկանաւով նաւատորմիղ մը պատրաստեց ու գնաց Աթենացւոց նաւատորմիղը կոտրեց, որուն զօրավարն էր Ղաքէս:

3 Ան ատենները Թեսսաղացիք Փերէս քա-

---

1 Երկրորդ անգամ ի՞նչ պատճառաւ Պելոպոնեսս մտաւ Եպամինոնդ:

2 Թեբացիք ի՞նչով աւելի զօրացան ծովու ու ցամաքի վրայ:

3 Թեսսաղացւոց ի՞նչպէս օգնեցին: — Ի՞նչպէս մեռաւ Պելոպիդաս:

զօրքին Աղեքսանդր անունով բռնաւորին ձեռքէն շատ նեղութիւն կը քաշէին, որ զուարճութեան համար մարդիկը ողջ ողջ կը թաղէր, և վրանին վարազի ու արջու մորթ անցընելով որսի շները վրանին կ'արձըկէր ու պատռել կուտար, և կամ ինքը նետով զանոնք կը զարնէր կը մեռցընէր. ուստի Թեբացւոցմէ օգնութիւն խնդրեցին. անոնք ալ Պեղոպիդասը զօրքով անոր վրայ խրկեցին: Ճամբայ ելլելու ատեն յանկարծ արևը բոլորովին խաւարեցաւ, ատով զօրաց սիրտը այնպէս կոտրեցաւ որ չուզեցին պատերազմի երթալ: Իրեք հարիւր ձիաւոր միայն յանձն առին Պեղոպիդասին հետ երթալու, որ քաջութեամբ սկսաւ դէպ 'ի Փարսաղիա երթալ. Ճամբան ալ քիչ մը օգնութիւն գտաւ ու Շանագլուխք ըսուած լերանց ստորոտը բանակեցաւ: Աղեքսանդրի զօրքն էր քսան հազար. եկան ըսին Պեղոպիդասի թէ Բռնաւորին զօրքը մեզմէ խիստ շատ է. — Ալ աղէկ, ըսաւ Պեղոպիդաս, աւելի շատ մարդ կը սպաննենք: Պատերազմին որ սկսաւ՝ Պեղոպիդաս չկարենալով իր եռանդը սանձել՝ յարձըկեցաւ այն թևին վրայ որ բռնաւորը զարնէ սպաննէ: Անիկայ փախաւ ու իր անձնապահ զօրացը մէջ պահուըտեցաւ. ետևէն վազեց Պեղոպիդաս, և անպատմելի քաջութիւններ ըրաւ, բայց վերջապէս չորս դիէն պաշարուած՝ զարնուեցաւ մեռաւ: Իրեն քաջասիրտ զօրավարին մահուանը վրայ կատղեցաւ զօրքը, և բոլորովին զարկաւ ցրուեց թշնամիները: Պեղոպիդասի մահուանը վրայ մեծ ցաւ ունեցան Թեբացիք, և Թեսաղացիք իրենց ազատարարին մեծ հանդիսով թաղումը ըրին:

1. Ան ատենն որ Եպամինոնդ դուրսը նաւատորմղին վրայ զբաղած էր և Պելոպիդաս Թեսաղիոյ մէջ, Թեբէի ռամկապետական կառավարութիւնը քիչ մնաց որ ազնուապետութիւն ուզողներուն ձեռքովը պիտի կործանէր։ Որքոմենէ քաղաքին բնակիչները (որ Բէովտիոյ երկրորդ քաղաքն էր և Թեբէի նախանձորդ), աս դաւաճանութեան մէջ մտան, ու խռովութիւնը Որքոմենացւոց զօրացը հանդէս եղած օրը պիտի ելլէր. բայց իմացուեցաւ դաւաճանութիւնը, և երեք հարիւր Որքոմենացի ձիաւորներ Թեբէի հրապարակին մէջ թրէ անցան։ Ասով ալ Թեբացիք գոհ չըլլալով՝ գնացին Որքոմենն ալ պաշարեցին առին, և հիմնայատակ կործանելէն ետև՝ բոլոր էրիկ մարդիկը թրէ անցուցին, կնիկ մարդիկն ու տղաքն ալ գերի ըրին։

2. Քիչ ատենէն երբոր Արկադացւոց ու Եղէացւոց մէջ պատերազմ բացուեցաւ, չորրորդ անգամ Եպամինոնդ Պելոպոնէս մտաւ, և Մանտինէայի քով Սպարտացւոց դէմ պատերազմի պատրաստուեցաւ (363), և անանկ աղէկ շարեց զօրքը որ յաղթութեանը տարակոյս չկար։ Երկու կողմէն ալ անկարծելի քաջութեամբ պատերազմեցան։ Թեբացիք իրենց արիասիրտ

---

1 Որքոմենէ քաղաքը ի՞նչ պատճառաւ կործանեցին։

2 Մանտինէայի պատերազմը ի՞նչպէս եղաւ։ — Ի՞նչպէս մեռաւ Եպամինոնդ։

զօրավարին օրինակովը սիրտ առած՝ Սպարտացւոց գունդը ցրուեցին։ Սատտիկ վէրք մը առաւ Եպամինոնդ կուրծքին, մէկէն զէնքը վրանը բերին, նետին սլաքը վէրքին մէջ մնացեր էր, վիրաբոյժներն ըսին որ եթէ երկաթը վէրքէն դուրս հանեն՝ մէկէն կը մեռնի։

Եպամինոնդ իր վահանն ուզեց, ու երբոր բերին՝ ուրախութեամբ վրան նայեցաւ որ. հետն այնչափ պատերազմներու մէջ մտեր ու այնչափ յաղթութիւններ ըրեր էր։ Հարցուց պատերազմին համար. երբոր լսեց թէ Թեբացիք յաղթեցին, սկսաւ իր բարեկամները մխիթարել. Մի կարծէք, ըսաւ, որ ասիկայ իմ կենացս վերջի օրն է, մանաւանդ թէ երջանկութեանս սկիզբն է. որովհետև Թեբէն յաղթող կը թողում, Սպարտան խոնարհած, և Յունաստանն ազատ։ Տեսաւ որ բարեկամները անորդի մեռնելուն վրայ կուլան. Մի լաք, ըսաւ, ինծի երկու անմահ զաւակներ կը թողում, Լեւկտրայի ու Մանտինեայի յաղթութիւնները։ Աս խօսքն ըսելէն ետքը քաշեց երկաթը վէրքէն հանեց ու մէկէն մեռաւ։ Թեբացւոց իշխանութիւնն ալ կարծես թէ հետն ընկաւ մեռաւ, որ անոր խելքովը ու քաջութեամբը այնչափ մեծցեր էր։

1 Եպամինոնդի մեռնելէն ետքը Աթենացիք նորէն ծովու վրայ զօրացան։ Քանի մը տարիէն Տիմոթէոս, Քաբրիաս և Իփիկրատ զօրավարնե-

---

1 Եպամինոնդի մեռնելէն ետքը Աթենացիք ինչ ըրին։

ըր՝ Եգէական ծովուն կղզիներուն մեծ մասին ու Թրակիոյ և Ասիոյ ծովեզերքին եղած քաղաքներէն շատին տիրեցին։ Բայց վրանին ծանր տուրքեր դնելով երբոր սկսան զանոնք սաստիկ նեղել, ամէնքն ալ իրենց դէմ ապստամբեցան, ու Ընկերական ըսուած պատերազմը բացուեցաւ։

1 Աթենացիք զօրք խրկեցին Քիոս կղզւոյն վրայ (358) որ ապստամբաց բոյնն էր, և զօրավար դրին Քաբրիաս ու Քարէս անուանով ախտամոլ մարդը։ Ամենայն քաջութեամբ դէմ կեցան Քիոցիք, Քաբրիաս ալ պատերազմի մէջ իրեն նախատինք սեպելով փախչելով ազատիլը՝ փառաւոր մահուամբ մեռաւ։ Երկրորդ արշաւանքին ատենը երբոր Աթենացւոց նաւատորմիղը փոթորիկով մը ջարդուեցաւ, Իփիկրատ և Տիմոթէոս չուզեցին պատերազմ ընել. Քարէս անոց վրայ ամբաստանութիւն ըրաւ թէ կ'ուզէին զօրքը թշնամեաց մատնել. Աթենացիք որ միշտ փառքի կը ցանկային ու զիրենք փառաւորողներուն ապերախտ կ'ըլլային՝ Տիմոթէոսի վրայ տուգանք դրին, ու իրենց թեթեւամիտ բնաւորութեամբը անոր ունեցած քիչ մը դանդաղութիւնը ծաղրելու համար՝ զինքը պառկած նկարել տուին, բախտն ալ անոր քովը նստած՝ որ քաղաքները կը բռնէր անոր ուռկանին մէջ կը դնէր։ Բայց աղէկ ըսաւ Տիմո-

---

1 Քիացւոց դէմ Աթենացւոց պատերազմը ի՞նչ վերջ ունեցաւ։

*թէոս երբոր տեսաւ այն պատկերը. Թէ որ քընացած ատենս քաղաքներ կ'առնեմ, հապա արթընցած ատենս ինչ պիտի չընեմ։*

1 *Իր իշխանակիցը Իփիկրատ դիւրաւ չհնազանդեցաւ Ժողովրդեան կամացը. երբոր դատաստանի կանչեցին զինքը, դունդ մը զինեալ երիտասարդներ հետն առած ելաւ ատեանը եկաւ. ամէնքը սարսափեցան ու արձըկեցին զինքը։ Երբոր բարեկամները սկսան ատ բանին համար զինքը յանդիմանել, Բոլոր կենացս մէջ զէնքերս քաղաքակցացս պաշտպանութեանը համար գործածելէս ետքը՝ խենթ պիտի ըլլայի որ ինքզինքս պաշտպանելու համար ալ մէկ անգամ մը չգործածէի ըսաւ։*

2 *Անգամ մը երբոր ամբարտաւանին մէկը իրեն Արմոդիոսի փառաւոր ցեղէն ըլլալուն վըրայ կը պարծենար, ու Իփիկրատին վատազգի ըլլալը կը նախատէր, Իմ ցեղիս ազնուականութիւնը ինծմէ կը սկսի, ըսաւ Իփիկրատ, իսկ քուկինդ քեզմով կը վերջանայ։*

3 *Քարէս երբոր մինակ մնաց, Յոնիոյ Արտաւազ նախարարէն կաշառուելով որ Պարսիցմէ ապստամբեր էր, զօրքովը անոր կողմն անցաւ* (356), *բայց Արտաշէս Աթենացիքը ստիպեց որ*

---

1 *Իփիկրատ ի՞նչպէս ազատեցաւ դատաստանէն։*

2 *Իփիկրատայ ազնուատոհմ չըլլալուն վրայ ի՞նչ կը պատմուի։*

3 *Քարէս մինակ որ մնաց՝ ի՞նչ ըրաւ։*

Արտաւազին չօգնեն ու ապստամբած ազգաց ազատութիւնն ընդունին։

1 Երբոր Աթենացիք տասնի իրենց աշխարհակալութեանց պտուղը կը կորսնցնէին, Յունաստանի հիւսիսակողմը ուրիշ նոր իշխանութիւն մը սկսաւ ելլել, այսինքն Մակեդոնացւոց իշխանութիւնը։ Մակեդոնիոյ տէրութիւնը կանգներ էր Քրիստոսէ 807 տարի առաջ Կարանոս՝ Հերակղեսի ցեղէն։ Իրեն յաջորդաց ը վրայ երևելի բան մը չպատմուիր, ինչուան որ Պարսիկք Յունաստանի վրայ վազած ատենին զանոնք հարկատու ըրին. Մակեդոնացիք Պղատէայի պատերազմին ատենը ազատեցան ան տուրքէն։

2 Մակեդոնացւոց Պերդիկկաս թագաւորը երբոր մեռաւ, իր եղբայրը Փիլիպպոս որ շատ տարի առաջ Թեբացւոց քովը պատանդ մնացեր ու Եպամինոնդի տունը մեծցեր էր, Թեբէէն փախաւ Մակեդոնիա գնաց (359), և իր Ամինտաս եղբօրորդւոյն խնամակալ եղաւ. բայց քիչ ատենէն զինքը թագաւորեցուցին Մակեդոնացիք, որ քսանուիրեք տարեկան էր։

3 Փիլիպպոս որ Թեբէ եղած ատենը կրթուած ազգաց օրէնքները կը սորվէր որ օր մը իր ազգին ալ սորվեցընէ, և ազատ ազգաց բը-

---

1 Մակեդոնացւոց իշխանութիւնը ե՞րբ սկսաւ ու ի՞նչպէս մեծցաւ։
2 Ո՞վ էր Փիլիպպոս։
3 Ի՞նչպէս կարգաւորեց տէրութիւնը։

նաւորութիւններուն կը տեղեկանար որ անոնց վրայ տիրէ, տէրութեան կառավարութիւնը ձեռք առնելուն պէս՝ բոլորովին փոխուեցաւ Մակեդոնիա։ Իր ճարտասանութեամբը կենդանութիւն տուաւ ժողովրդեան, խռովութիւնները գադրեցուց, զօրքը կարգաւորեց, զանոնք իրեն ընկեր կը կանչէր ու վտանգներու մէջ քովերնէն չէր բաժնուեր, և անուանի Մակեդոնական Փաղանգը հաստատեց՝ որ աս գունդը ետքը Յունաստանը նուաճեց, Ասիոյ տիրեց ու Հռովմայեցւոց պետութիւնը դողացուց։ Տէրութիւնն ալ շատ կարգաւորեց Փիլիպպոս, զօրքը շատցուց, Պելլա մայրաքաղաքը գեղեցիկ շէնքերով զարդարեց, գիտութիւններն ու արուեստները ծաղկեցուց, առատաձեռնութեամբը ամէն տեղէն իմաստուն ու ճարտասան մարդիկ իր պալատը ժողվեց, և ամէն տեղ դեսպաններ խըրկեց։

1 Բայց իր առջևը մէկ կորիճ՝ ախոյեան մը կար որ առանց անոր յաղթելու չէր կրնար Յունաստանի գլուխը տիրել. և ասիկայ էր Դեմոսթենէս ճարտասանը որուն համար ինքը Փիլիպպոս ալ շատ անգամ կ'ըսէր թէ Յունաց զօրքերն ու նաւատորմիղները ինծի այնչափ վնաս չեն հասուցած՝ որչափ Դեմոսթենեսի ճարտասանութիւնը։

2 Դարբինի մը զաւակ էր Դեմոսթենէս, հօ-

---

1 Փիլիպպոսի ախոյեան ո՞վ եղաւ։
2 Ո՞վ էր Դեմոսթենէս։

րը մեռնելէն ետքը ուսման ետեւէ ըլլալով՝ Պղատոնի ու Թուկիդիդեսի գրքերը կարդաց, ու ամէն բանէ աւելի ճարտասանութեան վրայ սէր ձգեց, թէպէտ և լեզուն պակասաւոր էր, ձայնն ալ տկար, ու շունչը կարճ։ Ճարտասանութեան առջի փորձը իր խնամակալացը վրայ ըրաւ, որ հօրը իրեն համար թողած ստակը կերեր էին, և շատ բան տուժել տուաւ անոնց. աս յաղթութեամբ սիրտ առած՝ ուզեց նաև հրապարակախօսութիւն ընել, բայց ծաղր եղաւ և ամէնքը վրան սուլեցին։ Աս նախատինքին վրայ առանց վհատելու միտքը դրաւ որ բնութեանը յաղթէ, բերանը խիճ դրած լեռներու վրայ ու ծովեզերքները պտըտելով շատ տողեր բարձրաձայն կ'արտասանէր, անով լեզուն շտկեց, և երկայն դարձուածները մէկ շունչով սկսաւ զուրցել։

Մէկ պակասութիւնն ալ աս էր որ անդադար ուսերը վեր վեր կը վերցընէր. աս սովորութեանն ալ յաղթելու համար՝ ուսին վրայ վերէն նիզակ մը կախեց, որ ուսը թօթուելուն պէս անոր զարնուելով ցաւի։ Ձեռքին ու շարժմունքները շտկելու համար ալ նախ հայելիին առջևը ճառը կը խօսէր ու ետքը ժողովրդեան դիմացը կ'երթար խօսելու։

Ամիսներով ստորերկրեայ խցիկի մը մէջ կը քաշուէր, գլուխն ալ կէս մը կը գերծէր որ ստիպուի մարդու առջև չերևնալու. հոն աղօտ կանթեղի մը լուսով հրաշալի ճառեր կը շարադրէր ու կը սրբագրէր. անոր համար թշնամիները իր ճառերուն Ձիթահոտ կ'ըսէին։

Այս հռչակաւոր մարդուն ճարտասանութիւնն էր ծանր, զօրաւոր, անաչառ և սաստիկ, որով մէկ կողմանէ Փիլիպպոսի խելքն ու գործունէութիւնը կը գովէր, մէկ կողմանէ ալ կրակոտ դարձուածներով Աթենացիքը թմրութենէ կ՚արթընցընէր։

## ԳԼՈՒԽ ԺԱ.

Փիլիպպոսի աշխարհակալութիւնները. — Աղեքսանդրի ծնունդը. — Մեհենական պատերազմը. — Մեթոն. — Ողինթոս. — Ամփիկտիոնի ատեանը. — Դեմոսթենէս և Փոկիոն. — Աղեքսանդրի առջի քաջութիւնը. — Քերոնէայի պատերազմը. — Դեմոսթենէսի պատիւը. — Եսքինէս. — Փիլիպպոսի մահը։

[1] Փիլիպպոս իր տէրութիւնը զօրացընելէն ետքը գնաց Պէոնիացիքը նուաճեց, Լիւրիկեցւոց իր երկրէն առած քաղաքները ետ դարձուց, Ամփիպօլիսն առաւ, Թրակիոյ մէկ մասին տիրեց, Թեսսաղացիքը իրենց բռնաւորին ձեռքէն ազատեց, Կարիոյ Կնիդոս քաղաքն ալ առաւ ուսկից գտաւ ոսկեհանքերը, անոնցմէ հանած ոսկիովը զօրքերն աւելի շատցուց, ու

---

1 Փիլիպպոսի աշխարհակալութիւնները որո՞նք եղան։

շատ քաղաքներու տիրեց։ Այս յաղթութիւններէն ետքը Եպիրոսի Նէոպտողոմէոս թագաւորին Ողիմպիա աղջիկն իրեն կին առաւ՝ ուսկից ծնաւ Մեծն Աղեքսանդր * (356)։

1 Մէկ օրուան մէջ երեք աւետիս առաւ Փիլիպպոս. պատգամաւոր մը եկաւ ըսաւ որ Պարմենիոն զօրավարդ մեծ յաղթութիւն մը ըրաւ Լիւրիկեցւոց վրայ. ուրիշ մը անոր ետևէն թէ Ձիերդ Ողիմպիական խաղերուն մէջ յաղթեցին. երրորդ մըն ալ եկաւ աւետեց թէ Քեզի արու զաւակ մը եկաւ։ Ան ատենը Փիլիպպոս մէկէն Արիստոտելին ասանկ նամակ մը գրեց. Գիտցած ըլլաս որ որդի մը ունեցայ. շնորհակալ եմ աստուածներուն որ ինծի ասանկ պարգև մը ըրին, բայց աւելի շնորհակալ եմ որ քու կենդանութեանդ ատեն ըրին։ Յուսամ որ քու

---

1 Որո՞նք են երեք աւետիսները որ մէկ օրուան մէջ լսեց։

* Աղեքսանդրի ծնած գիշերը Երոստրատ անուանուած մարդը ուզելով իր անունը անմահացընել, Եփեսոս քաղաքին մէջի Արտեմեայ հռչակաւոր տաճարն այրեց՝ որ եօթն հրաշալեաց մէկն էր։ Եփեսացիք հրովարտակաւ արգիլեցին որ Երոստրատին անունը բերան չառնուի. բայց անով պատճառ եղան որ ինչուան մեզի հասաւ անոր յիշատակը։ Կը պատմեն թէ Աղեքսանդրին ծնած օրը երկու արծիւ թևատարած պալատին վրայ կը թառէին եղեր՝ իբր թէ անոր Եւրոպայի ու Ասիոյ տիրելուն նշան։

ձեռքդ մեծնալով ինծի ու Մակեդոնիոյ արժանաւոր ժառանգ կ'ըլլայ։

1 Փովկիսացիք Դեղփեան Ապողոնի նուիրած երկիրներէն քիչ մը տեղ առեր մշակեր էին. աս բանս ամէնքը սրբապղծութիւն սեպեցին, Ամփիկտիոնի ատեանին մէջ անոնց վրայ դատաստան ըրին ու շատ սաստիկ վրանին տուգանք դրին, որով սկսաւ Մեհենական ըսուած պատերազմը։ Փովկիսացիք չկարենալով ստակը վճարել՝ իրենց Փիլոմելաս իշխանին գրգռելովը պատերազմի ելան. Սպարտացիք ալ Ամփիկտիոնի ժողովոյն վճռովը տուգանք քաշած ըլլալնուն համար՝ ձեռքի տակէն օգնեցին անոնց։ Փիլոմելաս յաղթեց, մտաւ Դեղփիսի տաճարը, աւրեց անոր սիւներուն վրայ գրուած վճիռը, ու բռնի պատգամ հանել տուաւ թէ Բոլոր իր ըրածները աղէկ է։ Ան ատեն պատերազմը սաստկացաւ. բոլոր Յունաստան երկու բաժնուած սկսան կռուիլ. երկու կողմէն ալ բռնուած գերին մէկէն կը սպաննէին։ Փիլոմելաս Մեհենին գանձը կողոպտեց, անով զօրքը շատցուց ու շատ յաղթութիւններ ըրաւ. բայց Փովկիսի լեռներուն մէջ ինքն ալ յաղթուեցաւ, և թշնամեաց ձեռքը չիյնալու համար՝ ինքզինքը ժայռէ մը վար նետեց ու մեռաւ։ Իրեն յաջորդեց եղբայրը, որ ստակի ուժովը զօրքը շատցուց, Մեհենին ոսկին թշնամեաց մէջ ցրուե-

---

1 Մեհենական պատերազմին պատճառն ինչ էր, և ինչպէս եղաւ։

լով զանոնք երկպառակեց, շատ պատերազմի մէջ անոնց յաղթեց, բայց վերջապէս ինքն ալ Թեբացւոցմէ յաղթուեցաւ:

1 Այն ատենն որ Յոյնք անօգուտ կռիւներով մէկզմէկ ջարդելու հետ էին՝ Փիլիպպոս իր տէ-րութիւնը կ'ընդարձակէր ու կը զօրացնէր. գնաց Մեթոնն ալ պաշարեց, ու աչքին մէկը կորսնցուց աս կերպով: Աստերիոս Ամփիպօլ-սեցի աղեղնաւորն ելաւ քաղքէն եկաւ Փիլիպ-պոսի զինուոր ըլլալու, ըսելով թէ կրնայ ին-չուան թռչունները զարնել թռչելու ատեննին: Փիլիպպոս ծաղրելով պատասխան տուաւ թէ Երբոր սարեկներու հետ պատերազմելու ըլ-լամ՝ զքեզ քովս կը կանչեմ: Բարկացաւ Աս-տերիոս, մտաւ Մեթոն, ու երբոր տեսաւ թէ թագաւորը պարսպին մօտեցեր է՝ նետ մը նե-տեց՝ թագաւորին աչքը հանեց, ու նետին վը-րայ այսպէս գրած է եղեր. Փիլիպպոսին աջ աչ-քին: Նոյն նետը թագաւորն ալ նորէն նետել տուաւ՝ վրան ասանկ գրած. Փիլիպպոս Աստե-րիոսը կախել պիտի տայ: Առաւ քաղաքը ու խօսքը կատարեց:

2 Անկէց ետքը Ողինթոս քաղաքը պաշարեց որ իր իշխանութեանը տակը ուրիշ երեսուն ու երկու քաղաք ունէր: Իրեք անգամ օգնու-

---

1 Փիլիպպոս ի՞նչպէս առաւ Մեթոն քաղաքը: — Ի՞նչ կերպով մէկ աչքը կորսնցուց:

2 Ողինթոս քաղաքը ի՞նչպէս կործանեց Փիլիպ-պոս:

թիւն ուղեցին Ողինթացիք Աթենացւոցմէ. ան ատեն Ողինթական ըսուած երեք հռչակաւոր ճառերը խօսեցաւ Դեմոսթենէս, ու համոզեց ժողովուրդը որ քիչ մը զօրք օգնութիւն խրկեն. բայց Ողինթոսը ոչ արտաքին և ոչ ներքին թշնամեաց ձեռքէն կրցաւ ազատիլ. վասն զի երկու հայրենատեաց մարդիկ իրենց հայրենիքը Փիլիպպոսի մատնեցին, որ առաւ քաղաքը կողոպտեց, հիմնայատակ կործանեց, և բնակիչքը գերիի պէս ծախեց: Երբոր Մակեդոնացիք սկսան Ողինթոսի մատնիչները իբրև վատ նախատել, գնացին անոնք Փիլիպպոսին որ վրէժխնդրութիւն ընէ, ան ալ այնպիսի պատասխան մը տուաւ որ անոնց տուած նախատինքէն ալ վեր էր. Դուք, ըսաւ, ան կոպիտ մարդկանց ուշ մի դնէք. անոնք ամէն բան կ'ուզեն յատուկ իր անուանովը կանչել:

[1] Թեբացիք ու Փովկիացիք ան միջոցին կատաղութեամբ Մեհենական պատերազմը առաջ տանելով մէկզմէկ կը ջնջէին: Թեբացիք իրենց օգնութիւն կանչեցին Եպամինոնդին աշակերտը, որ ուզելով պատերազմը շարունակել՝ քիչ մը զօրք անոնց օգնութիւն խրկեց. Աթենացիք ուզեցին հաշտութիւն ընել Փիլիպպոսին հետ, և տասը դեսպան խրկեցին իրեն, որոնց մէջ էին նաև Եսքինէս և Դեմոսթենէս ճարտասանները: Իրեք ամիս զանոնք քովը կամաւ ուշացուց Փի-

---

1 Թեբացւոց ու Փովկիացւոց պատերազմին ատենը Փիլիպպոս ի՞նչ ըրաւ:

լով զանոնք երկպառակեց, շատ պատերազմի մէջ անոնց յաղթեց, բայց վերջապէս ինքն ալ Թեբացւոցմէ յաղթուեցաւ:

1 Ան ատենն որ Յոյնք անօգուտ կռիւներով մեկզմեկ ջարդելու հետ էին՝ Փիլիպպոս իր տէրութիւնը կ՚ընդարձակէր ու կը զօրացընէր. գնաց Մեթոնն ալ պաշարեց, ու աչքին մէկը կորսնցուց աս կերպով: Աստերիոս Ամփիպօլսեցի աղեղնաւորն ելաւ քաղքէն եկաւ Փիլիպպոսի զինուոր ըլլալու, ըսելով թէ կրնայ ինչուան թռչունները զարնել թռչելու ատեններին: Փիլիպպոս ծաղրելով պատասխան տուաւ թէ Երբոր սարեկներու հետ պատերազմելու ըլլամ՝ զքեզ քովս կը կանչեմ: Բարկացաւ Աստերիոս, մտաւ Մեթոն, ու երբոր տեսաւ թէ թագաւորը պարսպին մօտեցեր է՝ նետ մը նետեց՝ թագաւորին աչքը հանեց, ու նետին վրայ այսպէս գրած է եղեր. Փիլիպպոսին աջ աչքին: Նոյն նետը թագաւորն ալ նորէն նետել տուաւ՝ վրան աստանկ գրած. Փիլիպպոս Աստերիոսը կախել պիտի տայ: Առաւ քաղաքը ու խօսքը կատարեց:

2 Անկէց ետքը Ողինթոս քաղաքը պաշարեց որ իր իշխանութեանը տակը ուրիշ երեսուն ու երկու քաղաք ունէր: Իրեք անգամ օգնու-

---

1 Փիլիպպոս ի՞նչպէս առաւ Մեթոն քաղաքը: — Ի՞նչ կերպով մէկ աչքը կորսնցուց:

2 Ողինթոս քաղաքը ի՞նչպէս կործանեց Փիլիպպոս:

թիւն ուզեցին Ողինթացիք Աթենացւոցմէ. ան ատեն Ողինթական լսուած երեք հռչակաւոր ճառերը խօսեցաւ Դեմոսթենէս, ու համոզեց ժողովուրդը որ քիչ մը զօրք օգնութիւն խրկեն. բայց Ողինթոսը ոչ արտաքին և ոչ ներքին թըշնամեաց ձեռքէն կրցաւ ազատիլ. վասն զի երկու հայրենատեաց մարդիկ իրենց հայրենիքը Փիլիպպոսի մատնեցին, որ առաւ քաղաքը կողոպտեց, հիմնայատակ կործանեց, և բնակիչքը գերիի պէս ծախեց: Երբոր Մակեդոնացիք տեսան Ողինթոսի մատնիչները իբրև վատ նախատել, գնացին անոնք Փիլիպպոսին որ վրէժխնդրութիւն ընէ, ան ալ այնպիսի պատասխան մը տուաւ որ անոնց տուած նախատինքէն ալ վեր էր. Դուք, ըսաւ, ան կոպիտ մարդկանց ուշ մի դնէք. անոնք ամէն բան կ'ուզեն յատուկ իր անունովը կանչել:

1 Թեբացիք ու Փովկիսացիք ան միջոցին կատաղութեամբ Մեհենական պատերազմը առաջ տանելով մէկզմէկ կը ջնջէին: Թեբացիք իրենց օգնութիւն կանչեցին Եպամինոնդին աշակերտը, որ ուզելով պատերազմը շարունակել՝ քիչ մը զօրք անոնց օգնութիւն խրկեց. Աթենացիք ալ ուզեցին հաշտութիւն ընել Փիլիպպոսին հետ, և տասը դեսպան խրկեցին իրեն, որոնց մէջ էին նաև Եսքինէս և Դեմոսթենէս ճարտասանները: Իրեք ամիս զանոնք քովը կամաւ ուշացուց Փի-

---

1 Թեբացւոց ու Փովկիսացւոց պատերազմին ատենը Փիլիպպոս ինչ ըրաւ:

լիպպոս, որպէս զի ատեն վաստըկելով զօրքը ինչուան Թեսաղիա մտնէ: Ուստի Աթենացւոց հաշտութիւն ընել կարծած ատենին՝ անիկայ զիրենք Եւբիայէն քշեց, Թերմոպիլէէն անցաւ, Լոկրիսին տիրեց, ու Թշնամիները վախցընելու և դաշնակիցքը խաբելու համար՝ բոլոր զօրքը դափնիով պսակել տուաւ, ու սկսաւ զանոնք պատերազմի պատրաստել, ըսելով Թէ Ապողոնի առաջնորդութեամբը անոր պատուոյն դէմ եղած նախատանաց վրէժը պիտի առնունք: Աս որ տեսան Լոկրացիք՝ մէկէն հնազանդեցան, և այսպիսի հնարքով Փիլիպպոս առանց արեան՝ Մեհենական պատերազմը վերջացուց, որ տասը տարի տևեր էր (346):

1 Ան յաղթութենէն ետքը Ամփիկտիոնի ժողովն եղաւ. Փիլիպպոս խնդրեց որ Փովկիսացւոց տեղն ինքը մտնէ հոն. դատաւորներն ալ չկրցան չէ ըսել: Պիւթեան խաղերուն ինքը գլուխ կեցաւ, և անով զրկանք ըրաւ Կորնթացւոց որ մասնակից սեպուեր էին Փովկիսացւոց ըրած սեղանակապտութեանը: Թերմոպիլէի կիրճին ալ տիրեց, ու անկէ ինչուան Մակեդոնիա պահապան զօրք ձգեց, որով քիչ ատենէն բոլոր Յունաստանի վրայ պիտի տիրէր:

2 Ան ատենը երկու երևելի մարդիկ իրարմէ

---

1 Փիլիպպոս Յունաստանի մէջ տիրապետելու համար ի՞նչ պատիւներու ետևէ եղաւ:

2 Աթենացիք ի՞նչ կը մտածէին Փիլիպպոսի դէմ:

տարբեր ճամբով կ'ուզէին Աթէնքը առաջ տանիլ. Դեմոսթենէս պատերազմով և Փոկիոն խաղաղութեամբ։ Առջինը Թէպէտ անուանի ճարտասան ու քաղաքագէտ էր, բայց վրան ձայն ելած էր թէ Փիլիպպոսի դէմ գրած ճառերը Պարսից ոսկիովը շաղուած են, որովհետև Պարսիկները Փիլիպպոսին օրէ օր մեծնալէն կը վախնային։ Իսկ երկրորդը ճշմարիտ փիլիսոփայ էր, իր Քսենոկրատ վարդպետին պէս խստակեաց, ամառ ձմեռ բոպիկ պտըտող, հմուտ զօրավար, առաքինի ու եռանդուն հայրենասէր։ Ճարտասանութեան կողմանէ անուանի էր զօրաւոր պատճառաբանութեամբը և համառօտութեամբը, այնպէս որ Դեմոսթենէս զանիկայ իր ճառերուն կացինը կ'անուանէր։

1 Որչափ որ Դեմոսթենէս իր Փիլիպպեան ըսուած ճառերովը Փիլիպպոսի աշխարհակալութեանցը առջևը կը ջանար առնել, անիկայ այնչափ աւելի կը տարածէր։ Թրակիոյ ու Լիւրիկէի մէջ՝ ըրած նոր երկրակալութիւններովը՝ իր տէրութեան սահմանը մէկ կողմէն ինչուան Դանուբ ընդարձակեց, մէկալ կողմէն ալ ինչուան Ադրիական ծովը հասուց։ Բիւզանդիոնի ալ կ'ուզէր տիրել՝ որպէս զի Աթենացւոց մէջ սով ձգէ, վասն զի անոնց բոլոր ապրուստը Թրակիայէն կուգար։ Դեմոսթենեսի ճառերովը վերջապէս համոզուեցան Աթենացիք, շատ զօրքով Փոկիոնը վրան խրկեցին որ գնաց Փիլիպպոսի յաղթեց ու Բիւզանդիոնը ազատեց (341)։

---

1 Ի՞նչ կերպով յաղթեցին Փիլիպպոսի։

1 Անկէ Սկիւթացւոց վրայ գնաց Փիլիպպոս, ու մեծ յաղթութեամբ դառնալու ատենը՝ Թրակիոյ հիւսիսակողմը Տրիբաղացիք վրան յարձակեցան. Թագաւորը վիրաւորուած ու չորս կողմէն պաշարուած՝ քիչ մնաց որ ձեռք պիտի իյնար. Աղեքսանդր որդին որ տասնըեօթը տարեկան էր՝ քաջութեամբը զհայրը մահուընէ ազատեց:

2 Երկրորդ անգամ Յունաստան մտաւ Փիլիպպոս. և շուտ մը Եղատիոյ առնելով որ Փովկիսի ու Բէովտիոյ բանալին կը սեպուէր, հասկըցուց որ աս անգամ Ապողոնին անարգանաց վրէժն առնելու համար միայն եկած չէ: Դեմոսթենէս կրակոտ խօսքերով Աթենացւոց աչքը բացաւ, ազատութեան ու հայրենեաց սէրը նորէն սըրտերնուն մէջ վառեց, և յորդորեց որ հասարակաց վտանգը տեսնելով՝ առանձնական թշնամութիւննին մէկդի թողուն, ու Թեբացւոց հետ միաբանած պատերազմի պատրաստուին. և աս բանիս ինքը դեսպան ընտրուելով անձամբ գնաց Թեբացիքն ալ համոզեց: Վախցաւ Փիլիպպոս անոնց միաբանութենէն, սկսաւ ձախորդ պատգամներ հանել տալ որ սրտերնին կոտրի. բայց երբոր Դեմոսթենէս ծաղր ընելով ըսաւ թէ Ապողոնի քրմուհւոյն բերնովը Փիլիպպոս կը խօսի՝ ամենուն մտքէն վախը փարատեցաւ:

---

1 Փիլիպպոս Սկիւթացւոց դէմ ի՞նչ արշաւանք ըրաւ, ու ի՞նչ վտանգի մէջ ինկաւ:

2 Երկրորդ անգամ Յունաստան մտնելով ի՞նչ ըրաւ Փիլիպպոս:

1 Քերոնէայի քով երկու զօրքը ճակատեցան. Փիլիպպոս աջ թեւին կը հրամայէր, Աղեքսանդր ձախին։ Քաջասիրտ արքայորդին՝ Թեբացւոց Նուիրական գունդը զարկաւ ցրուեց. բայց հայրը Աթենացւոց զօրութեանը առջեւ սկսաւ տկարանալ. երբոր անոնց զօրավարը յաղթութեանը վրայ հպարտացած սկսաւ փախչողներուն ետեւէն վազելով կանչել թէ Ինչուան Մակեդոնիոյ սահմանագլուխը պիտի քշեմ, Փիլիպպոս՝ Աթենացիք յաղթել չեն գիտեր՝ ըսաւ, ու մէկէն առանց ատեն կորսնցնելու առաւ փաղանգը ու ետեւնէն հասաւ, զամէնքը կոտորեց՝ ցրուեց, ու եկաւ որդւոյն յաղթական թեւին հետ միացաւ։ Դեմոսթենեսի համար ալ կ'ըսեն թէ երբոր տեսաւ որ ամէնքը կը փախչին, ինքն ալ որ ինչուան այն ատենը քաջութեամբ պատերազմեր էր, վախէն զէնքերը նետեց փախաւ, և յանկարծակի վերարկուն մորենիի մը պլուած ատենը՝ անիկայ թշնամի կարծելով աղաչեց որ կեանքին խնայէ։

2 Փիլիպպոս այն փառաւոր յաղթութեանը վրայ ուրախացած՝ յաղթութեան նշան կանգնել տուաւ, աստուածներուն շնորհակալութեան զոհ մատոյց, բոլոր զօրավարացը մեծահաց ընթրիք ըրաւ։ Կերակրէն ետքը գլուխը տաքցած երբոր պատերազմին տեղը եկաւ ու թշնամեաց

---

1 Քերոնէայի պատերազմը ի՞նչպէս եղաւ,
2 Այն յաղթութենէն ետքը ի՞նչ ըրաւ Փիլիպպոս։

մուելները տեսաւ, սկսաւ զանոնք նախատել։ Ասոր վրայ բարկացաւ Դեմադէս ճարտարախօսն որ գերիներէն մէկն էր, և չկարենալով ինքզինքը բռնել, Տէր արքայ, ըսաւ, բաղդը դքեզ Ագամեմնոնի հաւասարեց, դուն ինչո՞ւ համար կ'ուզես Թերսիտեսի նմանիլ։ Հոն ցըցուց Փիլիպպոս թէ իր սխալերուն ալ կրնայ յաղթել. անոր համարձակախօսութեան վրայ բարկանալու տեղը՝ զինքն ազատեց, և բոլոր Աթենացւոց գերիներն առանց փրկանքի արձըկեց։

1 Աթենացիք Դեմոսթենէսը դատաստանի կանչեցին որ զիրենք պատերազմի գրգռելովն այնչափ մարդկանց կորսուելուն պատճառ եղաւ. բայց Դեմոսթենէս արդարացուց ինքզինքը, և Աթենացիք նորէն սկսան իր խօսքերուն մտիկ ընել։ Իրեն յանձնեցին որ Քերոնէայի մէջ մեռնողներուն վրայ դամբանական ճառ մը խօսի, և անոնց փառաւոր տապանագրով շիրիմ մը կանգնեցին։

2 Դեմոսթենէս իր ծախքովը Աթենքին պարիսպները շինել տուաւ, ժողովուրդն ալ իրեն փոխարէն ոսկի պսակ մը ընծայեց։ Եսքինէս ճարտասանը ասոր դէմ կեցաւ. ուստի երկուքն ալ մէյմէկ ճառ գրեցին որ կ'ըսուին ճառք յաղագս պսակի. Դեմոսթենեսինը յաղթեց՝ ու Եսքինէս Հռոդոս կղզին աքսորուեցաւ։ Երթալու ատենը

---

1 Աթենացիք Քերոնէայի պատերազմէն ետքը ի՞նչպէս վարուեցան Դեմոսթենեսի հետ։

2 Եսքինէս ինչո՞ւ աքսորուեցաւ։

Դեմոսթենէս շատ մը աստակ տուաւ անոր բանի, այնպէս որ զարմանալով կանչեց Եսքինէս. Ի՞նչպէս չցաւիմ այսպիսի հայրենիքէ մը ելլելուս, ուր ինչուան թշնամիներս ալ ասանկ առատաձեռն են. արդեօք ուրիշ տեղ պիտի գտնե՞մ այսպիսի բարեկամներ: Եսքինէս Հռոդոսի մէջ ճարտասանութեան դպրոց մը բացաւ, ու Հռոդացւոց առջեւն իր աքսորուելուն պատճառ եղած երկու ատենաբանութիւնները կարդաց. և թէպէտ իրենին ալ հաւնեցան, բայց Դեմոսթենէսինը երբոր լսեցին՝ ծափ զարնելով չէին կշտանար. ան ատեն ըսաւ անոնց Եսքինէս. Ասոխին բերնէն լսելով այնչափ կը գովէք Դեմոսթենէսին ճառը, հապա ի՞նչ պիտի ընէիք երբոր անոր բերնէն լսէիք:

1 Ան ատենները ընդհանուր ժողով մը գումարեց Փիլիպպոս Կորնթոս, հոն դեսպանաց առջեւը իր միտքը յայտնեց որ կ'ուզէ պատերազմ բանալ. ամէն դիւրութիւն անոնց առջեւը դնելէն ետքը յորդորեց որ հետը միաբանին: Մէկէն ժողովը զինքը բոլոր Յունաստանի սպարապետ անուանեց: Ինքն ալ ամէն պատրաստութիւն տեսաւ. պատգամ հարցուց, սովորական կերպով անորոշ պատասխան մը ելաւ թէ Ցուլը պսակուեր է, մահը մօտեցեր է, կ'ուզէ մորթուիլ: Աս պատգամը Պարսից տէրութեան կործանմանը վրայ մեկնեց Փիլիպպոս. բայց իր վերջը հասեր էր:

---

1 Փիլիպպոս ի՞նչ կերպով Յունաստանի սպարապետ դրուեցաւ:

1 Երբոր Մակեդոնիա դարձաւ, իր ամբարտաւան կինը Ողիմպիան արձըկեց, ու տեղը Ատտաղոս զօրավարին Կղէոպատրա աղջիկը առաւ։ Աղեքսանդր իր մօրը եղած նախատանացը վրայ սրդողած՝ անոր հետ գնաց Լիւրիկէ քաշուեցաւ։ Օր մը երբոր Փիլիպպոս հարցուց Դեմարատա Կորընթացւոյն թէ Յոյները մէջերնին միաբա՞ն են։ – Ի՞նչպէս կ'ուզես, տէր արքայ, որ Յոյները միաբան ըլլան, երբոր դուն քու տունդ կռուով լեցուցեր՝ ըսաւ Դեմարատ։ Հասկըցաւ Փիլիպպոս իր յանցանքը, ու Դեմարատին ձեռքովը Աղեքսանդրին հետ հաշտուեցաւ։

2 Պատերազմի երթալէն առաջ ուզեց Փիլիպպոս իր Կղէոպատրա աղջկանը հարսնիքն ալ կատարել, և բոլոր Յունաստանի անուանի մարդիկը հրաւիրեց հանդիսին։ Ամէն կողմէն իրեն պատիւներ, պսակներ, ճարտասաններ ու բանաստեղծներ խրկեցին. և ասոնք ուզեցին առջևը ողբերգութիւն մը ձևացընել որուն մէջ ինքը պիտի ձևանար յաղթող Ասիոյ։ Մեծ հանդիսով պալատէն ելաւ Փիլիպպոս որ թէատրոնը երթայ. առջևէն տասուերկու արձան կը տանէին, որոնց մէկը ինքն էր կուռքի մը պէս ձևացուցած. չորս կողմը պատած էին տէրութեան մեծամեծները, բոլոր ժողովուրդն ալ դիզուած՝ ղինքը ծափահարութեամբ կը փառաւորէին։ Ան

---

1 Ի՞նչ պատճառաւ Փիլիպպոս աւրուեցաւ ու հաշտուեցաւ Աղեքսանդրի հետ։
2 Փիլիպպոս ի՞նչպէս մեռաւ։

միջոցին Պաւսանիաս Մակեդոնացի կորիճը (որ Ատտաղոսէն նախատինք մը կրած ըլլալով՝ Թագաւորէն դիմեր ու հատուցում մը չէր գտած) ժողովուրդը պատուեց անցաւ, Թագաւորին քովը հասաւ, զարկաւ դաշոյնն ու կիսամեռ գետինը ձգեց զանիկայ. բայց ինքն ալ մէկէն հոն բզիկ բզիկ եղաւ։

1 Քսանըվեց տարի փառաւոր Թագաւորութիւն քշելէն ետև՝ աս կերպով մեռաւ Փիլիպպոս (336), որ նենգութեան ու զեղխութեան ախտերուն հետ ունէր նաև խոհեմութիւն, ճարտարմտութիւն և քաջութիւն։ Ասոնց նեղանալու ճշմարտութեան ու յանդիմանութեան մտիկ կ'ընէր։ Մասնաւոր մարդ մը դրեր էր որ ամէն օր իրեն ըսէ. Յիշէ որ մահկանացու ես։ Դեմոքարէս ճարտասանը Աթենացւոց կողմէն դեսպան եկեր էր իրեն. հարցուց Փիլիպպոս թէ Աթենացւոց ինչ հաճոյական բան կրնամ ընել. Ինքզինքդ կախել՝ ըսաւ Դեմոքարէս։ Աս անխոհեմ պատասխանին վրայ ընկերները բարկացան. Թագաւորը միայն առանց բարկանալու քաղցրութեամբ ճամբեց զանոնք, և աղաչեց Դեմոքարեսին որ Աթենացւոց հարցընէ թէ Ո՞վ աւելի խելացի է, անիկա՞յ որ ասանկ խօսքեր կ'ըսէ, թէ անիկայ որ կը լսէ ու վրէժխնդիր չըլլար։ — Համարձակախօս ճշմարտութիւնը շատ կը սիրէր։

---

1 Քանի՞ տարի թագաւորեց Փիլիպպոս, և ինչ մասնաւոր կատարելութիւններ կը պատմուին վրան։

լիպպոս, որպէս զի ատեն վաստըկելով զօրքը ինչուան Թեսսաղիա մտնէ։ Ուստի Աթենացւոց հաշտութիւն ընել կարծած ատեններին՝ անիկայ զիրենք Եւբիայէն քշեց, Թերմոպիլէէն անցաւ, Լոկրիսին տիրեց, ու թշնամիները վախցընելու և դաշնակիցքը խաբելու համար՝ բոլոր զօրքը դափնիով պսակել տուաւ, ու սկսաւ զանոնք պատերազմի պատրաստել, ըսելով թէ Ապողոնի առաջնորդութեամբը անոր պատուոյն դէմ եղած նախատանաց վրէժը պիտի առնունք։ Աս որ տեսան Լոկրացիք՝ մէկէն հնազանդեցան, և այսպիսի հնարքով Փիլիպպոս առանց արեան՝ Մեհենական պատերազմը վերջացուց, որ տասը տարի տևեր էր (346)։

1 Ան յաղթութեններէն ետքը Ամփիկտիոնի ժողովին եղաւ. Փիլիպպոս խնդրեց որ Փովկիսացւոց տեղն ինքը մտնէ հոն. դատաւորներն ալ չկրցան չէ ըսել։ Պիւթեան խաղերուն ինքը գլուխ կեցաւ, և անով զրկանք ըրաւ Կորնթացւոց որ մասնակից սեպուեր էին Փովկիսացւոց ըրած սեղանակապտութեանը։ Թերմոպիլէի կիրճին ալ տիրեց, ու անկէ ինչուան Մակեդոնիա պահապան զօրք ձգեց, որով քիչ ատենէն բոլոր Յունաստանի վրայ պիտի տիրէր։

2 Ան ատենը երկու երևելի մարդիկ իրարմէ

---

1 Փիլիպպոս Յունաստանի մէջ տիրապետելու համար ի՞նչ պատիւներու ետևէ եղաւ։

2 Աթենացիք ի՞նչ կը մտածէին Փիլիպպոսի դէմ։

տարբեր ճամբով կ'ուզէին Աթէնքը առաջ տանիլ. Դեմոսթենէս պատերազմով և Փոկիոն խաղաղութեամբ: Առջինը թէպէտ անուանի ճարտասան ու քաղաքագէտ էր, բայց վրան ձայն ելած էր թէ Փիլիպպոսի դէմ գրած ճառերը Պարսից ոսկիովը շաղուած են, որովհետև Պարսիկները Փիլիպպոսին օրէ օր մեծնալէն կը վախնային: Իսկ երկրորդը ճշմարիտ փիլիսոփայ էր, իր Քսենոկրատ վարպետին պէս խստակեաց, ամեն ձմեռ բոպիկ պտըտող, հմուտ զօրավար, առաքինի ու եռանդուն հայրենասէր: Ճարտասանութեան կողմանէ անուանի էր զօրաւոր պատճառաբանութեամբը և համառօտութեամբը, այնպէս որ Դեմոսթենէս զանիկայ իր ճառերուն կացինը կ'անուանէր:

1 Որչափ որ Դեմոսթենէս իր Փիլիպպեան ըսուած ճառերովը Փիլիպպոսի աշխարհակալութեանցը առջևը կը ջանար առնել, անիկայ այնչափ աւելի կը տարածէր: Թրակիոյ ու Խերսոնէսի մէջ՝ ըրած նոր երկրակալութիւններովը՝ իր տէրութեան սահմանը մէկ կողմէն ինչուան Դանուբ ընդարձակեց, մէկալ կողմէն ալ ինչուան Ադրիական ծովը հասուց: Բիւզանդիոնի ալ կ'ուզէր տիրել՝ որպէս զի Աթենացւոց մէջ ոտք ձգէ, վասն զի անոնց բոլոր ապրուստը Թրակիայէն կուգար: Դեմոսթենեսի ճառերովը վերջապէս համոզուեցան Աթենացիք, շատ զօրքով Փոկիոնը վրան խրկեցին որ գնաց Փիլիպպոսի յաղթեց ու Բիւզանդիոնը ազատեց (341):

---

1 Ի՞նչ կերպով յաղթեցին Փիլիպպոսի:

1 Անկէ Սկիւթացւոց վրայ գնաց Փիլիպպոս, ու մեծ յաղթութեամբ դառնալու ատենը՝ Թրակիոյ հիւսիսակողմը Տրիբաղացիք վրան յարձակեցան. Թագաւորը վիրաւորուած ու չորս կողմէն պաշարուած՝ քիչ մնաց որ ձեռք պիտի իյնար. Աղեքսանդր որդին որ տասնըեօթը տարեկան էր՝ քաջութեամբը զհայրը մահուընէ ազատեց։

2 Երկրորդ անգամ Յունաստան մտաւ Փիլիպպոս. և շուտ մը Եղատիոյ տիրելով՝ որ Փոկիսի ու Բէովտիոյ բանալին կը սեպուէր, հասկըցուց որ աս անգամ Ապողոնին անարգանաց վրէժն առնելու համար միայն եկած չէ։ Դեմոսթենէս կրակոտ խօսքերով Աթենացւոց աչքը բացաւ, ազատութեան ու հայրենեաց սէրը նորէն սըրտերնուն մէջ վառեց, և յորդորեց որ հասարակաց վտանգը տեսնելով՝ առանձնական թշնամութիւննին մէկդի թողուն, ու Թեբացւոց հետ միաբանած պատերազմի պատրաստուին. և աս բանիս ինքը դեսպան ընտրուելով՝ անձամբ գնաց Թեբացիքն ալ համոզեց։ Վախցաւ Փիլիպպոս անոնց միաբանութենէն, սկսաւ ձախորդ պատգամներ հանել տալ որ սրտերնին կոտրի. բայց երբոր Դեմոսթենէս ծաղր ընելով ըսաւ թէ Ապողոնի քրմուհւոյն բերնովը Փիլիպպոս կը խօսի՝ ամենուն մտքէն վախը փարատեցաւ։

---

1 Փիլիպպոս Սկիւթացւոց դէմ ի՞նչ արշաւանք ըրաւ, ու ի՞նչ վտանգի մէջ ընկաւ։

2 Երկրորդ անգամ Յունաստան մտնելով ի՞նչ ըրաւ Փիլիպպոս։

1 Քերոնէայի քով երկու զօրքը ճակատե-
ցան. Փիլիպպոս աջ թեւին կը հրամայէր, Աղեք-
սանդր ձախին: Քաջասիրտ արքայորդին՝ Թեբա-
ցւոց Նուիրական գունդը զարկաւ ցրուեց. բայց
հայրը Աթենացւոց զօրութեանը առջեւ սկսաւ
տկարանալ. երբոր անոնց զօրավարը յաղթու-
թեանը վրայ հպարտացած սկսաւ փախչողնե-
րուն ետեւէն վազելով կանչել թէ Ինչուան Մա-
կեդոնիոյ սահմանագլուխը պիտի քշեմ, Փիլիպ-
պոս՝ Աթենացիք յաղթել չեն գիտեր՝ ըսաւ, ու
մէկէն առանց ատեն կորսնցնելու առաւ փա-
ղանգը ու ետեւնէն հասաւ, զամէնքը կոտորեց՝
ցրուեց, ու եկաւ որդւոյն յաղթական թեւին
հետ միացաւ: Դեմոսթենեսի համար ալ կ'ըսեն
թէ երբոր տեսաւ որ ամէնքը կը փախչին, ինքն
ալ որ ինչուան ան ատենը քաջութեամբ պատե-
րազմեր էր, վախէն զէնքերը նետեց փախաւ, եւ
յանկարծակի վերարկուն մորենիի մը պլուած
ատենը՝ անիկայ թշնամի կարծելով աղաչեց որ
կեանքին խնայէ:

2 Փիլիպպոս ան փառաւոր յաղթութեանը
վրայ ուրախացած՝ յաղթութեան նշան կանգնել
տուաւ, աստուածներուն շնորհակալութեան
զոհ մատոյց, բոլոր զօրավարացը մեծահաց ըն-
թրիք ըրաւ: Կերակրէն ետքը գլուխը տաքցած
երբոր պատերազմին տեղը եկաւ ու թշնամեաց

---

1 Քերոնէայի պատերազմը ի՞նչպէս եղաւ,
2 Ան յաղթութենէն ետքը ի՞նչ ըրաւ Փիլիպ-
պոս:

մեռելները տեսաւ, սկսաւ զանոնք նախատել։ Ասոր վրայ բարկացաւ Դեմադէս ճարտարախօսն որ գերիներէն մէկն էր, և չկարենալով ինքզինքը բռնել, Տէր արքայ, ըսաւ, բաղդը զքեզ Ագամեմնոնի հաւասարեց, դուն ինչո՞ւ համար կ'ուզես Թերսիտեսի նմանիլ։ Հոն ցըցուց Փիլիպպոս թէ իր ախտերուն ալ կրնայ յաղթել. անոր համարձակախօսութեան վրայ բարկանալու տեղը՝ զինքն ազատեց, և բոլոր Աթենացւոց գերիներն առանց փրկանքի արձըկեց։

1 Աթենացիք Դեմոսթենէսը դատաստանի կանչեցին որ զինենք պատերազմի գրգռելով այնչափ մարդկանց կորսուելուն պատճառ եղաւ. բայց Դեմոսթենէս արդարացուց ինքզինքը, և Աթենացիք նորէն սկսան իր խօսքերուն մտիկ ընել։ Իրեն յանձնեցին որ Քերոնէայի մէջ մեռնողներուն վրայ դամբանական ճառ մը խօսի, և անոնց փառաւոր տապանագրով շիրիմ մը կանգնեցին։

2 Դեմոսթենէս իր ծախքովը Աթենքին պարիսպները շինել տուաւ, ժողովուրդն ալ իրեն փոխարէն ոսկի պսակ մը ընծայեց։ Եսքինէս ճարտասանը ասոր դէմ կեցաւ. ուստի երկուքն ալ մէյմէկ ճառ գրեցին ու կ'ըսուին ճառք յաղագս պսակի. Դեմոսթենեսինը յաղթեց՝ ու Եսքինէս Հռոդոս կղզին աքսորուեցաւ։ Երթալու ատենը

---

1 Աթենացիք Քերոնէայի պատերազմէն ետքը ի՞նչպէս վարուեցան Դեմոսթենեսի հետ։

2 Եսքինէս ինչո՞ւ աքսորուեցաւ։

Դեմոսթենէս շատ մը ստակ տուաւ անոր բանի, այնպէս որ զարմանալով կանչեց Եսքինէս. Ի՜նչպէս չցաւիմ այսպիսի հայրենիքէ մը ելլելուս, ուր ինչուան թշնամիներս ալ սանկ առատաձեռն են. արդեօք ուրիշ տեղ պիտի գտնե՞մ այսպիսի բարեկամներ: Եսքինէս Հռոդոսի մէջ ճարտասանութեան դպրոց մը բացաւ, ու Հռոդացւոց առջեւն իր աքսորուելուն պատճառ եղած երկու ատենաբանութիւնները կարդաց. և թէպէտ իրենին ալ հաւնեցան, բայց Դեմոսթենեսինը երբոր լսեցին՝ ծափ զարնելով չէին կշտանար. ան ատեն ըսաւ անոնց Եսքինէս. Ոսոխին բերնէն լսելով այսչափ կը գովէք Դեմոսթենեսին ճառը, հապա ի՞նչ պիտի ընէիք երբոր անոր բերնէն լսէիք:

1 Ան ատենները ընդհանուր ժողով մը գումարեց Փիլիպպոս Կորնթոս, հոն դեսպանաց առջեւը իր միտքը յայտնեց որ կ'ուզէ պատերազմ բանալ. ամէն դիւրութիւն անոնց առջեւը դնելէն ետքը յորդորեց որ հետը միաբանին: Մէկէն ժողովը զինքը բոլոր Յունաստանի սպարապետ անուանեց: Ինքն ալ ամէն պատրաստութիւն տեսաւ. պատգամ հարցուց, սովորական կերպով անորոշ պատասխան մը ելաւ թէ Ցուլը պսակուեր է, մահը մօտեցեր է, կ'ուզէ մորթուիլ: Աս պատգամը Պարսից տէրութեան կործանմանը վրայ մեկնեց Փիլիպպոս. բայց իր վերջը հասեր էր:

---

1 Փիլիպպոս ի՞նչ կերպով Յունաստանի սպարապետ դրուեցաւ:

1 Երբոր Մակեդոնիա դարձաւ, իր ամբարտաւան կինը Ողիմպիան արձըկեց, ու տեղը Ատտաղոս զօրավարին Կղէոպատրա աղջիկը առաւ։ Աղեքսանդր իր մօրը եղած նախատանացը վրայ սրդողած՝ անոր հետ գնաց Լիւրիկէ քաշուեցաւ։ Օր մը երբոր Փիլիպպոս հարցուց Դեմարատ Կորնթացւոյն թէ Յոյները մէջերնին միաբա՞ն են։ — Ի՞նչպէս կ՚ուզես, տէր արքայ, որ Յոյները միաբան ըլլան, երբոր դուն քու տունդ կռուով լեցուցիր՝ ըսաւ Դեմարատ։ Հասկըցաւ Փիլիպպոս իր յանցանքը, ու Դեմարատին ձեռքովը Աղեքսանդրին հետ հաշտուեցաւ։

2 Պատերազմի երթալէն առաջ ուզեց Փիլիպպոս իր Կղէոպատրա աղջկանը հարսնիքն ալ կատարել, և բոլոր Յունաստանի անուանի մարդիկը հրաւիրեց հանդիսին։ Ամէն կողմէն իրեն պատիւներ, պսակներ, ճարտասաններ ու բանաստեղծներ խրկեցին. և ասոնք ուզեցին առջևը ողբերգութիւն մը ձևացընել որուն մէջ ինքը պիտի ձևանար յաղթող Ասիոյ։ Մեծ հանդիսով պալատէն ելաւ Փիլիպպոս որ թէատրոնը երթայ. առջևէն տասուերկու արձան կը տանէին, որոնց մէկը ինքն էր կուռքի մը պէս ձևացուցած. չորս կողմը պատած էին տէրութեան մեծամեծները, բոլոր ժողովուրդն ալ դիզուած՝ զինքը ծափահարութեամբ կը փառաւորէին։ Ան

---

1 Ի՞նչ պատճառաւ Փիլիպպոս աւրուեցաւ ու հաշտուեցաւ Աղեքսանդրի հետ։

2 Փիլիպպոս ի՞նչպէս մեռաւ։

միջոցին Պաւսանիաս Մակեդոնացի կտրիճը (որ Ատտալոսէն նախատինք մը կրած ըլլալով՝ Թագաւորին դիմեր ու հատուցում մը չէր գտած) ժողովուրդը պատռեց անցաւ, Թագաւորին քովը հասաւ, զարկաւ դաշոյնն ու կիսամեռ գետինը ձգեց զանիկայ. բայց ինքն ալ մէկէն հոն բզիկ բզիկ եղաւ։

1 Քսանըվեց տարի փառաւոր Թագաւորութիւն քշելէն ետեւ՝ աս կերպով մեռաւ Փիլիպպոս (336), որ նենգութեան ու զեղխութեան ախտերուն հետ ունէր նաեւ խոհեմութիւն, ճարտարմութիւն և քաջութիւն։ Առանց նեղանալու ճշմարտութեան ու յանդիմանութեան մտիկ կ՚ընէր։ Մասնաւոր մարդ մը դրեր էր որ ամէն օր իրեն ըսէ. Յիշէ որ մահկանացու ես։ Դեմոքարէս ճարտասանը Աթենացւոց կողմէն դեսպան եկեր էր իրեն. հարցուց Փիլիպպոս թէ Աթենացւոց ի՞նչ հաճոյական բան կրնամ ընել. Ինքզինքդ կախել՝ ըսաւ Դեմոքարէս։ Ատ անխոհեմ պատասխանին վրայ ընկերները բարկացան. Թագաւորը միայն առանց բարկանալու քաղցրութեամբ ճամբեց զանոնք, և աղաչեց Դեմոքարեսին որ Աթենացւոց հարցընէ թէ Ո՞վ աւելի խելացի է, անիկա՞յ որ ասանկ խօսքեր կ՚ըսէ, թէ անիկայ որ կը լսէ ու վրէժխնդիր չըլլար։ — Համարձակախօս ճշմարտութիւնը շատ կը սիրէր։

---

1 Քանի՞ տարի Թագաւորեց Փիլիպպոս, և ի՞նչ մասնաւոր կատարելութիւններ կը պատմուին վրան։

Աղքատ կին մը շատ անգամ իրեն եկեր գացեր է եղեր որ դատաստանը կտրէ, ու միշտ Ատեն չունիմ ըսելով զինքը ճամբեր է եղեր. անգամ մըն ալ խեղճ կինը ալ չկրնար դիմանալ, Թէ որ դատաստանս կտրելու ատեն չունիս, կ'ըսէ, Թո՛ղ ուրեմն Թագաւորութիւնդ: Փիլիպպոս մէկէն իրաւունք տուեր է անոր, և դատաստանը կտրեր է: — Ուրիշ անգամ մը երբոր կոչունքէ ելած կ'երթայ եղեր, կնկան մէկը կուգայ կը սկսի աղաչել որ դատաստանը քննէ. Փիլիպպոս առանց լաւ մը քննելու կը դատապարտէ զինքը: Կինը անխռով կերպով կը դառնայ՝ Կը բողոքեմ, կ'ըսէ: – Թագաւորէն վեր որո՞ւ պիտի բողոքես կ'ըսէ Փիլիպպոս: – Անօթի Փիլիպպոսին կը բողոքեմ կ'ըսէ կինը: Նորէն կը քննէ Փիլիպպոս դատաստանը, անոր իրաւունքը կ'իմանայ ու առջի վճիռը ետ կ'առնէ: — Ոչ միայն կը խրատուէր Փիլիպպոս, հապա ուրիշներն ալ կը խրատէր: Մենեկրատ Սիրակուսացի բժիշկը չափէ դուրս փառասէր էր. առողջացուցած մարդիկը հետը կը պտըտցընէր, ոմանց Ապողոնի հագուստը կը հագցընէր, ոմանց Ասկղեպիոսի, ուրիշներուն Հերակղեսի, իր գլուխն ալ Թագ դրած, ու ձեռքն ալ գաւազան բռնած՝ ինքզինքը Արամազդ կ'անուանէր, իբր Թէ անոնց նորէն կեանք տուեր կենդանացուցեր է: Ասիկայ օր մը Փիլիպպոսի նամակ մը գրեց. Մենեկրատ Արամազդ առ Փիլիպպոս ողջոյն: Փիլիպպոս ալ անոր պատասխան գրեց. Փիլիպպոս առ Մենեկրատ, առողջութիւն և ողջմտութիւն: Օր մըն ալ փառաւոր հացկերոյթ մը ըրաւ, Մենեկրատն ալ

հրաւիրեց, զինքը առանձին սեղան մը նստեցուց
ու առջևը տեսակ տեսակ հոտաւէտ խունկեր
դնել տուաւ, մէկալ կոչնականաց առջևն ալ զա-
նազան կերակուրներ։ Առջի բերան Մենեկրատ
աստուածական պատուոյն վրայ ուրախացած՝
մոռցաւ իր բնութիւնը, բայց քիչ ատենէն ա-
նօթութեանը չդիմանալով՝ Արամազդ ըլլալուն
վրայ զզջացաւ, ու կամացուկ մը ելաւ գնաց։ —
Օր մը խրատ կուտային Փիլիպպոսի որ Պեղոպո-
նեսացւոց ապերախտութեանը վրէժխնդրու-
թիւն ընէ, որ Ողիմպիական խաղերուն մէջ հրա-
պարակաւ վրան սուլեր էին. Թէ որ այնչափ բա-
րիք ընելէս ետքն ալ վրաս այսչափ կը ծիծաղին,
ըսաւ Փիլիպպոս, ի՞նչ չէին ըներ երբոր չարիք ալ
ընելու ըլլամ։ — Օր մը պալատականները կը
յորդորէին զինքն որ վրան չարիք խօսող մար-
դուն մէկը աքսորէ. Հոս խօսածը բաւական չէ՞
որ, ըսաւ Փիլիպպոս, երթայ ուրիշ տեղ ալ խօ-
սի։ — Օր մը երբոր իրեն պատմեցին թէ Աթե-
նացիք ամէն տարի տասը զօրավար կ'ընտրեն, Ե-
րանի՜ Աթենացւոց որ ամէն տարի տասը քաջ
զօրավար կը գտնեն՝ ըսաւ, ուր ես բոլոր կենացս
մէջ միայն Պարմենիոնը գտեր եմ։ — Օր մըն ալ
կը ստիպէին որ լաւ մարդուն մէկը զինքը յան-
դիմանելուն համար հալածէ. Առաջ մեյմը նա-
յինք, ըսաւ, կրնայ ըլլալ որ պատճառ տուած
ըլլանք։ Իմացաւ որ մարդը իրեն ըրած այնչափ
ծառայութեանցը փոխարէն վարձ մը չառնելով՝
սաստիկ կարօտութեան մէջ է եղեր. շատ պար-
գևներ տուաւ, և յանդիմանութիւնները գովա-
սանքի փոխուեցան. Ուրեմն, ըսաւ Փիլիպպոս,

Թագաւորի մը ձեռքն է սիրելի կամ ատելի ըլլալը։

Այսպէս ահա շատ պակասութիւններուն ալ Փիլիպպոս սիրելի եղաւ իր հպատակացը, որ իրենց սէրը եւ աչքը անոր որդւոյն վրայ դարձուցին։

## ԳԼՈՒԽ ԺԲ.

Աղեքսանդր. — Աշխարհակալութիւնները. — Թէբէի կործանումը. — Աթէնք. — Ասիոյ արշաւանքը. — Լամպսակոս, Տրոյա. — Գրանիկոսի պատերազմը. — Գորդիոնի հանգոյցը. — Աղեքսանդրի հիւանդանալը. — Իսոսի պատերազմը. — Աբդողոնիմոս։

1 Աղեքսանդր՝ մեծամեծ աշխարհակալաց մէջ ամենէն անուանին, բնութեան զարմանալի ձիրքերովը զարդարուած, հօրմէն ժառանգած անսահման իշխանասիրութեանը հետ ունէր նաեւ շատ մոլութիւններ։ Իմաստասիրաց պարագլուխը Արիստոտէլ՝ անոր վարպետն եղաւ, ու սրտին մէջ առաքինութեանց սկզբունքը տըպաւորեց. Աղեքսանդր ալ հօր պէս կը սիրէր ու կը մեծարէր իր վարժապետը. Հայրս ինծի կեանք տուաւ, կ'ըսէր, իսկ ասիկայ աղէկ ապրիլ սոր-

---

1 Աղեքսանդր ինչ բնաւորութեան տէր էր։

վեցուց։ Բնութեամբ կրակոտ՝ բայց ուսումնա-
սէր էր․ խօսակցութիւնը ախորժելի, բարեկա-
մութիւնը հաստատուն, ամէն զգացմունքներն
ու մտածութիւնները վսեմութիւն մը ունէին։
Նամակներէն մէկուն մէջ սաստիկ կը խօսի Արիս-
տոտէլ իր աշակերտին վրայ անոր մահուընէն
ետքը․ Մակեդոնացին Աղեքսանդր՝ ճարտարա-
միտ էր խորհրդի մէջ, արիասիրտ պատերազմի
մէջ, բարիք ընելու ատենն ալ մարդավար։ Թէ-
պէտ երբեմն անգթութիւն ալ ըրաւ, բայց շատ
անգամ ներողամիտ եղաւ զինքը նախատողնե-
րուն։ Իր խելքը կը փայլէր գժուարակնճիռ
գործոց մէջ, և վտանգին համեմատ՝ քաջասըր-
տութիւնն ալ կ'աւելնար։ Մեծ համարում ու-
նէր Հոմերոսի վրայ, և այնչափ կը կարդար Ի-
լիականը որ գրեթէ բերնուց սորվեր էր, ու
միշտ բարձին տակը կը պահէր։ Դարեհի յաղ-
թելէն ետև երբոր անոր վրանէն ազնիւ քարե-
րով զարդարուած պզտիկ սնտուկ մը ելաւ,
Միայն Հոմերոս ասոր մէջ դրուելու արժանի է
ըսելով՝ առաւ անոր մէջ դրաւ։ — Պարսից Թա-
գաւորէն դեսպաններ եկեր էին Փիլիպպոսի․ Ա-
ղեքսանդր որ դեռ տղայ էր՝ փոխանակ անոնց
հարցմունքներ ընելու Բաբելոնի և Շօշի պա-
լատներուն վրայ, և կամ հոն տեղի զուարճու-
թիւններուն վրայ, հարցուց թէ Ի՞նչ ճամբով
Պարսկաստան կ'երթըցուի, Պարսիկները ո՞ր-
չափ են, ինչո՞վ է իրենց գլխաւոր զօրութիւնը,
Թագաւորը ի՞նչպէս կը վարուի իր հպատակնե-
րուն հետ։ Դեսպաններէն մէկը ան խելացի
հարցմունքները լսելով՝ ըսեր է․ Մեր Թագաւո-

րը հարուստ է, բայց սա տղան մեծ է։ — Թեսաղիայէն փառաւոր ձի մը բերեր էին Մակեդոնիա՝ որ Բուկեփաղ կամ Ցլագլուխ կ'ըսուէր, որովհետև գլուխը ցլու գլխուն կը նմանէր կ'ըսեն։ Շատ վարպետ ձի հեծնողներ երբոր չկրցան անոր ամեհի երիվարը սանձել, Ափսոս, ըսաւ Աղեքսանդր, որ իրենց անկարողութեամբն ու վախկոտութեամբը աս սքանչելի ձին ձեռքէ պիտի հանեն։ Փիլիպպոս որդւոյն հպարտութիւնը ուղղելու համար հրաման տուաւ որ ինքը հեծնի վրան. Աղեքսանդր գիտնալով որ ձիուն խրտչելուն պատճառ՝ աւելի արևէն զարկած իր շուքն էր, քաշեց մէկդի տարաւ, քիչ մը շոյեց, ու վրան ցատքելուն պէս սկսաւ զանիկայ ուզածին պէս կառավարել. ետքն ալ ան ձին այնպէս հետը վարժեցաւ, որ ինչուան դիմացի ոտքերը կը ծռէր՝ որ Աղեքսանդր վրան հեծնայ։ Զարմացաւ հայրը. Որդեակ, ըսաւ, քեզի արժանի թագաւորութիւն մը փնտռէ, Մակեդոնիան բաւական չէ։

[1] Փիլիպպոսի մահուան ձայնը ելլելուն պէս՝ բոլոր Յունաստան ուրախութեամբ լեցուեցաւ. Դեմոսթենէս իր աղջկանը ցաւը մոռցած (որ եօթը օր առաջ մեռեր էր), ծաղկապսակ ու հագուած կապուած հրապարակը վազեց, ժողովուրդն ալ հետը գնացին, մեհեանները ծաղկըներով զարդարեցին։ Մէկալ քաղաքներն ալ Ա-

1 Փիլիպպոսի մահուան լուրն որ առին Յոյնք ի՞նչ ըրին։

թենացւոց օրինակին հետեւեցան, գլուխ քաշեցին ու Մակեդոնացւոց զօրքը դուրս վռնտեցին։

1 Այնչափ վտանգներու ու արգելքներու մէջ տանելով իր թագաւորութիւնը՝ ամենեւին չվհատեցաւ Աղեքսանդր, որ հազիւ քսան տարեկան կար։ Հայրը սպաննողները պատժեց, Մակեդոնացւոց վրայէն տուրքերը թեթեւցուց, հօրը զօրքերը վարձատրեց, եւ քաղցրութեամբ բոլոր հպատակաց սիրտը վաստըկեցաւ։ Անկէց ետքը մէկէն զօրք ժողվեց ու սկսաւ ապստամբաց վրայ երթալ։ Գետացիք՝ որ իր տղայութիւնը արհամարհելով ապստամբեր էին՝ զարկաւ ցրուեց, ու երկիրնին աւերըշտըկեց։ Եմոս լեռնէն անցաւ, գնաց Պէոնիացիքը, Թրակացիքը, Տրիբաղներն ու Լիւրիկեցիքը նուաճեց։

2 Երբոր Աղեքսանդր ասանկ փառաւոր յաղթութիւններ կ՚ընէր՝ անդին Դեմոսթենէս ձայն հանեց թէ Աղեքսանդր յաղթուեցաւ մեռաւ, եւ զանիկայ տղայ ու ապուշ պատանի կանչելով բոլոր Յոյները նորէն ոտք հանեց։ Փախստական Թեբացիք ալ Աթենացւոցմէ գրգռուած՝ որ ազատութիւննին ձեռք ձգեն, իրենց հայրենիքը դարձան, գիշերանց Թեբէ մտան ու Մակեդոնացւոց զօրքին զօրավարները սպաննելով քաղաքին տիրեցին։ Աս ապստամբութեան ձայնը

---

1 Աղեքսանդր ի՞նչ կերպով սկսաւ իր թագաւորութիւնը։

2 Ի՞նչպէս նուաճեց Յոյները։

լսելուն պէս՝ Աղեքսանդր Իստրոս կամ Դանուբ գետէն ու Եմոս լեռնէն նորէն անցաւ, Մակեդոնիա մտաւ, վեց օրուան մէջ Բէովտիա հասաւ, ու քովիններուն ըսաւ. Տրիբաղաց երկիրն եղած ատենս ինծի տղայ կ'ըսէր Դեմոսթենէս. երբոր Թեսսաղիա հասայ՝ պատանի. հիմայ որ Աթենքին դուռը հասայ՝ կ'ուզեմ իրեն ցցնել թէ չափահաս մարդ եմ։

1 Թեբացիք կը կարծէին որ Աղեքսանդր դեռ Մակեդոնիոյ մէջ է. մէյմըն ալ յանկարծ տեսան որ եկեր զիրենք պաշարեր է։ Ջանաց Աղեքսանդր որ քաղցրութեամբ նուաճէ զանոնք. Միայն ապստամբաց գլխաւորները ձեռքս տուէք, ու ձեզի կը ներեմ ըսաւ. բայց անոնք ալ ելան իրմէ իր երկու երևելի զօրավարները Փիլոտաս ու Անտիպատրոսը ուզեցին, պարիսպներուն վրայէն ալ սկսան կանչել թէ Ո՛ր Մակեդոնացի զինուորն որ Թեբացւոց ու Պարսից թագաւորին կողմը կ'անցնի՝ Յունաստանը աս բռնաւորին ձեռքէն ազատելու, սիրով կ'ընդունինք։

2 Բարկացաւ Աղեքսանդր. չորս կողմէն քաղաքը պաշարեց. զարմանալի քաջութեամբ դէմ կեցան Թեբացիք, բայց վերջապէս առնուեցաւ Թեբէ։ Պղատէացիք, Փովկիսացիք և Թեսպացիք՝ որ Աղեքսանդրի զօրաց մէջ էին՝ իրենց վրէժը Թեբացւոցմէ հանելու յարմար ատեն գտնելով, ոչ կանանց խնայեցին և ոչ տղոց, և ին-

---

1 Թեբացիք ի՞նչպէս դէմ կեցան Աղեքսանդրի։
2 Ի՞նչպէս յաղթուեցան։

չուան մեհեանները փախչողներն ալ սպաննեցին, նոյն կատաղութիւնը ցցուցին նաև Սպարտացիք: Աս սոսկալի կոտորածը ամբողջ օր մը քշեց. վեց հազար Թեբացի մեռան, երեսուն հազար ծախուեցան, և Թեբէն բոլորովին կործանեցաւ (335): Միայն թող չտուաւ Աղեքսանդր որ մեհեանները կործանեն, նմանապէս անկործան պահեց Պինդարոս բանաստեղծին տունը՝ որուն բանաստեղծութիւնները կը սիրէր՝ Հոմերոսի նման ըլլալուն համար, և Եպամինոնդայ տունը՝ ուր իր հայրը մեծցեր էր:

[1] Կ'ըսեն թէ Թեբէն կողոպտելու ատեն զինուորները Տիմոկլէ անունով ազնուական տիկնոջ մը տունը մտնելով ամէն բան յափշտակելէն ետքը, երբոր զօրագլուխնին եկեր անոր հարցուցեր է թէ Ուրիշ տեղ ալ պահծու բան ունի՞ս. — Այո՛, կ'ըսէ Տիմոկլէ, ու զինքը պարտէզը կը տանի ջրհորի մը քով, Հոս լեցուցած եմ կ'ըսէ գանձերս. զօրագլուխը ծռած կը սկսի մէջը նայիլ, Տիմոկլէ ետևէն հրելուն պէս ջրհորը կը նետէ զանիկայ: Կը բռնեն շղթայակապ Աղեքսանդրի կը տանին զինքը: Թագաւորը անոր աներկիւղ քալուածքը տեսնելով կը հարցընէ թէ Դուն ո՞վ ես: Պատասխան կու տայ Տիմոկլէ. Թէագենէս զօրավարին քոյրն եմ, որ Յունաստանի ազատութեանը համար հօրդ հետ պատերազմելով Քերոնէայի պատերազմին մէջ ըն-

---

1 Թեբէի կողոպտուած ատենը ինչ մասնաւոր դիպուած կը պատմուի:

կաւ։ Կը զարմանայ Թագաւորը անոր արիական պատասխանին վրայ, և կը հրամայէ որ ազատ թողուն։

1 Թեբէի կործանման լուրը Աթէնք հասնելուն պէս՝ ամենուն վրայ սարսափն ու յուսահատութիւնը տիրեց։ Մէկէն աղաչաւոր դեսպաններ խրկեցին Աղեքսանդրի որ սիրտը առնուն. Աղեքսանդր ուզեց որ բոլոր իրենց ճարտասանները ձեռքը տան. Դեմոսթենէս աս բանիս դէշ հետևանքները ցուցընելով՝ յիշեցուց անոնց վարպետութեամբ հովիւներուն առակը՝ որ գայլերուն հետ դաշինք դնելով մատներ են իրենց արթուն պահապանները, այսինքն իրենց հաւատարիմ շները, ու ոչխարները կորսընցուցեր են։ Եւ որովհետև Թեբէի մէջ թափուած արեամբ Աղեքսանդրին վրէժխնդրութիւնը մարած կ'երևնար, Դեմադէս ճարտասանը Աթենացւոց կողմանէ դեսպան գնաց. Աղեքսանդր անոր ամէն խնդիրքը կատարեց, միայն Քարիդեմոս խռովարար ճարտասանը աքսորել տուաւ, և Աթենացւոց հետ հաշտուեցաւ։

2 Բոլոր Յունաստանի տիրելէն ետքը՝ համաշխարհական ժողով մը գումարեց Կորնթոս, ու անոնց առաջարկեց Պարսից տէրութիւնը նուաճելու մեծ խորհուրդը՝ որ Կիմոն, Ագեսիղայոս և

---

1 Աթենացիք Թեբէի կործանումն որ լսեցին ի՞նչ ըրին։

2 Ի՞նչ կերպով որոշեց Աղեքսանդր Պարսից վրայ երթալու խորհուրդը։

Փիլիպպոս մեռած էին, ինքը կ'ուզէր կատարել։ Ամէնքը հաւանեցան, ու միաբերան զինքը սպարապետ անուանեցին։ Իշխանք, քաղաքացիք, իմաստասէրք, ամէնքը վազեցին իրեն աս ընտրութիւնը շնորհաւորելու, միայն Դիոգինէս փիլիսոփան պակաս էր։ Անոր ալ անձամբ գնաց Աղեքսանդր, տեսաւ որ արեւուն մէջ կեցած կը տաքնար. հարցուց անոր թէ ի՞նչ կ'ուզես, բանի մը կարօտութիւն ունի՞ս, — Այո՛, ըսաւ Դիոգինէս, աս արեւէս քիչ մը անդին գնա։ Աղեքսանդր ատանկ անոր բանի մը կարօտ չըլլալուն վրայ սքանչացած՝ քովիններուն դարձաւ, թէ որ Աղեքսանդր չըլլայի՝ Դիոգինէս կ'ուզէի ըլլա՛լ ըսաւ կ'ըսեն։

[1] Աղեքսանդր առանց ժամանակ կորսընցընելու՝ Պարսից դէմ սկսաւ պատրաստութիւն տեսնել։ Քսան հազար զօրքով Անտիպատրոսը թողուց որ Մակեդոնիան ու Յունաստանը հոգայ. իր արշաւանքին համար առաւ երեսուն հինգ հազար հետեւակ, չորս հազար հինգ հարիւր ձիաւոր, ամէնքն ալ իրարմէ քաջ ու պատերազմափորձ մարդիկ. և զօրավար ընտրեց հօրը ձեռքին տակ կրթուած զօրապետները, որոնց գլխաւորներն էին Պարմենիոն՝ և անոր որդիքը Փիլոտաս և Նիկանոր, անոնցմէ զատ Պերդիկկաս, Կղիտոս, Եփեստիոն, Կասանդր, Պտղոմէոս, Կրատեր, որոնց շատը վաթսուն տարեկան էին, և իրենց ժողովը ծերակուտի կը նմա-

[1] Ի՞նչ պատրաստութեամբ Ասիա անցաւ։

Թագաւորի մը ձեռքն է սիրելի կամ ատելի ըլլալը։

Այսպէս ահա շատ պակասութիւններովն ալ Փիլիպպոս սիրելի եղաւ իր հպատակացը, որ իրենց սէրը ետքը անոր որդւոյն վրայ դարձուցին։

## ԳԼՈՒԽ ԺԲ.

Աղէքսանդր. — Աշխարհակալութիւնները. — Թեբէի կործանումը. — Աթէնք. — Ասիոյ արշաւանքը. — Լամպսակոս. Տրոյա. — Գրանիկոսի պատերազմը. — Գորդիոնի հանգոյցը. — Աղէքսանդրի հիւանդանալը. — Իսոսի պատերազմը. — Աբդողոնիմոս։

1 Աղեքսանդր՝ մեծամեծ աշխարհակալաց մէջ ամենէն անուանին, բնութեան զարմանալի ձիրքերովը զարդարուած, հօրմէն ժառանգած անսահման իշխանասիրութեանը հետ ունէր նաև շատ մոլութիւններ։ Իմաստասիրաց պարագլուխը Արիստոտէլ՝ անոր վարժապետն եղաւ, ու սրտին մէջ առաքինութեանց սկզբունքը տըպաւորեց. Աղեքսանդր ալ հօր պէս կը սիրէր ու կը մեծարէր իր վարժապետը. Հայրս ինծի կեանք տուաւ, կ'ըսէր, իսկ ասիկայ աղէկ ապրիլ սոր-

---

1 Աղեքսանդր ինչ բնաւորութեան տէր էր։

վեցուց։ Բնութեամբ կրակոտ՝ բայց ուսումնասէր էր. խօսակցութիւնը ախորժելի, բարեկամութիւնը հաստատուն, ամէն զգացմունքներն ու մտածութիւնները վսեմութիւն մը ունէին։ Նամակներէն մէկուն մէջ սաստիկ կը խօսի Արիստոտէլ իր աշակերտին վրայ անոր մահուընէն ետքը. Մակեդոնացին Աղեքսանդր՝ ճարտարամիտ էր խորհրդի մէջ, արիասիրտ պատերազմի մէջ, բարիք ընելու ատենն ալ մարդավար։ Թէպէտ երբեմն անգթութիւն ալ ըրաւ, բայց շատ անգամ ներողամիտ եղաւ զինքը նախատողներուն։ Իր խելքը կը փայլէր դժուարակնճիռն գործոց մէջ, և վտանգին համեմատ՝ քաջասրտութիւնն ալ կ՚աւելնար։ Մեծ համարում ունէր Հոմերոսի վրայ, և այնչափ կը կարդար Իլիականը որ գրեթէ բերնուց սորվեր էր, ու միշտ բարձին տակը կը պահէր։ Դարեհի յաղթելէն ետև երբոր անոր վրանէն ազնիւ քարերով զարդարուած պզտիկ սնտուկ մը ելաւ, Միայն Հոմերոս ասոր մէջ դրուելու արժանի է ըսելով՝ առաւ անոր մէջ դրաւ։ — Պարսից Թագաւորէն դեսպաններ եկեր էին Փիլիպպոսի. Աղեքսանդր որ դեռ տղայ էր՝ փոխանակ անոնց հարցմունքներ ընելու Բաբելոնի և Շօշի պալատներուն վրայ, և կամ հոն տեղի զուարճութիւններուն վրայ, հարցուց թէ ի՞նչ ճամբով Պարսկաստան կ՚երթըլցուի, Պարսիկները ո՞րչափ են, ինչո՞վ է իրենց գլխաւոր զօրութիւնը, Թագաւորը ի՞նչպէս կը վարուի իր հպատակներուն հետ։ Դեսպաններէն մէկը ան խելացի հարցմունքները լսելով՝ ըսեր է. Մեր Թագաւո-

րը հարուստ է, բայց աս տղան մեծ է։ — Թեսաղիայէն փառաւոր ձի մը բերեր էին Մակեդոնիա՝ որ Բուկեփաղ կամ Ցլագլուխ կ'ըսուէր, որովհետեւ գլուխը ցլու գլխուն կը նմանէր կ'ըսեն։ Շատ վարպետ ձի հեծնողներ երբոր չկրցան ան ամեհի երիվարը սանձել, Ափսոս, ըսաւ Աղեքսանդր, որ իրենց անկարողութեամբն ու վախկոտութեամբը աս աքանչելի ձին ձեռքէ պիտի հանեն։ Փիլիպպոս որդւոյն հպարտութիւնը ուղղելու համար հրաման տուաւ որ ինքը հեծնի վրան. Աղեքսանդր գիտնալով որ ձիուն խըրտելուն պատճառ՝ աւելի արեւէն զարկած իր շուքն էր, քաշեց մէկդի տարաւ, քիչ մը շոյեց, ու վրան ցատքելուն պէս սկսաւ զանիկայ ուղածին պէս կառավարել. ետքն ալ ան ձին այնպէս հետը վարժեցաւ, որ ինչուան դիմացի ոտուըները կը ճկէր՝ որ Աղեքսանդր վրան հեծնայ։ Զարմացաւ հայրը. Որդեակ, ըսաւ, քեզի արժանի թագաւորութիւն մը փնտռէ, Մակեդոնիան բաւական չէ։

1 Փիլիպպոսի մահուան ձայնը ելլելուն պէս՝ բոլոր Յունաստան ուրախութեամբ լեցուեցաւ. Դեմոսթենէս իր աղջկանը ցաւը մոռցած (որ եօթը օր առաջ մեռեր էր), ծաղկապսակ ու հագուած կապուած հրապարակը վազեց, ժողովուրդն ալ հետը գնացին, մեհեանները ծաղկըներով զարդարեցին։ Մէկալ քաղաքներն ալ Ա-

---

1 Փիլիպպոսի մահուան լուրն որ առին Յոյնք ի՞նչ ըրին։

Թենացւոց օրինակին հետեւեցան, գլուխ քաշեցին ու Մակեդոնացւոց զօրքը դուրս վռընտեցին։

1 Այնչափ վտանգներու ու արգելքներու մէջ տեսնելով իր թագաւորութիւնը՝ ամենեւին չվհատեցաւ Աղեքսանդր, որ հազիւ քսան տարեկան կար։ Հայրը սպաննողները պատժեց, Մակեդոնացւոց վրայէն տուրքերը թեթեւցուց, հօրը զօրքերը վարձատրեց, և քաղցրութեամբ բոլոր հպատակաց սիրտը վաստըկեցաւ։ Անկէց ետքը մէկէն զօրք ժողվեց ու սկսաւ պատերազմաց վրայ երթալ։ Գետացիք՝ որ իր տղայութիւնը արհամարհելով ապստամբեր էին՝ զարկաւ ցրուեց, ու երկիրնին աւրըշտըկեց։ Եմոս լեռնէն անցաւ, գնաց Պէոնիացիքը, Թրակացիքը, Տրիբաղներն ու Լիւրիկեցիքը նուաճեց։

2 Երբոր Աղեքսանդր տասանկ փառաւոր յաղթութիւններ կ'ընէր՝ անդին Դեմոսթենէս ձայն հանեց թէ Աղեքսանդր յաղթուեցաւ մեռաւ, և զանիկայ տղայ ու ապուշ պատանի կանչելով բոլոր Յոյները նորէն ոտք հանեց։ Փախստական Թեբացիք ալ Աթենացւոցմէ դրդուած՝ որ ազատութիւննին ձեռք ձգեն, իրենց հայրենիքը դարձան, գիշերանց Թեբէ մտան ու Մակեդոնացւոց զօրքին զօրավարները սպաննելով քաղաքէն տերեցին։ Աս ապստամբութեան ձայնը

---

1 Աղեքսանդր ի՞նչ կերպով սկսաւ իր թագաւորութիւնը։
2 Ի՞նչպէս նուաճեց Յոյները։

լսելուն պէս՝ Աղեքսանդր Իստրոս կամ Դանուբ գետէն ու Էմոս լեռնէն նորէն անցաւ, Մակեդոնիա մտաւ, վեց օրուան մէջ Բէովտիա հասաւ, ու քովիններուն ըսաւ. Տրիբաղաց երկիրն եղած ատենս ինծի տղայ կ'ըսէր Դեմոսթենէս. երբոր Թեսաղիա հասայ՝ պատանի. հիմայ որ Աթենքին դուռը հասայ՝ կ'ուզեմ իրեն ցցընել թէ չափահաս մարդ եմ։

1 Թեբացիք կը կարծէին որ Աղեքսանդր դեռ Մակեդոնիոյ մէջ է. մէյմըն ալ յանկարծ տեսան որ եկեր զիրենք պաշարեր է։ Ջանաց Աղեքսանդր որ քաղցրութեամբ նուաճէ զանոնք. Միայն ապստամբաց գլխաւորները ձեռքս տուէք, ու ձեզի կը ներեմ ըսաւ. բայց անոնք ալ ելան իրմէ իր երկու երևելի զօրավարները Փիլոտասն ու Անտիպատրոսը ուզեցին, պարիսպներուն վրայէն ալ սկսան կանչել թէ Ո՛ր Մակեդոնացի զինուորն որ Թեբացւոց ու Պարսից թագաւորին կողմը կ'անցնի՝ Յունաստանը աս բռնաւորին ձեռքէն ազատելու, սիրով կ'ընդունինք։

2 Բարկացաւ Աղեքսանդր, չորս կողմէն քաղաքը պաշարեց. զարմանալի քաջութեամբ դէմ կեցան Թեբացիք, բայց վերջապէս առնուեցաւ Թեբէ։ Պղատէացիք, Փովկիսացիք և Թեսպացիք՝ որ Աղեքսանդրի զօրաց մէջ էին՝ իրենց վրէժը Թեբացւոցմէ հանելու յարմար ատեն գտնելով, ոչ կանանց խնայեցին և ոչ տղոց, և ին-

---

1 Թեբացիք ի՞նչպէս դէմ կեցան Աղեքսանդրի։
2 Ի՞նչպէս յաղթուեցան։

չուան մեհեանները փախչողներն ալ սպաննեցին, նոյն կատաղութիւնը ցցուցին նաև Սպարտացիք: Այս սոսկալի կոտորածը ամբողջ օր մը քշեց. վեց հազար Թեբացի մեռան, երեսուն հազար ծախուեցան, և Թեբէն բոլորովին կործանեցաւ (335): Միայն թող չտուաւ Աղեքսանդր որ մեհեանները կործանեն, նմանապէս անկործան պահեց Պինդարոս բանաստեղծին տունը՝ որուն բանաստեղծութիւնները կը սիրէր՝ Հոմերոսի նման ըլլալուն համար, և Եպամինոնդայ տունը՝ ուր իր հայրը մեծցեր էր:

1 Կ'ըսեն թէ Թեբէն կողոպտելու ատեն զինուորները Տիմոկղէ անունով ազնուական տիկնոջ մը տունը մտնելով ամէն բան յափշտակելէն ետքը, երբոր զօրագլուխնին եկեր անոր հարցուցեր է թէ Ուրիշ տեղ ալ պահծու բան ունի՞ս. — Այո՛, կ'ըսէ Տիմոկղէ, ու զինքը պարտէզը կը տանի ջրհորի մը քով. Հոս լեցուցած եմ կ'ըսէ գանձերս. զօրագլուխը ծռած կը սկսի մէջը նայիլ, Տիմոկղէ ետևէն հրելուն պէս ջրհորը կը նետէ զանիկայ: Կը բռնեն շղթայակապ Աղեքսանդրի կը տանին զինքը: Թագաւորը անոր աներկիւղ քալուածքը տեսնելով կը հարցնէ թէ Դուն ո՞վ ես: Պատասխան կուտայ Տիմոկղէ. Թէագենէս զօրավարին քոյրն եմ, որ Յունաստանի ազատութեանը համար հօրդ հետ պատերազմելով Քերոնէայի պատերազմին մէջ ըն-

---

1 Թեբէի կողոպտուած ատենը ի՞նչ մասնաւոր դիպուած կը պատմուի:

կաւ: Կը զարմանայ Թագաւորը անոր արիական պատասխանին վրայ, և կը հրամայէ որ ազատ թողուն:

1 Թեբէի կործանման լուրը Աթէնք հասնելուն պէս՝ ամենուն վրայ սարսափն ու յուսահատութիւնը տիրեց: Մէկէն աղաչաւոր դեսպաններ խրկեցին Աղեքսանդրի որ սիրտը առնուն. Աղեքսանդր ուզեց որ բոլոր իրենց ճարտասանները ձեռքը տան. Դեմոսթենէս աս բանիս դէշ հետեւանքները ցուցընելով՝ յիշեցուց անոնց վարպետութեամբ հովիւներուն առակը՝ որ գայլերուն հետ դաշինք դնելով մատներ են իրենց արթուն պահապանները, այսինքն իրենց հաւատարիմ շուները, ու ոչխարները կորսնցուցեր են: Եւ որովհետեւ Թեբէի մէջ թափուած արեամբ Աղեքսանդրին վրէժխնդրութիւնը մարած կ'երեւնար, Դեմադէս ճարտասանը Աթենացւոց կողմանէ դեսպան գնաց. Աղեքսանդր անոր ամէն խնդիրքը կատարեց, միայն Քարիդեմոս խռովարար ճարտասանը աքսորել տուաւ, և Աթենացւոց հետ հաշտուեցաւ:

2 Բոլոր Յունաստանի տիրելէն ետքը՝ համաշխարհական ժողով մը գումարեց Կորնթոս, ու անոնց առաջարկեց Պարսից տէրութիւնը նուաճելու մեծ խորհուրդը՝ որ Կիմոն, Ագեսիղայոս և

---

1 Աթենացիք Թեբէի կործանումն որ լսեցին ի՞նչ ըրին:

2 Ի՞նչ կերպով որոշեց Աղեքսանդր Պարսից վրայ երթալու խորհուրդը:

Փիլիպպոս մտածեր էին, ինքը կ'ուզէր կատարել։ Ամէնքը հաւանեցան, ու միաբերան զինքը սպարապետ անուանեցին։ Իշխանք, քաղաքացիք, իմաստասէրք, ամէնքը վազեցին իրեն աս ընտրութիւնը շնորհաւորելու, միայն Դիոգինէս փիլիսոփան պակաս էր։ Անոր ալ անձամբ գնաց Աղեքսանդր, տեսաւ որ արեւուն մէջ կեցած կը տաքնար. հարցուց անոր թէ ի՞նչ կ'ուզես, բանի մը կարօտութիւն ունի՞ս, — Այո՛, ըսաւ Դիոգինէս, աս արեւէս քիչ մը անդին գնա։ Աղեքսանդր տեսնելով անոր բանի մը կարօտ չըլլալուն վրայ սքանչացած՝ քովինները դարձաւ, Թէ որ Աղեքսանդր չըլլայի՝ Դիոգինէս կ'ուզէի ըլլալ՝ ըսաւ կ'ըսեն։

[1] Աղեքսանդր առանց ժամանակ կորսնցընելու՝ Պարսից դէմ սկսաւ պատրաստութիւն տեսնել։ Քսան հազար զօրքով Անտիպատրոսը Թողուց որ Մակեդոնիան ու Յունաստանը հոգայ. իր արշաւանքին համար առաւ երեսունըհինգ հազար հետեւակ, չորս հազար հինգ հարիւր ձիաւոր, ամէնքն ալ իրարմէ քաջ ու պատերազմափորձ մարդիկ. և զօրավար ընտրեց հօրը ձեռքին տակ կրթուած զօրապետները, որոնց գլխաւորներն էին Պարմենիոն՝ և անոր որդիքը Փիլոտաս և Նիկանոր, անոնցմէ զատ Պերդիկկաս, Կղիտոս, Եփեստիոն, Կասանդր, Պտղոմէոս, Կրատեր, որոնց շատը վաթսուն տարեկան էին, և իրենց ժողովը ծերակուտի կը նմա-

1 Ի՞նչ պատրաստութեամբ Ասիա անցաւ։

ներ։ Հետը մէկ ամսուան պաշար առաւ, հարիւր վաթսուն ցռկանաւով տորմիղ մը ու եօթանասուն տաղանդ առաւ (389,200 ֆրանք), մէկալ բոլոր ունեցած հարստութիւնը զօրացն ու բարեկամացը բաժնեց, և երբոր հարցուց իրեն Պերդիկկաս թէ Քեզի ի՞նչ մնաց. — Յոյսը՝ ըսաւ Աղեքսանդր։

1 Անցաւ Աղեքսանդր Ելլեսպոնտոսէն (334), գնաց Լամփսակոնի վրայ, որ Պարսից կողմը բռնած ըլլալուն համար կործանէ։ Անաքսիմենէս երևելի փիլիսոփան՝ Աղեքսանդրի և անոր հօրը Փիլիպպոսին բարեկամը, դիմացն ելաւ որ քաղաքին համար աղաչէ. իմացաւ Աղեքսանդր անոր գալուն պատճառը, երդում ըրաւ որ բարեկամութեանը չնայի, խնդրածին հակառակը ընէ։ Անաքսիմենէս ալ գնաց՝ Կը խնդրեմ որ Լամփսակոնը կործանես, ըսաւ։ Ժպտեցաւ Աղեքսանդր, հարկ եղաւ որ երդումը կատարէ։

2 Անկէ հասաւ Աղեքսանդր Իլիոն, որ է Տրոյիա, ու Աքիլլեսի գերեզմանին չորս կողմը խաղեր խաղցնել տուաւ. Երանի՜ քեզի Աքիլլէս, ըսաւ, որ Հոմերոսի պէս անուանի հռչակող մը ունեցար։ Ան ատեն բանաստեղծին մէկն ըսաւ իրեն թէ Տէր արքայ, Հոմերոսէն ալ լաւ պիտի գրենք մենք քու գործքերդ։ Պատասխան տուաւ Աղեքսանդր. Աւելի կ'ուզէի Հոմերոսի

---

1 Լամփսակոն քաղաքն ի՞նչ կերպով ազատեցաւ կործանմանէ։

2 Իլիոն որ հասաւ ի՞նչ ըրաւ Աղեքսանդր։

պատմութեանը մէջ Թերսիտէս ըլլալ, քան թէ քուկինիդ մէջ Աքիլլէս։ Անկէց եկաւ Գրանիկոն գետին քով։

1 Մեմնոն Հռոդացին՝ Դարեհի զօրավարներուն մէջ ամենէն քաջն ու հմուտը՝ խրատ տուաւ մէկալ զօրավարներուն որ պատերազմի ձեռք չզարնեն. Դաշտերն ու քաղաքները աւականենք կ'ըսէր, որ Աղեքսանդրին զօրքը սովէն ջարդուին։ Անոնք մտիկ չըրին, հարիւր հազար հոգւով Գրանիկոն գետին քով կեցան որ Աղեքսանդր չկարենայ դիմացն անցնիլ։ Աղեքսանդր անոնց անձրեւի պէս եկած նետերուն մէջէն գետը նետուեցաւ, զօրքն ալ ետեւէն, անցան գետը ու պատերազմը սկսաւ։ Զարմանալի քաջութիւններ ըրաւ Աղեքսանդր. Դարեհի յաղթահասակ եղբօրը հետ մենամարտելով սաստիկ վիրաւորեց զանիկայ, բայց քիչ մնաց որ ինքն ալ պիտի մեռնէր. վասն զի Պարսից նախարար մը կացինը իջեցուց Աղեքսանդրի սաղաւարտին վըրայ, ու ինչուան անոր մազը հասուց. երբոր մէյմըն ալ վերուց ձեռքը որ զարնէ, ետեւէն հասաւ Կղիտոս, անոր ձեռքը կտրեց, ու իր տիրոջը կեանքը ազատեց։ Մակեդոնացիք ասով աւելի սիրտ առին ու բոլորովին ցրուեցին թշնամիները։

2 Անկէց գնաց Փռիւգիոյ տիրեց. անոր Գորդիոն մայրաքաղաքին մէջ Գորդիոս թագաւորին

1 Գրանիկոնի պատերազմն ինչպէս եղաւ։
2 Գորդիոն քաղաքին մէջ ինչ ըրաւ Աղեքսանդր։

հռչակաւոր կառքը կար, ան կառքին լծկին վրայ անանկ վարպետութեամբ կապուած հանգոյցներ կային որ ծայրերնին ամենեւին չէր իմացուեր: Պատգամներ էր թէ Ո՛վ որ ան հանգոյցը քակէ՝ արեւելքի աշխարհ տիրէ: Աղեքսանդր քակելու շատ աշխատելէն ետեւ երբոր չկրցաւ, Ի՞նչ փոյթ է ինչպէս քակուիլը ըսաւ, ու Թրովը կտրեց քակեց: Անկէց սկսաւ Կապադովկիոյ վրայ երթալ:

1 Դարեհ՝ Մեմնոն Հռոդացւոյն խորհրդովը Մակեդոնիոյ վրայ ուզեց վազել, որպէս զի Աղեքսանդր պարտաւորուի իր երկիրը դառնալու: Ուստի շատ զօրքով ու նաւատորմիղով Մեմնոնը խրկեց որ ինչուան Եւբէա կղզին հասաւ, ու հոն մեռաւ. Դարեհ ալ իր ընդարձակ տէրութեանը մէջ զօրավար մը չգտաւ որ ան իմաստուն և քաջ զօրավարին տեղը դնէ: Իսկ Աղեքսանդր այնպիսի ահաւոր Թշնամւոյն ձեռքէն ազատած՝ բոլոր Յոնիոյ քաղաքները ազնուապետութիւն հաստատելէն ետքը՝ Կիլիկիա մտաւ ու Տարսոն քաղաքն առաւ (333): Հոն Կիւդնոս գետին մէջ ուզեց լուացուիլ. և որովհետեւ ինքը քրտնած էր ու ջուրը շատ պաղ, վրան սաստիկ դող մը եկաւ ու ինքզինքը կորսնցուց: Կիսամեռ հանեցին զինքը գետէն վրանը տարին, բոլոր զօրքը չորս կողմն առած կուլային: Երբոր քիչ մը զգաստացաւ, ըսաւ Թէ

1 Կիլիկիոյ ինչպէս տիրեց, և հոն ինչ պատահեցաւ իրեն:

թշնամեաց մօտ ըլլալնուս համար զօրաւոր դեղեր կ՚ուզեմ, որ կամ շուտով առողջանամ և կամ շուտով մեռնիմ։ Երբոր ուրիշ բժիշկները վախէն ձեռքերնին քաշեցին, Փիլիպպոս՝ որ պզտիկուց ՚ի վեր Աղեքսանդրի բժիշկն էր ու զինքը շատ կը սիրէր՝ յանձն առաւ անոր դեղ տալ։

1 Ան միջոցին թուղթ մը եկաւ Պարմենիոնէն Աղեքսանդրի թէ Փիլիպպոս բժիշկդ Պարսիցմէ կաշառուած է ու զքեզ պիտի թունաւորէ։ Երբոր Փիլիպպոս պատրաստած դեղը բերաւ անոր տուաւ որ խմէ, հանեց Աղեքսանդր թուղթը՝ մեծանձնութեամբ անոր ձեռքը տուաւ որ կարդայ, և երեսին այլայլութիւնը դիտելով՝ առաւ գաւաթը խմեց։ Փիլիպպոս սաստիկ նեղացաւ. Տէր արքայ, քու առողջանալդ զիս պիտի արդարացընէ՝ ըսաւ։ Իրաւցընէ, իրեք օրէն ետքը առողջացաւ Աղեքսանդր. ու գնաց զօրացը մէջ պտըտելով զամէնքը ուրախացուց։

2 Մեծ պատրաստութիւն տեսաւ Դարեհ Աղեքսանդրի հետ զարնուելու. մեր Վահէ թագաւորէն ալ քառասուն հազար հետեւակ և եօթը հազար ձիաւոր օգնութիւն առած՝ վեց հա-

---

1 Աղեքսանդր հիւանդութեանը ատեն ինչ վեհանձնութիւն ըրաւ։

2 Դարեհ ինչ պատրաստութիւն ըրաւ Աղեքսանդրի դէմ։ — Իսսոսի քով պատերազմը ինչպէս եղաւ։ — Աղեքսանդր Դարեհի ընտանեացը հետ ինչպէս վարուեցաւ։

բուր հազար զօրքով եկաւ Կիլիկիոյ Իսսոս քաղաքին քով բանակը դրաւ։ Աղեքսանդր առաջ Պարսից թեւին յաղթեց որուն ինքը Դարեհ կը զօրավարէր, մէջտեղը ակարացուց, ու ձախ թեւն ալ զարկաւ ցրուեց։ Դարեհ թողուց իր բանակը, Սիսիգամբիս մայրը, կինը, երկու աղջիկը, և պզտիկ տղան և բոլոր հարստութիւններն ու փախաւ։ Աղեքսանդր թագաւորական ազգատոհմին հետ ամենայն քաղցրութեամբ, պատուով ու համեստութեամբ վարուեցաւ. անձամբ ալ գնաց իր Եփեստիոն բարեկամին հետ զանոնք մխիթարելու։ Սիսիգամբիս երբոր բարձրահասակ Եփեստիոնը տեսաւ, թագաւորը կարծելով ոտքն ընկաւ շնորհակալ ըլլալու, բայց երբոր իմացաւ թէ ան չէ եղեր թագաւորը, սկսաւ թողութիւն խնդրել սխալանացը. Չէ, չսխալեցար դշխոյ մայր, ըսաւ Աղեքսանդր, ինքն ալ մէկ Աղեքսանդր մըն է։

1 Մեր Վահէ թագաւորը լսելով որ Դարեհի զօրքը ջարդուեր՝ ինքն ալ փախեր է, ուզեց անձամբ Աղեքսանդրի դէմ ելլել. բայց պատերազմին մէջ ընկաւ մեռաւ, և Աղեքսանդր Հայաստանի ալ տիրեց։

2 Անկէց ետքը Ասորւոց երկիրն ալ առաւ Աղեքսանդր, ու Դամասկոսի մէջ պահած գտաւ Դարեհի գանձերը։ Բոլոր ան կողմի մանր թա-

---

1 Վահէ ի՞նչպէս յաղթուեցաւ Աղեքսանդրէն։

2 Ասորւոց երկրին ի՞նչպէս տիրեց Աղեքսանդր։
— Ո՞վ էր Աբդողոնիմոս։

գաւորները իրենց թագաւորական հագուստներովը առջեւն ելան պատուով, ինքն ալ զանոնք իրենց իշխանութեանցը մէջ հաստատեց. միայն Սիգոնացիք որովհետեւ իրենց թագաւորին վրայ գոհ չէին՝ անիկայ ուզեց փոխել, ու Եփեստիոնին յանձնեց որ անոնց ուզած թագաւորը տայ իրենց։ Սիգոնացիք Աբդողոնիմոսն ընտրեցին, որ թէպէտ թագաւորական ցեղէ էր, բայց աղքատ ըլլալով՝ պարտիզպանութիւն կ՚ընէր։ Եփեստիոնի խրկած մարդիկը գնացին տեսան որ պարտէզը կը մաքրէ. Աբդողոնիմոս ալ առջի բերան չհաւտաց, երբոր տեսաւ որ վրայի պատըռտած վերարկուն բռնի հանելով՝ ոսկեթել ծիրանի կը հագցընեն, հաւտաց ու ելաւ պալատը եկաւ։ Աղեքսանդր հարցուց իրեն թէ Ի՞նչպէս կը համբերէիր աղքատութեանդ։ Պատասխան տուաւ Աբդողոնիմոս. Երանի՛ թէ թագաւորութեանս մէջ ալ այնչափ ուրախ կարենամ ըլլալ. աս ձեռքերուս աշխատութեամբը ամէն ուզածս կը գտնէի. բան չունէի, ու բանի մը կարօտ չէի։

լսելուն պէս՝ Աղեքսանդր Իստրոս կամ Դանուբ գետէն ու Էմոս լեռնէն նորէն անցաւ, Մակե-
դոնիա մտաւ, վեց օրուան մէջ Բէովտիա հա-
սաւ, ու քովլիններուն ըսաւ. Տրիբաղաց եր-
կիրն եղած ատենս ինծի տղայ կ'ըսէր Դեմոս-
թենէս. երբոր Թեսաղիա հասայ՝ պատանի.
հիմայ որ Աթենքին դուռը հասայ՝ կ'ուզեմ ի-
րեն ցցնել թէ չափահաս մարդ եմ:

1 Թեբացիք կը կարծէին որ Աղեքսանդր դեռ
Մակեդոնիոյ մէջ է. մէյմըն ալ յանկարծ տե-
սան որ եկեր զիրենք պաշարեր է: Ջանաց Աղեք-
սանդր որ քաղցրութեամբ նուաճէ զանոնք.
Միայն ապստամբաց գլխաւորները ձեռքս տուէք,
ու ձեզի կը ներեմ ըսաւ. բայց անոնք ալ ելան
իրմէ իր երկու երեւելի զօրավարները Փիլոտասն
ու Անտիպատրոսը ուզեցին, պարիսպներուն
վրայէն ալ սկսան կանչել թէ Ո՛ր Մակեդոնացի
զինուորն որ Թեբացւոց ու Պարսից թագաւո-
րին կողմը կ'անցնի՝ Յունաստանը աս բռնաւո-
րին ձեռքէն ազատելու, սիրով կ'ընդունինք:

2 Բարկացաւ Աղեքսանդր. չորս կողմէն քա-
ղաքը պաշարեց. զարմանալի քաջութեամբ դէմ
կեցան Թեբացիք, բայց վերջապէս առնուեցաւ
Թեբէ: Պղատէացիք, Փովկիսացիք և Թեսպա-
ցիք՝ որ Աղեքսանդրի զօրաց մէջ էին՝ իրենց վրէ-
ժը Թեբացւոցմէ հանելու յարմար ատեն գտնե-
լով, ոչ կանանց խնայեցին և ոչ տղոց, և ին-

---

1 Թեբացիք ի՞նչպէս դէմ կեցան Աղեքսանդրի:
2 Ի՞նչպէս յաղթուեցան:

չուան մեհեանները փախչողներն ալ սպաննեցին, նոյն կատաղութիւնը ցցուցին նաև Սպարտացիք: Այս սոսկալի կոտորածը ամբողջ օր մը քշեց. վեց հազար Թեբացի մեռան, երեսուն հազար ծախուեցան, և Թեբէն բոլորովին կործանեցաւ (335): Միայն թող չտուաւ Աղեքսանդր որ մեհեանները կործանեն, նմանապէս անկործան պահեց Պինդարոս բանաստեղծին տունը՝ որուն բանաստեղծութիւնները կը սիրէր՝ Հոմերոսի նման ըլլալուն համար, և Եպամինոնդայ տունը՝ ուր իր հայրը մեծցեր էր:

[1] Կ'ըսեն թէ Թեբէն կողոպտելու ատեն զինուորները Տիմոկղէ անունով ազնուական տիկնոջ մը տունը մտնելով ամէն բան յափշտակելէն ետքը, երբոր զօրագլուխնին եկեր անոր հարցուցեր է թէ Ուրիշ տեղ ալ պահծու բան ունի՞ս. — Այո՛, կ'ըսէ Տիմոկղէ, ու զինքը պարտէզը կը տանի ջրհորի մը քով. Հոս լեցուցած եմ կ'ըսէ գանձերս. զօրագլուխը ծռած կը սկսի մէջը նայիլ, Տիմոկղէ ետևէն հրելուն պէս ջրհորը կը նետէ զանիկայ: Կը բռնեն շղթայակապ Աղեքսանդրի կը տանին զինքը: Թագաւորը անոր աներկիւղ քալուածքը տեսնելով կը հարցնէ թէ Դուն ո՞վ ես: Պատասխան կուտայ Տիմոկղէ. Թէագենէս զօրավարին քոյրն եմ, որ Յունաստանի ազատութեանը համար հօրդ հետ պատերազմելով Քերոնէայի պատերազմին մէջ ըն-

---

1 Թեբէի կողոպտուած ատենը ինչ մասնաւոր դիպուած կը պատմուի:

կաւ։ Կը զարմանայ Թագաւորը անոր արիական պատասխանին վրայ, և կը հրամայէ որ ազատ թողուն։

1 Թեբէի կործանման լուրը Աթէնք հասնելուն պէս՝ ամենուն վրայ սարսափն ու յուսահատութիւնը տիրեց։ Մէկէն աղաչաւոր դեսպաններ խրկեցին Աղեքսանդրի որ սիրտը առնուն. Աղեքսանդր ուզեց որ բոլոր իրենց ճարտասանները ձեռքը տան. Դեմոսթենէս աս քանիս դէշ հետեւանքները ցուցընելով՝ յիշեցուց անոնց վարպետութեամբ հովիւներուն առակը՝ որ գայլերուն հետ դաշինք դնելով մատներ են իրենց արթուն պահապանները, այսինքն իրենց հաւատարիմ շները, ու ոչխարները կորսընցուցեր են։ Եւ որովհետեւ Թեբէի մէջ Թափուած արեամբ Աղեքսանդրին վրէժխնդրութիւնը մարած կ'երեւնար, Դեմադէս ճարտասանը Աթենացւոց կողմանէ դեսպան գնաց. Աղեքսանդր անոր ամէն խնդիրքը կատարեց, միայն Քարիդեմոս խռովարար ճարտասանը աքսորել տուաւ, և Աթենացւոց հետ հաշտուեցաւ։

2 Բոլոր Յունաստանի տիրելէն ետքը՝ համաշխարհական ժողով մը գումարեց Կորնթոս, ու անոնց առաջարկեց Պարսից տէրութիւնը նուաճելու մեծ խորհուրդը՝ որ Կիմոն, Ագեսիղայոս և

---

1 Աթենացիք Թեբէի կործանումն որ լսեցին ի՞նչ ըրին։

2 Ի՞նչ կերպով որոշեց Աղեքսանդր Պարսից վրայ երթալու խորհուրդը։

Փիլիպպոս մտածեր էին, ինքը կ'ուզէր կատարել։ Ամէնքը հաւանեցան, ու միաբերան զինքը սպարապետ անուանեցին։ Իշխանք, քաղաքացիք, իմաստասէրք, ամէնքը վազեցին իրեն աս ընտրութիւնը շնորհաւորելու, միայն Դիոգինէս փիլիսոփան պակաս էր։ Անոր ալ անձամբ գնաց Աղեքսանդր, տեսաւ որ արեւուն մէջ կեցած կը տաքնար. հարցուց անոր թէ ի՞նչ կ'ուզես, բանի մը կարօտութիւն ունի՞ս, – Այո՛, ըսաւ Դիոգինէս, աս արեւէս քիչ մը անդին գնա։ Աղեքսանդր ասանկ անոր բանի մը կարօտ չըլլալուն վրայ սքանչացած՝ քովինէրուն դարձաւ, Թէ որ Աղեքսանդր չըլլայի՝ Դիոգինէս կ'ուզէի ըլլալ՝ ըսաւ կ'ըսեն։

1 Աղեքսանդր առանց ժամանակ կորսընցընելու՝ Պարսից դէմ սկսաւ պատրաստութիւն տեսնել։ Քսան հազար զօրքով Անտիպատրոսը թողուց որ Մակեդոնիան ու Յունաստանը հոգայ. իր արշաւանքին համար առաւ երեսունըհինգ հազար հետեւակ, չորս հազար հինգ հարիւր ձիաւոր, ամէնքն ալ իրարմէ քաջ ու պատերազմափորձ մարդիկ. և զօրավար ընտրեց հօրը ձեռքին տակ կրթուած զօրապետները, որոնց գլխաւորներն էին Պարմենիոն՝ և անոր որդիքը Փիլոտաս և Նիկանոր, անոնցմէ զատ Պերդիկկաս, Կղիտոս, Եփեստիոն, Կասանդր, Պտղոմէոս, Կրատեր, որոնց շատը վաթսուն տարեկան էին, և իրենց ժողովը ծերակուտի կը նմա-

---

1 Ի՞նչ պատրաստութեամբ Ասիա անցաւ։

ներ։ Հետը մէկ ամսուան պաշար առաւ, հարիւր վաթսուն ցռկանաւով տորմիղ մը ու եօթանասուն տաղանդ ստակ (389,200 ֆռանք), մէկալ բոլոր ունեցած հարստութիւնը զօրացն ու բարեկամացը բաժնեց, և երբոր հարցուց իրեն Պերդիկկաս թէ Քեզի ի՞նչ մնաց. — Յոյսը՝ ըսաւ Աղեքսանդր։

1 Անցաւ Աղեքսանդր Ելլեսպոնտոսէն (334), գնաց Լամպսակոնի վրայ, որ Պարսից կողմը բռնած ըլլալուն համար կործանէ։ Անաքսիմենէս երևելի փիլիսոփան՝ Աղեքսանդրի և անոր հօրը Փիլիպպոսին բարեկամը, դիմացն ելաւ որ քաղաքին համար աղաչէ. իմացաւ Աղեքսանդր անոր գալուն պատճառը, երդում ըրաւ որ բարեկամութեանը չնայի, խնդրածին հակառակը ընէ։ Անաքսիմենէս ալ գնաց՝ Կը խնդրեմ որ Լամպսակոնը կործանես, ըսաւ։ Ծպտեցաւ Աղեքսանդր, հարկ եղաւ որ երդումը կատարէ։

2 Անկէ հասաւ Աղեքսանդր Իլիոն, որ է Տրոյիա, ու Աքիլլեսի գերեզմանին չորս կողմը խաղեր խաղցընել տուաւ. Երանի՜ քեզի Աքիլլէս, ըսաւ, որ Հոմերոսի պէս անունդ հռչակող մը ունեցար։ Ան ատեն բանաստեղծին մէկն ըսաւ իրեն թէ Տէր արքայ, Հոմերոսէն ալ լաւ պիտի գրենք մենք քու գործքերդ։ Պատասխան տուաւ Աղեքսանդր. Աւելի կ'ուզէի Հոմերոսի

---

1 Լամպսակոն քաղաքն ինչ կերպով ազատեցաւ կործանմանէ։

2 Իլիոն որ հասաւ ինչ ըրաւ Աղեքսանդր։

պատմութեանը մէջ Թերսիտէս ըլլալ, քան թէ քուկինին մէջ Աքիլլէս։ Անկէց եկաւ Գրանիկոն գետին քով։

1 Մեմնոն Հռոդացին՝ Դարեհի զօրավարներուն մէջ ամենէն քաջն ու հմուտը՝ խրատ տուաւ մէկալ զօրավարներուն որ պատերազմի ձեռք չզարնեն. Դաշտերն ու քաղաքները ապականենք կ՚ըսէր, որ Աղեքսանդրին զօրքը սովէն ջարդուին։ Անոնք մտիկ չըրին, հարիւր հազար հոգւով Գրանիկոն գետին քով կեցան որ Աղեքսանդր չկարենայ գիմացն անցնիլ։ Աղեքսանդր անոնց անձրեւի պէս եկած նետերուն մէջէն գետը նետուեցաւ, զօրքն ալ ետեւէն, անցան գետը ու պատերազմը սկսաւ։ Զարմանալի քաջութիւններ ըրաւ Աղեքսանդր. Դարեհի յաղթահասակ եղբօրը հետ մենամարտելով սաստիկ վիրաւորեց զանիկայ, բայց քիչ մնաց որ ինքն ալ պիտի մեռնէր. վասն զի Պարսից նախարար մը կացինը իջեցուց Աղեքսանդրի սաղաւարտին վըրայ, ու ինչուան անոր մազը հասուց. երբոր մէյմըն ալ վերցուց ձեռքը որ զարնէ, ետեւէն հասաւ Կղիտոս, անոր ձեռքը կարեց, ու իր տիրոջը կեանքը ազատեց։ Մակեդոնացիք առով աւելի սիրտ առին ու բոլորովին ցրուեցին թշնամիները։

2 Անկէց գնաց Փռիւգիոյ տիրեց. անոր Գորդիոն մայրաքաղաքին մէջ Գորդիոս թագաւորին

---

1 Գրանիկոնի պատերազմն ինչպէս եղաւ։
2 Գորդիոն քաղաքին մէջ ինչ ըրաւ Աղեքսանդր։

հռչակաւոր կառքը կար, ան կառքին ղեկին վրայ անանկ վարպետութեամբ կապուած հանգոյցներ կային որ ծայրերնին ամենեւին չէր իմացուեր։ Պատգամ ելեր էր թէ Ո՛վ որ ան հանգոյցը քակէ՝ արեւելքի պիտի տիրէ։ Աղեքսանդր քակելու շատ աշխատելէն ետեւ երբոր չկրցաւ, Ի՞նչ փոյթ է ինչպէս քակուիլը ըսաւ, ու թրովը կտրեց քակեց։ Անկէց սկսաւ Կապադովկիոյ վրայ երթալ։

1 Դարեհ՝ Մեմնոն Հռոդացւոյն խորհրդովը Մակեդոնիոյ վրայ ուզեց վազել, որպէս զի Աղեքսանդր պարտաւորուի իր երկիրը դառնալու։ Ուստի շատ զօրքով ու նաւատորմիղով Մեմնոնը խրկեց որ ինչուան Եւբէա կղզին հասաւ, ու հոն մեռաւ. Դարեհ ալ իր ընդարձակ տէրութեանը մէջ զօրավար մը չգտաւ որ ան իմաստուն և քաջ զօրավարին տեղը դնէ։ Իսկ Աղեքսանդր այնպիսի ահաւոր թշնամւոյն ձեռքէն ազատած՝ բոլոր Յոնիոյ քաղաքները ազնուապետութիւն հաստատելէն ետքը՝ Կիլիկիա մտաւ ու Տարսոն քաղաքն առաւ (333)։ Հոն Կիւդնոս գետին մէջ ուզեց լուացուիլ. և որովհետեւ ինքը քրտնած էր ու ջուրը շատ պաղ, վրան սաստիկ դող մը եկաւ ու ինքզինքը կորսնցուց։ Կիսամեռ հանեցին զինքը գետէն վրանը տարին, բոլոր զօրքը չորս կողմն առած կուլային։ Երբոր քիչ մը զգաստացաւ, ըսաւ թէ

---

1 Կիլիկիոյ ի՞նչպէս տիրեց, և հոն ի՞նչ պատահեցաւ իրեն։

Թշնամեաց մօտ ըլլալնուս համար զօրաւոր դեղեր կ'ուզեմ, որ կամ շուտով առողջանամ և կամ շուտով մեռնիմ: Երբոր ուրիշ բժիշկները վախէն ձեռքերնին քաշեցին, Փիլիպպոս՝ որ պզտիկուց 'ի վեր Աղեքսանդրի բժիշկն էր ու զինքը շատ կը սիրէր՝ յանձն առաւ անոր դեղ տալ:

1 Այն միջոցին թուղթ մը եկաւ Պարմենիոնէն Աղեքսանդրի թէ Փիլիպպոս բժիշկդ Պարսիցմէ կաշառուած է ու զքեզ պիտի թունաւորէ: Երբոր Փիլիպպոս պատրաստած դեղը բերաւ անոր տուաւ որ խմէ, հանեց Աղեքսանդր թուղթը՝ մեծանձնութեամբ անոր ձեռքը տուաւ որ կարդայ, և երեսին այլայլութիւնը դիտելով՝ առաւ գաւաթը խմեց: Փիլիպպոս սաստիկ նեղացաւ. Տէր արքայ, քու առողջանալդ զիս պիտի արդարացընէ՝ ըսաւ: Իրաւցընէ. իրեք օրէն ետքը առողջացաւ Աղեքսանդր. ու գնաց զօրացը մէջ պտըտելով զամէնքը ուրախացուց:

2 Մեծ պատրաստութիւն տեսաւ Դարեհ Աղեքսանդրի հետ զարնուելու. մեր Վահէ թագաւորէն ալ քառասուն հազար հետեւակ և եօթը հազար ձիաւոր օգնութիւն առած՝ վեց հա-

---

1 Աղեքսանդր հիւանդութեանը ատեն ի՞նչ վեհանձնութիւն ըրաւ:

2 Դարեհ ի՞նչ պատրաստութիւն ըրաւ Աղեքսանդրի դէմ: — Իսսոսի քով պատերազմը ի՞նչպէս եղաւ: — Աղեքսանդր Դարեհի ընտանեացը հետ ի՞նչպէս վարուեցաւ:

րիւր հազար զօրքով եկաւ Կիլիկիոյ Իսսոս քաղաքին քով բանակը դրաւ։ Աղեքսանդր առաջ Պարսից թեւին յաղթեց որուն ինքը Դարեհ կը զօրավարէր, մէջտեղը տկարացուց, ու աջ թեւն ալ զարկաւ ցրուեց։ Դարեհ թողուց իր բանակը, Սիսիգամբիս մայրը, կինը, երկու աղջիկը, և պզտիկ տղան և բոլոր հարստութիւններն ու փախաւ։ Աղեքսանդր թագաւորական ազգատոհմին հետ ամենայն քաղցրութեամբ, պատուով ու համեստութեամբ վարուեցաւ. անձամբ ալ գնաց իր Եփեստիոն բարեկամին հետ զանոնք մխիթարելու։ Սիսիգամբիս երբոր բարձրահասակ Եփեստիոնը տեսաւ, թագաւորը կարծելով ոտքն ընկաւ շնորհակալ ըլլալու, բայց երբոր իմացաւ թէ ան չէ եղեր թագաւորը, սկսաւ թողութիւն խնդրել սխալանացը. Զէ, չսխալեցար դշխոյ մայր, ըսաւ Աղեքսանդր, ինքն ալ մէկ Աղեքսանդր մըն է։

1 Մեր Վահէ թագաւորը լսելով որ Դարեհի զօրքը ջարդուեր՝ ինքն ալ փախեր է, ուզեց անձամբ Աղեքսանդրի դէմ ելլել. բայց պատերազմին մէջ ընկաւ մեռաւ, և Աղեքսանդր Հայաստանի ալ տիրեց։

2 Անկեց ետքը Ասորւոց երկիրն ալ առաւ Աղեքսանդր, ու Դամասկոսի մէջ պահած գտաւ Դարեհի գանձերը։ Բոլոր ան կողմի մանր թա-

---

1 Վահէ ինչպէս յաղթուեցաւ Աղեքսանդրէն։
2 Ասորւոց երկիրն ինչպէս տիրեց Աղեքսանդր։
— Ո՞վ էր Աբդողոնիմոս։

գաւորները իրենց թագաւորական հագուստներովը առջեւն ելան պատուով, ինքն ալ զանոնք իրենց իշխանութեանցը մէջ հաստատեց. միայն Սիդոնացիք որովհետեւ իրենց թագաւորին վրայ գոհ չէին՝ անիկայ ուզեց փոխել, ու Եփեստիոնին յանձնեց որ անոնց ուզած թագաւորը տայ իրենց: Սիդոնացիք Աբդողոնիմոսն ընտրեցին, որ թէպէտ թագաւորական ցեղէ էր, բայց աղքատ ըլլալով՝ պարտիզպանութիւն կ'ընէր: Եփեստիոնի խրկած մարդիկը գնացին տեսան որ պարտէզը կը մաքրէ. Աբդողոնիմոս ալ առջի բերանէ չհաւատաց, երբոր տեսաւ որ վրայի պատըռուած վերարկուն բռնի հանելով՝ ոսկեթել ծիրանի կը հագցընեն, հաւատաց ու ելաւ պալատը եկաւ: Աղեքսանդր հարցուց իրեն թէ Ի՞նչպէս կը համբերէիր աղքատութեանդ: Պատասխան տուաւ Աբդողոնիմոս. Երանի՛ թէ թագաւորութեանս մէջ ալ այնչափ ուրախ կարենամ ըլլալ. աս ձեռքերուս աշխատութեամբը ամէն ուզածս կը գտնէի. բան չունէի, ու բանի մը կարօտ չէի:

# ԳԼՈՒԽ ԺԳ.

Տիւրոսի առումը. — Աղեքսանդրի Երուսաղէմ երթալը. — Գազա. — Եգիպտոսի փոխելը. — Արբելայի պատերազմը. — Աղեքսանդր Բաբելոնի ու Պերսեպօլիսի կը փոխէ. — Դարեհի փախուստն ու մահը. — Աղեքսանդրի անգթութիւնները. — Կլիտոսի մահը. — Կալլիսթենեսի մահը. — Աղեքսանդր Հնդկաստանի կը փոխէ. — Տաքսիլաս. — Պորոս. — Աղեքսանդր Հնդկաստանէն կը դառնայ. — Արբաղ. — Աղեքսանդրի Բաբելոն դառնալը. — Աղեքսանդրի մահը:

1 Փիւնիկէի ամէն քաղաքները հնազանդեցան Աղեքսանդրի. միայն Տիւրացիք անոր դեսպանները սպաննեցին ու ծովը նետեցին: Տիւրոս քաղաքը կղզի մըն էր՝ ցամաքէն չորս ասպարէզ հեռու, որուն առնելու համար բազմաթիւ նաւատորմիղ պէտք էր: Աղեքսանդր հրաման տուաւ որ քարերով, ծառերով ու հողով լեցընեն ծովը, կղզին ցամաքին հետ կպցընեն. երբոր ան թումբը լմըննալու վրայ էր՝ Տիւրացիք ու ծովուն ալիքները զարկին աւրեցին: Զյու-

1 Աղեքսանդր ինչպէս Տիւրոսը պաշարեց ու առաւ:

սահատեցաւ Աղեքսանդր․ նորէն չինել տուաւ, ծովէն ցամաքէն պաշարումը սաստկացուց, եօթը ամիսէն ետքը Տիւրոսն առաւ, ու հրաման տուաւ որ կողոպտեն․ բնակչաց մէկ մասը սպաննուեցան, մէկ մասն ալ գերի ծախուեցան։

1 Դարեհ նորէն Աղեքսանդրի դեսպան խրկեց․ ուզեց հետը հաշտութիւն ընել՝ խոստանալով որ իր աղջիկն ու տէրութեանը կէսը իրեն տայ։ Պարմենիոն ըսաւ թէ Ես թէ որ Աղեքսանդր ըլլայի յանձն կ՚առնուի․ – Ես ալ, ըսաւ Աղեքսանդր, թէ որ Պարմենիոն ըլլայի․ ու չընդունեցաւ հաշտութիւնը՝ ըսելով թէ Ինչպէս որ չկրնար երկինքը երկու արեգակ ըլլալ, անանկ ալ Ասիոյ վրայ երկու թագաւոր պիտի չըլլայ, կամ դուն պիտի թագաւորես կամ ես։

2 Հրեայք Պարսից հետ դաշնադրութիւն ունենալով՝ հաւատարիմ մնացին ու չուզեցին Աղեքսանդրին օգնել։ Աղեքսանդր բարկութեամբ դիմեց Երուսաղեմի վրայ, միտքը դնելով որ քաղաքը կործանէ ու բնակիչքը թրէ անցընէ․ բայց Աստուած անոր միտքը փոխեց։ Յադդոս քահանայապետը ճամբաներուն վրայ ծաղիկներ սըփռած ու չորս կողմը քահանաներն ու ժողովուրդը առած՝ մեծ հանդիսով Աղեքսանդրի առջեւն ելաւ։ Աղեքսանդր զքահանայապետը տեսնելուն պէս՝ յիշեց ան մարդը որ Մակեդոնիա

---

1 Դարեհ երբոր ուզեց հաշտութիւն ընել՝ ի՞նչ ըրաւ Աղեքսանդր։
2 Հրէից հետ ի՞նչպէս վարուեցաւ։

եղած տաճարը իրեն տեսնելով երեւցեր ըսեր էր որ երթայ Ասիոյ տիրէ. և անոր ճակտին վրայ Աստուծոյ ոսկեգիր անունը տեսնելով՝ իջաւ ձիէն երկրպագութիւն ըրաւ. տաճարը մտաւ, Աստուծոյ զոհ մատոյց, տեսաւ Դանիէլ մարգարէին իրեն յաղթութեանցը համար ըրած մարգարէութիւնները, շատ ուրախացաւ, և Հրէից զանազան ազատութիւններ տալով Եգիպտոս երթալու ճամբայ ելաւ։

1 Փղշտացւոց մայրաքաղաքը Գազա՝ Տիւրոսին պէս չուզեց հնազանդիլ, բայց ան ալ առնուեցաւ։ Անոր Բետիս անունով քաղաքապետը բռնեց Աղեքսանդր, և Աքիլլեսի անգթութեանը նմանիլ ուզելով՝ կառքին ետևէն կապեց, ու իրեք անգամ Գազային պարսպաց չորս կողմը պտըտեցաւ։

2 Եգիպտացիք Պարսից տուած նեղութիւններէն ձանձրացած՝ սիրով ընդունեցան Աղեքսանդրը, և իբրև իրենց ազատարարը յաղթանակով զինքը Մեմփիս տարին. ինքն ալ անոնց շատ ազատութիւններ տուաւ ու վրանին Եգիպտացի իշխան մը դրաւ։ Ետքը միտքը դրաւ Աղեքսանդր որ երթայ Լիբիոյ ովասիսն ու Արամազդայ Ամմոնի տաճարը տեսնէ։ Նեղոսէն նաւով ծովը իջաւ, Փարոս կղզւոյն դիմացը ուզեց քաղաք մը կանգնել, և յատակագիծն ինքը տալով անունը դրաւ Աղեքսանդրիա (331). ետքը ա-

---

1 Գազա քաղաքին ի՞նչպէս տիրեց։
2 Եգիպտոսն ի՞նչպէս առաւ։

ւազուտ անապատին ճամբան շարունակելով՝ շատ նեղութեամբ հասաւ Ամմոնի տաճարը։ Ներս մտնելուն պէս՝ քրմապետը Թագաւորին միտքը հասկցաւ, ու մէկէն զինքը որդի Արամազդայ կանչեց, շատ ուրախացաւ Աղեքսանդր, և երբոր հարցուց թէ Հօրս սպաննողները իրենց պատիժը գտա՞ն թէ չէ, սաստեց քրմապետը. Կը հայհոյես, ըսաւ, քու հայրդ Արամազդ անմա՜հ է. իսկ Փիլիպպոսը սպաննողները պատիժնին քաշեցին։ Առատ պարգևներ տուաւ անոր Աղեքսանդր, և անկեց եաքը անմիտ փառասիրութեամբ ինքզինքը աստուածորդի սեպելով՝ սկսաւ նամակներուն տակը ասանկ ստորագրել. Արամազդայ Ամմոնի որդի Աղեքսանդր արքայ։ Իր Ողիմպիա մայրը կատակով մը զինքը խրատել ուզելով գրեց իրեն. Բաւական է, ալ մի գրըգռեր զիս Հերային դէմ։

1 Ետքոր Աղեքսանդր հաշտութիւն ընել չուզեց, Դարեհ յուսահատած՝ պատերազմի պատրաստուեցաւ. երկու զօրքը Ասորեստանի մէջ Արբեղա քաղաքին քով ճակատեցան, Խրատ կռուային Աղեքսանդրի որ գիշերանց պատերազմի. Յաղթութիւնը չեմ ուզեր գողնալ՝ ըսաւ, ու հանգիստ մտաւ վրանը քնացաւ։ Երկրորդ օրը պատերազմը սկսաւ. աջ թևը՝ որուն զօրավարն էր ինքն Աղեքսանդր՝ յաղթեց, բայց ձախ թևը՝ որուն զօրավարն էր Պարմենիոն՝ զարնուեցաւ, Պարսից ձիաւորներն ալ Մակեդոնացւոց

---

1 Արբեղայի պատերազմն ինչպէս եղաւ։

բանակը վաղեցին ։ Աղեքսանդր իր զօրացը Ջարդն որ տեսաւ, աչուըները դարձան, կատաղութեամբ պատերազմին սաստկացած տեղը յարձակեցաւ, վաղեց ինչուան Դարեհի քովը հասաւ, անոր Թիկնապահը գետին փռեց ։ Պարսիկները կարծեցին թէ իրենց Թագաւորն է մեռնողը, սկսան լալ ու ողբալ. ան ձայնէն Պարսից յաղթական գունդերն ալ թուլցան ։ Դարեհ Աղեքսանդրը իր քովը տեսնելով՝ սարսափեցաւ, ցատքեց կառքէն, ձգեց վրայէն, Թագաւորական ծիրանին, ու ձի մը հեծաւ փախաւ ։ Ան միջոցին Աղեքսանդր կայծակի պէս վաղեց Պարմենիոնին օգնութեան հասաւ, բոլորովին յաղթեց Պարսից և տիրեց Ասիոյ (331) ։

1 Աղեքսանդր չուղելով Դարեհի ետևէն իյնալ, Արբեղա քաղաքն առնելէն ետքը Պարսից մայրաքաղաքին վրայ սկսաւ երթալ, տիրեց Բաբելոնի և Շօշ ու Պերսեպօլիս քաղաքներուն. Պերսեպօլիսի մէջ գտաւ Պարսից Թագաւորներուն դիզած ոսկիները, քիչ բան իրեն համար պահեց, բոլոր մնացածը զօրացը բաժնեց ։ Բայց Պարսից պէս զօրաւոր ազգի մը յաղթող Թագաւորը իր մոլութիւններէն յաղթուեցաւ ։ Փառքն ու գովասանքները մոռցուցին իրեն պարտքերն, ու սկսաւ Պարսից զեղխութեանը հետևիլ. կոչունքի մը մէջ ալ գլուխը տաքցած՝ Թայիս անունով անզգամ կնկան մը խօսքովը ջահ մը առաւ ձեռքը, վաղեց կրակ տուաւ այրեց Քսերքսեսի հռչակաւոր պալատը ։

---

1 Արբեղայի պատերազմէն ետքը ի՞նչ ըրաւ ։

1 Ցրուած զօրքը նորէն ժողվեց Դարեհ, մէյմըն ալ ուզեց բաղդը փորձել, բայց Աղեքսանդրէն սպասած մահը իր զօրքէն գտաւ: Բակտրիոյ նախարարը Բեսսոս, և Նաբարզան զօրապետը՝ բռնեցին զինքը շղթաներով կապեցին: Երբոր լսեցին թէ Աղեքսանդր իրենց ետևէն կը հասնի, ստիպեցին Դարեհը որ հետերնին փախչի. Դարեհ չուզեց ապստամբ ծառայիցը հետ երթալ, Բեսսոս ալ բարկացաւ, նետով զարկաւ զինքն ու կիսամեռ թողուց փախաւ: Հասաւ Աղեքսանդր, տեսաւ որ Դարեհ արիւնլուայ գետինը փռուած՝ վերջին շունչը կուտայ, սաստիկ սիրտը եղաւ, վրան ընկաւ շատ լացաւ, և անոր մեռնելէն ետքը իր ծիրանիովը վրան գոցեց, ու հրամայեց որ արքայավայել թաղում ընեն Դարեհի (330):

2 Աս յաղթութիւններով Աղեքսանդրի պակասութիւններն ալ հետզհետէ դուրս կ՚ելլէին: Դաւաճանութիւն մը եղաւ զօրացը մէջ. թագաւորին սիրելի զօրավարը Փիլոտաս իմացաւ, բայց սուտ կարծելով ձայն չհանեց. անոր թշնամիները իմացուցին թագաւորին ու զինքն ալ դաւակցաց կարգը դրին: Մոռցաւ Աղեքսանդր Փիլոտասին իր վրայ ունեցած սէրն ու անոր ծառայութիւնները, և սպաննել տուաւ զինքը: Գիտնալով ալ որ Փիլոտասին հայրը Պարմենիոն

---

1 Դարեհ ի՞նչպէս մեռաւ:

2 Աղեքսանդր ի՞նչ անիրաւ սպաննութիւններ ըրաւ:

հարկաւ իր որդւոյն անիրաւ մահուանը վրէժխնդիր պիտի ըլլար, մոռցաւ Աղեքսանդր անոր ալ առաքինութիւնը, ծերութիւնը, հաւատարմութիւնը, հօրը և իր տանը ըրած այնչափ յաղթութիւնները, ու միտքը դրաւ որ անոր կեանքն ալ վերցընէ։ Եւ որովհետև Պարմենիոն Մարաստանի կուսակալ էր և Թագաւորական գանձը իր ձեռքն էր, Աղեքսանդր բարեկամական թուղթ մը գրեց անոր, և ան միջոցին որ անիկայ թուղթն առած սիրով կը կարդար ու թագաւորին կենաց երկարութիւնը կը մաղթէր, զարկին զինքը սպաննեցին։

1 Բեսոս Բակտրիա գնացեր թագաւորեր էր, ու Աղեքսանդրի տիրած երկիրները կ'աւրըշտըկէր։ Հասաւ Աղեքսանդր Բակտրիա, անոր մայրաքաղաքն առաւ, Ոքսոս գետէն անդին անցաւ, ու Բեսոսի բարեկամը Սպիտամէն զինքը Աղեքսանդրին ձեռքը մատնեց. ան ալ Դարեհի մահուան վրէժն առնելու համար՝ ձիու պոչին կապեց Բեսոսն ու կտոր կտոր ըրաւ։

2 Սոգդիանէ գաւառը ապստամբեր էր, գնաց նուաճեց Աղեքսանդր, ու Յաքսարտ գետին վըրայ քաղաք մը շինեց, անունը դրաւ Աղեքսանդրիա վերջին։ Անցաւ Յաքսարտ գետէն, գնաց մեծ յաղթութիւն մը ըրաւ Սկիւթացւոց վրայ, որ ինչուան ան ատենը անյաղթելի կը կարծուէին. ու Պարսիկ նախարարի մը Հռոքսանէ աղջիկը իրեն կին առաւ (328)։

---

1 Բակտրիոյ ինչպէս տիրեց։
2 Սկիւթացւոց ինչպէս յաղթեց։

¹ Կղիտոս՝ որ Աղեքսանդրի կաթնեղբայրն էր, ու Գրանիկոն գետին քով անոր կեանքը ազատեր էր, կուսակալ պիտի մնար Սոգդիանէի: Աղեքսանդր իր բարեկամէն բաժնուելէն առաջ ուզեց անոր փառաւոր սեղան մը ընել. Հոն Աղեքսանդրին գլուխը չափէն աւելի տաքցած՝ սկսաւ իր քաջութիւնները գովել ու Փիլիպպոսինները վար զարնել: Կղիտոս պաշտպանեց Փիլիպպոսն ու ըսաւ թէ Որչափ որ դուն յաղթութիւն ըրեր ես՝ հօրդ զօրավարներուն ձեռքովը ըրեր ես. Պարմենիոնին մահն ալ յիշելով ապերախտ կանչեց զինքը: Թագաւորը հրամայեց իրեն որ շուտով սեղանէն ելլէ, ու վատ և մատնիչ կանչեց զինքը: Ան ատեն Կղիտոս բոլորովին ինքզինքը կորսնցուցած՝ ըսաւ. Սակայն աս վատ կանչած մարդիկդ են որ քեզի այնչափ յաղթութիւններ ընել տուին, աս արհամարհուած բազուկներն են որ Գրանիկոնի քով կեանքդ ազատեցին. բայց քեզի ճշմարտութիւն հասկըցընելը անկարելի է. զքեզ պաշտող բարբարոսաց հետ պէտք է ապրիս, որ պարսիկ պատմուճանիդ առջև ընկած երկրպագութիւն կ՚ընեն: Շատ ջանացին Աղեքսանդրը բռնել, ճար չեղաւ, քաշեց նիզակն ու զարկաւ սպաննեց Կղիտոսը: Աղեքսանդրի գինովութիւնը շուտ մը անցաւ, ու բարկութիւնը մարեցաւ, ընկաւ կիսամեռ բարեկամին մարմնոյն վրայ, նիզակը սըրտէն հանելով իր սիրտը կ՚ուզէր խոթել. Թէկ-

---

¹ Կղիտոսն ինչո՞ւ համար ու ինչպէս մեռաւ:

նապահները հասան ձեռքէն առին, զինքն ալ պալատը տարին. հոն երկու օր գետին ընկած անմխիթար կուլար կ'ողբար, ու կ'ուզէր անօթի կենալով մեռնիլ։

[1] Այն մարդասպանութիւնէն ետքը ուրիշ մարդասպանութեան մը մէջ ալ ընկաւ։ Հնդկաստանի ալ երթալ տիրել ուզելով՝ առաջ պահանջեց որ Մակեդոնացիք աստուծոյ պէս պաշտեն զինքը, որպէս զի ամէն ըսածը կատարեն. Կալլիսթենէս փիլիսոփան յանձն չառաւ, ու զուրիշներն ալ համոզեց որ պէտք չէ մահկանացու մը երկրպագութիւն ընել։ Բարկացաւ վրան Աղեքսանդր, ու դաւաճանութեան կուսակից սեպելով զինքը՝ երկըթէ վանդակի մը մէջ դնել տուաւ, ուր սաստիկ տանջանքներու մէջ իր անմեղութիւնը խոստովանելով մեռաւ Կալլիսթենէս։ Կ'ըսեն թէ Կալլիսթենեսի աշակերտն ու բարեկամը Լիւսիմաքոս՝ զինքը ազատելու համար ամէն ջանք ընելէն ետքը երբոր չկրնար՝ թոյն կուտայ որ շուտով մեռնի, տանջանքներէն ազատի։ Թագաւորը անոր ալ կը բարկանայ, ու կը հրամայէ որ Լիւսիմաքոսը առիւծի մը առջեւ նետեն. կատաղի գազանը վրան յարձըկելուն պէս՝ Լիւսիմաքոս մէկէն վերարկուն ձեռքը պըլլած՝ անոր բերանը կը խոթէ, ու լեզուն կը քաշէ կը փրցընէ։ Աս քաջութեան վրայ շատ կը զարմանայ Աղեքսանդր, զինքը մահուանէ կ'ազատէ ու ինչուան ետքը կը պատուէ։

---

[1] Կալլիսթենէսն ինչ պատճառաւ սպաննեց։

1 Աղեքսանդր Հնդկաստան մտնելու պէս (327) թագաւորներէն շատը իրեն հնազանդեցան. քաղաքի մը պաշարման ատենը նետով մը զարնուելով՝ քաշած սաստիկ ցաւէն իմացաւ որ աստուած չէ եղեր կ՚ըսեն։ Տաքսիլէս՝ Հնդկաստանի զօրաւոր թագաւորներէն մէկը, Աղեքսանդրի հետ դաշինք դնելով՝ անցքը մտաւ, ու զօրքով ալ անոր օգնական եղաւ. բայց Պորոս քաջարի թագաւորը չուզեց մէկէն իր ազատութիւնը ձեռք տալ, և շատ զօրքով ու փղերով Հիդասպ գետին եզերքը եկաւ բանակեցաւ։

2 Աղեքսանդր շատ փորձեր ընելէն ետքը՝ երբ որ տեսաւ որ ինչուան գետին մէկալ կողմը չանցնի կարելի չէ յաղթելը, մութ գիշեր մը սաստիկ փոթորիկի ժամանակ գետէն անցաւ ու Հնդկաստանցւոց վրայ յարձակեցաւ. շատ քաջութեան պատերազմեցաւ Պորոս, բայց իր զօրքերը յաղթուեցան փախան, Պորոսն ալ վիրաւորուած ձեռք ընկաւ։ Երբոր Աղեքսանդրի առջեւը բերին, հարցուց իրեն թէ ինչպէս կ՚ուզես որ հետդ վարուիմ. պատասխան տուաւ Պորոս թէ ինչպէս որ կը վայելէ թագաւորի մը հետ վարուիլ։ Աղեքսանդր զարմացաւ անոր մեծապատուութեանը վրայ, նորէն տէրութիւնը իրեն դարձուց, ու հետը բարեկամութեան դաշինք դրաւ։

---

1 Հնդկաստան ինչպէս մտաւ։

2 Պորոսի ինչպէս յաղթեց։

1 Պօղոսին յաղթած տեղը երկու քաղաք շինել տուաւ, մէկուն անունը դրաւ Նիկիա որ յաղթութիւն ըսել է, մէկալինը Բուկեփաղ, որովհետեւ հոն մեռեր էր իր Ցլագլուխ երիվարը։ — Կը պատմեն թէ Իսգասպ գետէն անցնելու ատենը կը նայի Աղեքսանդր որ իրեն անուանակից զինուորին մէկը կեցեր կը վախնայ գետը նետուելու. կը բռնէ Աղեքսանդր անոր ձեռքէն, Կամ անունդ փոխէ, կ'ըսէ, և կամ սիրտդ։ Մէկէն զինուորը գետը կը նետուի։

2 Աղեքսանդր կ'ուզէր Գանգէս գետէն ալ անդին անցնիլ ու հոն տեղի երկիրներուն տիրել. բայց Յունաց ու Լակեդեմոնացւոց համբերութիւնը հատեր էր. չուզեցին հետը երթալ։ Շատ ջանաց Աղեքսանդր աղաչանքով ու սպառնալիքներով որ անոնց միտքը փոխէ. բանի գնաց՝ ապստամբութիւնը մեծցաւ։

3 Իսգասպ գետէն նորէն զօրքը անցուց Ինչուան Ինդոս գետը, ու բոլոր Ճամբուն վրայ եղած երկիրներուն տիրեց. Ոքսիդրակաց քաղաքը պաշարած ատենը՝ մինակ գնաց պարսպէն անցաւ՝ վար ցատքեց քաղաքին մէջ, ու ծառի մը կռթընած՝ հարիւրաւոր մարդիկ գետինը փռեց.

---

1 Պօղոսին յաղթած տեղը Աղեքսանդր ի՞նչ քաղաքներ շինեց։

2 Ինչուա՞ն ո՞ւր կ'ուզէր երթալ Հնդկաստանի մէջ։

3 Ոքսիդրակաց քաղաքը պաշարած ատենը ի՞նչ քաջութիւն ըրաւ։

բայց ինքն ալ նիզակով մը զարնուած՝ քիչ մնաց որ յանդգնութեանը զոհ պիտի ըլլար՝ թէ որ զօրքը մէկէն եռալէն չհասնէին զինքը չազատէին.

1 Ինդոս գետէն անցաւ եկաւ Հնդկային Ովկիանոսը. և սաստիկ ուրախացած՝ Պոսիդոնի զոհեր ըրաւ ու ոսկի բաժակներ նետեց ծովը: Ետքը նաւատորմիղը Նէարխոսին յանձնեց որ Պարսկաստան տանի, ինքն ալ ցամաքային զօրքն առած՝ Գեդրոսիայէն ու Կրմանէն անցնելով Բաբելոն դարձաւ:

2 Աղեքսանդր Հնդկաստան երթալու ատենը Արբաղ անունով մէկը Բաբելոնի վրայ կուսակալ դրեր էր. ատիկայ կարծելով թէ Աղեքսանդր չիրնար մէյմըն ալ ետ դառնալ՝ ամէն ուզածը ըրեր էր. երբոր լսեց թէ Աղեքսանդր կուգայ՝ շատ ստակ առաւ Ատտիկէ փախաւ, ու սկսաւ հոն մէկուն մէկալին կաշառք կերցընելով իրեն կուսակից ժողվել. Փոկիոնն ալ ուզեց կաշառել՝ բայց ճար չեղաւ: Կ'ըսեն թէ Դեմոսթենէսն ալ ուզեր է կաշառք կերցընել ու չէ կըրցած. բայց քանի մը օրէն երբոր Արբաղ իր ազնիւ ամանները կը զննէ եղեր՝ տեսեր է որ Դեմոսթենէս գաւաթի մը վրայ աչք ձգած կը նայի. կ'ըսէ իրեն թէ Մէյմը ձեռքդ առ նայէ որչափ ոսկի կայ վրան: Դեմոսթենէս գաւաթը ձեռքը կ'առնէ ու ծանրութեանը վրայ զարմանալով կը

1 Ի՞նչպէս դարձաւ Բաբելոն:

2 Արբաղայ մահուանը ո՞րն է: — Դեմոսթենէսն ի՞նչպէս կաշառեց:

հարցընէ թէ Ո՞րչափ կը կշռէ. Արբաղ ժպտե-լով կ'ըսէ. Քսան տաղանդի չափ. և նոյն իրի-կունը քսան տաղանդին հետ գաւաթը Դեմոս-թենեսի տունը կը խաւրէ. ան ալ կ'առնէ ու Արբաղին կողմը կ'անցնի: Երկրորդ օր Դեմոս-թենէս վիզը լաթեր պլլած՝ կ'ելլէ ժողովի կու-գայ: Ժողովուրդը կը հրաւիրէ զինքը որ ելլէ խօսի. կը հրաժարի Դեմոսթենէս, Ձայնս մա-րեր է կ'ըսէ: Անդիէն քանի մը ծաղրածու մար-դիկ, որ բանը իմացեր էին եղեր, Աս գիշեր, կ'ը-սեն, Ճարտասանին ձայնը չէ թէ փողացաւէն մարեր է, հապա փողասիրութենէն: Արբաղ Ա-թենքէն քշուեցաւ, Դեմոսթենէսն ալ Տրեզե-նէ փախաւ:

1 Աղեքսանդր Բաբելոն մտնելէն առաջ մէյմըն ալ ուզեց Եկբատան երթալ, և հոն մեռաւ իր ամենէն սիրելի բարեկամը Եփեստիոն: Շատ ցա-ւեցաւ վրան Աղեքսանդր, և Բաբելոն հասնե-լուն պէս՝ թագաւորավայել յուղարկաւորու-թիւն ըրաւ անոր, տաճարներ կանգնեց, ու աս-տուծոյ պէս զանիկայ պաշտել տուաւ:

2 Երբոր Աղեքսանդր Բաբելոն մտաւ՝ բոլոր Եւրոպա ու Ասիա բնակող ազգաց դեսպաննե-րը իրեն ուրախակցութեան եկան: Կորնթացւոց դեսպաններն ալ իրենց ազգին կողմանէ քաղա-քակցութեան պատիւ տուին իրեն. սկսաւ թա-գաւորը ծիծաղիլ. բայց երբոր իմացաւ որ ին-

---

1 Եկբատան որ գնաց՝ ի՞նչ պատահեցաւ:
2 Բաբելոնի մէջ ի՞նչ ըրաւ:

ըրուած են ատենը աս պատիւը Հերակղեսի միայն տուեր են՝ ուրախութեամբ ընդունեցան։ Քիչ մը ատեն Բաբելոնը զարդարելէն ետքը սկսաւ նոր աշխարհակալութիւններու պատրաստութիւն տեսնել. վասն զի Իտալիոյ, Սիկիլիոյ և Կարքեդոնի ալ տիրելու միտք ունէր։ Չէր գիտեր որ իր վախճանը հասեր էր։

¹ Մեծ խնջոյքի մը ատեն Հերակղի բաժակովը (որ շատ խոշոր աման մըն էր) քանի մը անգամ գինի խմելէն ետքը՝ բոլորովին խելքը կորսընցուց. կիսամեռ գետին ընկաւ ու վրան սաստիկ ջերմ ու դող եկաւ։ Մէկէն ատքին պալատը տարին, ու անկարելի եղաւ զինքը առողջացընել։ Զօրքը կը փափաքէին մէյմըն ալ զինքը տեսնելու. Աղեքսանդր ուժ տուաւ ինքն իրեն, կռթընեցաւ թևին վրայ, ու զօրքը լալով եկան ձեռքը պագին։ Հանեց ձեռքէն մատանին Պերդիկկասին տուաւ. և երբոր հարցուցին իրեն թէ Որո՞ւ պիտի թողուս թագաւորութիւնդ, — Արժանաւորագունին, ըսաւ. բայց վախեմ թէ թաղումս առանց արիւնհեղութեան պիտի չըլլայ. ու քիչ ատենէն մեռաւ (323, տարիքին 21ին)։

² Այսպիսով խեղճ մահկանացուաբար մեռաւ Աղեքսանդր աշխարհակալը՝ երեսուներեքու տարեկան. տասներկու տարի թագաւորելէն ետքը. Նեղոս գետէն ինչուան Ինդոս գետը հասա

---

1 Ի՞նչպէս մեռաւ Աղեքսանդր։

2 Քանի՞ տարեկան էր, ու քանի՞ տարի թագաւորեր էր։

մահուանը գոյժը, և ամէնքը լացին վրան։ Կ՚ըսեն թէ Դարեհի մայրը Սիսիգամբիս՝ Աղեքսանդրի մեռնելէն ետքը ալ չուզեց ապրիլ, ու անօթի կենալով մեռաւ։

# ԳԼՈՒԽ ԺԴ.

Աղեքսանդրի յաջորդականութիւնը. — Զօրավարները. — Եւմենէս. — Յունաց ոտք ելլելը. — Լամիական պատերազմը. Դեմոսթենէսի մահը. — Մակեդոնիոյ թագաւորները. — Փոկիոնի մահը. — Դեմետր Փաղերացի։

1 Աղեքսանդրի մեռած ատենը բոլոր հին մեծամեծ տէրութիւններն ալ կարծես թէ հետը մեռած կործանած էին. Եգիպտոս գերի, Պարսիկները յաղթուած ու նուաճուած, Սպարտա ու Աթէնք ընկած, և Թեբէն կործանած։ Միայն Աղեքսանդրի թագաւորութիւնը կար, ան ալ քիչ ատենէն կտորըրդուած պիտի ըլլար։ Պատմիչները աս բանս օրինակով մը հասկըցընելու համար կ՚ըսեն թէ Օր մը Աղեքսանդր լճի մը քով պտըտելու ատենը քամին գլխէն թագը առեր ճահիճի մը եղեգներուն վրայ ձգեր է։ Նաւավարին մէկը վազեր առեր է, ու որպէս զի չթրջի՝

1 Աղեքսանդրի մահուան ժամանակը ի՞նչ վիճակի մէջ էր աշխարհք։

գլուխը դրեր է։ Թագաւորը առաջ անոր պարգև կուտայ, բայց ետքը մոգերէն լսելով թէ դէշ նշան է՝ կը բռնէ նաւավարը կը մեռցընէ։ Ահա կ'ըսեն՝ ասանկ ալ Աղեքսանդրի գլխէն ընկաւ թագը իր ապուշ եղբօրը Արիդէոսին ու իր Աղեքսանդր Էգոս որդւոյն վրայ. անոնցմէ ետքը իր զօրավարները վերուցին թագը, և գլուխնին դնելով կարծեցին թէ Աղեքսանդրի տէրութեանը վրայ պիտի թագաւորեն, ինչուան որ եկան Հռովմայեցիք՝ զամէնքն ալ վար ձգեցին։

1 Երբոր Աղեքսանդր հեղեղի մը պէս ինչուան Հնդկաստան հասաւ տիրեց, պրահմանները՝ այսինքն Հնդկաստանցւոց քուրմերը, տաքերնին գետին զարնելով ըսեր էին թէ Մարդս որչափ ալ փառաւոր ու զօրաւոր ըլլայ, մեռնելէն ետքը իր հասակէն աւելի երկիր չկրնար ունենալ։ Իսկ Աղեքսանդրի մարմինը եօթը օր և ոչ դագաղի մը արժանի եղաւ. հազիւ թէ ձայնը կարեցաւ՝ բոլոր վերջի հրամաններն ալ մոռցուեցան։ Ինքը հրամայեր էր որ մարմինը Արամազդայ Ամմոնի տաճարը տանին. բայց Անտիպատրոս ուզեց որ Մակեդոնիա տարուի, և որովհետև պատգամ մը ելեր էր թէ որ քաղաքն որ տարուի՝ ան քաղաքը երջանիկ ու յաղթող պիտի ըլլայ, զօրավարները կը ջանային որ իրենց բաժին ընկած քաղաքներէն մէկը տանին։ Շատ օր վիճելէն ետքը որոշեցին որ Թագաւորին կամքը կատարեն ու Լիբիա տանին մարմինը։ Ցուղարկաւորու-

---

1 Աղեքսանդրի մարմնին ինչ ըլլալը։

թեան պատրաստութիւնը երկու տարի քշեց. Պաղոմէոս Եգիպտոսի կուսակալը՝ զօրքով ընդառաջ եկաւ, ընդունեցաւ գիակը, բայց փոխանակ Լիբիա տանելու՝ Աղեքսանդրիա տարաւ։

1 Թագաւորութեան վրայ ալ կռուելէն ետքը որոշեցին որ Հռոքսանէէն մանչ մը ծնանելու ըլլայ նէ՝ անիկայ և Աղեքսանդրի խորթ եղբայրը Արիդէոս մէկտեղ թագաւորեն, և Պերդիկկաս անոնց խնամակալ ըլլայ։ Մէկ ամիս մը ետքը ծնաւ Հռոքսանէէն Աղեքսանդր Եգոսը, որ մէկէն թագաւորեցուցին։

2 Ան տանը Աղեքսանդրի գլխաւոր զօրավարներն էին Պերդիկկաս, Անտիպատրոս, Կասանդր, Պաղոմէոս որդի Ղագոսի, Անտիգոնոս, Սելեւկոս, Լիւսիմաքոս, Եւմենէս, Նէոպտողեմոս, Պողիպերքոն և Կրատեր։ Սելեւկոս եղաւ ձիաւոր զօրաց սպարապետ, Կասանդր՝ Թագաւորին թիկնապահներուն զօրավար, Անտիպատրոսի բաժին ընկաւ Մակեդոնիա, Եպիրոս և Յունաստան, Լիւսիմաքոսին՝ Թրակիա, Պաղոմէոսին՝ Եգիպտոս և Ափրիկէ, Անտիգոնոսի՝ Պամփիլիա, Լիկիա և Փռիւգիա, Եւմենէսի՝ Կապադովկիա և Պափղագոնիա, Նէոպտողոմէոսի՝ Հայաստան, և այլն։

3 Բոլոր աս զօրավարներուն մէջ Աղեքսանդրի

---

1 Աղեքսանդրի ո՞վ յաջորդեց։
2 Որո՞նք էին ան տանեն Աղեքսանդրի գլխաւոր զօրավարները։
3 Անոնց մէջ ո՞վ հաւատարիմ մնաց Աղեքսանդրի տանը։

տանը հաւատարիմ մնաց քաջ ու առաքինի Եւմենէսը միայն, որ աղքատ մնէ ըլլալով իր արդեամբքը Աղեքսանդրի ատենադպիրն եղեր էր։

1 Աղեքսանդրին մահուան ձայնը տարածուելուն պէս՝ բոլոր Յունաստան ոտք ելաւ. ազատասէր ու թեթեւամիտ Աթենացիք սաստիկ ուրախացած՝ սկսան Ազատութի՜ւն ազատութիւն կանչել։ Լէոսթենէս երիտասարդը սկսաւ ամենուն գլուխը տաքցընել ու ժողովուրդը ապըստամբութեան յորդորել. Փոկիոն ըսաւ անոր. Ո՛վ պատանի, խօսքերդ նոճիներու կը նմանին որ մեծ ու բարձր են, բայց պտուղ մը չեն տար։ Ամէնքը բարկացան վրան, և Իպերիդէս ճարտասանը ելաւ հարցուց թէ Ուրեմն ե՞րբ պատերազմելու խորհուրդ պիտի տաս Աթենացւոց. — Երբոր տեսնեմ որ երիտասարդները կարգ կանոն կը պահեն, ըսաւ Փոկիոն, հարուստները իրենց կարողութեանը համեմատ պատերազմին ծախքերուն կ՚օգնեն, ու ճարտասանները կաշառք ուտելը կը դադրեցընեն։ Մտիկ չըրին Աթենացիք, չորս դին դեսպաններ խրկեցին, Դեմոսթենէսը յաղթանակով աքսորանքէն ետ դարձուցին, որ նորէն ամենուն սրտին մէջ ազատասիրութեան կրակը վառեց ու բոլոր Յունաստանը ոտք հանեց։

2 Բոլոր զօրաց սպարապետ ընտրուեցաւ Լէոսթենէս, որ գնաց Թեսաղիոյ մէջ Լամիա

---

1 Յոյնք Աղեքսանդրի մահն որ լսեցին՝ ի՞նչ ըրին։
2 Լամիական պատերազմը ի՞նչպէս եղաւ։

քաղաքին քով Անտիպատրոսի յաղթեց* , ու քաղաքին մէջ զանիկայ պաշարեց. հոն ինքն ալ զարնուելով մեռաւ: Անտիպատրոս Լամիան առաւ Յունաց ու իր զօրքովը ետ քաշուեցաւ (323):

1 Այն յաղթութեան վրայ Յոյնք շատ ուրախացան. միայն Փոկիոն դէշ հետեւանքը մտածելով կ'ըսէր. Ե՞րբ պիտի դադրինք յաղթելէն: Իրաւցընէ, գնաց Անտիպատրոս Կրատերին հետ միացաւ ու քառասուն հազար զօրքով վրանին վազեց՝ որ հազիւ քսանըութը հազար զօրք ունէին: Կրանոնի քով պատերազմեցաւ, բոլորովին յաղթեց (322), դաշնակցութիւններն քակեց. իւրաքանչիւր քաղաքաց հետ զատ զատ պայմաններ դնելով հաշտութիւն ըրաւ, ու ամէն տեղ Մակեդոնացի պահապան զօրք դրաւ: Աթենացւոց վրայ աւելի բարկացած ըլլալով անոնց հետ աւելի ալ խստութեամբ վարուեցաւ Անտիպատրոս. Աթէնքի մէջ ազնուապետութիւն հաստատեց, Փոկիոնը գլխաւոր իշխան դրաւ, պատերազմին ծախքը առաւ, Աթէնքի միջնաբերդը Մակեդոնացի զօրք դրաւ, և ուզեց որ Իպերիդէսն ու Դեմոսթենէսը ձեռքը տան: Իպերիդէս ձեռք ընկաւ սպաննուեցաւ, Դեմոս-

---

1 Անտիպատրոս ի՞նչպէս յաղթեց Յունաց: — Դեմոսթենէս ի՞նչպէս մեռաւ:

* Աս պատերազմը Լամիական պատերազմ կ'ըսուի:

թենէս ալ Կալաւրիա կղզին փախաւ, ու յուսահատած ինքզինքը թունաւորեց։ Աթենացիք որոշեցին որ անոր ցեղին անդրանիկ որդիքը հասարակաց ծախքովը միշտ Պրիտանէոնին մէջ կերակրուին. իրեն ալ արձան մը կանգնեցին՝ աս խեղճ արձանագրով. Դեմոսթենէս, եթէ որ քաջութիւնդ խելքիդ ու ճարտասանութեանդ հաւասար ըլլար, Մակեդոնացիք չէին կրնար Յունաստանի տիրել։

1 Անտիպատրոս մեռնելու ատենը Մակեդոնիոյ իշխանութիւնը Պոլիսպերքոն բարեկամին յանձնեց, որ երբոր իր Կասանդր որդին քիչ մը մեծնայ՝ անոր տայ։ Պոլիսպերքոն իշխանութիւնը ձեռքէն չհանելու համար՝ Անտիպատրոսի դրած իշխանները Յունաստանի քաղաքներէն հանեց (320), որ անոր որդւոյն Կասանդրի կողմը կը բռնէին, աքսորեալները ետ կանչեց, ու ամէն տեղ առջի կառավարութիւնը հաստատեց։

2 Պոլիսպերքոնի որդին Աղեքսանդր՝ Աթէնքի տիրեց ու ժողովուրդը ազնուականութեան դէմ ոտք հանեց։ Փոկիոնն ու Դեմետր Փալերացին իբրեւ ազնուականութեան գլուխ՝ դատաստանի կանչեցին, որչափ որ քաղաքին մէջ անզգամ մարդիկ կային՝ հոն եկեր ժողվուեր էին. շատ ջանաց Փոկիոն ինքզինքը արդարացընել՝

---

1 Անտիպատրոսի ո՞վ յաջորդեց։

2 Պոլիսպերքոնի որդին Աղեքսանդր ի՞նչպէս տիրեց Աթենացւոց։ — Փոկիոն ի՞նչպէս մեռաւ։

լը ձեզի վնաս մը չէ ըրած, բայց ձեր շողոքորթ-ներուն ծիծաղը շատ անգամ ձեզի լալու պատ-ճառ եղեր է։ — Օր մը երբոր խորունկ խորունկ կը մտածէր՝ հարցուցին իրեն թէ ի՞նչ կը մտա-ծես. — Կը մտածեմ, ըսաւ, թէ ժողովրդեան զրուցելու խօսքս ինչպէս կրնամ կարճ կերպով ըսել։ — Ճարտասաններէն մէկը որ պատերազմի յարմարութիւն չունէր՝ Փոկիոնը կը նախատէր պատերազմ չուզելուն համար. Կը տեսնես, ը-սաւ Փոկիոն, որ ըրածս շահուս դէմ է. վասն զի պատերազմ ըլլայ նէ՝ ես քեզի պիտի հրա-մայեմ, իսկ խաղաղութիւն որ ըլլայ՝ դուն ինծի։ — Փիլիպպոս անգամ մը շատ սաստիկ պարգեւ խրկեց Փոկիոնին. և բերողները կը ստիպէին որ առնէ դէթ որդւոցը համար. — Թէ որ որդիքս ինծի նմանին, ըսաւ Փոկիոն, պզտիկ ագարակս որ զիս կերակրեց ու աս փառքիս հասուց՝ կըր-նայ զիրենք ալ հասցընել. իսկ թէ որ նմանելու չըլլան, չեմ ուզեր անոնց զեղխութիւնը աւել-ցընելու համար հարստութիւն թողուլ։ — Ա-ղեքսանդր ալ հարիւր տաղանդ խրկեց իրեն. Փոկիոն հարցուց թէ ինչո՞ւ համար այնչափ Ա-թենացւոց մէջէն ինծի միայն կը խրկէ. երբոր ըսին թէ Զքեզ ամենէն աւելի առաքինի ճանչ-նալուն համար, — Ուրեմն, ըսաւ, թող տայ որ միշտ առաքինի մնամ։ Բարկացաւ Աղեքսանդր ու ըսաւ թէ Ով որ չթողուր որ իրեն շնորհք մը ընեմ՝ ինծի բարեկամ չէ։ Ան ատեն Փոկիոն իր-մէ աս շնորհքըն խնդրեց որ երկու Կորնթացւոց ազատութիւն տայ. Աղեքսանդր ալ սիրով կա-տարեց խնդիրքը։

1 Ապերախտ Աթենացիք այնպիսի մարդուն կեանքը վերցընելով չկշտացան. մարմինը Ատտիկէէն դուրս հանեցին, ու արգիլեցին որ անոր թաղման հանդէս չընեն: Մեգարացիք անոր համար փայտակոյտ մը կանգնեցին. միջերնէն ալ կին մը հոն պատրաստ շիրիմ մը շինել տուաւ. և Փոկիոնի ոսկորները ժողվեց բերաւ իր վառարանին տակը թաղեց՝ վրան սանկ գրած. Վառարան սուրբ և ցանկալի, ատտիկեցի մարդու մը ոսկորները քեզի կ'աւանդեմ. հաւատարմութեամբ պահէ, որպէս զի երբոր Աթենացիք զգաստանան՝ անոնց տաս որ իր հօրը գերեզմանը դնեն: Իրաւցընէ վրան շատ չանցաւ, Աթենացիք հանդիսով գնացին Աթէնք բերին Փոկիոնին ոսկորները, պղնձէ արձան մը կանգնեցին իրեն, ու մահուանը պատճառ եղողները մեռուցին:

2 Փոկիոնի մեռնելէն ետքը երբոր Աթենացւոց մէջ երկպառակութիւն ընկաւ, եկաւ Կասանդր Աթենքին տիրեց (318) ու վրանին իշխան Դեմետր Փաղերացին դրաւ, որ ճարտասան ու քաջ մարդ էր: Տասը տարի իմաստութեամբ Աթէնքը կառավարեց Դեմետր, հասարակապետութեան եկամուտը աւելցուց, ու շատ բարեկարգութիւններ ըրաւ. այնպէս որ երեք հարիւր արձան կանգնեցին իրեն Աթենացիք:

---

1 Աթենացիք ուրիշ ի՞նչ նախատինք ըրին Փոկիոնի:

2 Փոկիոնի մեռնելէն ետքը Աթենացւոց վրայ ո՞վ իշխեց:

# ԳԼՈՒԽ ԺԵ.

Եւմենէսի մահը. — Ողիմպիայի սպաննութիւնը. — Կա-սանդր. — Անտիգոնոս, Պտղոմէոս և Սելևկոս. — Դեմետր Պոլիորկէտ. — Աղեքսանդրի պետութեան հինգ թագաւորութեան բաժանուիլը. — Հռոդոսի պաշարումը. — Պրոտոգէնէս. — Դեմետրի յաղթուիլը. — Աղեք-սանդրի պետութեան վերջին բաժանմունքը։

1 Աղեքսանդրի յաջորդները անդադար իրա-րու հետ պատերազմելով շատ վնաս հասուցին անոր տանը։ Եւմենէս միայն պաշտպան կեցեր էր անոր. ան ալ շատ յաջողութիւններ ու ձա-խորդութիւններ ունենալէն ետքը՝ Անտիգոնոսի հետ պատերազմելու ատենը բռնուեցաւ. և եր-բոր Անտիգոնոսին հարցուցին իր զօրավարները թէ Եւմենէսին հետ ի՞նչպէս վարուինք, — Ինչ-պէս որ առիւծի մը հետ կը վարուին, ըսաւ։ Բայց քանի մը օրէն ետքը մեռցընել տուաւ ափ-րասեր ու քաջ Եւմենէսը (315)։

2 Ողիմպիա փառասէր ու անգութ թագու-հին՝ թագաւորութիւնը դիւրաւ ձեռք ձգելու

---

1 Եւմենէս ի՞նչպէս մեռաւ։

2 Ողիմպիա ի՞նչ անգթութիւններ ըրաւ։ — Ի՞նչպէս մեռաւ։

համար՝ Արիդէոս Թագաւորն ու անոր կինը Եւրիդիկէն սպաննել տուաւ. Նոյնպէս Նիկանոր՝ Կասանդրի եղբայրը և ուրիշ շատ անուանի մարդիկ իր հրամանովը սպաննուեցան: Ժողովուրդը կատղեցաւ Ողիմպիային վրայ ու ոտք ելաւ. Կասանդր վազեց որ Թագաւորին մահուան վրէժը առնէ, Թէպէտ և բուն միտքն էր Մակեդոնիոյ տիրել, և ամէնքը իր կողմը անցան: Թագուհին Պիւդնա քաղաքին մէջ պաշարուած, ստիպուեցաւ անձնատուր ըլլալու. Սպաննողներուն ազգականները Մակեդոնացիքը ժողովի կանչեցին և ուզեցին որ անոր վրայ դատաստան ըլլայ: Ողիմպիա խրոխտանօք ինքզինքը պաշտպանեց, բայց վրան մահուան վճիռն ելաւ. զինուորները չուզեցին ձեռք վերցնել իրենց մեծանուն Թագաւորին մօրը. բայց անոր փառամոլ կատաղութեանը զոհ եղողներուն ազգականները վազեցին վրան՝ սպաննեցին (316):

1 Կասանդր, որ փառասիրութեամբ ու անգթութեամբ Ողիմպիայէն վար չէր մնար, աւելի նենգաւոր ալ ըլլալով քիչ մը ժամանակի կրցաւ իր գերաւորութիւնը պարտադրել: Աղեքսանդրին քոյրը Թեսաղոնիկէն իրեն կին առաւ. Թեբէին ինչուան ան ատենը կործանած մնալը մէջը Յունաց ցաւ մըն էր. Կասանդր առջինին պէս շինել տուաւ ու քիչ տարուան մէջ առջի պայծառութեանը հասուց: Ասանկով Յունաց

---

1 Կասանդր առջի բերան ինչպէս կառավարեց տէրութիւնը:

աչքը մտնելէն ետև, գնաց Արգոսի ու Մեսսե-
նիոյ տիրեց. ամէն ջանք կ՚ընէր որ ինքն ալ Ա-
ղեքսանդրի մէկալ զօրավարացը պէս մեծնայ.
վասն զի Անտիգոնոս օրէ օր իր տէրութիւնը Ա-
սիոյ մէջ կ՚ընդարձակէր, Պտղոմէոս՝ Եգիպտոսի
և Պաղեստինի տիրեր էր, Սելևկոս՝ Բաբելոնի,
Պարսկաստանի և Մարաստանի (311):

1 Երբոր ամէնքը աս լայնածաւալ տէրու-
թեան կտորներուն վրայ կը կռուըտէին, Մակե-
դոնացիք իրենց երկպառակութիւններէն ձան-
ձրացած՝ ուզեցին Հռոքսանէէն ծնած Մեծին
Աղեքսանդրի որդին Աղեքսանդրը որ տասնը-
չորս տարեկան էր՝ իրենց թագաւոր դնել. ան
ատեն Կասանդր մօրը հետ խեղճ տղան ալ մեռ-
ցընել տուաւ: Անկէ ետքը Պողիսպերքոն աս
բանիս վրէժխնդիր եղաւ. Աղեքսանդրին Հե-
րակղէս որդին (որ Մեմնոն Հռոդոսցւոյն Բար-
սինէ անունով այրի կնկանէն ունեցեր էր) իր
բանակը բերել տուաւ, ու Կասանդրին հետ
պատերազմելու պատրաստուեցաւ. բայց ետ-
քուքն ալ վախնալով որ իշխանութիւննին չկոր-
սընցընեն՝ իրարու հետ հաշտուեցան, և խեղճ
Բարսինէէն որդւոյն հետ մէկտեղ սպաննեցին
(309): Բայց Պողիսպերքոն ալ իր նենգութեան
պտուղը չկրցաւ վայելել. քիչ ատենէն մեռաւ,
ու Կասանդր բոլոր Մակեդոնիոյ տիրեց:

2 Անգին Պտղոմէոս իր իշխանութեանը մէջ

---

1 Ի՞նչ կերպով բոլոր Մակեդոնիոյ տիրեց:
2 Պտղոմէոս ու Սելևկոս ի՞նչ կերպով հաս-
տատ պահեցին իրենց թագաւորութիւնը:

հաստատուելու համար՝ ուղեց Մեծին Աղեքսանդրի Կղէոպատրա քոյրը իրեն կին առնել. Անտիգոնոս իմացաւ, և երբոր Կղէոպատրան Սարդիկէէն Եգիպտոս կ'երթար՝ ճամբան զինքը սպաննել տուաւ Անտիգոնոս: Այսպիսի փառասէր աւազակներուն մէջ միայն Սելեւկոս և Պտղոմէոս արդարասէր իշխանները կրցան իրենց թագաւորութիւնը հաստատել:

1 Երբոր Մակեդոնիա ու Ասիա այսպիսի փոթորիկներու մէջ էին, Աթենացիք Դեմետր Փաղերացւոյն իմաստուն կառավարութեամբը հանգիստ էին. բայց ան իրենց հանգստութիւնը շատ չտեւեց: Ան ատենները Անտիգոնոսի որդին Դեմետր (որ ետքը Պօլիօրկէտ այսինքն Պաշարիչ ըսուեցաւ) մեծ անուն ունէր իր կատարելութիւններովը ու վնասակար պակասութիւններովը. իր գեղեցկութեանը, քաջութեանը, խելքին, վեհանձնութեանը, քաղաքներ պաշարելու ճարտարութեանը վրայ ամէնքը կը զարմանային. բայց բոլոր աս կատարելութիւնները մոռցընել կուտար ցոփութեամբը: Հօրը հրամանովը երկու հարիւր յիսուն նաւով մտաւ Աթենքի նաւահանգիստը, ու Պիրէոնի առնելով մարդ խրկեց Աթենացւոց իմացուց որ ռամկապետութիւննին հաստատելու եկեր է. Աթենացիք ալ ուրախութեամբ ներս ընդունեցան զինքը (307): Դեմետր Փաղերացին Աթենացւոց ապերախտութիւնը գիտնալով խնդրեց Դեմե-

1 Ան ատենները Աթէնք ինչ վիճակի մէջ էր:

տրէն որ զինքը Թեբէ խրկէ. պատուեց զինքը Դեմետր ու խնդիրքը կատարեց: Իսկ Աթենացիք որ տարուան օրերուն Թուովը արձաններ կանգներ էին անոր, դատաստանէն փախչելուն համար զինքը 'ի մահ դատապարտեցին, արձանները կոտրտեցին, Անտիգոնոսի ու Դեմետրի մեծամեծ պատիւներ տուէին, զանոնք Աստուած և Փրկիչ կանչեցին, ու Աթենասայ տօնին օրը անոնց արձաններն ալ մեկալ աստուածոց արձաններուն կարգը դրին:

1 Դեմետր Փալերացին երբոր լսեց Աթենացւոց իրեն ըրած նախատինքը, ըսաւ բարեկամներուն. Ապերախտները կրնան արձաններս կոտրել, բայց չեն կրնար դպչիլ առաքինութիւններուս՝ որ զիս ան արձաններուն արժանի ըրին: Ետքը գնաց Եգիպտոս՝ Պտղոմէոս Սոտերին քովը, որ զինքը շատ պատուով ընդունեցաւ:

2 Անտիգոնոսի որդին Դեմետր՝ Աթենքէն Կիպրոս կղզւոյն վրայ գնաց, ու հնարած մեքենաներովը անոր Սաղամիս կամ Սաղամինա քաղաքին առեց, Պտղոմէոսի նաւատորմիղը ջարդեց ու զինքն ալ հալածեց: Այս փառաւոր յաղթութեան լուրը երբոր առին Ասորիք, Անտիգոնոսին ու որդւոյն Դեմետրի Թագաւորական Թագ տուին: Եգիպտացիք անոնց նայելով իրենք ալ

---

1 Դեմետր Փալերացին Աթենացւոց ապերախտութիւնը տեսնելով ինչ ըսաւ:

2 Աղեքսանդրի յաջորդ զօրավարները ինչ կերպով Թագաւոր ըսուեցան:

Գաղամէսը թագաւոր պսակեցին։ Սելեւկոս Լիւսիմաքոս ու Կասանդր ալ անոնց հետեւեցան ու իրենք զիրենք թագաւոր անուանեցին. ա-սով Աղեքսանդրի ընդարձակ տէրութեանը վրան տասնըութը տարիի չափ անցնելէն ետքը հինգ թագաւորութեան բաժնուեցաւ (307)։

[1] Հռոդացիք ան ատենները շատ անուանի ե-ղած էին իրենց ընդարձակ վաճառականու-թեամբը, երկրագործութեամբն ու քաղաքնե-րուն փառաւորութեամբը, և ամէնքն ալ ծար-տար ու հնարագէտ մարդիկ էին։ Տաս զօրքով գնաց Դեմետր ու Հռոդոսը պաշարեց (304)։ Հազիւ թէ Հռոդացիք Դեմետրի շինած առջի մանգղիոնները աւրեր էին, փաղափալէր ըսուած մեծ բաբան մը շինել տուաւ քաղաքին պարիսպ-ներէն բարձր, չորս դին երկաթով պատած, անանկ որ ամէնքը կը կարծէին թէ անով մէկէն պիտի առնուի քաղաքը։ Քաղաքացիք չկարենա-լով ան մեքենան այրել, ուսկից որ պիտի անցը-նէր՝ տակէն ճամբան փորեցին. և երբոր թշնա-միք ան մեքենան անիւներու վրայ առած սկսան պարսպին մօտեցընել, ճամբուն վրայ եկածին պէս խրեցաւ մնաց ու դուրս հանելը անկարելի եղաւ։ Ասով յուսահատեցաւ Դեմետր ու հե-տերնին հաշտութիւն ընելով շինել տուած մե-քենաներէն մէկ քանին անոնց ընծայ տուաւ ու գնաց։ Ետքը Հռոդացիք ծախեցին մեքենաները, և ան ստըկով մեծ պղնձէ արձան մը շինել տուին՝

---

1 Դեմետր ինչպէս պաշարեց Հռոդոսը։

Հռոդոսի նաւահանգստին բերնին վրայ, որուն երկու ոտքին մէջէն կ՚անցնէին մեծամեծ նաւեր. և միայն բութ մատին հաստութիւնը այնչափ էր որ հազիւ կը գրկուէր։

1 Հռոդացիք Պտղոմէոսի իրենց ըրած օգնութեանը համար՝ զինքը Սոփէր այսինքն Փրկիչ կոչեցին. Դեմետրին ալ Պոլիորկետ այսինքն Պաշարիչ ըսուեցաւ, որ կրնար նաև Խնամախաղ արտաքո-ւոյ ըսուիլ, ինչպէս որ ըսաւ հռչակաւոր Պրոտոգենէս պատկերահանը։ Վասն զի քաղաքին պաշարման ատենը ինքը իր խուցը քաշուած պատկեր կը նկարէր. Դեմետր հաշտութիւն ընելէն ետքը հարցուց անոր հանդարտութեան պատճառը. Վասն զի գիտէի, ըսաւ Պրոտոգենէս, որ դուն Հռոդացւոց դէմ պատերազմ բացիր և ոչ թէ արուեստից։ Դեմետր մեծ գործարան մը շինել տուաւ անոր, ատէպ զինքը տեսնելու կուգար, և քաշած պատկերները գովելով կը քաջալերէր։

2 Այս Պրոտոգենեսին համար կը պատմեն թէ Յալիսի պատկերը (որ Արեգական Թոռը կը համարուէր և Հռոդոսի հիմնադիրը) նկարելու համար եօթը տարի անցուցեր էր. ան պատկերին մէջ կ՚ուզէր կ՚ըսեն՝ վազելով յոգնած ու բերանը փրփրած շուն մը նկարել, և շատ աշխատեր ու չէր կրցած բերնէն վազած փրփուրը

---

1 Հռոդացիք ի՞նչ անուն տուին Պտղոմէոսի և Դեմետրի։

2 Պրոտոգենեսի վրայ ի՞նչ կը պատմուի։

բնական ձևացընել։ Օր մըն ալ բարկացեր է, ձեռքի սպունգը պատկերին վրայ նետեր է՝ ու լորձունքը անանկ բնական ձևացեր է որ տեսնողները իրաւցընէ վրան փրփուր քսուած կը կարծեն եղեր։

1 Դեմետր աս յաջողութիւններով հպարտացած, Աղեքսանդրի նման ըլլալ ուզելով գնաց Կորնթոս, յունական դաշնակցութեան սպարապետ ընտրուեցաւ, և զօրք ժողվեց որ Մակեդոնիոյ ու Թրակիոյ տիրէ։ Մէկալ հինգ դաշնակից թագաւորները միաբանեցան անոր առջեն առնելու։ Դեմետր Մակեդոնիոյ տիրելու վրայ էր՝ երբոր հայրը զինքը Ասիա կանչեց. շուտ մը դարձաւ որ հօրը երկիրները պաշտպանէ, ու Փռիւգիոյ մէջ Իպսոս քաղաքին քովը զարնուեցան։ Դեմետր թէպէտ ձիաւորներովը զարկաւ թշնամեաց գունդերը ցրուեց, բայց աւելի մեծ փառքի ցանկալով՝ անոնց ետևէն ընկաւ քշեց, ու բանակէն հեռանալով յաղթութիւնը կորսնցուց։ Վասն զի անմիջոցին Սելևկոս ընտիր զօրքով վազեց Անտիգոնոսին վրայ, զինքը սպաննեց, զօրքն ալ ցրուեց, Դեմետր ալ փախաւ Յունաստան գնաց (301)։

2 Ան յաղթութենէն ետքը չորս թագաւորներն Աղեքսանդրի տէրութեան վերջի բաժան-

---

1 Դեմետր ինչպէս ուզեց Մակեդոնիոյ տիրել ու յաղթուեցաւ։

2 Անտիգոնոսի մեռնելէն ետքը չորս թագաւորներն ինչ ըրին։

մունքը ըրին մէջերնին: Պտղոմէոս առաւ Եգիպտոսը, Լիբիան, Փիւնիկէն, Արաբիան և Պաղեստինը. Կասանդր՝ Մակեդոնիան և Յունաստանը. Լիւսիմաքոս՝ Թրակիան, Պոնտոսն ու Բիւթանիան. և Սելեւկոս՝ Միջագետքը, Հայաստանը, Կապադովկիան ու Ասորիքը, և Ասորւոց թագաւորութիւնը ձեւացուց:

# ԳԼՈՒԽ ԺԶ.

Կասանդրի որդիքը. — Դեմետրի մահը. — Պիւռոս. — Գաղղիացւոց Յունաստան արշաւելը. — Կղէոմենես Սպարտայի Թագաւորը. — Պիւռոսի մահը. — Անտիգոնոս:

1 Դեմետր գնաց Սելեւկոսին հետ հաշտուեցաւ, ու շատ զօրք առած եկաւ Ատտիկէ մտաւ ու Աթէնքը նորէն առաւ, ետքը գնաց Պելոպոնեսին ալ տիրելու: Սպարտացիք դէմ դրին, յաղթեց անոնց ու Սպարտան ալ առնելու մօտ էր, բայց Մակեդոնիոյ խռովութիւնը խաղաղելու համար ետ կանչուելով՝ թողուց գնաց.

2 Կասանդր երբոր մեռաւ (298) երկու որդի թողեր էր, Անտիպատրոս և Աղեքսանդր, որ ի-

---

1 Դեմետր ինչպէս տիրեց Յունաստանի:

2 Կասանդրի մեռնելէն ետքը Մակեդոնիոյ թագաւորութիւնը որո՞ւն ընկաւ:

բարոււ ձեռքէն սկսան յափշտակել տէրութիւնը։ Աղեքսանդր իրեն օգնութիւն կանչեր էր Եպիրոսի Պիւռոս թագաւորն ու Դեմետրը։ Պիւռոս շուտ մը հասնելով Աղեքսանդրը թագաւորեցուց, և անոր փոխարէն շատ երկիրներ առաւ ու Եպիրոս դարձաւ։ Դեմետր երբոր հասաւ, Աղեքսանդր անկէ վախնալով գալուն շնորհակալ եղաւ, բայց ձեռքի տակէն սկսաւ անոր որոգայթներ լարել. Դեմետր իմանալով զինքը սպաննել տուաւ, Մակեդոնացիք ալ Դեմետրը իրենց վրայ թագաւոր դրին (294), որով անիկայ տիրեց Մակեդոնիոյ, Թեսսաղիոյ և Յունաստանի, բաց 'ի Եպիրոսէն ու Սպարտայէն։

1 Դեմետր անով ալ գոհ չեղաւ, սկսաւ պատրաստութիւն տեսնել որ Ասիոյ մէջ իր հօրը ատենով ունեցած երկիրներուն ալ տիրէ։ Բայց դեռ ինքը պատերազմի ձեռք չզարկած՝ Պտղոմէոս բոլոր Յունաստանն իրեն դէմ ոտք հանեց, և Լիւսիմաքոս ու Պիւռոս եկան Մակեդոնիան առին։ Զօրքն ալ երբոր զինքը թողուցին ու տեղը Պիւռոսը թագաւոր դրին, Դեմետր Պեղոպոնէս փախաւ, անկէց ալ տասնուերկու հազար հոգւով Ասիա անցաւ՝ տեղի մը տիրելու մտքով. բայց իր աները Սելեւկոս զինքը բռնեց ու պալատի մը մէջ փակեց. ուր երկու տարի ետքը ցաւէն ու արտմութենէն մեռաւ (286)։

2 Դեմետրին յաղթելով Պիւռոսին համբաւը

---

1 Դեմետր ինչպէս մեռաւ։

2 Պիւռոս ինչ կատարելութիւններ ունէր։

շատ մեծցաւ. կ՚ըսէին թէ Պիւռոս Աղեքսանդրի կը նմանի խելքովը, կերպարանքովը ու արիութեամբը, իսկ մէկալ թագաւորները իրենց գեղխութեամբը, թիկնապահներովը ու հպարտութեամբը: Իր զօրացը շատ սիրելի էր, վասն զի բոլոր յաղթութեան փառքը անոնց կ՚ընծայէր: Երբոր լսեց թէ զինքը Արծիւ Եպիրոսի կը կանչեն, Թէ որ ես արծիւ եմ, ըսաւ, դուք ալ թեւերս էք. վասն զի զիս այնչափ բարձրացընողը ձեր զէնքերն են: Օր մը կը բռնեն իրեն քանի մը զինուորական երիտասարդներ կը բերեն որ կոչունքի մը մէջ իրեն դէմ նախատական խօսքեր ըսեր են եղեր: Կը հարցընէ Պիւռոս թէ Իրաւցընէ ըսի՞ք ասանկ խօսքեր. մէջերնէն մէկը երբոր պատասխան կուտայ թէ Այո՛, տէր արքայ, ըսինք. և թէ որ գինին չպակսէր՝ աւելի ալ կ՚ըսէինք, կը խնդայ Պիւռոս ու կը ներէ իրենց: Բայց երկար ատեն չկրցաւ Պիւռոս իշխել Մակեդոնիայ. Իտալիա ըրած արշաւանքին ատենը (որ Հռովմէայեցւոց պատմութեանը մէջ կը պատմենք), Լիւսիմաքոս եկաւ առաւ ձեռքէն թագաւորութիւնը:

1 Ան ատենները Գաղղիացիք Եւրոպայի արեւմտեան ծայրէն ելած՝ Դանուբէն անցան, ու երբոր Սաւա գետին բերանը եկան՝ իրեք մասն բաժնուեցան. մէկը Կերետրիոսին առաջնորդութեամբը Թրակիոյ վրայ գնաց, մէկալը Բրեննոս

---

1 Գաղղիացիք ուսկի՞ց և ի՞նչպէս արշաւեցին Յունաստան:

և Ակիքորիոս զօրավարներովը Պաննոնիոյ վրայ գնաց, իսկ երրորդը՝ Բելգիոսի առաջնորդութեամբը Իլիւրիկէի ու Մակեդոնիոյ վրայ գնաց։

1 Պտղոմէոս Կերաւնոս՝ որ Սելեւկոսը սպաննելով Մակեդոնիոյ տէրը էր, Բելգիոսին առջեւն առնուլ ուզելով՝ յաղթուեցաւ ու սպաննուեցաւ։ Սոսթենէս Մակեդոնացի զօրավարը յաղթեց Բելգիոսին ու Մակեդոնիան ձեռքէն առաւ։ Ան ատենը Բրեննոս և Ակիքորիոս Բելգիոսի վրէժն առնելու համար հարիւր յիսուն հազար հոգւով վազեցին եկան, Մակեդոնացւոց յաղթեցին ու Թեսաղիան աւրըշըրկեցին։ Յոյնք միաբանած՝ չթողուցին որ Թերմոպիլէէն անցնին Գաղղիացիք. բայց անոնք Քսերքսեսի անցած ճամբովը Փովկիս մտան, ու Դեղփիի տաճարին վրայ գնացին որ մէջի գանձերը կողոպտեն. վասն զի Բրեննոս կ՚ըսէր թէ Աստուածները ալ հարկաւոր պէտի ընեմ (278)։ Ան մէջոցին սաստիկ փոթորիկով մը գետնաշարժ ըլլալով Գաղղիացիք շատ սարսափեցան. Յոյնք ալ սիրտ առած՝ չորս կողմէն վրանին վազեցին, ու անոնց մեծ մասը ջարդեցին, մնացածներն ալ քիչ ատենէն ցրտէն ու անօթութենէ մեռան։ Կերեթրիոսին զօրաց մեծ մասը գնացին Թրակիա բնակեցան, մնացածներն ալ Փռիւգիոյ մէկ մասին տիրեցին, և իրենց անունովը երկիրն ալ Գաղատիա ըսուեցաւ, որ է հիմակուան Անկիւրիոյ գաւառը (277)։

---

1 Ի՞նչպէս յաղթուեցան։

1 Պիւռոս Իտալիայէն ու Սիկիլիայէն երբոր դարձաւ՝ Մակեդոնիան առաւ Դեմետրի որդւոյն Անտիգոնոս Գոնատասին ձեռքէն, որ իրենց թագաւոր գրեր էին Մակեդոնացիք։

2 Կղէոնիմոս Սպարտայի թագաւորը՝ իր բըռնաւորական կերպերովը ամենուն ատելի եղեր էր, իսկ իր աթոռակիցը Արէոս՝ քաղցր բնաւորութեամբը, խելքովը ու քաջութեամբը ամենուն սիրելի եղեր էր։ Կղէոնիմոսի Քելիդոնիս կինն ալ իրեն դէմ նախատինք մը ըրած ըլլալով՝ բարկացաւ Կղէոնիմոս, և միտքը դրաւ որ հայրենեացը վնասովը սրտին ոխը հանէ. գնաց աղաչեց Պիւռոսին որ իրեն օգնէ, զինքը իշխանութեանը մէջ հաստատէ։ Շուտ մը հասաւ Պիւռոս Պելոպոնես, ու ինչուան Սպարտա մօտեցաւ։ Սպարտացիք սարսափած՝ ուզեցին իրենց կանայքն ու տղաքը Կրետէ կղզին խրկել. և երբոր ծերակոյտը աս բանիս վրայ կը մտածէր, յանկարծ Արքիդամիա անունով կին մը ձեռքը թուր մը առած՝ ժողովարանը կը մտնէ ու կ՚ըսէ. Պատռեցէք աս նախատալից հրովարտակը. չենք ուզեր մենք հնազանդիլ. այնչափ վա՞տ կը կարծէք զմեզ, որ մեր հայրենիքը կործանելէն ետքն ալ ուզենանք ապրիլ. ամենքնիս ալ հաստատուն մաքերնիս դրեր ենք որ ձեզի հետ յաղթենք կամ մեռնինք։ Զէնք առին ամէն կանայք, ու էրիկ մարդկանց պէս պատերազմեցան։ Քելիդո-

---

1 Պիւռոս Նորէն ի՞նչպէս տիրեց Մակեդոնիոյ։

2 Սպարտացիք ի՞նչ վիճակի մէջ էին ան ատենները։

նիս Թագուհին անոնց գլուխ կեցած՝ իր օրինա-կանք պէտք կուտար, և վիզը շուան մը անցուցեր կապեր էր՝ որ եթէ յանկարծ Կղէոնիմոս և Պիւ-ռոս քաղաքն առնելու ըլլան՝ մէկէն քաշէ շուա-նը՝ ինքզինքը խեղդէ։

1 Երկու կողմէն ալ զարնուեցան ու պատե-րազմը անորոշ մնաց։ Երկու հազար քաջ Կրե-տացիներ հետն առած օգնութիւն հասաւ Ա-րէոս, անով սիրտ առին Սպարտացիք, ու Պիւ-ռոսին զօրքը թուլցաւ. Պիւռոս ջանաց անոնց քաջութիւնը նորէն վառել, բայց յանկարծ ձին նետով մը զարնուելով կատաղեցաւ, առաւ զին-քը հեռու տեղեր տարաւ, զօրքն ալ ցրուեցան։ Անոնց ետևէն ընկաւ Արէոս՝ սաստիկ ջարդ մը տուաւ, ու Պիւռոսի որդին Պտղոմէոսն ալ սպաննեց։ Ան ատենը Պիւռոս յուսահատած՝ առջևն եղածը կոտրեց անցաւ, իր թոռը Լակե-դեմոնացւոց զօրավարը սպաննեց, զօրացն ալ մեծ ջարդ տալով զամէնքը հալածեց։

2 Սպարտայեցւոց օրինակովը Արգոսացիք ալ գլուխ քաշեցին, վազեց վրանին Պիւռոս, ու իր կուսակցացը ձեռքովը գիշերանց Արգոս մտաւ։ Քաղաքացիք միջնաբերդին մէջ քաշուած՝ իրենց օգնութիւն կանչեցին Արէոսն ու Անտիգոնոսը, որ շուտով հասան. Պիւռոս չորս կողմէն թշնա-մեաց մէջ պաշարուած՝ մտածեց որ Արէոսին

1 Սպարտացիք ի՞նչպէս յաղթեցին Պիւռոսի։
2 Սպարտացւոց օրինակին ո՞ր Յոյները հետևե-ցան։ — Ի՞նչպէս մեռաւ Պիւռոս։

քաղաք մտնելու ատենը ինքն ալ ուրիշ դռնէ մը ելլէ երթայ։ Բայց նեղ փողոցի մը մէջ պաշարուեցաւ, և զինուորին մէկը նետով մը զինքը վիրաւորեց․ կատղեցաւ Պիւռոս, հազիւ թէ թուրը վերուցեր էր որ անոր գլուխը իջեցընէ՝ զինուորին մայրը որ տանիքը կեցած կը նայէր եզեր՝ որդւոյն վտանգը տեսնելով մէկէն կղմինտր մը առնելն ու երկու ձեռքով Պիւռոսին գլխուն վրայ նետելը մէկ կ՚ընէ․ Պիւռոս սաստիկ վիրաւորուած՝ ձիէն վար կ՚իյնայ, թշնամիք ալ վրայ կը հասնին ու գլուխը կը կտրեն (272)։ Զօրքը անգլուխ մնացած՝ զէնքերնին թողուցին, ու Մակեդոնացւոց Անտիգոնոս թագաւորին անձնատուր եղան։ Անոր որդին Պիւռոսի գլուխը կտրած՝ հօրը բերաւ․ զարկաւ անոր Անտիգոնոս, ու անգթութիւնը յանդիմանելով՝ լացաւ ան քաջ թագաւորին վրայ, ու մարմինը հանդիսով թաղել տուաւ։

[1] Անտիգոնոս երբոր Մակեդոնիոյ թագաւորութեանը մէջ հաստատուեցաւ՝ բոլոր Յունաստան սկսաւ վախնալ․ ուստի Աթենացիք ու Սպարտացիք Եգիպտոսի Պտղոմէոս Փիլադելփոս թագաւորին հետ միաբանեցան՝ անոր դէմ կենալու։ Անտիգոնոս Աթէնքը պաշարեց առաւ, և Եգիպտացւոց նաւատորմիղն ու Սպարտացւոց խրկած զօրքը չկրցան անոնց օգնել։ Անտիգոնո-

---

1 Անտիգոնոս երբոր հաստատուեցաւ Մակեդոնիոյ թագաւորութեանը մէջ, Յոյնք ինչ ըրին։

սի Դեմետր որդին ալ գնաց Լոկրիս ու Փովկիս գաւառները նուաճեց, և Կորնթոսի միջնաբերդին տիրեց (251)։

1 Ան ատենն որ Անտիգոնոս Միջին Յունաստանի ու Պեղոպոննեսի մեծ մասը նուաճելու հետ էր՝ իրեն դաշնակից Ետողացիներն ալ մնացած կտորին կը ջանային տիրել։

# ԳԼՈՒԽ ԺԷ.

Աքայեցւոց դաշնակցութիւնը. — Արատոս. — Անտիգոնոս Դոսոն. — Սպարտա, Ագիս և Լէոնիդաս. — Կղէոմէն. — Մեգաղոպոլիս քաղաքին կործանումը. — Կղէոմէնի մահը. — Անտիգոնոս Սպարտայի կը տիրէ։

2 Շատ ատենէ 'ի վեր Աքայիոյ մէջ տասնուերկու քաղաք միացեր դաշնակցութիւն մը ձևացուցեր էին, և ամէն բաներնին հասարակաց ժողովով կ'որոշէին, որուն նախագահը կարգաւ մէյմէկ քաղաքէ կ'ընտրուէր։ Աս հասարակապետութիւնը թէպէտ շատ հարստութիւն ու ընդարձակ երկիր չունէր, բայց իմաստութիւնը, արդարութիւնն ու ազատասիրութիւնը Յու-

---

1 Ետողացիք ան ատենները ի՞նչ վիճակի մէջ էին։

2 Ի՞նչ էր Աքայեցւոց դաշնակցութիւնը։

նաստանի մէջ սկսեր էր անուանի ըլլալ։ Իր ազատութիւնը ինչուան Փիլիպպոսի ու Աղեքսանդրի ատենը պահեր էր, բայց ետքը Մակեդոնացւոց իշխանութեան տակն ընկաւ։ Երբոր Անտիգոնոս սկսաւ Պիւռոսին հետ պատերազմիլ, Աքայեցիք կամաց կամաց Մակեդոնացի զօրքը դուրս քշելով՝ սկսան նորէն իրենց հասարակապետութիւնը ձեւացընել։

1 Արատոս կարիճը քանի մը փախստականներու հետ խորհուրդ ըրաւ որ իրենց հայրենիքը՝ այսինքն Սիկիոնը ազատեն Մակեդոնացւոց ձեռքէն։ Գիշեր մը յանկարծ պարսպէն ներս մտաւ, պահապանները կոտրեց փախուց, ու քաղաքացիքը ազատութիւննին ձեռք ձգելու յորդորեց։ Ժողովուրդը ազատութեան ձայնը լսելուն պէս՝ մէկէն ոտք ելաւ, Նիկոկղէս բռնաւորին պալատին կրակ տուաւ, ու բոլոր փախստականները ներս կանչեց (495)։

2 Արատոս տեսնելով որ մէկ կողմանէ Ետողացիք, մէկալ կողմանէ Անտիգոնոս վրանին վազելու կը սպառնան՝ ապահովութեան համար Սիկիոնն ալ Աքայեցւոց դաշնակցութեան հետ միացուց, և ինքը քսան տարեկան ըլլալով բոլոր դաշնակցութեան զօրացը սպարապետ ընտրուեցաւ։ Բէովտացւոց օգնութեան գնաց, որ անոնք միայն ազատ մնացեր էին Յունաստանի մէջ, և Ետողացիք եկեր պաշարեր՝ զանոնք ալ

---

1 Արատոս ինչպէս ազատեց իր հայրենիքը։

2 Բէովտացւոց ինչ օգնութիւն ըրաւ։

կ'ուզէին նուաճել: Բայց ուշ հասաւ. վասն զի Բէովտացիք յաղթուեր ու Ետոլացւոց կողմը անցեր էին:

1 Ութը տարի ետքը նորէն սպարապետ ընտրուեցաւ Արատոս (243). գնաց յանկարծակի Մակեդոնացւոց ձեռքէն Կորնթոսի միջնաբերդն առաւ, մէջը Աքայեցի զօրք դրաւ ու Կորնթացիքն ազատեց. անոնք ալ դաշնակցութեան մէջ մտան: Աս տեսնելով Մեգարա, Տրեզենէ ու Եպիդաւրոս քաղաքներն ալ՝ Անտիգոնոսը թողուցին ու դաշնակցութեան մէջ մտան:

2 Ան ատենը Արատոս ուզելով դաշնակցութեան զօրաւոր պաշտպան մը գտնել՝ Պտղոմէոս թագաւորը բոլոր ցամաքային զօրաց սպարապետ անուանել տուաւ: Իսկ ինքը Մակեդոնացիքը Պելոպոնեսէն քշելու ու բոլոր քաղաքները անոնց ձեռքէն ազատելու խորհուրդն առաջ տանելով՝ շատ ջանաց Արգոսին ալ տիրելու, բայց Արիստիպպոս բռնաւորը Մակեդոնացւոց օգնութեամբը անոր ամէն ջանքը պարապ հանեց: Անտիգոնոս ալ իր կողմանէ այնպիսի ահաւոր թշնամւոյ մը ձեռքէն ազատելու համար՝ շատ ջանաց որ զինքը սպաննել տայ, բայց չկրցաւ:

3 Անտիգոնոս Գոնատաս երբոր մեռաւ, ան-

---

1 Կորնթոսն ինչպէս ազատեց:

2 Մակեդոնացւոց դէմ ինչ հնարքներ բանեցուց:

3 Գոնատասի որդին Դեմետր ինչպէս թագաւորեց:

զը իր որդին Դեմետր Մակեդոնիոյ թագաւոր նստաւ (242)։ Ետոլացիք ուզելով Եպիրոսի Պիւռոս թագաւորին յետքէն (որ այն ատենը դեռ պզտիկ էր) Ակառնանիոյ մէկ մասն առնել, Դեմետր՝ որ Պիւռոսին քոյրը կին առեր էր՝ Ետոլացւոց վրայ գնաց, յաղթեց, ու Բէովտիոյ տիրեց։ Այն ատենը Արատոս Ետոլացւոց հետ միաբանեցաւ ջանաց Աթենքին տիրել, բայց Դեմետրէն յաղթուեցաւ։

1 Դեմետր քիչ ատենէն մեռաւ, ու թագաւորութիւնը թողուց Փիլիպպոս որդւոյն (232)։ Դեմետրին եղբայրը Անտիգոնոս Դոսոն խնամակալ գրուեր էր Փիլիպպոսի՝ որ դեռ տղայ էր․ բայց ինքը թագաւորութիւնը յափշտակեց, Մակեդոնացւոցմէ ապստամբած ազգերուն յաղթեց, Թեսսաղացիքը նուաճեց, Մակեդոնիոյ մէջ ելած խռովութիւնները խաղաղեց, և նորէն Փովկիան ու Բէովտիան առաւ։ Այս միջոցին Արատոս գնաց Աթէնքն առաւ, մէջէն Մակեդոնացի զօրքը քշեց, Պելոպոնեսի քաղաքները ազատեց ու Աքայեցւոց դաշնակցութեան մէջ մտուց։

2 Երբոր Արատոս Յունաստանը ազատելու կ'աշխատէր՝ Սպարտա ներքին խռովութիւններով տակնուվրայ կ'ըլլար։ Արդէն Լիւսանդրի Աթէնքը առնելէն ետև սկսեր էր ոսկին ու արծաթը Սպարտա մտնել․ հարստութիւնն ու զեղ-

---

1 Անտիգոնոս Դոսոն ինչ տեղերու տիրեց։
2 Այն ատենները Սպարտա ինչ վիճակի մէջ էր։

խուլթիւնը քիչ ատենի մէջ շատ առաջ գացեր էր, և քաղաքացւոց առջի բարքը բոլորովին աւրուեր էր։ Օրէնք մը կար առաջ որ չէր կրնար մէկը մեռնելու ատեն իր ժառանգութիւնը ուզած մարդուն թողուլ. աս օրէնքը վերնալով բոլոր երկիրները ու հարստութիւնը քանի մը հոգւոյ ձեռքը անցեր էին։ Եօթը հարիւր հոգի հազիւ մնացեր էին Սպարտայի մէջ, անոնց մէջէն ալ հազիւ հարիւրը ժառանգութիւն ունէր. մնացածները վերջի աստիճանի աղքատութեան մէջ ու պարտքի տակ ընկած՝ ամէն անզգամութիւն կ'ընէին։

1 Երբոր ասանկ կործանելու վրայ էր Սպարտա՝ աթոռը նստաւ Ագիս (244), ու ամենայն կերպով սկսաւ Լիկուրգոսի օրէնքները նորոգելու ետևէ ըլլալ, որ այնչափ ատեն Սպարտայի մեծութեան ու փառացը պատճառ եղեր էին։ Երիտասարդներն ու աղքատները շուտով հետևեցան իրեն, բայց հարուստներն ու կանայք իրենց զեղխութիւնները չուզելով թողուլ՝ դէմ կեցան։

2 Երբոր Ագիսին կուսակիցը Լիւսանդր ալ պարետ ընտրուեցաւ՝ Ագիս ծերակոյտը ժողվեց (239), ու աս բարեկարգութիւններն առաջարկեց. Ա. Պարտքերը ջնջուին։ Բ. Լակոնիոյ եր-

---

1 Ո՞վ ուզեց նորոգել Սպարտայի հին օրէնքները։

2 Ագիս ի՞նչ բարեկարգութիւններ առաջարկեց Սպարտացւոց։

կիրը տասնըինը հազար հինգ հարիւր մասն բաժնուի, որոնց տասնըհինգ հազարը զէնք վերցընել կրցող Լակոնիացւոց բաժնուի, չորս հազար հինգ հարիւրն ալ Սպարտացւոց։ Գ. Ամէն քաղաքացիք միակերպ կեանք անցընեն, և իրենց նախնեաց կրթութիւնն առնեն։ Ծերակոյտը հաստատեց աս բաները, ու աղքատները իրենց պարտքերուն մուրհակները բերին հրապարակը դիզեցին և մեծ ուրախութեամբ այրեցին։

1 Ագեսիղայոս՝ Ագիսին հօրեղբայրը, շատ պարտքի տակ ըլլալուն համար՝ ամենայն կերպով ջանացեր էր որ ժամ մը առաջ պարտքերուն վրայ եղած օրէնքը կատարուի. բայց որովհետև կալուածներու ալ տէր էր՝ երկիրներուն բաժանմունքը կրցածին չափ ուշացուց, ինչուան որ Ագիս ելաւ Ետողացւոց դէմ Արատոսի օգնութեան գնաց։

2 Երբոր դարձաւ՝ բոլորովին փոխուած գտաւ Ագիս Սպարտան։ Ժողովուրդը Ագեսիղայոսի բռնաւորութեանը չդիմանալով՝ Լեւոնիդաս թագաւորը (որ Ագիսին ընելու բարեկարգութեանը դէմ կենալուն համար քիչ մը առաջ աքսորեր էին) ետ կանչեցին ու թագաւոր նստեցուցին։ Լեւոնիդաս բարեկարգութեան թշնամիներուն գլուխ կեցած՝ Կղէոմբրոտ թագաւորը աքսորել տուաւ, Ագիսն ալ բանտի մէջ մօրն

---

1 Ագեսաղայոս ինչպէս արգելք եղաւ Ագիսի բարեկարգութեանցը։

2 Ագիսի վերջը ինչպէս եղաւ։

ու մամուն հետ մեռցընել տուաւ, և ինքը մի-
նակ թագաւորելով հարստանալու ու զօրա-
ճանալու ետևէ եղաւ, ինչուան որ քիչ ատենէն
մեռաւ ու թագաւորութիւնը Կղէոմէն որդւոյն
թողուց (235)։

1 Կղէոմէն միտքը դրաւ որ Ագիսին սկսած
բարեկարգութիւնը ինքը գլուխ հանէ։ Բայց
գիտնալով որ պարետները իրեն ալ դէմ պիտի
կենան՝ սկսաւ պատերազմի ատիթ փնտռել, որ-
պէս զի յաղթութեամբ մը ժողովրդեան աչքը
մտնելով զօրանայ և ուզածը առաջ տանի։ Ան
ատենները բաց 'ի Եղէացւոց, Լակեդեմոնա-
ցւոց և անոնց դաշնակից Արկադացւոց՝ բոլոր
Պեղոպոնեսի ազգերը Աքայեցւոց դաշնակցու-
թեան մէջ մտեր էին, և Արատոս Արկադացւոց
վրայ վազեց (225)։ Հինգ հազար հոգւով ա-
նոնց օգնութիւն հասաւ Կղէոմէն, ուզեց Արա-
տոսին հետ պատերազմիլ՝ որուն զօրքն էր քսան
հազար հետևակ և հազար ձիաւոր։ Երբոր Ա-
րատոս չուզեց պատերազմիլ, յարձակեցաւ վրան
Կղէոմէն ու երկու անգամ յաղթեց անոր. ո-
րով զօրքը մեծ համարմունք առին վրան։

2 Կղէոմէն Սպարտա դառնալուն պէս (224),
չորս պարետ իրենց կուսակիցներովը մեռցընել
տուաւ, ու իրեն հակառակ եղողներէն ութ-
սուն հոգի քշել տուաւ։ Ետքը իմացուց ժողո-

---

1 Կղէոմէն ի՞նչ կերպով ջանաց Ագիսի բարե-
կարգութիւնները 'ի գործ դնել։

2 Իր խորհուրդը ի՞նչպէս առաջ տարաւ։

վրդեան թէ իր միտքն ինչ է , և ինքը ամենէն առաջ բոլոր ունեցածը բերաւ հասարակաց տուաւ : Իրեն օրինակին հետեւեցան նախ իր բարեկամները , ետքը նաև ամէնքը , և երկիրը ամենուն հաւասար բաժնուեցաւ : Տղոց դաստիարակութեան ու հասարակաց սեղանին համար Լիկուրգոսի գրած օրէնքներն ալ հաստատեց :

1 Սպարտան ասանկ կարգաւորելէն ետքը՝ գնաց Մեգալոպոլիսի երկիրը սկսաւ աւրըշտըկել : Աքայեցւոց ձեռքէն շատ քաղաքներ առաւ , անոնց դաշնակցաց երկիրներն անապատ դարձուց . զիրենք պատերազմի ստիպելով մեծ յաղթութիւն մը րրաւ : Աքայեցիք վախնալով որ չըլլայ թէ Ետոլացւոց հետ ալ դաշինք գնեն ու աւելի զօրանան Սպարտացիք՝ ուզեցին հաշտութիւն ընել : Յանձն առաւ Կղէոմէն որ առած քաղաքներն ու բռնած գերիները ետ դարձընէ , աս պայմանով որ զինքը բոլոր Աքայեան դաշնակցութեան սպարապետ անուանեն :

2 Արատոս , որ իր քաղաքութեանը Նորոգիչ ազատութեան ըսուելու արժանի եղեր էր՝ նախանձեցաւ Կղէոմենին ու չթողուց անոր ան անունը՝ որ երեսունուերեք տարուընէ 'ի վեր ինքը առած էր . ուստի իր փառասիրութեանը զոհ ընելով հայրենեաց ազատութիւնը՝ Մակեդոնիոյ Անտիգոնոս թագաւորը իրեն օգնութիւն կանչեց , և մէկէն սկսաւ Սպարտացւոց հետ պա-

---

1 Աքայեցւոց վրայ ինչ յաղթութիւն բրաւ :
2 Արատոս ինչ բանով իր անունը աւրեց :

տերազմիլ: Կղէոմէն գնաց Աքայեցւոց ձեռքէն շատ քաղաքներ առաւ, որոնց մէջ էին նաև Կորնթոս և Արգոս. բայց երբոր Անտիգոնոս եկաւ Կորնթոսի միջնաբերդին տիրեց, Կղէոմէն թողուց գնաց Արգոսացիքը նուաճելու՝ որ ոտք ելլելու կը պատրաստուէին:

1 Ցանկարծակի Մեգաղուպոլիս քաղաքին վրայ հասաւ առաւ. քաղաքացիք Մեսսենէ փախեր էին. առաջարկեց իրենց որ եթէ Աքայեցւոց դաշնակցութենէն ելլեն ու Սպարտացւոց կողմն անցնին՝ քաղաքնին իրենց կը դարձնէ. երբոր անոնք յանձն չառին, ինքն ալ հիմնայատակ կործանեց քաղաքը: Յաջորդ տարին քսանըութը հազար հետևակով ու հազար երկու հարիւր ձիաւորով Լակոնիոյ վրայ դիմեց Անտիգոնոս. Կղէոմէն, որ քսան հազար հոգի միայն ունէր, Սելասիա քաղաքին մօտ ամուր տեղ մը գնաց բանակեցաւ, ուսկից հարկաւ պիտի անցնէր թշնամին:

2 Երկու բանակները քանի մը օր ճակատած կենալէն ետքը պատերազմի որ սկսան (222), Մեգաղուպոլսեցի Փիլոպեմէն երիտասարդին ձեռքովը բոլորովին յաղթեց Անտիգոնոս: Սպարտացիք գրեթէ բոլորովին ջարդուեցան, և Կղէոմէն հազիւ երկու հարիւր հոգւով Սպարտա փախաւ. համոզեց բնակիչներն որ սիրով ընդու-

---

1 Կղէոմէն ինչպէս կործանեց Մեգաղուպոլիս քաղաքը:

2 Ի՞նչպէս յաղթուեցաւ ու մեռաւ:

նին Անտիգոնոսը, և ինքը բարեկամներէն շատը հետն առած՝ Եգիպտոս գնաց, և Պտղոմէոս թագաւորէն շատ սէր ու պատիւ գտաւ։ Խոստացաւ Պտղոմէոս որ շատ զօրքով զինքը Սպարտա դարձընէ. բայց մահը վրան հասնելով՝ խոստմունքները անկատար մնացին։ Երբոր անոր տեղը նստաւ Պտղոմէոս Փիլոպատոր, թշնամեաց գրգռութեամբը Կղէոմենին վրայ կասկածի երթալով (որ անուշ բնաւորութեամբն ու առաքինութեամբը Աղեքսանդրացւոց սիրելի եղեր էր) բռնեց զինքը բանտ դրաւ։ Բարեկամները բանտին դուները բացին՝ զինքը ազատեցին, և Կղէոմեն զէնքը ձեռքը սկսաւ Աղեքսանդրիոյ մէջ վազելով՝ ժողովուրդը ազատութեան յորդորել։ Քանի մը կտրիճ Սպարտացիներ հետը միացան, ժողովուրդն ալ ետևէն գնացին, վրան ցաւեցան, բայց ամենևին հետը չմիաբանեցան։ Թագաւորին թիկնապահները երբոր վրայ հասան, Սպարտացիք չուզելով թշնամւոյն ձեռքը մատնուիլ՝ զարկին գաղտնաբար մէկզմէկ սպաննեցին, և Փիլոպատոր՝ Կղէոմենին մայրը, կինն ու զաւկըները մեռցընել տուաւ, անոր դիակն ալ խաչի վրայ կախեց։

1 Անտիգոնոս Սպարտա մտնելով՝ ամենևին նեղութիւն մը չտուաւ Սպարտացւոց. միայն թէ Կղէոմենին նորոգած Լիկուրգոսի օրէնքները ջնջեց։ Իրեք օր հազիւ կեցաւ Անտիգոնոս Սպարտա, և լսելով որ քովի ազգերը Մակեդո-

---

1 Անտիգոնոս ի՞նչ կերպով տիրեց Սպարտայի։

նման կ'աւրըշտըկեն՝ ելաւ անոնց վրայ գնաց. շատ յաղթութիւններ ըրաւ, ու տարիէ մը ետքը մեռաւ՝ իրեն յաջորդ թողլով Դեմետրի որդին Փիլիպպոսը որ տասնըչորս տարեկան էր (221):

## ԳԼՈՒԽ ԺԸ.

Պատերազմ երկու դաշնակցութեանց. — Ետողացիք. — Լիւրիկէի Տեւտա թագուհին. — Փիլիպպոսի Հռոմայեցւոց հետ պատերազմը. — Շանագլուխ ըսուած բլրին պատերազմը. — Փլամինիոս Յունաց ազատութիւն կը խոստանայ. — Նաբիս բռնաւորը. — Փիլոպեմէն. — Փիլիպպոս իր Դեմետր որդին սպաննել կուտայ. — Պերսէոս. — Պիւդնայի քով կը յաղթուի ու կը բռնուի. — Հռոմայեցւոց Յունաստանի տիրելը:

1 Անտիգոնոսի որդւոյն Փիլիպպոսի թագաւորած ատենը, Յունաստանի քսանութը մանր տէրութիւններէն քսանուերեքը Մակեդոնիոյ իշխանութեան տակն էին. միայն Մեսսենիա, Եղիս, Ատտիկէ, Ետողիա և Ակառնանիա իրենց անկախութիւնը պահեր էին:

2 Ետողացիք Փիլիպպոսի պզտիկութիւնը առ-

---

1 Փիլիպպոսի թագաւորած ատենը Յունաստան ինչ վիճակի մէջ էր:

2 Ետողացիք ինչպէս յաղթեցին Աքայեցւոց:

համարհելով՝ ուզեցին Աքայեան դաշնակցութիւնը աւրել ու Պեղոպոնեսի վրայ տիրապետել: Մեսսենիացիք Ետողացւոց բռնաւորութենէն ձանձրացած՝ Փիլիպպոսէն խնդրեցին որ իրենք ալ Աքայեան դաշնակցութեան մէջ մըտնեն. Ետողացիք ալ իմանալով որ Լակեդեմոնացիք ծածուկ անոնց հետ դաշնակցութիւն կ'ընեն՝ անոնցմէ բաժնուեցան: Ծուաս մը Ետողացիք Պեղոպոննես մտան աւրըշտըկեցին, ու Կափիեսի քով մեծ յաղթութիւն մը ըրին Աքայեցւոց վրայ՝ որոնց զօրավարն էր Արատոս (220): Աքայեցւոց աղաչանքովը Փիլիպպոս Պեղոպոննես եկաւ, այլ և այլ տէրութեանց դեսպանները Կորնթոս ժողվեց, ու հոն խորհրդով որոշեցին որ պատերազմ բանան Ետողացւոց վրայ:

1 Եղէացիք, Ամբրակացիք ու Սպարտացիք՝ յայտնի Ետողացւոց կողմն անցան: Պատերազմին մէջ Փիլիպպոս յաղթեց Ետողացւոց, այնպէս որ ստիպուեցան հաշտութիւն խնդրելու: Հաշտութիւն ըրաւ Փիլիպպոս, բայց Եղիսի, Ետողիոյ ու Թեսսաղիոյ մէջ առած քաղաքները ետ դարձուց: Ասանկով լմընցաւ աս պատերազմը որ իրեք տարի քշեց, ու կ'ըսուի պատերազմ Երկուց դաշնակցութեանց (217):

2 Փիլիպպոսի դէմ անկէց ետքը շատ աւելի

---

1 Երկուց դաշնակցութեան պատերազմը ինչպէս լմընցաւ:

2 Հռովմայեցիք ինչ պատճառաւ սկսան Յունաստանի բաներուն մէջ մտնել:

ահաւոր թշնամի Հռովմայեցիք եղան ։ Քանի մը տարի առաջ երբոր Ետոլացիք Սպարտանիոյ վրայ յարձակեր էին, Սպարտանացիք Հռովմայեցւոց պաշտպանութիւնը խնդրեր էին ։ Ետոլացիք Հռովմայեցւոց դեսպանները նախատեր ու նարէն սկսեր էին Սպարտանիան աւերշարկել. Հռովմայեցիք ձայն չէին հանած՝ վրէժնին հանելու յարմար ժամանակի սպասելով ։

1 Տասը տարի ետքը Հռովմայեցիք դեսպան խրկեցին Լիւրիկէի Տեւտա թագուհւոյն որ իր հպատակները չթողու որ երթան Իտալիոյ ծովեզերքը աւարակութիւն ընեն ։ Տեւտա երբոր ան դեսպաններուն մէկը բռնեց սպաննեց, Հռովմայեցիք վրան պատերազմ բացին, Լիւրիկէի շատ քաղաքներուն տիրեցին ու հոն սկսան բնակիլ ։

2 Փիլիպպոս տեսնելով Հռովմայեցւոց ահաւոր զօրութիւնը և տիրապետելու սէրը, սկսաւ վախնալ ։ Ուստի երբոր երկու դաշնակցութեանց պատերազմը լմնցաւ՝ իր դաշնակիցները Նաւպակտոս ժողվեց ու խորհուրդ ըրաւ որ Հռովմայեցիքը Լիւրիկէէն դուրս քշեն (216). ասոր բանին համար Աննիբաղայ ու Կարքեդոնացւոց հետ ալ դաշինք դրին իրարու օգնելու. Փիլիպպոս հարիւր ցռկանաւով գնաց ծովեզերեայ Որիքա քաղաքին տիրեց, և Ապողոնիան

---

1 Ի՞նչ կերպով մտան Լիւրիկէ ։

2 Փիլիպպոս առաջին անգամ ի՞նչպէս յաղթուեցաւ Հռովմայեցւոցմէ ։

պաշարեց (214). բայց երբոր Լեւինոսէն յաղթուեցաւ, բոլոր նաւատորմղին կրակ տուաւ այրեց, որպէս զի Թշնամւոյն ձեռքն չանցնին։

1 Ասոր տեսնելով Ետողացիք, Սպարտացիք, Եղէացիք, Աթենացիք և Լիւրիկեցիք՝ Փիլիպպոսի դէմ դարձան։ Փիլիպպոս ալ փոխանակ Յունաստանի մէկալ ազգերը հետը միացընելու՝ անխոհեմութեամբ ու սպանութիւններով զանոնք աւելի հեռացուց իրմէ։ Գնաց Մեսսենիան աւըրշտըկեց. Արատոսը Թունաւորել տուաւ, Փիլոպեմենն ալ սպաննելու ջանաց. միանգամայն տեսնելով որ պիտի չկարենայ ինչուան ետքը դիմանալ՝ Հռովմայեցւոց հետ հաշտութիւն ըրաւ (205)։ Այն դաշնադրութեամբ Հռովմայեցիք Լիւրիկէի քանի մը քաղաքներուն տիրեցին, մէկ քանիին ալ պաշտպան եղան։

2 Փիլիպպոս գիտնալով որ Հռովմայեցիք ատեն վաստըկելով՝ զինքը նուաճելու պատրաստութիւն կը տեսնեն, ինքն ալ ամենայն կերպով կը պատրաստուէր անոնց դէմ կենալու. Հռովմայեցւոց դաշնակից Յունաց քաղաքները աւըրշտըկեց, ու Անտիոքայ ստակ ու զօրք օգնութիւն խրկեց։ Ասոր համար Հռովմայեցիք Փիլիպպոսին վրայ շատ զօրքով Փլամինինոսը խաւրեցին (200)։ Մէկէն Աթենացիք, Լիւրիկեցիք և Սպարտացիք Հռովմայեցւոց կողմն անցան.

---

1 Անկէ ետքը ինչ ըրաւ Փիլիպպոս։

2 Շանագլուխք ըսուած տեղը ինչպէս յաղթուեցաւ վերջին անգամ։

ստակի զօրութեամբ ալ Փիլիպպոսէն զատուե-ցան Եպիրոս, Թեսաղիա, Փովկիս, Աքայեան դաշնակցութիւնը և Բէովտիա. այնպէս որ վեր-ջապէս մինակ մնաց Փիլիպպոս, Շնագլուխք ըսուած տեղը բոլորովին յաղթուեցաւ, Հռով-մայեցւոց իր վրայ դրած ծանր պայմանները յանձն առաւ, որոնց գլխաւորն աս էր որ տա-սը տարուան մէջ հազար տաղանդ (այսինքն գրեթէ հինգ միլիոն ու կէս ֆրանք) պիտի տար, և որդին Դեմետրը Հռովմ պատանդ պիտի խրը-կէր (196)։

[1] Յոյնք դեռ չէին լսած հաշտութեան պայ-մանները, ու չէին գիտեր թէ ինչպէս պիտի վա-րուին հետերնին Հռովմայեցիք. և ան օրերը Իսթմեան խաղերուն տօնն ըլլալով՝ ամէնքը Կորն-թոս գնացեր էին։ Երբոր ժողովուրդը ասպարէ-զի մը մէջ ժողվուեր կեցեր էր, յանկարծ պատ-գամաւոր մը եկաւ, ու Լռութի՜ւն կանչելով սկսաւ բարձր ձայնով իրենց իմացընել որ Հռով-մայ ծերակոյտն ու Փլամինինոս զօրավարը Փի-լիպպոսին յաղթելով՝ բոլոր Յունաց ազատու-թիւն կուտան որ ուզածնուն պէս իրենց օրէնք-ներովը ու սովորութիւններովը իրենք զիրենք կառավարեն։ Աս որ լսեցին Յոյնք՝ ուրախութե-նէն այնպէս կանչուըռտեցին ու ծափ զարկին՝ որ ան հրապարակին վրայ թռչող ագռաւնե-րը շփոթած վար թափեցան կ'ըսեն։ Ետքը Փլա-

---

1 Հռովմայեցիք ինչ կերպով ազատութիւն տուին Յունաց։

մինխնոսին քովը վազեցին Յոյնք, ու շնորհակալ ըլլալով ձեռքը ոտքը կը պագնէին ու ծաղիկներով գլուխը կը պսակէին։ Չէին գիտեր խեղճերն որ քիչ ատենէն՝ ունեցած ազատութիւննին ալ ձեռքերնէն պիտի երթար։

1 Աքայեցիք՝ որոնց գլուխն էր Փիլոպեմեն, և Սպարտայի Նաբիս բռնաւորը, սկսան անկէց ետքը իրարու ձեռքէն յափշտակել Պեղոպոնէսը. վերջապէս երկուքն ալ չկրցան տիրել ու փուճ տեղը մէկզմէկ տկարացուցին։

2 Նաբիս ագահութեան ու անգթութեան հրէշ մըն էր։ Աս երկու ախտերը կատարելու համար՝ կնկանը կերպարանքովը մեքենայ մը հընարեր էր, որուն ձեռքերուն, թևերուն ու կուրծքին վրան սուր երկաթներ կային, և վրանաւոր լաթով ծածկուած էին։ Երբոր Նաբիս մէկ հարուստէ մը ստակ ուզէր ու անիկայ չտար, Կը յուսամ որ կինս քեզի խօսք կը հասկըցընէ՝ կ'ըսէր, ու մեքենային ձեռքէն բռնած կը մօտեցընէր ան մարդուն. մեքենան ալ մէկէն ան սոսկալի ձեռուընները բացած՝ խեղճը կը գրկէր, կը սխմէր, անանկով մէկէնիմէկ կամ ստակը կ'առնէր կամ կեանքը։

3 Ան ատեններն որ Հռովմայեցիք Ասորւոց

---

1 Աքայեցիք ու Սպարտացիք ան ատենները ինչ վիճակի մէջ էին։
2 Նաբիս ինչ անգթութիւններ կ'ընէր։
3 Հռովմայեցիք ինչ կերպով սկսան Աքայեան դաշնակցութիւնը քակտել։

Անտիոքոս Թագաւորին հետ ըրած պատերազմէն, Փիլոպեմէն ամենայն կերպով ջանացեր ու Պեղոպոնեսի բնակիչները Աքայեան դաշնակցութեան մէջ մտուցեր էր, որով անիկայ նոյն օրէնքներին ու դատաւորները ունենալով զօրաւոր հասարակապետութիւն մը ձեւացեր էր։ Հռովմայեցիք տեսնելով որ այս հասարակապետութիւնը արգելք պիտի ըլլայ իրենց դիւրաւ Յունաստանի տիրելուն, վատութեամբ Փիլոպեմէնը սպաննել տուին (183), ու խաբէական հնարքներով Սպարտան և ուրիշ շատ քաղաքներ Աքայեան դաշնակցութենէն բաժնեցին։

1 Փիլոպեմէն պզտիկուց Եպամինոնդը իրեն օրինակ առնելով չարքաշութեան ու գործունէութեան վարժեր էր։ Պատերազմի ալ վարժելու համար՝ Մեծին Աղեքսանդրի պատմութիւնը ձեռքէն չէր թողուր։ Սելլասիայի պատերազմին ատեն Անտիգոնոս Դոսոն Թագաւորը հեծելապետին բարկանալ ձեւացուց որ իր նշան տալուն չսպասելով պատերազմի սկսան։ Անիկայ ալ երբոր յանդիմանեց Մեգալոպօլսեցի երիտասարդի մը՝ այսինքն Փիլոպեմէնի վրայ ձգեց, — Ան երիտասարդը, ըսաւ Անտիգոնոս, առիթը չփախցնելով ցուցուց թէ ինքը մեծ զօրավար է, իսկ դուն առիթը փախցնելովդ յայտնի ըրիր թէ դեռ երիտասարդ ես։ Ուզեց Դոսոն զինքը քովը պահել, բայց Փիլոպեմէն հայրենեացը ծառայելը անոր Թագաւորական

---

1 Փիլոպեմէն ինչ բնաւորութեան տէր էր։

օգնէ, Վասն զի Աքայեցւոց զօրավարը սպաննել հրաւիրեր էնք՝ կ'ըսէ: Մեկէն վերարկուն կը հանէ Փիլոպեմէն, ու կացինը ձեռքն առած կը սկսի փայտ կոտրել: Տանտիկինը վրայ հասնելով Փիլոպեմէնը ճանչցածին պէս կը սկսի զարմացմամբ կանչել. Աս ինչ բան է, տէր Փիլոպեմէն, ինչ կ'ընես. — Բան չկայ, կ'ըսէ Փիլոպեմէն, հագուստիս խեղճութեանը պատիժը կը քաշեմ: Ահա այսպիսի առաքինութիւններով վերջին Յունաց ըսուեցաւ Փիլոպեմէն. և իրաւցընէ, աս հռչակաւոր անձէն ետքը Յունաստանի մէջ անուանի մարդ մը չելաւ:

1 Փիլոպեմէնի մահուանը վրայ շատ բարկացան Աքայեցիք, ամէնքն ալ զէնք առին, ու վրէժխնդրութեան հոգւով կրկին զօրացած՝ Մեսսենիան աւըրշտըկեցին, ու Փիլոպեմէնը սպաննողները բռնեցին՝ անոր գերեզմանին քովը քարկոծեցին: Փիլոպեմէնի ալ այնպիսի փառաւոր յուղարկաւորութիւն ըրին որ աւելի յաղթանակի կը նմանէր, և կարծես թէ Յունաստան Փիլոպեմէնի հետ իր փառքն ու ազատութիւնն ալ թաղեց:

2 Երբոր Հռովմայեցւոց զօրքը քիչ մը ետ քաշուեցաւ, սկսաւ Փիլիպպոս պատերազմի պատրաստութիւն տեսնել: Սակայն Դեմետր իր

---

1 Փիլոպեմէնի մահն որ լսեցին Աքայեցիք ի՞նչ ըրին:

2 Փիլիպպոս ի՞նչ պատճառաւ 'ի մահ դատապարտեց իր Դեմետր որդին:

որդին, որ Հռովմ պատանդ գնացեր էր՝ ծերա-
կուտին առջեւը մտնելով ազատութիւն առաւ ու
Մակեդոնիա դարձաւ. հայրը տեսնելով որ
Հռովմայեցւոց վրայ սէր կը ցուցնէ, վրան
կասկածիլ սկսաւ, իր մեծ որդին Պերսէոս ալ
եղբօրը վրայ նախանձեցաւ, և որպէս զի Դե-
մետր օր մը չթագաւորէ՝ վրան յանցանք ձգել
կը ջանար: Հանդիսի օր մը մրցութիւն էր որ
Մակեդոնացւոց զօրքը երկու բաժնուած՝ պա-
տերազմ կը ձեւացընէին. մէկ կողմին զօրավար
Դեմետր եղաւ, մէկալ կողմին ալ Պերսէոս, և
Դեմետրին կողմը յաղթեց: Իրիկունը երկուքն
ալ իրենց բարեկամներուն սեղան ըրին. Պեր-
սէոս լրտեսներ խրկեց որ իմանայ թէ Դեմետրին
սեղանը ինչ կը խօսին. աս բանս Դեմետրի մար-
դիկներէն ոմանք իմացան ու լրտեսները բռնեցին
ծեծեցին, վռնտեցին: Դեմետր եղածը չգիտնա-
լով սեղանէն ետքը ըսաւ թէ Երթանք Պերսէո-
սին սիրտը առնենք. ամէնքը հաւանեցան, բայց
Պերսէոսին լրտեսները ծեծողները վախնալով
որ փորձանքի մը չհանդիպին՝ հագուստներնուն
տակը թուր ծածկած՝ անանկ գնացին: Պերսէոս
իմացաւ, դռները գոցեց ու պատուհանէն յան-
դիմանեց զանոնք ըսելով թէ Գիշեր ատեն եկեր
էք զիս մեռցընելու: Հայրերնին Փիլիպպոս աս
բանը լսելով դատաստանի նստաւ. Պերսէոս շատ
ճարտար կերպով խօսեցաւ. Դեմետր ալ ան-
խռով կերպով ինքզինքը արդարացուց. սակայն
տեսնելով որ հայրը միշտ վրան կասկածի կ'եր-
թայ, Պերսէոս ալ անդադար որոգայթներ կը
լարէ իրեն, ուզեց Հռովմ երթալ ապաւինիլ.

ահաւոր Թշնամի Հռովմայեցիք եղան։ Քանի մը տարի առաջ՝ երբոր Ետոլացիք Ակառնանիոյ վրայ յարձըկեր էին, Ակառնանացիք Հռովմայեցւոց պաշտպանութիւնը խնդրեր էին։ Ետոլացիք Հռովմայեցւոց դեսպանները նախատեր ու նորէն սկսեր էին Ակառնանիան աւրըշարըկել. Հռովմայեցիք ձայն չէին հանած՝ վրէժնին հանելու յարմար ժամանակի սպասելով։

1 Տասը տարի ետքը Հռովմայեցիք դեսպան խրկեցին Լիւրիկէի Տեւտա թագուհւոյն որ իր հպատակները չթողու որ երթան Իտալիոյ ծովեզերքը աւազակութիւն ընեն։ Տեւտա երբոր ան դեսպաններուն մէկը բանեց սպաննեց, Հռովմայեցիք վրան պատերազմ բացին, Լիւրիկէի շատ քաղաքներուն տիրեցին ու հոն սկսան բնակիլ։

2 Փիլիպպոս տեսնելով Հռովմայեցւոց ահաւոր զօրութիւնը և տիրապետելու սէրը, սկսաւ վախնալ։ Ուստի երբոր երկու դաշնակցութեանց պատերազմը լմընցաւ՝ իր դաշնակիցները Նաւպակտոն ժողվեց ու խորհուրդ ըրաւ որ Հռովմայեցիքը Լիւրիկէէն դուրս քշեն (216). աս բանիս համար Աննիբաղայ ու Կարքեդոնացւոց հետ ալ դաշինք դրին իրարու օգնելու. Փիլիպպոս հարիւր ցռկանաւով գնաց ծովեզերեայ Որիքա քաղաքին տիրեց, և Ապողոնիան

---

1 Ի՞նչ կերպով մտան Լիւրիկէ։

2 Փիլիպպոս առաջին անգամ ի՞նչպէս յաղթուեցաւ Հռովմայեցւոցմէ։

պաշարեց (214). բայց երբոր Լեւինոսէն յաղթուեցաւ, բոլոր նաւատորմիղին կրակ տուաւ այրեց, որպէս զի Թշնամւոյն ձեռքն չանցնին։

1 Աս տեսնելով Ետոլացիք, Սպարտացիք, Եղէացիք, Աթենացիք և Լիւրիկեցիք՝ Փիլիպպոսի դէմ դարձան։ Փիլիպպոս ալ փոխանակ Յունաստանի մէկալ ազգերը հետը միացընելու՝ անխոհեմութեամբ ու սպանութիւններով զանոնք աւելի հեռացուց իրմէ։ Գնաց Մեսսենիան աւրըշտըկեց. Արատոսը Թունաւորել տուաւ, Փիլոպեմենն ալ սպաննելու ջանաց. միանգամայն տեսնելով որ պիտի չկարենայ ինչուան ետքը դիմանալ՝ Հռովմայեցւոց հետ հաշտութիւն ըրաւ (205)։ Այն դաշնադրութեամբ Հռովմայեցիք Լիւրիկէի քանի մը քաղաքներուն տիրեցին, մէկ քանիին ալ պաշտպան եղան։

2 Փիլիպպոս գիտնալով որ Հռովմայեցիք ատեն վաստըկելով՝ զինքը նուաճելու պատրաստութիւն կը տեսնեն, ինքն ալ ամենայն կերպով կը պատրաստուէր անոնց դէմ կենալու. Հռովմայեցւոց դաշնակից Յունաց քաղաքները աւրըշտըկեց, ու Աննիբաղայ ստակ ու զօրք օգնութիւն խրկեց։ Ասոր համար Հռովմայեցիք Փիլիպպոսին վրայ շատ զօրքով Փլամինինոսը խաւրեցին (200)։ Մէկէն Աթենացիք, Լիւրիկեցիք և Սպարտացիք Հռովմայեցւոց կողմն անցան.

---

1 Անկէ ետքը ի՞նչ ըրաւ Փիլիպպոս։

2 Շանագլուխք ըսուած տեղը ի՞նչպէս յաղթուեցաւ վերջին անգամ։

սաստիկ զօրութեամբ առ Փիլիպպոսէն զատուեցան Եպիրոս, Թեսաղիա, Փոկիս, Աքայեան դաշնակցութիւնը և Բէովտիա. այնպէս որ վերջապէս մինակ մնաց Փիլիպպոս, Շանագլուխք ըսուած տեղը բոլորովին յաղթուեցաւ, Հռովմայեցւոց իր վրայ դրած ծանր պայմանները յանձն առաւ, որոնց գլխաւորն աս էր որ տասը տարուան մէջ հազար տաղանդ (այսինքն գրեթէ հինգ միլիոն ու կէս ֆրանք) պիտի տար, և որդին Դեմետրը Հռովմ պատանդ պիտի խըրկէր (196)։

¹ Յոյնք դեռ չէին լսած հաշտութեան պայմանները, ու չէին գիտեր թէ ինչպէս պիտի վարուին հետերնին Հռովմայեցիք. և ան օրերը Իսթմեան խաղերուն տօնն ըլլալով ամէնքը Կորնթոս գնացեր էին։ Երբոր ժողովուրդը ասպարէզի մը մէջ ժողվուեր կեցեր էր, յանկարծ պատգամաւոր մը եկաւ, ու Լռութի՛ւն կանչելով սկսաւ բարձր ձայնով իրենց իմացընել որ Հռովմայ ծերակոյտն ու Փլամինինոս զօրավարը Փիլիպպոսին յաղթելով՝ բոլոր Յունաց ազատութիւն կուտան որ ուզածնուն պէս իրենց օրէնքներովը ու սովորութիւններովը իրենք զիրենք կառավարեն։ Աս որ լսեցին Յոյնք՝ ուրախութենէն այնպէս կանչուըռտեցին ու ծափ զարկին՝ որ ան հրապարակին վրայ թռչըռտող թռչունները շփոթած վար թափեցան կ՚ըսեն։ Ետքը Փլա-

¹ Հռովմայեցիք ինչ կերպով ազատութիւն տուին Յունաց։

մինինուսին քովը վազեցին Յոյնք, ու շնորհակալ ըլլալով ձեռքը ոտքը կը պագնէին ու ծաղիկնե-րով գլուխը կը պսակէին ։ Զէին գիտեր խեղճերն որ քիչ ատենէն՝ ունեցած ազատութիւննին ալ ձեռքերնէն պիտի երթար ։

1 Աքայեցիք՝ որոնց գլուխն էր Փիլոպեմէն, և Սպարտայի Նաբիս բռնաւորը, սկսան անկէց ետքը իրարու ձեռքէն յափշտակել Պեղոպոնե-սը․ վերջապէս երկուքն ալ չկրցան տիրել ու փուճ տեղը մէկզմէկ տկարացուցին ։

2 Նաբիս ագահութեան ու անգթութեան հրէշ մըն էր ։ Աս երկու ախտերը կատարելու համար՝ կնկանը կերպարանքովը մեքենայ մը հը-նարեր էր, որուն ձեռքերուն, թևերուն ու կուրծքին վրան սուր երկաթներ կային, և փա-ռաւոր լաթով ծածկուած էին ։ Երբոր Նաբիս մէկ հարուստէ մը ստակ ուզէր ու անիկայ չտար, Կը յուսամ որ կինս քեզի խօսք կը հասկըցընէ՝ կ'ըսէր, ու մեքենային ձեռքէն բռնած կը մօտե-ցընէր ան մարդուն․ մեքենան ալ մէկէն ան աղա-կալի ձեռուըները բացած՝ խեղճը կը գրկէր․ կը սխմէր, անանկով մէկէնիմէկ կամ ստակը կ'առ-նէր կամ կեանքը ։

3 Ան ատեններն որ Հռովմայեցիք Ասորւոց

---

1 Աքայեցիք ու Սպարտացիք ան ատենները ի՞նչ վիճակի մէջ էին ։
2 Նաբիս ի՞նչ անգթութիւններ կ'ընէր ։
3 Հռովմայեցիք ի՞նչ կերպով սկսան Աքայեան դաշնակցութիւնը քակտել ։

Անտիգոնոս Թագաւորին հետ կը պատերազմէին, Փիլոպեմէն ամենայն կերպով ջանացեր ու Պեղոպոնեսի քաղաքները Աքայեան դաշնակցութեան մէջ մտուցեր էր, որով անիկայ նոյն օրէնքներն ու դատաւորները ունենալով զօրաւոր հասարակապետութիւն մը ձեւացեր էր։ Հռովմայեցիք տեսնելով որ աս հասարակապետութիւնը արգելք պիտի ըլլայ իրենց դիտման Յունաստանի ամբողջուն, վատութեամբ Փիլոպեմէնը սպաննել տուին (183), ու խաբէական հնարքներով Սպարտան և ուրիշ շատ քաղաքներ Աքայեան դաշնակցութենէն բաժնեցին։

1 Փիլոպեմէն պզտիկուց Եպամինոնդը իրեն օրինակ առնելով չափաւորութեան ու գործունէութեան վարժեր էր։ Պատերազմի ալ վարժելու համար՝ Մեծին Աղեքսանդրի պատմութիւնը ձեռքէն չէր թողուր։ Սելասիայի պատերազմէն ետքը Անտիգոնոս Դոսոն Թագաւորը հեծելապետին բարկանալ ձեւացուց որ իր նշան տալուն չսպասելով՝ պատերազմի սկսաւ։ Անիկայ ալ երբոր յանցանքը Մեգալոպոլսեցի երիտասարդի մը՝ այսինքն Փիլոպեմէնի վրայ ձգեց, — Այն երիտասարդը, ըսաւ Անտիգոնոս, առիթը ճանչնալով ցուցուց թէ ինքը մեծ զօրավար է, իսկ դուն առիթը փախցնելովդ յայտնի ըրիր թէ դեռ երիտասարդ ես։ Ուզեց Դոսոն զինքը քովը պահել, բայց Փիլոպեմէն հայրենեացը ծառայելը անոր Թագաւորական

---

1 Փիլոպեմէն ի՞նչ բնաւորութեան տէր էր։

խոստմունքներէն վեր գրաւ: Պատերազմի մէջ Փիլոպեմեն Սպարտացւոց Մաքանիդաս բռնաւորը զարկաւ նետով սպաննեց, ու Տեգեա քաղաքը առաւ, անոր համար Աքայեցիք իրեն քաջութեանը յիշատակ՝ պղնձէ արձան մը կանգնեցին: Երբոր Փիլոպեմեն Սպարտացւոց Նաբիս բռնաւորին յաղթեց, եւ Սպարտա մտաւ, ու Սպարտացիքը անուշութեամբ համոզեց որ Աքայեցւոց դաշնակից ըլլան: Սպարտացիք անոր ըրած այս աղէկութեանը համար ուզեցին բոլոր Նաբիսին հարստութիւնը իրեն տալ: Բայց այնչափ մեծ էր Փիլոպեմենին անշահասիրութեան առաւելը՝ որ մէկը յանձն չառաւ այս բանս իրեն իմացընելու, հարկ եղաւ որ մէկ օտարականի մը յանձնեն: Օտարականը անոր ծանրակացութիւնը, սակաւապէտ կեանքն ու աղքատական մտածմունքները տեսնելով՝ չհամարձակեցաւ այս բանիս վրայ խօսք մը բանալու: Երբոր վերջապէս սիրտ ըրաւ ու ըսաւ, հանդարտութեամբ մտիկ ըրաւ Փիլոպեմեն, ետքը մէկէն գնաց Սպարտացւոց շնորհակալ եղաւ ու խրատ տուաւ որ ան ստակը տան՝ չէ թէ բարեկամ մարդկանց որ առանց շահու ալ իրենց կ՚օգնեն, հապա դէշ մարդկանց որ ստակով կուրնան ու իրենց ձայնը չընեն: Փիլոպեմենի հագուստը միշտ պարզ էր, ու մինակ առանց ծառայի կը քալէր: Օր մը բարեկամներէն մէկը զինքը տունը կերակրի կը հրաւիրէ: տանտիկինը կերակուր պատրաստելու ատենը Փիլոպեմեն տունը կը մտնէ. անիկայ կարծելով թէ էրկանը գերիներէն մէկն է՝ կը կանչէ որ գայ քիչ մը իրեն

օգնէ, վասն զի Աքայեցւոց զօրավարը սեղանի հրաւիրեր ենք՝ կ'ըսէ։ Մէկէն վերարկուն կը հանէ Փիլոպեմէն, ու կացինը ձեռքն առած կը սկսի փայտ կոտրել։ Տանտիկինը վրայ հասնելով Փիլոպեմէնը տեսածին պէս կը սկսի զարմացմամբ կանչել. Աս ինչ բան է, տէր Փիլոպեմէն, ինչ կ'ընես. — Բան չկայ, կ'ըսէ Փիլոպեմէն, հագուստիս խեղճութեանը պատիժը կը քաշեմ։ Ահա այսպիսի առաքինութիւններով Մեծ Յունաց ըսուեցաւ Փիլոպեմէն. և իրաւցընէ, աս հաչակաւոր անձէն ետքը Յունաստանի մէջ անուանի մարդ մը չելաւ։

1 Փիլոպեմէնի մահուանը վրայ շատ բարկացան Աքայեցիք, ամէնքն ալ զէնք առին, ու միաբանութեան հոգւով իրենց զօրացած՝ Մեսսենիան աւըրշտըկեցին, ու Փիլոպեմէնը սպաննողները բռնեցին՝ անոր գերեզմանին քովը քարկոծեցին։ Փիլոպեմէնի ալ այնպիսի փառաւոր յուղարկաւորութիւն ըրին որ աւելի յաղթանակի կը նմանէր, և կարծես թէ Յունաստան Փիլոպեմէնի հետ իր փառքն ու ազատութիւնն ալ թաղեց։

2 Երբոր Հռովմայեցւոց զօրքը քիչ մը ետ քաշուեցաւ, սկսաւ Փիլիպպոս պատերազմի պատրաստութիւն տեսնել։ Սակայն Դեմետր իր

---

1 Փիլոպեմէնի մահն որ լսեցին Աքայեցիք ինչ ըրին։

2 Փիլիպպոս ինչ պատճառաւ 'ի մահ դատապարտեց իր Դեմետր որդին։

որդին, որ Հռովմ պատանդ գնացեր էր՝ ծերակուտին աչքը մտնելով ազատութիւն առաւ ու Մակեդոնիա դարձաւ. հայրը տեսնելով որ Հռովմայեցւոց վրայ սէր կը ցուցընէ, վրան կասկածիլ սկսաւ, իր մեծ որդին Պերսէոս ալ եղբօրը վրայ նախանձեցաւ, և որպէս զի Դեմետր օր մը չթագաւորէ՝ վրան յանցանք ձգել կը ջանար: Հանդիսի օր մը սովորութիւն էր որ Մակեդոնացւոց զօրքը երկու բաժնուած՝ պատերազմ կը ձևացընէին. մէկ կողմին զօրավար Դեմետր եղաւ, մէկալ կողմին ալ Պերսէոս, և Դեմետրին կողմը յաղթեց: Իրիկունը երկուքն ալ իրենց բարեկամներուն սեղան ըրին. Պերսէոս լրտեսներ խրկեց որ իմանայ թէ Դեմետրին սեղանը ինչ կը խօսին. աս բանս Դեմետրի մարդիկներէն ոմանք իմացան ու լրտեսները բռնեցին ծեծեցին, վռնտեցին: Դեմետր եղածը չգիտնալով՝ սեղանէն ետքը ըսաւ թէ Երթանք Պերսէոսին սիրտը առնենք. ամէնքը հաւանեցան, բայց Պերսէոսին լրտեսները ծեծողները վախնալով որ փորձանքի մը չհանդիպին՝ հագուստներնուն տակը թուր ծածկած՝ անանկ գնացին: Պերսէոս իմացաւ, դռները գոցեց ու պատուհանէն յանդիմանեց զանոնք ըսելով թէ Գիշեր ատեն եկեր էք զիս մեռցընելու: Հայրերնին Փիլիպպոս աս բանը լսելով դատաստանի նստաւ. Պերսէոս շատ ճարտար կերպով խօսեցաւ. Դեմետր ալ անխռով կերպով ինքզինքը արդարացուց. սակայն տեսնելով որ հայրը միշտ վրան կասկածի կ՚երթայ, Պերսէոս ալ անդադար որոգայթներ կը լարէ իրեն, ուզեց Հռովմ երթալ ապաւինիլ.

չվթայական Հռովմ բերուած՝ Պաւղոս Էմիլիոսին յաղթանակին զարդ ըլլալէն ետև՝ բանտին մէջ մեռաւ (168)։

1 Հռովմայեցիք Մակեդոնիան ու Եպիրիկէն առին և այս մանր միջոցի բաժնեցին ու ազատեցին որ մէկը չկարենայ անոնց մէջէն զօրանալ ելլէ․ և որպէս զի ապստամբել ալ չկարենան՝ ապստամբութեան գլուխ ըլլալու յարմարութիւն ունեցող մարդիկը ժողվեցին՝ Իտալիա խրկեցին։

2 Նոյնպէս ըրին նաև բոլոր Յունաստանին։ Մէկ օրուան մէջ Եպիրոս եօթանասուն քաղաք կործանեցին, ու հարիւր յիսուն հազար հոգի գերի պէս ծախեցին։ Յունաստանի ուրիշ կողմերն ալ շատ քաղաքներ կործանեցին, գլխաւոր անձինքը խաւրեցին Իտալիա, ու հասարակապետութեանց վրայ իրենց կաշառուած մարդիկը իշխան ըրին։ Քանի մը տարի ետքը (149) Անդրիսկոս անունով մէկը որ Պերսէոսի որդին եմ կ'ըսէր, Հռովմէն փախաւ՝ Մակեդոնիա եկաւ, և շատ կուսակիցներ ժողվելով ինքզինքը թագաւոր անուանեց։ Բայց շատ չքշեց թագաւորութիւնը։ Պիւդնայի քով Կեկիլիոս Մետելլոս պրետորը յաղթեց անոր ու Մակեդոնիան Հռովմայ գաւառ մը ըրաւ․ Աքայեցւոց ու Սպարտա-

---

1 Հռովմայեցիք Մակեդոնիոյ ու Եպիրիկէի առնելով ի՞նչ ըրին։

2 Ի՞նչպէս տիրապետեցին Յունաստանի ուրիշ քաղաքներուն։

ցուց մէջ ալ կռիւ մը բացուելով Հռովմայեցիք դեսպանները խաւրեցին որ զիրենք հաշտեցընեն. երբոր Աքայեցիք չընդունեցան ան դեսպանները, Հռովմայեցիք վրանին պատերազմ հրատարակեցին. և Լոկրիսի մէջ Մետեղղոս պրետորը յաղթեց Աքայեցւոց, Մումմիոս հիւպատոսն ալ Կորնթոսի մօտ Լեւկոպետրա ըսուած տեղը։ Այն յաղթութեամբ բոլոր Աքայիա Մումմիոսի ձեռքը անցաւ, որ Կորնթոսը այրեց ու բոլոր Յունաստանը Հռովմայ տէրութեան հետ միացուց (146)։

## ԳԼՈՒԽ ԺԹ.

Գեղարուեստք. — Ճարտարապետութիւն. — Քանդակագործութիւն. — Նկարչութիւն. — Բանաստեղծութիւն. — Պատմութիւն. — Ճարտասանութիւն. — Իմաստասիրութիւն. — Գիտութիւնք։

1 Եգիպտոսէն այլ և այլ տեղէն եկած գաղթականները հետերնին բերին Յունաստան քաղաքականութեան հետ արուեստից ալ սկզբունքը։ Աս գիտութեանց սերմունքը շուտով ծաղկեցան այնպիսի գործունեայ ու բարակամիտ

---

1 Գեղարուեստները ինչպէս սկսան ծաղկիլ Յունաց մէջ։

ժողովրդեան մէջ, որ ինչ և իցէ մեծ ու գեղեցիկ բան որ տեսնէր մէկէն սիրով ու յօժարութեամբ կ'ընդունէր։ Ուստի քիչ ատենի մէջ Յոյնք իրենց վարպետներէն՝ այսինքն Եգիպտացիներէն ալ վեր անցան, ու իրենք եղան անոնց տեղը ուրիշ ամէն ազգաց վարժապետ, ու ամէն տեսակ բանի օրինակներ թողուցին, որոնցմէ շատին անկարելի եղաւ ինչուան հիմայ նմանիլը։

1 ԵՐԱԺՇՏՈՒԹԻՒՆ. — Յունաց գեղարուեստաներուն մէջ ամենէն հինը կը սեպուի երաժշտութիւնը։ Պատմական ժամանակներէն առաջ եղած երաժիշտներու շատ անուններ կան՝ որ աւանդութեամբ միայն պահուած են. անոնց մէջ ալ ամենէն անուանիներն են Լինոս, Ամփիոն, և Որփէոս։

2 ՃԱՐՏԱՐԱՊԵՏՈՒԹԻՒՆ. — Ճարտարապետութիւնն ալ շուտով կատարելագործուեցաւ Յունաց մէջ, և ելաւ ճարտարապետութեան երեք կարգը, այսինքն Դորացի, Յոնիական ու Կորընթեան ճարտարապետութիւնները. քանի գնաց Յունաստան հոյակապ մեհեաններով ու զարմանալի շէնքերով զարդարուեցաւ. և անոնց մէջ աւելի հռչակաւորներն էին Կրետէ կղզւոյն Բաւիղը կամ Լաբիւրինթոսը, Սամոս կղզւոյն Հերայի տաճարը, Եփեսոսի մէջ Արտեմեայ տաճարը. Դելփիսի մէջ Ապողոնի տաճարը. Եղիսի մէջ Արամազդայ տաճա-

---

1 Երաժշտութեան մէջ որո՞նք եղան անուանի։

2 Ճարտարապետութեան կողմանէ Յունաստանի անուանի շէնքերը որո՞նք էին։

օգնէ, վասն զի Աքայեցւոց զօրավարը սեղանի հրաւիրեր ենք՝ կ'ըսէ։ Մեկէն վերարկուն կը ձգէ Փիլոպեմէն, ու կացինը ձեռքն առած կը սկսի փայտ կոտրել։ Տանուտէրը վրայ հասնելով Փիլոպեմէնը տեսածին պէս կը սկսի զարմացմամբ կանչել. Աս ինչ բան է, տէր Փիլոպեմէն, ինչ կ'ընես. — Բան չկայ, կ'ըսէ Փիլոպեմէն, հագուստիս խեղճութեանը պատիժը կը քաշեմ։ Ահա այսպիսի առաքինութիւններով վերջին Յունաց ըսուեցաւ Փիլոպեմէն. և իրաւցընէ, աս հռչակաւոր անձէն ետքը Յունաստանի մէջ անուանի մարդ մը չելաւ։

1 Փիլոպեմէնի մահուանը վրայ շատ բարկացան Աքայեցիք, ամէնքն ալ զէնք առին, ու վրէժխնդրութեան հոգւով կրկին զօրացած՝ Մեսսենեան աւրըշտըրկեցին, ու Փիլոպեմէնը սպաննողները բռնեցին՝ անոր գերեզմանին քովը քարկոծեցին։ Փիլոպեմէնի ալ այնպիսի փառաւոր յուղարկաւորութիւն ըրին որ աւելի յաղթանակի կը նմանէր, և կարծես թէ Յունաստան Փիլոպեմէնի հետ իր փառքն ու ազատութիւնն ալ թաղեց։

2 Երբոր Հռովմայեցւոց զօրքը քիչ մը ետ քաշուեցաւ, սկսաւ Փիլիպպոս պատերազմի պատրաստութիւն տեսնել։ Սակայն Դեմետր իր

---

1 Փիլոպեմէնի մահն որ լսեցին Աքայեցիք ինչ ըրին։

2 Փիլիպպոս ինչ պատճառաւ 'ի մահ դատապարտեց իր Դեմետր որդին։

որդին, որ Հռովմ պատանդ գնացեր էր՝ ծերակուտին աչքը մտնելով ազատութիւն առաւ ու Մակեդոնիա դարձաւ. հայրը տեսնելով որ Հռովմայեցւոց վրայ սէր կը ցուցընէ, վրան կասկածիլ սկսաւ, իր մեծ որդին Պերսէոս ալ եղբօրը վրայ նախանձեցաւ, և որպէս զի Դեմետր օր մը չթագաւորէ՝ վրան յանցանք ձգել կը ջանար։ Հանդիսի օր մը սովորութիւն էր որ Մակեդոնացւոց զօրքը երկու բաժնուած՝ պատերազմ կը ձևացընէին. մէկ կողմին զօրավար Դեմետր եղաւ, մէկալ կողմին ալ Պերսէոս, և Դեմետրին կողմը յաղթեց։ Իրիկունը երկուքն ալ իրենց բարեկամներուն սեղան ըրին. Պերսէոս լրտեսներ ղրկեց որ իմանայ թէ Դեմետրին սեղանը ինչ կը խօսին. աս բանս Դեմետրի մարդիկներէն ոմանք իմացան ու լրտեսները բռնեցին ծեծեցին, վռնտեցին։ Դեմետր եղածը չգիտնալով սեղանէն ետքը ըսաւ թէ Երթանք Պերսէոսին սիրտը առնենք. ամէնքը հաւանեցան, բայց Պերսէոսին լրտեսները ծեծողները վախնալով որ փորձանքի մը չհանդիպին՝ հագուստներնուն տակը թուր ծածկած՝ անանկ գնացին։ Պերսէոս իմացաւ, դռները գոցեց ու պատուհանէն յանդիմանեց զանոնք ըսելով թէ Գիշեր ատեն եկեր էք զիս մեռցընելու։ Հայրերնին Փիլիպպոս աս բանը լսելով դատաստանի նստաւ. Պերսէոս շատ ճարտար կերպով խօսեցաւ. Դեմետր ալ անխռով կերպով ինքզինքը արդարացուց. սակայն տեսնելով որ հայրը միշտ վրան կասկածի կ՚երթայ, Պերսէոս ալ անդադար որոգայթներ կը լարէ իրեն, ուզեց Հռովմ երթալ ապաւինիլ.

շղթայակապ Հռոմ բերուած՝ Պօղոս Էմիլիոսին յաղթանակին զարդ ըլլալէն ետեւ՝ բանտին մէջ մեռաւ (168)։

1 Հռոմայեցիք Մակեդոնիան ու Լիւրիկէն այլ և այլ մանր վիճակ բաժնեցին ու օրէնք դրին որ մէկը չկարենայ անոնց մէջէն դուրս ելլել. և որպէս զի ապստամբել ալ չկարենան՝ ապստամբութեան գլուխ ըլլալու յարմարութիւն ունեցող մարդիկը ժողվեցին՝ Իտալիա խրկեցին։

2 Նոյնպէս ըրին նաև բոլոր Յունաստանին։ Մէկ օրուան մէջ Եպիրոս եօթանասուն քաղաք կործանեցին, ու հարիւր յիսուն հազար հոգի գերի պէս ծախեցին։ Յունաստանի ուրիշ կողմերն ալ շատ քաղաքներ կործանեցին, գլխաւոր անձինքը խաւրեցին Իտալիա, ու հասարակապետութեանց վրայ իրենց կաշառուած մարդիկը իշխան դրին։ Քանի մը տարի ետքը (149) Անդրիսկոս անունով մէկը որ Պերսէոսի որդին եմ կ'ըսէր, Հռոմէն փախաւ՝ Մակեդոնիա եկաւ, և շատ կուսակիցներ ժողվելով ինքզինքը Թագաւոր անուանեց։ Բայց շատ չքշեց Թագաւորութիւնը։ Պիւդնայի քով Կեկիլիոս Մետելլոս պրետորը յաղթեց անոր ու Մակեդոնիան Հռոմայ գաւառ մը ըրաւ։ Աքայեցւոց ու Սպարտա-

---

1 Հռոմայեցիք Մակեդոնիոյ ու Լիւրիկէի տիրելով ի՞նչ ըրին։

2 Ի՞նչպէս տիրապետեցին Յունաստանի ուրիշ քաղաքներուն։

ցւոց մէջ ալ կռիւ մը բացուելով Հռովմայեցիք դեսպաններ խաւրեցին որ զիրենք հաշտեցընեն. Երբոր Աքայեցիք չընդունեցան այն դեսպանները, Հռովմայեցիք վրանին պատերազմ հրատարակեցին ։ Լոկրիսի մէջ Մետեղլոս պրետորը յաղթեց Աքայեցւոց ։ Մումմիոս հիւպատոսն ալ Կորնթոսի մօտ Լեւկոպետրա ըսուած տեղը ։ Ան յաղթութեամբ բոլոր Աքայիա Մումմիոսի ձեռքը անցաւ, որ Կորնթոսը այրեց ու բոլոր Յունաստանը Հռովմայ տէրութեան հետ միացուց (146)։

## ԳԼՈՒԽ ԺԹ.

Գեղարուեստք. — Երաժշտութիւն. — Ճարտարապետութիւն. — Քանդակագործութիւն. — Նկարչութիւն. — Բանաստեղծութիւն. — Պատմութիւն. — Ճարտասանութիւն. — Իմաստասիրութիւն. — Գիտութիւնք։

1 Եգիպտոսէն այլ և այլ տեղեն եկած գաղթականները հետերնին բերին Յունաստան քաղաքականութեան հետ արուեստից ալ սկզբունքը։ Աս գիտութեանց սերմունքը շուտով ծաղկեցան այնպիսի գործունեայ ու բարակամիտ

---

1 Գեղարուեստները ինչպէս սկսան ծաղկիլ Յունաց մէջ։

ժողովրդեան մէջ, որ ինչ և իցէ մեծ ու գեղեցիկ բան որ տեսնէր մէկէն սիրով ու յօժարութեամբ կ'ընդունէր։ Ուստի քիչ ատենի մէջ Յոյնք իրենց վարպետներէն՝ այսինքն Եգիպտացիներէն ալ վեր անցան, ու իրենք եղան անոնց տեղը ուրիշ ամէն ազգաց վարժապետ, ու ամէն տեսակ բանի օրինակներ թողուցին, որոնցմէ շատին անկարելի եղաւ ինչուան հիմայ նմանիլը։

1 ԵՐԱԺՇՏՈՒԹԻՒՆ. — Յունաց գեղարուեստներուն մէջ ամենէն հինը կը սեպուի երաժշտութիւնը։ Պատմական ժամանակներէն առաջ եղած երաժիշտներուն շատ անուններ կան՝ որ աւանդութեամբ միայն պահուած են. անոնց մէջ ալ ամենէն անուանիներն են Լինոս, Ամփիոն, և Որփէոս։

2 ՃԱՐՏԱՐԱՊԵՏՈՒԹԻՒՆ. — Ճարտարապետութիւնն ալ շուտով կատարելագործուեցաւ Յունաց մէջ, և եղաւ Ճարտարապետութեան իրեք կարգը, այսինքն Դորացի, Յոնիական ու Կորընթեան Ճարտարապետութիւնները. քանի գնաց Յունաստան հոյակապ մեհեաններով ու զարմանալի շէնքերով զարդարուեցաւ. և անոնց մէջ աւելի հռչակաւորներն էին Կրետէ կղզւոյն Բաւիղը կամ Լաբիւրինթոսը, Սամոս կղզւոյն Հերայի տաճարը, Եփեսոսի մէջ Արտէմեայ տաճարը, Դեղփիսի մէջ Ապողոնի տաճարը, Եղիսի մէջ Արամազդայ տաճա-

1 Երաժշտութեան մէջ որո՞նք եղան անուանի։
2 Ճարտարապետութեան կողմանէ Յունաստանի անուանի շէնքերը որո՞նք էին։

րը. Աթէնքի մէջ Պարթենոն՝ Աթենասայ նուիրուած ու ոսկեզօծ մարմարիններով շինուած, Ողիմպիական Արամազդայ տաճարը, Թէսէոսի տաճարը, Պանթէոն կամ Ագրիպպայի մեհեանը, և Ոսկեան կամ Ներոնի պալատը։

1 ՔԱՆԴԱԿԱԳՈՐԾՈՒԹԻՒՆ. — Քանդակագործութիւնը շատ կատարելագործեց Փիդիաս. Աթէնքը շատ գեղեցիկ արձաններով զարդարեց, որոնց մէջ աւելի հռչակաւորներն էին Աթենասայ ու Ողիմպիական Արամազդայ արձանները. երկուքն ալ հսկայաձև մեծութեամբ, ու ոսկիով և փղոսկրով շինուած։ Ուրիշ անուանի քանդակագործներն էին Պօղիկլետ, որուն երևելի գործն էր Արգիական Հերային հսկայաձև արձանը՝ ոսկիով ու փղոսկրով շինուած. Պրաքսիտելէս, որուն հրաշակերտը կը սեպուէր Աստղկան արձանը, և հեռաւոր տեղերէն ան արձանը տեսնելու համար Կնիդոս կ՚երթային. Լիւսիպպոս, որ վեց հարիւրի չափ պղնձէ արձան շիներ էր։

2 ՆԿԱՐՉՈՒԹԻՒՆ. — Թէպէտև նկարչութիւնը քանդակագործութենէ ետքը մտաւ Յունաստան, բայց անկէ վար չմնաց։ Ամենէն հռչակաւոր նկարիչներն էին ասոնք. Զեւքսիս, որ Հերակլէս մը նկարեց՝ երկու օձ բռնած խեղդելու ձևով, և իր հրաշակերտն էր Արամազդ աթոռը նստած ու աստուածները չորս բոլորը շարուած։ Պարրասիոս, որ շատ անուանի էր մարդուս հոգւոյն

---

1 Քանդակագործութիւնն ո՞վ կատարելագործեց։

2 Նկարչութեան մէջ որո՞նք եղան անուանի։

կիրքերը ճիշդ նկարելուն համար. Տիմանթէս, որ շատ կատարելագործեց պատկերահանութիւնը, և Իփիգենեայ զոհը նկարելով իր անունը անմահացուց. Ապելլէս, ամենէն գերազանց սեպուածը, որուն միայն թող տուաւ Մեծն Աղեքսանդր որ իր դէմքը նկարէ։ Ապելլեսին գլխաւոր կատարելութիւնն այն էր որ իր պատկերներուն մէջ թէ՛ ձևի ճշդութիւն կար և թէ գոյներու յարմար բաղադրութիւն ու գեղեցկութիւն։

1 ԲԱՆԱՍՏԵՂԾՈՒԹԻՒՆ. — Առջի բանաստեղծները միանգամայն երաժիշտ ալ էին։ Լինոսի, Մուսէոսի և Որփէոսի բանաստեղծութիւնները չեն մնացած. ամենէն հին ու մեծ բանաստեղծը Հոմերոս է, որուն վրայ խօսեցանք։

2 Հոմերոսէն ետքը եղած բանաստեղծից մէջէն յիշենք Արքիղոքոս՝ երգիծաբան բանաստեղծը. Տիրթէոս, որ պատերազմերգերու մէջ իր վառվռուն երգերովը զինուորաց քաջութիւնը կը բորբոքէր. Պինդարոս, քնարերգակ բանաստեղծից մէջ ամենէն փառաւորը. Մենանդր և Արիստոփանէս, կատակերգակ բանաստեղծք. Անակրէոն և Թէոկրիտոս, որուն բանաստեղծութիւնները շատ պարզ ու գեղեցիկ են։ Բայց ասոնցմէ ալ շատ աւելի անուանի են այս իրեք մեծ ողբերգակ բանաստեղծները. Եսքիլոս, Սոփոկլ և Եւրիպիդէս։ Եսքիլոսի չինած եօթանասուն կամ վաթսուն

---

1 Յունաց առաջին բանաստեղծները որո՞նք են։
2 Հոմերոսէն ետքը ի՞նչ անուանի բանաստեղծներ եղան։

ողբերգութիւններէն եօթը հատը միայն ինչուան մեր օրերը հասած են։ Սոփոկղ՝ Եսքիղոսի աշակերտն էր. բայց վարպետէն ալ վեր անցաւ, իր բանաստեղծութեանց մէջէն ալ եօթը հատը միայն ունինք։ Սոփոկղէն ետքն եղաւ Եւրիպիդէս, որ երբեմն անկէց ալ վեր կ՚ելնայ. իր ողբերգութիւններէն տասնըութը հատ միայն ունինք։

1 **ՊԱՏՄՈՒԹԻՒՆ**. — Յունաց մէջ Երոդոտոս Հայր պատմաբանից ըսուեցաւ. վասն զի իրմէ առաջ Յոյնք քանի մը անարուեստ կերպով գըրուած աւանդութիւններ միայն ունէին. Երոդոտոս նիւթ ժողվելու համար այլ եւ այլ երկիրներ պտըտելով ընդհանուր պատմութիւն մը շարադրեց որ Կիւրոսէն կը սկսի ու Միկաղեայ պատերազմովը կը լմըննայ։ Երբոր Յոյնք Ողիմպիական խաղերուն ժողվուեր էին, բերաւ Երոդոտոս իր գրած պատմութիւնը առջեւնին կարդաց. այնչափ հաւնեցան ու գովեցին լսողները որ անոր ինը գրքերուն մէյմէկ Մուսաներու անուններ դրին։ Թուկիդիդէս տասնըհինգ տարեկան էր երբոր լսեց Երոդոտոսին անանկ փառաւորուիլը, եւ այնպիսի բարի նախանձով մը վառուեցաւ՝ որ ինչուան սկսաւ լալ։ Երոդոտոս ան տղուն լալը տեսնելով գուշակեց թէ օր մը մեծ պատմագիր պիտի ըլլայ։ Ատեն անցաւ, իր հայրենիքէն աքսորուեցաւ Թուկիդիդէս, ու

---

1 Պատմագրութեան մէջ անուանի Յոյները որո՞նք են։

ան աքսորանացը մէջ շարագրեց Պեղոպոնեսական պատերազմին պատմութիւնը ինչուան քսանըմէկերորդ տարին: Դեմոսթենէս այնչափ մեծ համարում ունի եղեր Թուկիդիդեսի գրուածքին վրայ որ ութը անգամ օրինակեր ու գրեթէ բերնուց սերտեր էր կ'ըսեն: Քսենոփոն, որ զօրավար, իմաստասէր ու պատմաբան էր միանգամայն, Մեծին Կիւրոսի ու Կրտսերոյն Կիւրոսի պատմութիւններէն զատ՝ գրեց նաև Յունաստանի պատմութիւն մը, որ Թուկիդիդեսի թողած կտորէն կը սկսի ու ինչուան Մանտինէայի պատերազմը կ'երթայ: Հիները Քսենոփոնին գրուածոցը վրայ զմայլած՝ կ'ըսէին թէ իր բերնովը Մուսաները կը խօսին, ու անունը դրին Մեղու ատտիկէցի:

1 ՃԱՐՏԱՍԱՆՈՒԹԻՒՆ. — Յունաստանի մէջ գործ տեսնող՝ մանաւանդ թէ երկիրը կառավարող մարդիկը մէյմէկ երևելի ճարտասաններ էին: Պիսիստրատ, Թեմիստոկլէս, Կիմոն, Պերիկլէս և Ալկիբիադ իրենց ճարտասանութեամբը իշխանութեան հասան: Իրենցմէ ետքը ճարտասանութիւնը արուեստ մը դարձաւ, և աւելի հռչակաւոր ճարտասաններն եղան Լիսիաս, Իսոկրատ, Իսէոս, Եսքինէս, մանաւանդ Դեմոսթենէս, որուն ճարտասանութեանը հազիւ ոմանք կրցան մօտենալ. իսկ անցնիլ՝ ոչ ոք կրցաւ:

2 ԻՄԱՍՏԱՍԻՐՈՒԹԻՒՆ. — Իմաստասիրաց կար-

---

1 Յունաց անուանի ճարտասանները որո՞նք եղան:

2 Յունաստանի եօթն իմաստունները որո՞նք էին:

քին իրեք հարիւր վաթսունըհինգ օր բաժնեց։ Անաքսիմանդր, որ արեւացոյցը գտաւ. Պիւթագորաս, որ աստեղաբաշխութեան մէջ շատ անուանի ե-ղաւ. Արքիտաս, որ պտուտակին ու ճախարակը գտաւ. Փիլոլաոս, որ երկրիս իր առանցքին վրայ օրական շարժում ունենալը եւ արեւուն վրայ տարեկան թաւալումը իմացաւ կ՚ըսեն. Արքիմե-դէս, որ ջրահան պտուտակը հնարեց, ու եր-կնագունդ մը՝ որուն վրայ յայտնի կը տեսնուէր երկնային մարմնոց շարժումը։

## ԳԼՈՒԽ Ի.

Խորհրդարանք. — Զոհք. — Պատգամք. — Քաղա-քացիք. — Գերիք. — Ամփիկտիոնեան ժողովանց. — Հանդիսաւոր խաղեր։

1 Յոյնք ալ Եգիպտացւոց պէս Խորհրդարանք ընդունած քանի մը խորհրդաւոր արարողութիւն-ներ ունէին. անոնց մէջ աւելի հռչակաւորն էր Դեմետրէ աստուածուհւոյն տօնը, որ հինգ տա-րին մէյմը մեծ հանդիսով Ատտիկէի Եղեւսիս քաղաքը կը կատարուէր ինը օր։ Խորհրդա-զգածներին կամ աստուածուհւոյն ընծայուողնե-րը գետին մէջ լուացուելէն ու զոհեր ընելէն

---

1 Ի՞նչ տօներ ունէին Յոյնք։

եան կը մտնէին կռատունը, ու գիշեր ատեն քուրմերը անոնց առջև սոսկալի բաներ կը ձեւացընէին, երբեմն լոյս, երբեմն մութ, գետնաշարժներ ու որոտմունքներ. ընծայուողները ահով դողով մտիկ կ'ընէին, բայց սաստիկ արգիլուած էր որ ամենևին տեսած ու լսած բաներնին ուրիշի չպատմեն. անոր համար ալ Խորհըրդաւոնք ըսուած էին ան արարողութիւնները: — Իրենց աստուածներուն համար մասնաւոր տօներ ալ դրեր էին Յոյնք, որ մեծ հանդիսով կը կատարէին: Տօնի օրերը ամէն աշխատանքէ կը դադրէին, դատաստանները կը գոցուէին, ու ժողովուրդը ինքզինքը օրերով զուարճութեանց կուտար: Ան հանդիսաւոր տօներուն մէջ ալ ամենէն հռչակաւորներն էին Թէսմոփորեանք՝ Դեմետրէ աստուածուհւոյն նուիրուած. Դիոնիսեանք՝ Բաքոսի նուիրուած. Աֆրոդիսեանք՝ Աֆրոդիտէի կամ Աստղկան նուիրուած. Համաթէնայեանք՝ Աթենաս աստուածուհւոյն նուիրուած, որ բոլոր Ատտիկեցիք մէկտեղ ժողվուած կը կատարէին. և ասոր մէջ սովորական ըմբշամարտութեան խաղերէն զատ՝ բանաստեղծութեան ու երաժըշտութեան ալ մրցանքներէն ետքը հասարակաց սեղաններ ու զոհեր կ'ընէին, և բոլոր հանդիսականաց ձեռքը ձիթենիի ճիւղ մը պիտի ըլլար, վասն զի ձիթենին Աթենասայ նուիրուած էր:

1 Զոհերն ալ Յոյնք կրօնքի գլխաւոր մասը կը

---

1 Յունաց զոհերն ինչպէս էին:

սեպէին. վասն զի կը կարծէին թէ անոնցմով միայն կրնան աստուածներուն պատիւ ընել: Ամէն կուռքի մասնաւոր կենդանի որոշուած էր զոհ ըլլալու, և զոհուելու կենդանիներն էին եզ, կով, երինջ, ոչխար, խոզ ու այծ. ասոնք ամէնքն ալ պիտի ըլլային առողջ, գէր ու անարատ: Աղքատները երբոր չէին կրնար կենդանի մը զոհ ընել, անոր ձևը կը շինէին մոմէ կամ խմորէ ու կռոց կը նուիրէին:

1 Պատգամներուն վրայ մեծ համարում կար Յունաստանի մէջ. ան պատգամները իբրև աստուածոց հրաման կ'ընդունէին, և ոչ միայն տէրութեան բաներուն՝ այլ և առանձնական գործողութեանց համար պատգամ կը հարցընէին: Հռչակաւոր պատգամատեղիներն էին Դեղփիս ու Դոդոնէ, մանաւանդ առջինը, ու անոր մեհենին մէջ անբաւ հարստութիւն կար, անանկ որ շատ աշխարհակալներ ուզեցին կողոպտել. մէջը Ապողոնի արձանը կար ոսկիէ, և Ապողոն անկէց կուտար պատգամը: Ան պատգամատեղին այսպիսի դիպուածով մը գտնուեցաւ կ'ըսեն: Օր մը այծերը Պառնասոս լեռան ժայռերուն մէջ պտըրտելու ատեննին՝ փոսի մը քով կուգան, և մէջէն ելած գոլորշիքն առնելուն պէս՝ կը սկսին ցատքըռտել: Աս որ կը տեսնեն հովիւն ու տեղացիք՝ կ'երթան նայելու թէ ինչ կայ հոն. իրենք ալ կը թմրին ու կը սկսին խենթուխելառ բաներ խօ-

1 Պատգամը ինչ բան էր: — Որո՞նք էին երևելի պատգամատեղիները:

ուէլ։ Ուստի այն խօսքերը նախագուշակութիւն-ները, այն գոլորշին ալ Աստուածային շունչ մը սե-պելով փոսին վրայ եռոտանի մը գրին մորթով ծածկած, փառաւոր կառատուն մը շինեցին ու քրմուհի մը որոշեցին որ Պիւթիա կամ Հարցուկ կ'ըսուէր, որ շատ զոհեր ու ծոմապահութիւն-ներ ընելէն ետև՝ այն եռոտանւոյն վրայ կ'ելլէր ու կը սկսէր դիւահարի պէս փրփրալ, գողդը-ղալ, մազերը անկուելի, ու խառնակ բաներ խօ-սիլ. ասոնց քրմուհիներն ալ հոն կեցած՝ այն խօսքերը կարգի կը դնէին, ու իբրև Ապողոնի պատգամ աշխարհէ աշխարհ կը խրկէին։

1 Յունաստանի մէջ՝ և մասնաւոր կերպով Սպարտա ու Աթէնք. ժողովուրդը երկու գըլ-խաւոր մասն կը բաժնուէր. քաղաքացիք ու գերիներ։ Քաղաքացի 'ի ծնէ կ'ըսուէին անոնք՝ որոնց հայրն ու մայրը յոյն ըլլար. իսկ օտա-րական մը քաղաքացի ըսուելու համար պէտք էր որ ազգութեան շատ ծառայութիւններ ը-նէր. այն ատեն ժողովուրդը մեկտեղ ժողվուած՝ քուէ կը ձգէին, ու թէ որ վեց հազար այո ել-լէր՝ կ'առնէին զինքը պատուով իրենց կարգը կ'անցընէին։

2 Երկու տեսակ գերի կար. մէկը յոյն 'ի ծնէ, մէկալը օտարական։ Առջիններն անոնք էին որ պատերազմի մէջ գերի կ'իյնային, իսկ մէկալ-նոնք Թրակիայէն, Փռիւգիայէն և ուրիշ բար-

---

1 Յունաց մէջ ինչ քաղաքական բաժանում կար։
2 Գերիները ինչ վիճակի մէջ էին։

բազմա ներկուած երկիրներէ կուգային: Գերի ծախելը մեծ առուտուր էր Յունաստան, և խեղճ գերիները անդադար կը ծախուէին, ամենեքն՝ քաղաքական իրաւունք մը չունէին, ոչ կրնային մէկը դատաստանի կանչել և ոչ մէկուն համար վկայութիւն տալ: Չէին կրնար մազերնին երկնցընել, հոտաւէտ եղեր քսել վրանին, ու թևաւոր վերարկու հագնիլ: Իրենք երկիրները կը մշակէին, արուեստները կը ծաղկեցընէին, քար ու մետաղ փորելու և անկերու մէջ կ'աշխատէին: Գերեաց պատիժն ալ շատ խիստ ու անգութ էր. փախչողներուն ծնկուըներն ու ոտքերուն ձեռուըները կ'այրէին, շատակերներուն փորը երկաթով մը կ'այրէին ու շատախօսներուն լեզուն կը ճմլէին: Միայն Աթէնք ու անոր շրջակայ տեղուանքը չորս հարիւր հազար գերի կայ եղեր ատենով:

1 Զինուորական արուեստը քաղաքացւոց միայն արժանի կը սեպէին: Աթենքի մէջ տասնութը տարեկան ըլլալէն ետքը ամէն մարդ պատերազմական էր զինուոր ըլլալու, Սպարտա երեսուն տարեկանէ ետքը: Յունաց բանակին ոյժը ռամիկ հետևակ զօրաց վրայ էր: Գործածած զէնքերնին էր նիզակ, թուր, կացին, աղեղ, նետ, սաղաւարտ, վահան ու զրահ: Մեծ ամօթ էր Յոյնի մը՝ պատերազմի մէջ վահանը կորսնցընելը:

---

1 Զինուորութիւննին ինչպէս էր:

դը կը սեպուէին երբեմն Յունաստանի եօթը ի-մաստունները, որ մէյմէկ բարոյական ճշմար-տութիւն մը առած՝ քիչ խօսքով անիկայ կը մեկնէին ու ըստ այնմ իրենց վարքը կ'ուղղէին: Ասոնք էին Պերիանդր, Պիտտակոս, Թալէս, Սողոն, Բիաս, Կղէոբուղ և Քիլոն:

1 Անոնցմէ ետքը քուն իմաստասէրներն եկան, որ մանաւոր կերպով բնական մարդուս և ուրիշ արարածոց վրայ քննութիւններ ըրին, ու այլ և այլ աղանդներ կամ դպրոցներ հաստատեցին: Աւելի անուանիներէն մէկքանին ասոնք են. Պիւ-թագորաս, որ Պիւթագորեան դպրոցը հիմնեց. Սոկրատ, որուն վարքը առաջ համառօտ մը յիշե-ցինք. Պղատոն, որ Աթենքի մէջ Ակադեմիա անուա-նով հռչակաւոր վարժարան մը հաստատեց. Ան-տիսթենէս, Շնական ըսուած փիլիսոփայից գլու-խը. Զենոն, Ստոյիկեան դպրոցին հիմնադիրը. Արիստոտէլ, որ քանի տարի Պղատոնի աշակեր-տութիւն, ու տասը տարի ալ Աղեքսանդրի վար-ժապետութիւն ըրաւ:

2 ԳԻՏՈՒԹԻՒՆՔ. — Չափաբանական ուսմունք-ները իմաստասիրութեան մէկ մասը կը սե-պուէին. ուստի Յունաստանի իմաստասիրաց շատը չափաբան ալ էին: Գիտութիւնք ծաղկե-ցընողներուն մէջ յիշենք Թալէս Միլեսացին, որ արեւուն խաւարիլը առաջուց գուշակեց, ու տա-

---

1 Իմաստասիրաց մէջ անուանիներն որո՞նք էին:

2 Չափաբանական գիտութեանց մէջ որո՞նք ե-ղան անուանի:

քին երեք հարիւր վաթսունըհինգ օր բաժնեց։ Անաքսիմանդր, որ արեւացոյցը գտաւ. Պիւթագորաս, որ աստեղաբաշխութեան մէջ շատ անուանի եղաւ. Արքիտաս, որ պտուտակն ու ճախարակը գտաւ. Փիլոլայոս, որ երկրիս իր առանցքին վրայ օրական շարժում ունենալը և արեւուն վրայ տարեկան թաւալումը իմացաւ կ'ըսեն. Արքիմէդէս, որ ջրահան պտուտակը հնարեց, ու երկնագունտ մը՝ որուն վրայ յայտնի կը տեսնուէր երկնային մարմնոց շարժումը։

## ԳԼՈՒԽ Ի.

Խորհրդարանք. — Զոհք. — Պատգամք. — Քաղափայլք. — Գէրիք. — Դատաւորականութեան ձանձանց. — Հանդիսաւոր խաղեր։

1 Յոյնք ալ Եգիպտացւոց պէս Խորհրդարանք ըսուած քանի մը խորհրդաւոր արարողութիւններ ունէին. անոնց մէջ ամէնէն հռչակաւորն էր Դեմետրէ աստուածուհւոյն տօնը, որ հինգ տարին մէյմը մեծ հանդիսով Ատտիկէի Եղեւսիս քաղաքը կը կատարուէր ինը օր։ Խորհրդազգածներն կամ աստուածուհւոյն ընծայուածները գետին մէջ լուացուելէն ու զոհեր ընելէն

---

1 Ի՞նչ տօներ ունէին Յոյնք։

եան կը մտնէին կռատունը, ու գիշեր ատեն քուրմերը անոնց առջև սոսկալի բաներ կը ձևացընէին, երբեմն լոյս, երբեմն մութ, գետնաշարժներ ու որոտմունքներ. ընծայողները ահով դողով մտիկ կ'ընէին, բայց սաստիկ արգիլուած էր որ ամենևին տեսած ու լսած բաներնին ուրիշի չպատմեն. անոր համար ալ Խորհըրդատօնք ըսուած էին այն արարողութիւնները: — Իրենց աստուածներուն համար մասնաւոր տօներ ալ դրեր էին Յոյնք, որ մեծ հանդիսով կը կատարէին: Տօնի օրերը ամէն աշխատանքէ կը դադրէին, դատաստանները կը գոցուէին, ու ժողովուրդը ինքզինքը օրերով զուարճութեանց կուտար: Այն հանդիսաւոր տօներուն մէջ ալ ամենէն հռչակաւորներն էին Թէսմոֆորէանք՝ Դեմետրէ աստուածուհւոյն նուիրուած. Դիոնիսէանք՝ Բաքոսի նուիրուած. Աֆրոդիսէանք՝ Աֆրոդիտէի կամ Աստղկան նուիրուած. Համաթէնականք՝ Աթենաս աստուածուհւոյն նուիրուած, որ բոլոր Ատտիկեցիք մէկտեղ ժողվուած կը կատարէին. և ասոր մէջ սովորական ըմբշամարտութեան խաղերէն զատ՝ բանաստեղծութեան ու երաժըշտութեան ալ մրցանքներէն ետքը հասարակաց սեղաններ ու զոհեր կ'ընէին, և բոլոր հանդիսականաց ձեռքը ձիթենիի ճիւղ մը պիտի ըլլար, վասն զի ձիթենին Աթենասայ նուիրուած էր:

1 Զոհերն ալ Յոյնք կրօնքի գլխաւոր մասը կը

---

1 Յունաց զոհերն ինչպէս էին:

սեպէին. վասն զի կը կարծէին թէ անոնցմով միայն կրնան աստուածներուն պատիւ ընել։ Ամէն կուռքի մասնաւոր կենդանի որոշուած էր զոհ ընելու, և զոհուելու կենդանիներն էին եզ, կով, երինջ, ոչխար, խոզ ու այծ. ասոնք ամէնքն ալ պիտի ըլլային առողջ, գէր ու անարատ։ Աղքատները երբոր չէին կրնար կենդանի մը զոհ ընել, անոր ձևը կը շինէին մոմէ կամ խմորէ ու կրակ կը նուիրէին։

1 Պատգամներուն վրայ մեծ համարում կար Յունաստանի մէջ. ան պատգամները իբրև աստուածոց հրաման կ՚ընդունէին, և ոչ միայն տէրութեան բաներուն՝ այլ և առանձնական գործողութեանց համար պատգամ կը հարցընէին։ Հռչակաւոր պատգամատեղիներն էին Դելփիս ու Դոդոնէ, մանաւանդ առջինը, ու անոր մեհենին մէջ անբաւ հարստութիւն կար, անանկ որ շատ աշխարհակալներ ուզեցին կողոպտել. մէջը Ապողոնի արձանը կար ոսկիէ, և Ապողոն անկեց կուտար պատգամը։ Ան պատգամատեղին այսպիսի դիպուածով մը գտնուեցաւ կ՚ըսեն։ Օր մը այծերը Պառնասոս լեռան ժայռերուն մէջ պտըտելու ատեննին՝ ծակ մը քով կուգան, և մէջէն ելած գոլորշիքն առնելուն պէս՝ կը սկսին ցատքըտել։ Ասոր կը տեսնեն հովիւն ու տեղացիք՝ կ՚երթան նայելու թէ ինչ կայ հոն. իրենք ալ կը թմրին ու կը սկսին խենթուխելառ բաներ խօ-

---

1 Պատգամը ինչ բան էր։ — Որո՞նք էին երևելի պատգամատեղիները։

ալ։ Ուստի այն խօսքերը նախագուշակութիւններ, այն գոլորշին ալ Աստուածային շունչ մը սեպելով փոսին վրայ եռոտանի մը դրին մորթով ծածկած, փառաւոր կառոյց մը շինեցին ու քրմուհի մը որոշեցին որ Պիւթիա կամ Հարցուկ կ'ըսուէր, որ շատ զոհեր ու ծոմապահութիւններ ընելէն ետեւ՝ այն եռոտանւոյն վրայ կ'ելլէր ու կը սկսէր դիւահարի պէս փրփրալ, գոչգըռալ, մազերը անկուիլ, ու խառնակ բաներ խօսիլ. ուրիշ քրմուհիները ալ հոն կեցած՝ այն խօսքերը կարգի կը դնէին, ու իբրեւ Աստուծոյ պատգամ աշխարհքէ աշխարհք կը խրկէին։

1 Յունաստանի մէջ՝ և մանաւանդ կերպով Սպարտա ու Աթէնք, ժողովուրդը երկու գըլխաւոր մասն կը բաժնուէր. քաղաքացիք ու գերիներ։ Քաղաքացի 'ի ծնէ կ'ըսուէին անոնք՝ որոնց հայրն ու մայրը յոյն ըլլար. իսկ օտարական մը քաղաքացի ըսուելու համար պէտք էր որ տէրութեան շատ ծառայութիւններ ընէր, այն ատեն ժողովուրդը մեկտեղ ժողվուած՝ քուէ կը ձգէին, ու թէ որ վեց հազարը այո ըսէր՝ կ'առնէին զինքը պատուով իրենց կարգը կ'անցընէին։

2 Երկու տեսակ գերի կար. մէկը յոյն 'ի ծնէ, մէկալը օտարական։ Առջինները անոնք էին որ պատերազմի մէջ գերի կ'իյնային, իսկ մէկալները Թրակիայէն, Փռիւգիայէն և ուրիշ բար-

---

1 Յունաց մէջ ինչ քաղաքական բաժանում կար։
2 Գերիները ինչ վիճակի մէջ էին։

1 Յունաց մէջ ալ մարդկանց կառավարութեան արուեստին վրայ մտածողները ճանչցան որ տէրութեանց ու ժողովրդոց բաղդը՝ անոնց դաստիարակութիւններէն կախուած է. ուստի թէ Լիկուրգոս և թէ Սողոն ամէն խնամք ըրին անոնց դաստիարակութեանը վրայ. խստիւ պատուիրեցին որ տղաք պզտիկուց չարքաշութեան վարժին, սորվին տաքի, ցուրտի, անօթութեան ու ծարաւի համբերել. մարմինը աշխատանքի վարժեցընելու համար շատ հարկաւոր կը համարէին որսորդութեան կրթութիւնը։ Կը սորվեցընէին նաև լողալ, ձի հեծնալ, նետ նետել, պարել, ոտքով վազել ու ըմբշամարտութիւն ընել։ Անոնց համար մասնաւոր կրթարաններ ալ կային, ուր ճարտար վարպետներ զիրենք կը կրթէին ու պատերազմի կը վարժեցընէին։

2 Հանդիսաւոր խաղեր ալ կային Յունաստան որ որոշուած մասնաւոր ատեններ կը խաղցուէին, այսինքն Ողիմպիական, Նէմեան, Իսթմեան ու Պիւթեան խաղերը, որոնց մէջ կ'երևնար խաղցողներուն ոյժն ու ճարտարութիւնը։ Ասոնց մէջ ամէնէն հռչակաւորն էին Ողիմպիական խաղերը, և ասոնց ոչ միայն բոլոր Յունաստանի բնակիչները ներկայ կը գտնուէին, հապա նաև քովի երկիրներէն շատ մարդիկ կը վազէին հոն կ'երթային։

---

1 Դաստիարակութեան վրայ ի՞նչ խնամք ունէին։

2 Ի՞նչ խաղեր ունէին։



# ԹԱԳԱՒՈՐՈՒԹԻՒՆ

# Ա Ս Ո Ր Ի Ո Ց



Սելեւկոս Նիկանոր. — Անտիոքոս Սոտեր. — Անտիոքոս Թէոս. — Սելեւկոս Կալլինիկոս. — Սելեւկոս Կերաւնոս. — Անտիոքոս Մեծն. — Սելեւկոս Փիլոպատոր. — Անտիոքոս Եպիփան. — Անտիոքոս Սիդետէս. — Անտիոքոս Գրիպոս:

[1] **Սելեւկոս Նիկանոր** (312-279): — *Սելեւկոս հաստատեց Բաբելոնի մէջ Ասորւոց թագաւորութիւնը, որ իր անունովը Սելեւկեանց թագաւորութիւն ալ ըսուեցաւ* (311), *և անկից կը սկսի Սելեւկեանց թուականը: Ետքը երբոր Իպսոսի քով Անտիգոնոսի յաղթեց Սելեւկոս, Ասորւոց երկիրը իրեն բաժին ելլելով՝ Որոնտ գետին վրայ քաղաք մը շինեց, հօրը անունովը Անտիոք անուանեց և աթոռը հոն փոխադրեց, որով անիկայ բոլոր արեւելքի մայրաքաղաքն ե-*



1 *Ասորւոց թագաւորութիւնը ով կանգնեց:*

ղաւ։ Ուրիշ շատ քաղաքներ շինեց, ճամբաներ բանալ տուաւ, վաճառականութիւնը ծաղկեցուց, և տէրութիւնը կարգաւորեց։

1 Չկրցաւ երկար ատեն հանգիստ թագաւորել Սելեւկոս. վասն զի Դեմետր իր հօրը Անտիգոնոսին երկիրները սկսաւ ետ ուզել. ու երբոր չտուաւ Սելեւկոս, վրան պատերազմի ելաւ։ Յաղթեց Սելեւկոս. բռնեց Դեմետրը ու մինչուան մահը քովը պահեց։

2 Երբոր Պտղոմէոս Կերաւնոս Եգիպտոսէն փախաւ՝ Անտիոք եկաւ, շատ սիրով ընդունեցաւ զինքը Սելեւկոս, և խոստացաւ որ նորէն Եգիպտոսի վրայ թագաւորեցընէ։ Փռիւգիոյ մէջ Լիւսիմաքոսի հետ պատերազմեցաւ, յաղթեց, ու բոլոր երկիրներուն տիրեց, և անոր համար Նիկանոր կամ Նիկատոր այսինքն Յաղթող ըսուեցաւ։ Ան ատենը Կերաւնոս խնդրեց իրմէ որ խոստումները կատարէ. երբոր տեսաւ թէ անիկայ շուտով կատարելու միտք չունի, մոռցաւ անոր այնչափ բարիքը, ու Սելեւկոսին զոհ մատուցանելու ատենը՝ Կերաւնոս զարկաւ զինքը սպաննեց (279)։ Աս կերպով մեռաւ Սելեւկոս՝ Աղեքսանդրի վերջին ու անուանի զօրավարը. որ ոչ միայն զինուորական հնարագէտ հանճարովը երեւելի էր, հապա նաև արդարութեամբն ու կրօնասիրութեամբը։

---

1 Սելեւկոս ի՞նչպէս յաղթեց Դեմետրին։
2 Ի՞նչպէս մեռաւ Սելեւկոս։

1 ԱՆՏԻՈՔՈՍ ՍՈՏԵՐ (279-260). — Անտիոքոս իր հօրը Սելեւկոսին մահուանը վրէժխնդիր չկրցաւ ըլլալ, իր վատութեամբը հպատակացը համարձակութիւնը ու անիրաւութեան շատ գաւառները կորսընցուց. Գաղղիացւոցմէ ալ շատ անգամ յաղթուելով հազիւ վերջը փիղերովը յաղթեց, ու Գաղատիան անոնց ձեռքէն ազատելուն համար Սոտէր այսինքն Փրկիչ ըսուեցաւ: Քանի տարի թագաւորելէն ետքը մեռաւ, ու անիրաւութիւնը իր Անտիոքոս որդւոյն թողուց (260):

2 ԱՆՏԻՈՔՈՍ ԹԷՈՍ (260-247): — Անտիոքոս Միլետացիքը իրենց Տիմարքոս բռնաւորին ձեռքէն ազատելով Թէոս այսինքն Աստուած ըսուեցաւ, բայց շատ խեղճ թագաւորութիւն ունեցաւ: Եգիպտացւոց վրայ պատերազմի գնացած ատենը Պարթեւները գլուխ քաշեցին՝ իրենց թագաւոր դնելով Արշակը. անոնց քովի ազգերն ալ նոյն ատեն ապստամբեցան. անանկ որ Տիգրիսէն անդին Նիկանորին առած բոլոր երկիրներն ալ կորսընցուց: Ան ատեն Պտղոմէոս Եղբայրասիրին հետ հաշտութիւն ըրաւ, անոր խօսքովը ձգեց Լաւոդիկէ թագուհին ու Պտղոմէոսի Բերենիկէ աղջիկը իրեն կին առաւ (250): Երբոր Եղբայրասէրը մեռաւ, Անտիոքոս Բերէ-

---

1 Սելեւկոսի ով յաջորդեց: — Ինչո՞ւ համար Սոտէր ըսուեցաւ Անտիոքոս:

2 Անտիոքոս Թէոս ինչպէս ըրաւ թագաւորութիւնը: — Լաւոդիկէ թագուհին ինչ անզգամութիւններ ըրաւ:

նիկէն Թողուց ու նորէն առաւ Լաւոդիկէն։ Աս անգամ կինը վախնալով որ նորէն իր պատուէն չիյնայ՝ Թոյն տուաւ ու մեռուց Անտիոքոսը. և Արտեմոն անունով մարդ մը գտնելով որ ձայնովը ու կերպարանքովը Անտիոքոսին շատ կը նմանէր՝ ձայն հանեց Թէ հիւանդ է Անտիոքոս. Արտեմոն իշխանները անկողնին քովը կանչեց, ու ձեւացուց Թէ մեռնելէն առաջ Լաւոդիկէին Սելեւկոս Կալլինիկոս որդին իրեն յաջորդ կը դնէ։ Աս խաբէութեամբ գոհ չեղած՝ Բերինիկէն ալ բոլոր որդւոցը հետ սպաննել տուաւ։

1 ՍԵԼԵՒԿՈՍ ԿԱԼԼԻՆԻԿՈՍ (246-226)։ — Սելեւկոս իր մօրը ամբարշտութեանցը պատիժը ինքն ալ քաշեց. բոլոր Թագաւորութեանը ատեն պատերազմէ ու ապստամբութիւններէ աչք չբացաւ։ Պաղոմէոս Եւերգետէս գնաց քրոջը մահուան վրէժը խնդրելու, բռնեց սպաննեց Լաւոդիկէն, անոր որդւոյն ձեռքէն ալ Ասորեստանի մեծ մասն առաւ։ Սելեւկոս ոչ անոր և ոչ մէկալ Թշնամեացը կարենալով դէմ դնել, հեգնօրէն Կալլինիկոս այսինքն Քաջայաղթ ըսուեցաւ։ Երկու որդի ունեցաւ, այսինքն Սելեւկոս և մեծն Անտիոքոս։

2 ՍԵԼԵՒԿՈՍ ԿԵՐԱՒՆՈՍ (225-222)։ — Սելեւկոս երկու տարի միայն Թագաւորեց, բայց

---

1 Սելեւկոս Կալլինիկոս ի՞նչպէս Թագաւորեց։ — Ինչո՞ւ Կալլինիկոս ըսուեցաւ։

2 Սելեւկոս Կերաւնոս ո՞րչափ ատեն Թագաւորեց։

ան քիչ ատենին մէջ ալ ապստամբաց դէմ ցու-ցուցած քաջութեանը համար Կէրաւնոս այսինքն Շանթ կամ Կայծակ ըսուեցաւ, և թունաւո-րուելով մեռաւ:

1 ՄԵԾՆ ԱՆՏԻՈՔՈՍ (222-186): -- Անտիոքոս թագաւորելուն պէս, Պարսկաստանի ու Մա-րաստանի Աղեքսանդր ու Մողոն կուսակալնե-րուն վրայ գնաց: Մողոն յաղթուելով յուսա-հատութենէն ինքզինքը սպաննեց. Աղեքսանդր ալ երբոր լսեց Պարսկաստան իր եղբօրը յաղ-թուիլն ու մահը, բոլոր ընտանեացը հետ ինք-զինքն ալ մեռուց:

2 Հերմիաս փառասէր իշխանը տեսնելով որ Անտիոքոս իր ամէն խօսքերուն մտիկ չըներ, ու-զեց սպաննել զանիկայ. շատ մարդ իմացաւ ա-նոր խորհուրդը, բայց այնչափ վախ ձգեր էր ա-մենուն սիրտը որ մէկը չհամարձակեցաւ թագա-ւորին իմացընելու: Վերջապէս Ապողոփանէս բժիշկը սիրտ ըրաւ՝ Անտիոքոսին իմացուց, ան ալ ծածուկ մարդ ղրկեց ու սպաննել տուաւ նենգաւոր իշխանը, որուն մահուանը վրայ ա-մէնքը ուրախացան:

3 Ապստամբները հնազանդեցընելէն ետքը՝ սկսաւ Անտիոքոս քաջութեամբ դէպ 'ի արևելք

---

1 Մեծն Անտիոքոս ի՞նչպէս սկսաւ թագաւորու-թիւնը:
2 Հերմիաս իշխանին պատմութիւնը ի՞նչ է:
3 Ի՞նչ աշխարհակալութիւններ ըրաւ Մեծն Անտիոքոս:

քալել. և Թէպէտ չկրցաւ վերցընել Պարթեւաց տէրութիւնը՝ բայց անոնց երկիրներէն շատը եառաւ։ Անկէց անցաւ գնաց Հնդկաստան, ու հինգ տարի միակերպ յաղթութիւններ ընելէն ետև դարձաւ Անտիոք ու Մեծ ըսուեցաւ։ Անկէց գնաց դէպ 'ի Պաղեստին, Եգիպտացւոց ձեռքէն առաւ, ու յաղթականով Երուսաղէմ մտաւ։

1 Երբոր իր քաջութեանը վրայ վստահացած՝ Փոքր Ասիոյ վրայ ալ սկսաւ երթալ, Զմիւռնացիք և ուրիշ Յոյները տեսնելով որ մինակ չեն կրնար անոր դէմ կենալ, Հռովմայեցւոց դիմեցին։ Անտիոքոս տեսնելով որ Մեծն Աննիբաղ ալ իրեն եկեր ապաւիներ էր, անոր միտքին չըրաւ՝ որ խորհուրդ կուտար իրեն Իտալիոյ մէջ Հռովմայեցւոց հետ պատերազմելու. Յունաստանի մէջ Թերմոպիլէի քով յաղթուեցաւ ու Ասիա փախաւ, հոն նորէն Մագնեսիա քաղաքին մօտ Լուկիոս Սկիպիոն զօրապետին հետ զարնուելով յաղթուեցաւ, ու պէտք եղաւ որ բոլոր պատերազմին ծախքը վճարէ. իր Անտիոքոս որդին պատանդ տայ, և Տորոս լեռնէն ասդին ունեցած բոլոր երկիրները Հռովմայեցւոց թողու (190)։

2 Անտիոքոս իր աթոռը դառնալով՝ չէր գիտեր թէ ուսկից վճարէ այնչափ պարտքը. ուստի ստակ ժողվելու համար արևելքի քաղաքնե-

---

1 Հռովմայեցւոցմէ ինչպէս յաղթուեցաւ։
2 Ի՞նչպէս մեռաւ Մեծն Անտիոքոս։

րը պարտելու եղաւ. գիշեր մը Եղիմայիս քաղաքին մէջ Որամազդայ կռատունը մտաւ, և մէջի գանձը ուզեց կողոպտել. քաղաքացիք ան սեղանակապտութեանը վրայ կատղած՝ վրան վազեցին, և քովիններովը մէկտեղ սպաննեցին զինքը՝ թագաւորութեանը երեսունըեօթներորդ տարին (186)։

1 Անտիոքոսի մահուանը վրայ շատ մարդիկ ցաւեցան. վասն զի թագաւորութեանը մեծ մասը առատաձեռնութեամբը զարդարեր էր։ Հրովարտակով մը իշխանութիւն տուեր էր հպատակացը որ եթէ օրինաց դէմ բան մը իրենց հրամայէ՝ ազատ ըլլան չհնազանդելու. բայց ետքերը ինքզինքը փառասիրութեան ու հեշտասիրութեան տալով՝ փառքով սկսած թագաւորութիւնը ամօթով լմնցուց։

2 ՍԵԼԵՒԿՈՍ ՓԻԼԱՊԱՏՈՐ (186–174)։ — Սելեւկոս որ հայրը շատ սիրելուն համար Փիլոպատոր ըսուեցաւ՝ այսինքն Հօրամոյն կամ Հայրասէր. հօրը պարտքը վճարել ուզելով՝ Հելիոդորոս իշխանը խրկեց որ Երուսաղեմայ տաճարին գանձերը կողոպտէ. Հելիոդորոս երբոր դարձաւ Ասորիք. Սելեւկոսը թունաւորեց ու ինքը տեղն անցաւ (174)։

3 ԱՆՏԻՈՔՈՍ ԵՊԻՓԱՆ (174– 164)։ — Սելեւ-

---

1 Ի՞նչ բնաւորութիւն ունէր Անտիոքոս։
2 Մեծին Անտիոքոսի ո՞վ յաջորդեց։
3 Անտիոքոս Եպիփան ինչպէս ըրաւ թագաւորութիւնը։

կոսին եղբայրը Անտիոքոս եկաւ շուտ մը Հելիոդորոսը վռնտեց, ու Եպիփան այսինքն Երևելի ըսուեցաւ. բայց աւելի իրաւամբ զինքը հպատակները Եպիման կանչեցին որ Յիմար ըսել է։ Վասն զի Թագաւորութեանը պատիւը մոռցած՝ շատ անգամ պալատէն կ'ելլէր՝ Անտիոք քաղաքին փողոցները կը պտըտէր, ու ամէն արուեստաւորի հետ կը խօսակցէր՝ պարծենալով թէ ինքը անոնց արուեստէն կը հասկընայ։ Երբոր կ'իմանար թէ տեղ մը կերուխում կայ, մէջերնին կ'երթար՝ առանց ամըչնալու կը խմէր ու խաղ կը կանչէր։ Շատ անգամ ալ գլուխը վարդերով պսակած ու Թագաւորական ծիրանւոյն տակը քարեր պահած՝ փողոցներու մէջ կը պըտտէր, ու մէկուն մէկալին կը ձգէր։ Երբեմն ալ պատուհանէն վար ստակ կը նետէր, ու անցուորաց իրարու ձեռքէն յափշտակելը տեսնելով կը զուարճանար։

1 Բայց այսչափ անկարգութեանց հետ փառասիրութիւնն ալ ձեռքէ չէր թողուր։ Շատ զօրքով գնաց Եգիպտոսի վրայ ու շատ գաւառներու տիրեց. քիչ մնաց որ Աղեքսանդրիան ալ պիտի առնէր՝ թէ որ Հռովմայեցիք մէջ չմըտնային։ Եգիպտոս դեսպան խրկուած Հռովմայեցւոց գլուխն էր Պոպիլիոս՝ Անտիոքոսին հին բարեկամը. Թագաւորը զինքը տեսնելուն պէս՝ ուզեց բարեկամաբար ձեռքը բռնել. ձեռքը չըտուաւ Պոպիլիոս, հանեց ծերակուտին հրովար

---

1 Եգիպտոսի վրայ ի՞նչ արշաւանք ըրաւ։

տանկը ու սկսաւ կարդալ. մէջը գրուած էր որ Անտիոքոս հաշտութիւն ընէ ու Եգիպտոսէն քաշուի։ Երբոր Անտիոքոս քիչ մը ժամանակ ուզեց մտածելու, Պոպիլիոս ձեռքի գաւազանովը անոր չորս կողմը կլոր գիծ մը քաշեց, ու Որոշ պատասխան մը չտուած՝ չկարենաս, ըսաւ, ասկէ դուրս ելլել։ Անտիոքոս մէկէն հնազանդեցաւ, ու վատ շողոքորթութեամբ մըն ալ ելաւ ըսաւ թէ Հռովմայեցւոց հնազանդիլը փառաւոր յաղթութիւններէս վեր կը սեպեմ։

1 Անկէց ետքը Հրէից վրայ թափեց Անտիոքոս բոլոր բարկութիւնը. մտաւ Երուսաղէմ, Ողիմպիան Արամազդայ զոհ մատուցանելով տաճարը պղծեց, սրբազան անօթները կողոպտեց, ու քառասուն հազար հոգի ջարդեց կ՚ըսեն։ Բայց ինքն ալ Պարսկաստանի մէջ յաղթուեցաւ, հօրը պէս Եղիմայիսի մեհեանները ուզեց կողոպտել ու բնակչաց ձեռքէն ինչուան Բաբելոն փախաւ։ Հոն՝ Հրէաստանի մէջ իր զօրավարացը յաղթուիլը լսելով կատղեցաւ, կառքը մտաւ որ երթայ անձամբ Երուսաղէմը պատժէ։ Բայց իր ամբարշտութեանցը պատիժը վրան հասաւ. կառքէն վար ինկաւ, բոլոր ոսկորները ջարդուփշուր եղան. մարմինը որդնոտեցաւ, սկսաւ փտտիլ, կտոր կտոր վար իյնալ, և անանկ գէշ կը հոտէր՝ որ զօրքը չէին կրնար դիմանալ։ Ասանկ սոսկալի տանջանքներով հոգին փչեց Անտիոքոս, խոստովանելով որ

---

1 Ի՞նչպէս մեռաւ Անտիոքոս Եպիփան։

1 ԱՆՏԻՈՔՈՍ ԳՐԻՊՈՍ (125-96)։ — Անտիոքոս Գրիպոս այսինքն Մեծաքիթ, Ասորւոց վերջին թագաւորը կը սեպուի։ Առջի բերան ասոր մայրը Կղէոպատրան կը կառավարէր տէրութիւնը. բայց երբոր Գրիպոս ինքիր գլխուն իշխել սկսաւ, Կղէոպատրա՝ որ առաջուց իր երկու էրիկը և մէկ զաւակը սպաններ էր՝ զինքն ալ մեռցընել ուզեց։ Օր մը երբոր Գրիպոս յոգնած ծարուած տուն եկաւ, Կղէոպատրա թունաւոր խմելիք մը հրամցուց անոր. Գրիպոս կասկածելով՝ քաղաքավարութիւն ձևացուց, և ուզեց որ նախ ինքը խմէ. երբոր անիկայ յանձն չառաւ, ան ատենը Գրիպոս յայտնի ըսաւ. Աս կասկածը վրայէդ վերցընելու համար պէտք է որ խմես։ Նեղը մտաւ Կղէոպատրա, խմեց ու մէկէն մեռաւ։

2 Գրիպոսին մեռնելէն ետքն ալ (96) անդադար կռիւ էր նոր թագաւորի ընտրութեան համար, ինչուան որ Ասորիք ձանձրացած՝ անձնատուր եղան մեր թագաւորին Միջին Տիգրանայ (84)։ Բայց քսան տարի հազիւ անցեր էր վրան, եկաւ Պոմպէոս՝ Ասորւոց երկրին տիրեց, ու Հռովմայեցւոց գաւառ մը ըրաւ։ Ասորւոց թագաւորութիւնը երկու հարիւր քառասուներեօթը տարի քշեց (64)։

---

1 Անտիոքոս Գրիպոս ինչպէս ըրաւ թագաւորութիւնը։

2 Ասորւոց թագաւորութիւնը ինչպէս վերջացաւ։

քաղել. և Թէպէտ չկրցաւ վերցընել Պարթեւաց տէրութիւնը՝ բայց անոնց երկիրներէն շատը ետ առաւ։ Անկէց անցաւ գնաց Հնդկաստան, ու հինգ տարի միակերպ յաղթութիւններ ընելէն ետև դարձաւ Անտիոք ու Մեծ ըսուեցաւ։ Անկէց գնաց դէպ 'ի Պաղեստին, Եգիպտացւոց ձեռքէն առաւ, ու յաղթանակով Երուսաղէմ մտաւ։

1 Երբոր իր քաջութեանը վրայ վստահացած Փոքր Ասիոյ վրայ ալ սկսաւ երթալ, Զմիւռնացիք և ուրիշ Յոյները տեսնելով որ մինակ չեն կրնար անոր դէմ կենալ, Հռոմայեցւոց դիմեցին։ Անտիոքոս տեսնելով որ Մեծն Աննիբաղ ալ իրեն եկեր ապաւիներ էր, անոր մտքին չըրաւ՝ որ խորհուրդ կուտար իրեն Իտալիոյ մէջ Հռոմայեցւոց հետ պատերազմելու. Յունաստանի մէջ Թերմոպիլէի քով յաղթուեցաւ ու Ասիա փախաւ, հոն նորէն Մագնեսիա քաղաքին մօտ Լուկիոս Սկիպիոն զօրավարին հետ զարնուելով յաղթուեցաւ, ու պէտք եղաւ որ բոլոր պատերազմին ծախքը վճարէ։ իր Անտիոքոս որդին պատանդ տայ, և Տօրոս լեռնէն ասդին ունեցած բոլոր երկիրները Հռոմայեցւոց թողու (190)։

2 Անտիոքոս իր աթոռը դառնալով չէր գիտեր թէ ուսկից վճարէ այնչափ պարտքը, ուստի ստակ ժողվելու համար արևելքի քաղաքնե-

1 Հռոմայեցւոցմէ ինչպէս յաղթուեցաւ։
2 Ինչպէս մեռաւ Մեծն Անտիոքոս։

րը պտըտելու ելաւ. գիշեր մը Եղիմայիս քաղաքին մէջ Որամազդայ կուռատունը մտաւ, և մէջի գանձը ուզեց կողոպտել. քաղաքացիք անոր սրբանակապտութեանը վրայ կատղած՝ վրան վազեցին, և քովիններովը մէկտեղ սպաննեցին զինքը՝ թագաւորութեանը երեսունըեօթներորդ տարին (186):

1 Անտիոքոսի մահուանը վրայ շատ մարդիկ ցաւեցան. վասն զի թագաւորութեանը մեծ մասը առատաձեռնութեամբը զարդարեր էր: Հրովարտակով մը իշխանութիւն տուեր էր հպատակացը որ եթէ օրինաց դէմ բան մը իրենց հրամայէ՝ ազատ ըլլան չհնազանդելու. բայց ետքերը ինքզինքը փառասիրութեան ու հեշտասիրութեան տալով՝ փառքով սկսած թագաւորութիւնը ամօթով լմնցուց:

2 ՍԵԼԵՒԿՈՍ ՓԻԼՈՊԱՏՈՐ (186–174): — Սելեւկոս որ հայրը շատ սիրելուն համար Փիլոպատոր ըսուեցաւ՝ այսինքն Հօրասէր կամ Հայրասէր, հօրը պարտքը վճարել ուզելով՝ Հելիոդորոս իշխանը ղրկեց որ Երուսաղէմայ տաճարին գանձերը կողոպտէ. Հելիոդորոս երբոր դարձաւ Ասորիք, Սելեւկոսը թունաւորեց ու ինքը տեղն անցաւ (174):

3 ԱՆՏԻՈՔՈՍ ԵՊԻՓԱՆ (174– 164): — Սելեւ-

---

1 Ի՞նչ բնաւորութիւն ունէր Անտիոքոս:
2 Մեծին Անտիոքոսի ո՞վ յաջորդեց:
3 Անտիոքոս Եպիփան ի՞նչպէս ըրաւ թագաւորութիւնը:

կոսին եղբայրը Անտիոքոս եկաւ շուտ մը Հելիոդորոսը վռնտելու, ու Եպիփան այսինքն Երեւելի կոչուեցաւ. բայց աւելի իրաւամբ զինքը հպատակները Եպիման կանչեցին որ Յիմար ըսել է։ Վասն զի թագաւորութեանը պատիւը մոռցած՝ շատ անգամ պալատէն կ'ելլէր՝ Անտիոքայ քաղաքին փողոցները կը պտըտէր, ու ամէն արուեստաւորի հետ կը խօսակցէր՝ պարծենալով թէ ինքը անոնց արուեստէն կը հասկընայ։ Երբոր կ'իմանար թէ տեղ մը կերուխում կայ, մէջերնին կ'երթայր՝ առանց ամչնալու կը խմէր ու խաղ կը կանչէր։ Շատ անգամ ալ գլուխը վարդերով պսակած ու թագաւորական ծիրանւոյն տակը քարեր պահած՝ փողոցներու մէջ կը պտըտէր, ու մէկուն մէկալին կը ձգէր։ Երբեմն ալ պատուհանէն վար ստակ կը նետէր, ու անցաւորաց իրարու ձեռքէն յափշտակելը տեսնելով կը զուարճանար։

1 Բայց այսչափ անկարգութեանց հետ փառասիրութիւնն ալ ձեռքէ չէր թողուր։ Շատ զօրքով գնաց Եգիպտոսի վրայ ու շատ գաւառներու տիրեց. քիչ մնաց որ Աղեքսանդրիան ալ պիտի առնէր՝ թէ որ Հռովմայեցիք մէջ չմըտնային։ Եգիպտոս դեսպան խրկուած Հռովմայեցւոց գլուխն էր Պոպիլիոս՝ Անտիոքոսին հին բարեկամը. թագաւորը զինքը տեսնելուն պէս՝ ուզեց բարեկամաբար ձեռքը բռնել. ձեռքը չըտուաւ Պոպիլիոս, հանեց ծերակուտին հրովար-

---

1 Եգիպտոսի վրայ ի՞նչ արշաւանք ըրաւ։

տակը ու սկսաւ կարդալ. մէջը գրուած էր որ Անտիոքոս հաշտութիւն ընէ ու Եգիպտոսէն քաշուի: Երբոր Անտիոքոս քիչ մը ժամանակ ուզեց մտածելու, Պոպիլիոս ձեռքի գաւազանովը անոր չորս կողմը կլոր գիծ մը քաշեց, ու Որոշ պատասխան մը չտուած՝ չկարենաս, ըսաւ, ասկէ դուրս ելլել: Անտիոքոս մէկէն հնազանդեցաւ, ու վատ շողոքորթութեամբ մըն ալ ըլլաւ ըսաւ թէ Հռովմայեցւոց հնազանդիլը փառաւոր յաղթութիւններէս վեր կը սեպեմ:

1 Անկէց ետքը Հրէից վրայ թափեց Անտիոքոս սրտին բարկութիւնը. մտաւ Երուսաղէմ, Ողիմպեան Արամազդայ զոհ մատուցանելով տաճարը պղծեց, սրբազան անօթները կողոպտեց, ու քառասուն հազար հոգի ջարդեց կ'ըսեն: Բայց ինքն ալ Պարսկաստանի մէջ յաղթուեցաւ, հոնը դեռ Եղիմայիսի մեհեանները ուզեց կողոպտել ու բնակչաց ձեռքէն ինչուան Բաբելոն փախաւ: Հոն՝ Հրէաստանի մէջ իր զօրավարացը յաղթուիլը լսելով կատղեցաւ, կառքը մտաւ որ երթայ անձամբ Երուսաղէմը պատժէ: Բայց իր ամբարշտութեանցը պատիժը վրան հասաւ. կառքէն վար ինկաւ, բոլոր ոսկորները ջարդուփշուր եղան. մարմինը որդնոտեցաւ, սկսաւ փտիլ, կտոր կտոր վար իյնալ, և անանկ գէշ կը հոտէր՝ որ զօրքը չէին կրնար դիմանալ: Ասանկ սոսկալի տանջանքներով հոգին փչեց Անտիոքոս, խոստովանելով որ

1 Ի՞նչպէս մեռաւ Անտիոքոս Եպիփան:

արդարութեան վրէժխնդիրն Աստուած էր զինքը այն խեղճութեան հասցընողը (164)։

1 Ասոնցմէ զատ ուրիշ տասը տասուերկու հատ ալ Թագաւորներ կան, որոնց վրայ ամենեւին գիտնալու բան մը չըլլալով՝ աւելորդ կը համարինք հոս գրելը. անոնց մէջ աւելի անուն մը ունեցողները ասոնք են։

2 ԱՆՏԻՈՔՈՍ ՍԻԴԻՏԷՍ (139-125)։ — Անտիոքոս՝ որ շատ արդարութիւն սիրելուն համար Սիդիտէս կամ Սիդեցի այսինքն Որսորդ ըսուեր էր՝ շողոքորթ մարդիկը մահու չափ կ'ատէր, ու ատոնց ամենեւին նեղանալու՝ ամէն տեսակ զատն ճշմարտութիւններու մտիկ կ'ընէր։ Օր մը որսի գնացած ատենը ճամբան կը կորսնցընէ ու գեղացիի մը տուն կ'երթայ. գիշերը հոն կ'անցընէ։ Այս և այլ խօսակցութիւնէ ետքը կը հարցընէ գեղացւոյն թէ Գո՞հ ես Թագաւորին կառավարութեանը վրայ. — Մեր Թագաւորը, շատ աղէկ է, կ'ըսէ գեղացին. բայց իր գէշ իշխանները զինքը կը խաբեն։ Երկրորդ օրը կանուխ Թագաւորին Թիկնապահները կուգան զինքը կը գտնեն. խեղճ գեղացին կը շփոթի, կը սկսի ըսուած խօսքին համար դողալ. բայց Թագաւորը իրեն սիրտ կուտայ, մանաւանդ թէ շնորհակալ ալ կ'ըլլայ իրեն՝ ըսելով. Դուն ինծի անանկ ճշմարտութիւն մը յայտնեցիր՝ որ ոչ երբեք պալատիս մէջ լսեր էի։

---

1 Անտիոքոս Եպիփանէն ետքը ով եղաւ անուանի Թագաւոր։

2 Անտիոքոս Սիդիտեսի վրայ ինչ կը պատմուի։

1 ԱՆՏԻՈՔՈՍ ԳՐԻՊՈՍ (125-96)։ — Անտիոքոս Գրիպոս այսինքն Մեծաքիթ, Ասորւոց վերջին թագաւորը կը սեպուի։ Առջի բերան տար մայրը Կղեոպատրան կը կառավարէր տէրութիւնը. բայց երբոր Գրիպոս ինքիր գլխուն իշխել սկսաւ, Կղեոպատրա՝ որ առաջուց իր երկու էրիկը և մէկ զաւակը սպաններ էր՝ զինքն ալ մեռցընել ուզեց։ Օր մը երբոր Գրիպոս յոգնած ծարաւած տուն եկաւ, Կղեոպատրա թունաւոր խմելիք մը հրամցուց անոր. Գրիպոս կասկածելով քաղաքավարութիւն ձևացուց, և ուզեց որ նախ ինքը խմէ. երբոր անիկայ յանձն չառաւ, ան ատենը Գրիպոս յայտնի ըսաւ. Աս կասկածը վրայէդ վերցընելու համար պէտք է որ խմես։ Նեղը մնաց Կղեոպատրա, խմեց ու մէկէն մեռաւ։

2 Գրիպոսին մեռնելէն ետքն ալ (96) անդադար կռիւ էր նոր թագաւորի ընտրութեան համար, ինչուան որ Ասորիք ձանձրացած՝ անձնատուր եղան մեր թագաւորին Միջին Տիգրանայ (84)։ Բայց քսան տարի հազիւ անցեր էր վրան, եկաւ Պոմպէոս՝ Ասորւոց երկրին տիրեց, ու Հռովմայեցւոց գաւառ մը ըրաւ։ Ասորւոց թագաւորութիւնը երկու հարիւր քառասուներեօթը տարի քշեց (64)։

---

1 Անտիոքոս Գրիպոս ինչպէս ըրաւ թագաւորութիւնը։

2 Ասորւոց թագաւորութիւնը ինչպէս վերջացաւ։

# ՑԱՆԿ



## ՀԻՆ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

## ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՀՐԷԻՑ

### ԳԼՈՒԽ Ա.



### ԳԼՈՒԽ Բ.

## ԳԼՈՒԽ Գ.



---

## ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

## ԱՍՈՐԵՍՏԱՆԵԱՅՑ

---

## ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

## ԲԱԲԵԼԱՑԻՈՑ



---

## ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

## ԵԳԻՊՏԱՑԻՈՑ

### ԳԼՈՒԽ Ա.

## ԳԼՈՒԽ Բ.



## ԳԼՈՒԽ Գ.

## ԳԼՈՒԽ Դ.



## ԳԼՈՒԽ Ե.



---

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

# ՄԱՐԱՑ եւ ՊԱՐՍԻՑ



---

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

# Պ Ա Ր Ս Ի Ց

## ԳԼՈՒԽ Ա.



## ԳԼՈՒԽ Բ.



## ԳԼՈՒԽ Գ.

## ԳԼՈՒԽ Դ.



---

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

# ՊԱՐԹԵՒԱՑ

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ
# ԿԱՐՔԵԴՈՆԱՑԻՈՑ

## ԳԼՈՒԽ Ա.



## ԳԼՈՒԽ Բ.

### ԳԼՈՒԽ Գ.



---

## ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

## Յ Ո Ւ Ն Ա Ց

### ԳԼՈՒԽ Ա.



### ԳԼՈՒԽ Բ.

## ԳԼՈՒԽ Գ.



## ԳԼՈՒԽ Դ.



## ԳԼՈՒԽ Ե.

## ԳԼՈՒԽ Զ.



## ԳԼՈՒԽ Է.



## ԳԼՈՒԽ Ը.

## ԳԼՈՒԽ Թ.



## ԳԼՈՒԽ Ժ.



## ԳԼՈՒԽ ԺԱ.

## ԳԼՈՒԽ ԺԲ.



## ԳԼՈՒԽ ԺԳ.



## ԳԼՈՒԽ ԺԴ.

## ԳԼՈՒԽ ԺԵ.



## ԳԼՈՒԽ ԺԶ.



## ԳԼՈՒԽ ԺԷ.

## ԳԼՈՒԽ ԺԸ.



## ԳԼՈՒԽ ԺԹ.



## ԳԼՈՒԽ Ի.

## ԹԱԳԱՒՈՐՈՒԹԻՒՆ

## Ա Ս Ո Ր Ւ Ո Ց





